ԶԱՔԱՐԻԱՅ

# ՍԱՐԿԱՒԱԳԻ

# ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ



ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

ՌՅԻ—1870

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ԳԷՈՐԳԵԱՅ Դ.

ՎԵՀԱՓԱՌ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ



# ՆՈՒԷՐ

ԱՌ

վսեմափայլ, եւ հայրենասէր

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍՏԵՓԱՆԵԱՆ

# ՅՈՎՆԱՆԵԱՆՑ

Ի ՀԱՒԱՍՏԻՍ

ԽՈՐԻՆ ԶԳԱՑՄԱՆՑ

ԵՒ

Ի ՆՇԱՆ

ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՆՑ

# ԱԶԴ

Ի Հրատարակել մերում զպատմագրութիւնս զայս Սարկաւագին Զաքարիայի, զբուն ձեռագիր օրինակ հեղինակին ունէաք ի Մատենադարանի Մայր Աթոռոյ մերոյ Կաթողիկէ Ս. Էջմիածնի, յորմէ գաղափարեցաք զներկայս՝ դոյզն ինչ փոփոխութեամբք կէտադրութեանցն, ուղղութեամբք տառասխալիցն, և յաւելլով ի ստորին լուսանցսն զհայ. թարգմանութիւնս այլազգի բառից, և ընծայեմք ի վայելս մերոց և օտարաց բանասիրաց։

Աւա՜ղ՝ զի Դ.րդ հատորոյ Կոնդակ անուանելոյ ձեռագիր օրինակ հեղինակին չերևի ի միջի, զոր գտաք յայլոց հազիւ զմի օրինակ ևեթ, թէև այն ևս լի պակասութեամբք թերթից։ Ի բնագրին Ա. և Բ. հատորոց ևս գտանէին պակասութիւնք բառից, որք ի հնութենէն մաշեալ և որք քերեալ գոլով, անղերծանելի մնան։

Յուսամք, զի յերկրորդ տպագրութեան պատմութեանս, եթէ յաջողեսցուք ի ձեռս բերել զայլ օրինակս երից հատորոց պատմութեանս, և եթէ ամբողջ ունին նոքա զպակաս թերթս որ ի սմին երևին, լրացուցանեմք զպակասորդս պատմութեանս որ ի տեղիս տեղիս։

# ՑԱՆԿ

## ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՍ.

---

Վասն անուան իմոյ։

Յոր թէ գիտես յիս ի՛նչ է լեալ,
Զերիս տեսակս եմ հաստատեալ։
Այլև քառից տարերց յօդեալ,
Այլ երկքառ տառին լուծեալ։
Իսկ երկրորդ զոյգ վանգիւ բարդեալ,
Քառամբ զուգիւ տառամբ լուծեալ։
Բաղ գործիւ ի ծայր եղեալ,
Անդրադարձմամբ յաւարտ ածեալ։
Այլև մի տառ Գ վանգ լեալ,
Բամից տառից որոշեալ։
Քառամբ բառիւք արտաբանեալ,
Ի միջեղեաց արտաքսեալ։
Աստ եռայիւ աւարտ ածեալ,
Այլև Ե տառ վերաբերեալ։
Զատուցէ և ընի լեալ,
Յի ուղղորդ չարադասեալ։

---




# ԶԱՔԱՐԻԱՅ ՍԱՐԿԱՒԱԳԻ

# ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԳԼՈՒԽ Ա.

### Պատմութիւն և կարգ թագաւորացն Պարսից

Զպատմութիւն և զկարգ թագաւորացն Պարսից և զժամանակս նոցա՝ Աստանօր կամիմ յայտ առնել. բայց ոչ գիտեմ զսկիզբն նոցա ուստի՛ լեալ։ Քանզի քաջ քարտուղարն Տրդատայ Ագաթանգեղոս Լատին և մեծն Մովսէս Խորենացին՝ Արշակայ Պարթևէ առնեն սկիզբն պատմութեան նոցա մինչև Երուանդ. Թարգմանաբար ծանուցանեն մեզ համեղ և քաղցր ոճով յարմարեալ։ Իսկ իմ առեալ ՚ի նոցունց շարադրութեանց գրեցից աստէն։ Ազդ առնելով ձերում իմաստութեան, զի ընդ բազում գիտութեանց ձերոց և զսակաւս իմ շարայարեսցի. որ է այս։ Յետ Աղեքսանդրի Մակեդոնացւոյ որդւոյն Նեքտանիփայ՝ որք տիրեցին տիեզերաց, չորեքին դայեակորդիք նորա՝ որ կոչեցան Անտիոքոս. որ և Սելևկիոս տիրեաց Պարսից՝ Մարաց և Հայոց, և անուանեցաւ Նիկանովր. կացեալ ամս Լ և Ե։ Եւ ապա Անտիոքոս՝ որ կոչեցաւ Թէոս։ Յետ ԿԵ ամին Աղեքսանդրի՝ Արշակ քաջ ՚ի Աբրահամեան ծննդոց՝ յազգէ Պարթևաց՝ ՚ի Բահլ աշխարհէն Քուշանաց, ելեալ բազում զօրօք, և հալածէ զԱնտիոքոս. և ոմանք սպանեալ ևս ասեն զնա. և ինքն տիրեաց ամենայն արևելից ՚ի վերայ արեաց աշխարհին, և հնազանդ արար ՚ի ներքոյ տէրութեան իւրոյ. և տևեաց մինչև ամս Լ։ Եւ յետ սորա որդւոց որդիս ամս բազումս մինչև Երուանդ։ Ի սորա աւուրս բար-

ձաւ թագաւորութիւնն Արշակունեաց 'ի Պարսից. և մեք զայն յիւրում տեղւոջն պատմեսցուք։ Եւ դարձցուք 'ի կարգ բանիս։ Եւ կացեալ Արշակ ամս ԼԱ՝ մեռանի։ Արտաշէս ամս ԻԶ։ Արշակ ամս . . . ։ Արշական ամս Լ։ Արշակ ամս ԼԱ։ Արշէզ ամս Ի։ Արշաւիր ամս ԽԶ։ Արտաշէզ ԼԳ։ Դարեհ ամս Լ։ Արշակ ամս ԺԹ։ Արտաշէզ ամս Ի։ Պերոզ ամս ԼԳ։ Վաղարշ ամս Ն։ Արտաւան ամս ԼԱ։ Որոյ յաւուրս սորա բարձաւ տէրութիւնն սոցա 'ի Պարսից. և մեք թողցուք յայլում վայրի պատմել, և պատմեսցուք և զկարգ թագաւորացն Հայոց մինչև ցԽոսրով։

## ԳԼՈՒԽ Բ.

### Թագաւորք Հայոց

Բանզի որպէս ասացաք, թագաւորեալ Արշակայ 'ի վերայ արեաց աշխարհին, սա թագաւորեցոյց զեղբայր իւր Վաղարշակ, և առաքեաց բազում զօրօք 'ի Հայս, և երկրորդ իւր արար զնա՝ կալ ընդդէմ թշնամեաց։ Եւ եկեալ մեծաւ զօրութեամբ տիրեաց աշխարհիս Հայոց, կալեալ զթագաւորութիւնս ամս ԻԲ։ Արշակ ամս ԺԳ։ Արտաշէս ամս ԻԵ։ Տիգրան ամս ԼԳ։ Արտաւազդ ամս. . ։ Արշամ ամս Ի։ Աբգար ամս ԼԸ։ Անան ամս. . ։ Սանատրուկ ամս Լ։ Երուանդ ամս Ի։ Արտաշէզ ԽԲ։ Արտաւազդ ամս. . ։ Տիրան ամս ԻԱ։ Տիգրան ամս ԽԲ։ Վաղարշակ ամս Ի։ Խոսրով ամս . . ։ Աստ դադարեցաւ և թագաւորութիւնն Արշակունեաց 'ի Հայոց՝ ժամանակ ինչ։ Իսկ 'ի Պարսից բարձաւ բնաւին։ Վասնզի էր թագաւոր Պարսից Արտաւան. իսկ ոմն Արտաշիր անուն՝ որդի Սասանայ Ստահրացւոյ՝ միաբանեցոյց ընդ իւր ամենայն ազգն Պալհաւունեաց. և զօրս բազում առեալ և գնաց 'ի վերայ Արտաւանայ՝ և եսպան զնա, և ինքն թագաւորեաց 'ի վերայ ամենայն Պարսից։ Զոր լուեալ թա-

գաւորն Հայոց Խոսրով Մեծաւ բարկութեամբ քինախնդիր լենի արեան ազգականին իւրոյ Արտաւանայ. և առեալ զզօրս իւր՝ գնայ 'ի վերայ Արտաշրի, և հալածէ զնա մինչ 'ի Հնդիկս. և ինքն աւերէ զերկիրն, քակէ և գերէ և անմարդաբնակ առնէ աշխարհն ամենայն։ Եւ ամս ԺԲ. այսպէս արար՝ մինչև ինքն ևս սպանաւ 'ի յԱնակայ, որպէս պատմէ Ագաթանգեղոս։ Իսկ Արտաշիր տիրէ Հայոց մինչև ցգալն Տրդատայ։ Եւ մեք զմնացեալ կարգս թագաւորացն Հայոց ճառեսցուք մինչև 'ի սպառիլ նոցա։ Երդ յետ Խոսրովու թագաւորէ Տրդատ՝ որդի նորա՝ ամս ԾԶ։ Խոսրով ամս Թ։ Տիրան ամս ԺԶ։ Արշակ ամս ԼԳ։ Պապ ամս Է։ Վարազդատ ամս Դ։ Արշակ ամս Ե։ Վաղարշակ ամս. . . ։ Խոսրով ամս Ե։ Շապուհ ամս Դ։ Արտաշիր ամս Զ։ Եւ բարձաւ թագաւորութիւնն Հայոց մինչև ցայսօր։

## ԳԼՈՒԽ Գ.

### Թագաւորել Արտաշրի։

Թագաւորեաց Արտաշիր 'ի վերայ ամենայն Պարսից։ Եւ ապա որդի նորա Շապուհ, Յազկերտ, Պերոզ, Որմիզդ, Խոսրով, Կաւատ, Արտաշիր, Խոռէ, Խոսրով, Բորն, Զարմանդուխտ, Յազկերտ։ Մինչև ցաստ գտաք զկարգս թագաւորացն Պարսից՝ և այլ ոչ ևս. քանզի խառնակեցաւ թագաւորութիւնք նոցա՝ աստ և անդ անկանելով՝ ոչ առեալ որդի 'ի հօրէ։ Այլ ամենք ելուզակաբար՝ որպէս Շարայեաղչին։ Ոմանք բռնութեամբ՝ որպէս զՎաղ-Թամուրն։ Եւ այլք խաբէութեամբ տիրեցին թագաւորութեանց. վասնորոյ և մեք ոչ կարացաք ուղղել զկարգ նոցին, վասն այսորիկ և ոչ գրեցաք զանուանս նոցա, թէև կարող էաք։ Այլ զի գտաք՝ զի Չահան-Շահ թագաւորեալ՝ յորդւոց որդի մինչև ցմերս ժամանակ, և գրեցաք. և զգործս և զարարեալս նոցա՝ զոր ինչ և լուեալ եմք՝ է համբաւոյ

և կամ է յիշատակարանաց գրոց գտեալ՝ աստէն յուշ արարից առանց ձանձրանալոյ: Այլ և զԹուականն ևս գրեցից. սակայն թէև ոչ սկիզբն թագաւորելոյ նոցա, այլ զոր ինչ գտից ըստ ժամանակին այնմ գրեցից. և դուք անմեղադիր լերո՛ւք, զի այս է կարողութիւն իմ. զԹերին՝ ձերում գիտութեամբ լցէ՛ք, և նեքաւով Զաքէոսս 'ի պախարակելոյ ազատ արարէ՛ք, և լերո՛ւք ողջ հոգւովն Աստուծոյ. ամէն:

## ԳԼՈՒԽ Գ.

### Թագաւորութիւն Շահ-Աբասին

Շահ-Աբաս թագաւորեաց յԱտրպատական աշխարհի 'ի վերայ ամենայն Պարսից. և յաջողեցաւ թագաւորութիւն նորա յոյժ քան զյառաջին թագաւորսն, և հնազանդեցան նմա ամենայն Պարսիկք և Մարք. և անկաւ ահ նորա ընդ տիեզերս ամենայն. բայց ոչ գիտեմ՝ եթէ յորում թուականի եղև նա թագաւոր: Այլ զի Առաքել պատմագիր ասէ՝ թէ «ՌԽԸ. թուին Շահ-Աբասն Ամշուլտոյ բերդն էառ. ՌԾԳ. թուին զԱխլցխէ էառ և գերեաց. ՇԱ. թուին զԼոռիկայ էառ.» այսքանս յԱռաքելէ լուաք: Իսկ յայլում պատմութեանց՝ այսպէս լուաք. ՇԺ. թուին ելեալ բազում զօրօք և գնաց յերկիրն Իրաղայ, քակեաց և աւերեաց զամենայն տունն Պարսից, կոտորեաց զամենեսեան, և գնաց մինչև 'ի Տեղեայպօլիս՝ որ է Սպահան, և քաղաքացիքն ընդդիմացան նմա: Իսկ Շահ-շահ բռնութեամբ էառ զքաղաքն, և աւերեալ կործանեաց, և փլոյց զամենայն շինուածսն. և կապեալ զջուր գետոյն՝ որ կոչի Զանտարայ, և ջրասոյզ արար զամենայն. քանզի հողեղէն էր: Եւ այսպէս տիրեաց ամենայն տանն Իրաղայ. և անուն նորա տարածեցաւ ընդ տիեզերս: Եւ անտի ելեալ գնաց 'ի Հրէ և է Խորասան, և նուաճեաց զամենայն տունն Պարսից. և դարձաւ

գնաց 'ի Թալսմն[1]) իւր 'ի Թաւրէզ Շահաստանի։ Եւ գնաց ընդ առաջ նորա Կաթուղիկոսն Աղթամարայ Տէր Զաքարիա բազում ընծայիւք։ Եւ ընկալաւ զնա Թագաւորն սիրով. քանզի սիրող էր ազգիս քրիստոնէից։ Եւ ետ նմա Թղթով և դապաղով[2]) զԿաթուղիկոսութիւնն սուրբ Էջմիածնի։ Եւ դշխոյ նորա Բէկում խաթունն ևս սիրեաց զնա՝ որպէս զայր իւր Ջհան-Շահ։ Եւ եղև հակառակիլ ընդդիմութեամբ իշխանին Բաղիշոյ. և Թագաւորն առաքեաց Պ. զօրագլուխ Բ.Փ.Մ.օք 'ի վերայ Խլաթայ. և գնացեալ աւերեցին և քակեցին զամենայն երկիրն, և նստան 'ի վերայ բերդին, և մերձ էին առնուլ զնա։ Զնոյն կամէին առնել 'ի Բաղէշ և 'ի Մուշ, 'ի Խութ և 'ի Սասուն և յամենայն սահմանս նոցա։ Զոր լուեալ Կաթուղիկոսն Զաքարիա. և գնացեալ առ աշխարհակալ Թագաւորն Ջհան Շահ և առ դշխոյն Բէկում խաթունն, և արար հաշտութիւն, և դարձոյց զբարկութիւն ինքնակալին 'ի խաղաղութիւն. և ինքն գնաց 'ի տեղի իւր՝ 'ի հրաշափառ Աթոռն 'ի սուրբ Էջմիածին։ Եւ զի պատմութիւնս մեր ոչ էր վասն Կաթուղիկոսին, այլ վասն Ջհան-շահին, որպէս խոստացաք առնել սկիզբ, և մինչև աստ հազիւ կարացաք գտանել վասն նորա։ Այսուհետև զոր ինչ գտից, զայն կարգաւ ծանուցից մինչև ցմեզ։

## ԳԼՈՒԽ Ե.

### Թագաւորութիւն Եաղուպին և վասն մահուն։

Մինչև կենդանի էր Ջհան-Շահն, ունէր որդի մի Հասան-Ալի անուն, այր գող և անզգամ, լիրբ և չարասէր, կողոպտող և յափշտակող. զոր վասն չարութեան նորա՝ ոչ սիրէր զնա

(1) Գահ. աթոռ իշխանութեան։

(2) Կալուածագիր. հրովարտակ։

հայրն։ Եւ եղեալ շրջէր ինքնագլուխ յերկիրն Արարատեան՝ թա-
փառական աստ և անոգ։ Եւ յորժամ լուաւ՝ թէ հայր իւր գնաց
՚ի Շիրազ և ՚ի Կերման, կամեցաւ Հասան-Ալին ըմբռնել ըզ-
Կաթուղիկոսն. և նորա իմացեալ՝ փախեաւ և եմուտ յԱղթա-
մար կղզի՝ որպէս պատմէ Առաքել պատմագիր։ Եւ Ջահան-Շա-
հըն եկեալ ՚ի Թաւրէզ՝ և իմացաւ զչար արարմունս որդւոյն
իւրոյ. և ասաց, սա ոչ կարէ առնել թագաւորութիւն վասն
ամբարտաւանութեան իւրոյ։ Եւ կոչեալ առ ինքն զԵաղուպ
թոռն իւր՝ և ասաց ցնա. որդեակ՝ հայրն քո վասն ամբարտաւա-
նութեան իւրոյ զրկեցաւ ՚ի թագաւորութենէ. այլ դու՝ եղեր
արժանի. վասնորոյ արի և քաջ լե՛ր յիշխանութեան և ՚ի մարդա-
շահութեան. պատրաստ լե՛ր ՚ի զրկելոյ զհնազանդեալսն։ Բայց
հօր քում մի՛ տացես տեսանել արև, այլ ՚ի դիպահոջ՝ արգա-
ցես զնա՝ մինչև մեռցի, և դու վարեա՛ զկեանս քո՝ թագաւորե-
լով երկրի. և ես որքա՜ն կենդանի եմ, պահեմ զքեզ. և յորժամ
մեռանիմ, թաղեա՛ զիս. և զհանն քո զՍեկում խաթունն՝ որպէս
զմայր քո պատուեա՛. և որպէս առնես ինձ, նոյնպէս արա՛ և
ընդ նա։ Զայս ասաց, և առեալ ՚ի գլխոյ իւրմէ զթագն արքու-
նական եդ ՚ի գլուխ նորա՝ և երկիր եպագ նմա։ Իսկ Հասան-Ա-
լին յորժամ լուաւ զպատուէր հօր իւրոյ առ որդին իւր, ան-
հետ եղեալ կորեաւ, և ոչ ոք գիտաց՝ թէ զի՞նչ եղև։ Բայց համ-
բաւ հանին՝ թէ գնացեալ է յաշխարհն Օսմանցւոց, և եղեալ է
ընկեր եղուզակաց, որք են Ջալալիք։ Իսկ Եաղուպ թագաւո-
րեալ ՚ի վերայ ամենայն Պարսից՝ պահելով զպատուէր հաւոյն,
հանդարտ և խաղաղ կենօք վարէր զթագաւորութիւնն։ Եւ էր
նորա քոյր մի՝ որ տուաւ ամուսնութեան Շէխ-Հայտարին՝ որդ-
ւոյ Շէխսաֆուն Արտաւիլոյ։ Եւ սոքա այր և կին խորհեցան
սպանանել զԵաղուպ թագաւորն, և ինքեանք լինել թագա-
ւոր։ Վասնզի Եաղուպ ոչ ուստր ունէր և ոչ դուստր, զի ժա-
ռանգ լիցի թագաւորութեանն։ Եւ յաւուր միում կոչեցին
զթագաւորն ՚ի ճաշ սիրոյ. և մահացու դեղ խառնեալ ընդ

կերակուրն՝ եռուն նմա. և իբրև եկեր, ազդ եղև նմա. և հրաման-յեաց քեռ իւրում և փեսային՝ բռնութեամբ ուտել. և այն-պէս մեռան երեքեան 'ի միասին՝ Նաղուպն՝ քոյրն՝ և փե-սայն. և այսպէս բարձան նոքա։ Բայց Նաղուպի ոչ զթագա-ւորութեան թուականն գտի և ոչ մահուն։

## ԳԼՈՒԽ Զ.

### Թագաւորութիւն Խամայէլին

Որպէս ասացաք՝ վասն մահուան Նաղուպին՝ դեղով լինել, սակայն մինչդեռ յոգուոջ էր՝ հրամայեաց զամենայն ազգատոհմս Հայոտարին բնաջինջ առնել. որ և արարին։ Նա ունէր որդի մի՝ ծնեալ 'ի քեռէ Նաղուպին՝ Խամայէլ անուն, զնա փախուցին յԱղթամար կղզին. և եղև խռովութիւն և աղմուկ մեծ 'ի մէջ զօրացն Պարսից վասն բառնալոյ թագաւորութեանն։ Վասնորոյ Ալուանդ ոմն ոչ 'ի թագաւորութեանց տոհմէ, այլ յայլմէ, որ տեսեալ զանտէրութիւն ազգին, միաբանեցոյց ընդ ինքեան զամենայն իշխանացն, և եղև ինքնագլուխ թագաւոր։ Նա դժկա-մակ եղեալ իշխանացն՝ առաքեցին յԱղթամար և բերին զԽամա-յէլն և ցուցին զօրացն՝ թէ սա թոռն է Ջահան-Շահին՝ և քեռ-որդի Նաղուպին, զսա արժան է առնել թագաւոր։ Որում հաւանեալ ամենեցուն՝ եդին զնա թագաւոր. այր քաջ և ու-ժեղ, և 'ի պատերազմունս զօրեղ։ Սա 'ի թագաւորելն իւրում՝ հալածեաց զԱլուանդն և հնազանդեցոյց զզօրսն։ (Ի).Ջ.Ղ. թուին եղև սա թագաւոր։(Ի).Ջ.ՂԳ. թուին Ամիշմա ոմն եղև երուզակ և թագնաբար անկաւ 'ի վերայ զօրաց Շահին, և զբա-զումս կոտորեաց։ Իսկ Շահն առաքեաց 'ի վերայ նորա զօրս, և հալածեցին զնա և զզօրս նորա։ Բայց վասն սորա՝ ասեն՝ զրոյց այսպէս. փորէր զերկիր և առնէր հոր, և բերեալ խոյ և թաղէր 'ի հորն՝ մինչև ցեղջիւրն. և ինքն հեծնոյր ի ձի, և 'ի հեռաստա-

նէ արշաւէր. և յորժամ հուպ լինէր առ խոյն, խոնարհէր 'ի ձիոյն և ըմբռնէր զեղջերաց խոյին, և ցանկեալ հանէր 'ի գլոյն. և Գ անգամ շուրջ ածէր զնուրեաւ' և ձգէր առաջի իւր, մինչ զի երիվարն ո՛չ ժամանէր նմա. վասնորոյ անուանեցաւ Պօղղափան' որ է Խոյաբարձ: Նա պատմեցին թագաւորին Օսմանցւոց Սուլթան Սէլիմին' զքաջութիւն Շահին. և նա առաքեաց դեսպանս առ Շահն, զի պատերազմաւ տեսցենզմի մեանս. և հաստատեցաւ բանն. և' եդին պայման, զի 'ի դաշտին Չալտրայ պատերազմեսցին:

Իսկ Շահն զտեալ զոմն հոմանուն Իսմայէլ, և ձևացոյց զնա թագաւոր, և արար զնա կողմնապահ. և ետ նմա պատուէր, թէ դէպ լիցի ինձ սպանումն, և կամ ըմբռնումն, դու մնաս կենդանի, լիցիս թագաւոր 'ի վերայ արեաց ազգիդ. և առաջի ամենայն մեծամեծացն ընկալաւ զպատուէրս զայս' անուանեալն Շահ-Իսմայիլ, և կայր հնազանդ ճշմարիտ Շահին: Նա 'ի թուին ՋԿԳ խմբեցաւ պատերազմն, և 'ի բազմութենէ զօրացն Օսմանցւոց 'ի փախուստ դարձան զօրքն Պարսից: Նա առեն ՁԱ Ենիչերի պնդեցան զկնի Շահին. և Շահըն սակաւ արամբ խոյս ետ, և զօղեալ 'ի տեղի ինչ թագեաւ: Իսկ նոքա ըմբռնեցին զԻսմայէլ զանուանեալն Շահ, կարծեցեալ' թէ ճշմարիտ Շահն իցէ. զի զնշան Շահին ունէր: Նա առեալ տարան առ թագաւորն իւրեանց Սէլիմ: Նա եհարց զնա Սէլիմն. դո՞ւ ես Շախսափուլթոան' և Շխ-Հայտարի որդին Շահ-Իսմայէլն: Պատասխանէ Իսմայէլն, ես ոչ եմ արժանի կոչիլ Շահ, այլ պակաս ծառայ եմ Շահին: Զի թէպէտ հոմանուն եմ նմա, սակայն զանուանակրութիւնս ոչ է ինձ մեծութիւն. այլ նուաստ ծառայ եմ զանուանակցին իմոյ Շահ-Իսմայիլի տեառն իմոյ: Ասէ Սէլիմն, անէծս կարդա ազգին քո, և ես ազատեմ զքեզ: Ասէ Իսմայէլ, անէծք լիցի 'ի վերայ այնոցիկ' որք ուրանան զազգն իմ, և քեզ լիցին զօրք և անէծք որ Սար ես, ո՛չ ունիս օրէնս և ո՛չ դաւանութիւնս

և ո՛չ կրօնս հաւատոյ։ Եւ զայս իբրև լուաւ 'ի նմանէ՝ և զար-համարհանս իւրն և ազգին, հրամայեաց քարկոծել զնա։ Եւ նա միշտ գոհանայր զազգէն իւրմէ՝ և անիծանէր և հայհոյէր զՕսմանցիսն, և ասէր. երթեալ պատմեցէք անուանկցի տեառն իմոյ, թէ՝ հոմանուն ծառայ քո՝ վասն սիրոյ անուան քո շէհիտ[3]) եղև. և դու մի՛ թողուցուս զարիւնն իմ 'ի վերայ Եազտի Պըր-տացս. և թիթեռն մի՛ իջուցես ՚ի հանգրուանս իջևանի իմոյ։ Եւ քարկոծեցին՝ զնա և մեռաւ. և այլք կալանաւորք՝ որք կային անդ, և ազատեցան՝ փոխադարձ առնելով, և գնացեալ պատմե-ցին Շահին։ Սանորոյ երգիչքն. Պարսից երգս յօրինեցին վասն նորա ըստ նորան բանի։ Իսկ Շահն յորժամ լուաւ զմահն Իսմայելին՝ և զպատուէրն, առաքեաց հրաւիրակս սաստիւ ընդ ամենայն տէրութիւն իւր. զոր եկեալ ժողովեցան՝ անթիւ և անհամար՝ ո՛չ միայն սպայազօրք, այլ և ռամիկք և հողագործք մինչև կանայք անգամ. և նա բացեալ զգանձատունն և բաշ-խեալ ամենեցուն առատ ռոճիկս, և քարոզ կարդայր գնալ 'ի վերայ Օսմանցւոց։ Եւ լրտեսքն գնացեալ պատմեցին Սելիմին։ Եւ նա հմքտալով հէքնէր՝ ասելով. նա զոր ինչ և ետես յի-նէն և եկեր. զիա՞րդ համարձակի գալ 'ի վերայ իմ։ Վասնզի և նա գումարեաց զօրս իւր, և գնաց 'ի վերայ Դամասկոսի՝ որ է Շամ։ Իսկ Շահն ելեալ զօրօքն գնաց 'ի կողմն Օսմանցւոց. և զբազում տեղի քակեալ աւերեաց, և գերեաց զբազումս։ Եւ գտեալ Սելիմ անուն ումն տաճիկ, և հրամայեաց քարկոծել զնա փոխանակ Իսմայիլին. և դարձաւ բազում աւարաւ 'ի Թաւ-րէզ. և յետ սակաւ աւուրց մեռաւ 'ի թուին ՋՃԵ կալեալ զթագաւորութիւնն ամս ԻԵ։

(3) Այս է շահիտ կամ շէհիտ, որ նահատակ թարգմանի։

## ԳԼՈՒԽ Ե.

### Թագաւորութիւն Թահմազին։

Շահ-Թահմազ թագաւորեաց զկնի հօր իւրոյ Իսմայիլի 'ի թուին Ջ.ՀԵ։ Այր բարերար և շինարար և սիրօղ քրիստոնէից՝ առանց ագահութեան, և չափաւոր յուտելն և յըմպելն և ի զգենուլն։ Ոչ պճնօղ, այլ որպէս հասարակ մարդիկ զգենուն, նոյնպէս և ինքն առնէր։ Եւ էր ողորմածասիրտ. քանզի ԾԺ ան ամաց հասարակ հարկն շնորհեաց ամենայն ումեք։ Այլև զդողս և աւազակս եբարձ յաշխարհէ։ Նաև զլկտի և զանամօթ կանայս՝ որք նստէին 'ի փողոցի և 'ի պանդոկի, և հրապարակաւ պոռնկութիւն գործէին և հարկս տային թագաւորաց. զնոսա իսպառ սպառեաց 'ի թագաւորութեան իւրոյ աշխարհէն։ Այլ և զմաքսն ճանապարհաց վերացոյց, և յամենայն հանդրուանս կայարանաց շինեաց պանդոկս, և փորեաց ջրհորս 'ի վերայ ամենայն ճանապարհաց։ Եւ գրեթէ ոչ մնաց տեղի ինչ անշէն 'ի ժամանակի սորա։ Այլ և 'ի դատաստանի իրաւարար և ուղղադատ։ Եւ այսպէս վարեաց զթագաւորութիւն իւր 'ի կենսս իւր։ (Ի)Ի.Ջ.Գ. թուին Վիրք չարացան. և զոր ինչ Պարսիկք գնային ի Տփխիս, նոքա կողոպտէին և բրածեծ առնէին։ Եւ լուեալ Շահըն՝ գնաց զօրօք 'ի վերայ նոցա, և գերեաց զՏփխիս և ամենայն գաւառն, և դարձաւ 'ի տեղի իւր 'ի Թաւրէզ։ Եւ ուղղեաց զամենայն կարգսն քաղաքական, զմոթս, զկապիճս, զկշիռս, և զամենայն արուեստաւորս, զկրպակս, զպանդոկս, և որ յայլ ինչ քաղաքի լինի առևտուր 'ի գնել և 'ի վաճառել, և զանուղիղսն կորուսանէր մահուամբ։ Եւ ոչ ոք կարէր թիւրել, զի չարամահ առնէին։ Իսկ թագաւորն Հնդկաց Հումա անուն՝ լուաւ զքաջութիւն նորա, մեղմ ընծայիւք եկն առ նա. և եկաց ժամանակ ինչ՝ և խաղաղութեամբ դարձաւ։ Եղբայր մի գոյր Շահին Ալխաս անուն. որ 'ի թագաւորել եղբօրն փախեաւ՝ երկուցեալ 'ի

սպանմանն է. և ահա յայտնեցաւ, և գնացեալ առ Խոնթկարն[4]), և առեալ երեր... 'ի վերայ եղեօրն 'ի Թուին ՋՂԱ. զոր բազում ոճիրս գործեաց՝ աւերելով գերելով զբազում տեղիս: Նա ապա Թագաւորին Թահմազ՝ ելեալ գնաց 'ի վերայ երկրին Օսմանցւոց, և աւերեաց զԽնուս, զԲասէն, զԷրզրում, զԴերջան, զԱեղի, զԲաբերդ, զԵզնկայ, զՍպեր, և այլ բազում տեղիս, և դարձաւ 'ի Թաւրէզ: Նա եղև խռովութիւն 'ի մէջ երկուց որդւոց Թագաւորին Օսմանցւոց, և պատերազմեցան ընդ միմեանս յԻկոնիոն՝ որ է Գօնիայ, 'ի Թուին ՌԸ: Սելիմն զԲայազիտն յաղթեաց և փախոյց մինչև ցԷրզրում. և անտի ելեալ Բ որդւովն և ԺՌ մարդով գնաց առ Շահ-Թահմազն. և նա ընկալաւ զնա և զորդիսն հանդերձ զօրօքն, և առաքեաց 'ի Խզվիրան՝ որ է Գազուին. վասն որոյ գովելով Պարսից ասացին երգս վասն Բայազիտին բազում գովութեամբ: Նա 'ի ժամանակի սորա էր Թագաւոր ոմն յազգէն Վրաց Սիմոն անուն. սա իբրև լուաւ զգնալ Բայազիտին առ Շահն, իմացաւ զի ոչ ոք կարէ ընդդիմանալ նմա, և ելեալ կամաւ իւրով գնաց առ ոտս Շահին ՝ի ՌԻԸ Թուին: Այլև Թագաւորն Կախեթու Աղէքսանդր առաքեաց զորդին իւր Կոստանդին՝ պատանդ առ Շահն. և կային առ նմա երկուքն Սիմոն և Կոստանդին: Այս Շահ-Թահմազս ունէր բազում որդիս. որոց անուն առաջնոյն էր Խսմայէլ, և էր կարի չարագործ. և հայրն եդ զնա 'ի կլայ իւր, զի անդ կացցէ ցօր մահուն. և ինքն Շահ-Թահմազ մեռաւ: Ոմանք ասեն սմա՝ իւրով մահուամբ մեռանիլ ՝ի ՌԻԲ Թուին. ոմանք 'ի բաղանիս խեղդեալ ասեն ի ՌԻԴ Թուին. զճշմարիտն Աստուծոյ է յայտնի. որ գիտէ զամենայն:

(4) Ինքնակալ Թագաւորն (Օսմանցւոց):

## ԳԼՈՒԽ Բ.

### ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԽԱՄԱՅԷԼԻՆ

Պատմութիւն՝ որ վասն Խամայիլին է, երկբայութիւն արկանէ։ Վրանցի և Ռուզբեալ պատմագիր՝ Գ. Խամայէլ ասէ, մինն որդի Հայտարին, որ է հայր Շահ-Թահմազին, որ մեռաւ ի Ջ.Հ.Գ. թուին։ Իսկ երկրորդ Խամայէլ ասէ՝ ի թուին Ռ.Ի.Գ. Խամայէլ թագաւորեաց երկու տարի, և ի Ռ.Ի.Ե. մեռաւ։ Իսկ ապա փոքր Խամայէլն 'ի բերդէն հանին և ի թախտ[3]) նստաւ։ Այս է Ռուզբէլոյ պատմութիւնն։ Իսկ 'ի համբաւոյ՝ այսպէս լուայ, թէ՝ առաջ Շահ-Խամայէլն մեռաւ. և կին նորա յղի էր, և ծնաւ որդի, և անուանեցին Խամայէլ՝ հօր անուամբն, որ ընդունէր զնա Շահ-Թահմազն. վասնզի համանմայլ (էր) նմա. որ թագաւորեաց յետ եղբօր իւրոյ Շահ-Թահմազին՝ 'ի մտանել Ռ.Ի.Գ. թուին. բայց ոչ եհաս 'ի տարին, այլ 'ի նոյն ամի մեռաւ. իսկ երրորդ Խամայէլ՝ որդին Շահ-Թահմազին՝ որ եդեալ էր զնա հայրն 'ի կլայ, և յորժամ լուաւ զմահ Խամայիլին, ելեալ 'ի կլայէն՝ և եկեալ թագաւորեաց 'ի թուին Ռ.Ի.Գ.։ Իսկ վասն սորա՝ ասէ Ղուարեցի Յովհան վարդապետ, թէ՝ այս Խամայէլս եսպան զեօթանեսին զեղբարսն իւր. և ապա սկսաւ կոտորել զիշխանսն՝ զոր յայտնի և զոր գաղտնի. սպանել կամէր զամենայն իշխանսն։ Զոր իմացեալ զօրայն՝ ազգ առնեն իշխանին Թաւրիզոյ Ամիր-Խան անուն, և իշխանին Արարատեան՝ Թօխմախ—Մահմուտ կոչեցեալ. և նոքա եկեալ սպանին զնա գաղտ, և ոչ ոք գիտաց զմահ նորա. և 'ի չառնել դատաստան, այսպէս կարծեցեալ եղև՝ թէ՝ գնացեալ է լրտեսութեամբ, յետ միոյ տարւոյ գալոց է. և յետոյ ծանեան զկորուստ նորա. որ թագաւորեաց ամս երիս։

---

(3) Աթոռ. գահ իշխանութեան։

13

## ԳԼՈՒԽ Թ.

### Թագաւորութիւն Խուարազմեանցն.

Խուտաբանտա որդի էր Շահ-Թահմազին՝ և եղբայր Իսմայիլին. և հայր սորա Թահմազ՝ առաքեաց զսա 'ի Խորասան, և յանձնեաց 'ի նա զամենայն աշխարհն։ Եւ նա երթեալ տիրեացն նոցա. և էր զեղխ՝ և լոյս աչացն պակաս։ Եւ տեսեալ զօրացըն՝ թէ ոչ գոյ ժառանգ թագաւորութեան, գնացեալ բերին զնա և արարին թագաւոր, անարի և անփոյթ 'ի պատերազմունըս՝ է ՋԻԼ թուին։ Ի սորա Բ ամին՝ եկն Լալայ Փաշայն, և աւերեաց զԵրեւան, և գերեաց ԿՌ անձինս Քրիստոնէից և Տաճկաց։ Յետ Լալային եկն Ֆահրատ փաշայն, և շինեաց բերդ յԵրեւան. և ելեալ գնաց 'ի Գանձակ Եղուանից, և էառ զնա։ Եւ առին զԹաւրէզ և զՇամախի և զԴամուր-ղափըն, որ է տուն (դուռն)Ալանաց, և մինչ 'ի Խուտափրին տիրեցին Օսմանցիք։ Իսկ թագաւորն Պարսից Խուտաբանտա ժողովեաց զզօրս իւր. և գնաց 'ի վերայ Գանձակայ. և (մինչ) մերձ էր առնուլ, անիծեալ ազգն Պարսից արարին անաստուածութիւն. զի որդի մի էր նորա, որ 'ի տեղի թագաւորի պահէր զնա՝ Եմիր-Համզայ անուն. և հարին զնա և սպանին. և եղև կրկին կուրութիւն նմա։ Եւ թողեալ զգործս պատերազմին, և ելեալ գնաց 'ի Խորասան առ միւս որդին իւր Աբաս. և մեռաւ անդ՝ թագաւորեալ ամս Գ. և ոմանք Թ ամ ասեն։ Բայց վասն մահուան սորա՝ ասեն, գնացեալ 'ի բաղանիս՝ գերծին զգլուխն. յորժամ 'ի ներքոյ ծնօտին կամէին հարթել, ածելեաւ հատին զպարանոցն։ Եւ վասն անարի լինելոյ նորա՝ գովէին Պարսից աւագին նմա երգ արհամարհանաց. և 'ի մէջ երգոյն ասացին, քակեցիր զԹաւրէզ, և աղբեցիր 'ի Մարանդ։ Նաև առասպելս յօդեցին այսպէս. թէ ասէին, թագաւո՛ր՝ այս ինչ քաղաք առին Օսմանցիք, և դու զի՞ կաս նստեալ։ Իսկ նա սաստէր նոցա ասելով, լուռ լերուք, զի հարսա-

նիս են կատուաց. և ինքն զարդարէր զկատուսն՝ դիպակ հան-դերձիւ, և կախէր զանգակ 'ի պարանոցէ կատուացն, և հրամա-յէր փողս հնչել. և ինքն ծափս հարկանէր և խնդայր: Զայս առասպելեցին վասն տկար և անարի գոլոյն, որ նշանակէ թէ՝ որպէս կատու 'ի տուն բնակի, և ոչ ելանէ արտաքս, նոյնպէս և սա որպէս կատու անկեալ էր 'ի տան, ոչ ունէր փոյթ վասն աշխարհին: Այլ միւս ևս յօդեցին բան վասն կուրութեանն. զի յորժամ ելանէր արտաքս՝ և հեծնոյր ի ձի՝ և շրջէր յարձակ դաշտի, և որք ընդ նմա էին՝ ծառը առնելով կատակէին և ա-սէին, թագաւոր, պրակ է և մայրի, խոնարհեցո զգլուխդ, զի մի՛ հարցի ընդ ծառս. և նա խոնարհ առնէր զգլուխն մինչև ցօգուտ ժամս: Եւ այսպէս վարեաց զկեանս իւր անարգութեամբ մին-չև ցմահ:

## ԳԼՈՒԽ Ժ.

### Թագաւորութիւն առաջնոյ Շահ Աբասին:

Ի հազար և ԽԹ թուին նստաւ Աբաս թագաւոր, այր քաջ 'ի պատերազմի, ճոռոմաբան, բազմահանճար, յոքնահնար, խո-րագէտ և ճարտարաբան, լի ամենայն հնարիւք, և առ ամենայն գործս աջողակ, և առ ամենայն իրս պնդակերեն և աներկիւղ: Եւ 'ի թագաւորել իւրում՝ աջողակ գտաւ գործ նորա: Քանզի 'ի ժամանակի հօր իւրոյ՝ ապստամբեալ էր երկիրն Զօջանէթ՝ որ է Գիլան. այս Աբաս գնացեալ հնազանդ արար ընդ ձեռամբ իւրով: Եւ ինքն գնաց յԱրտաւիլ՝ տալ ողորմութիւն բնակչաց նորա: Եւ ազգն Պալհաւունեաց՝ որ է Օզբէկ, ելին 'ի Բահլ Բուխարոյ, և առին զՃարէ քաղաք 'ի Պարսից: Եւ ելեալ Շահ-Աբասն զօրօք, և հալածեաց զնոսա՝ կոտորելով զբազու-մըս 'ի նոցանէ. և կալեալ զորդի թագաւորի նոցա, և ընդ իւր առեալ գնաց 'ի Խազիրան՝ որ է Գաղուին: Զսորա ամենայն գործ

գրեալ է Առաքել պատմագիրն՝ անպակաս զամենայն։ Ո՛վ ոք կամիցի գիտել զստոյգն, ընթեռնուցու զայն, և 'ի նմանէ ուսցի։ Այլ ես զոր ինչ լուեալ եմ վասն այս Շահ-Աբասիս, թէ՛ սուտ և թէ՛ առասպել, և թէ՛ ճշմարիտ և յիրաւ, զամենն գրեմ. թէ՛ պարսաւանք և նախատինք լինի(ն), և թէ գոհութիւնք և գովութիւնք լիցի(ն), նոցա լիցի՝ որոց պատմեցին մեզ։ Քանզի նոքա՝ որք ականատեսք էին, զստոյգն պատմեցին։ Իսկ նոքա՝ որք ականջալուրք էին, վեր 'ի վերոյ ասացին. սակայն մեք զոր լուաք, զնոյն պատմեսցուք՝ թէ սուտն և թէ իրաւն։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

### Գնալն Շահին 'ի Գուլփիքան։

Սովորութիւն էր Շահ-Աբասին՝ որ երբեմն երբեմն յայլակերպս եղեալ շրջէր։ Լինէր՝ զի երբեմն երիվարաւ և փայեկաւ գնայր՝ ուր և կամէր, երբեմն միայն, երբեմն 'ի կերպ փօրեզկի՝ որ է Չարչի։ Եւ այսպէս շրջէր 'ի մէջ մեծամեծաց և ռամկաց։ Հարցանէր և տեղեկանայր յամենայնէ՝ 'ի Շահէն և յերկրէն, 'ի հարկաց և յամենայն իրաց։ Եւ եղև երբեմն, զի գնաց զօրօք 'ի սահմանս Գուլփիքանայ. և թողեալ զզօրսն, և հեծեալ 'ի ձի՝ առանձին շրջէր. և էր եղանակս մերձ պահոց սուրբ Գէորգայ։ Եւ եղև անձրև սաստիկ, և թրջեաց զինքն և զչափարն[6])։ Եւ գնացին դէպ 'ի գիւղաքաղաքն Գուլփիքան. և էր մերձ երեկոյին. և տեսանէ մեծ բակ մի, և երկփեղկի դուռն 'ի վերայ. և ուղղեաց զինքն դէպ 'ի դուռն այն, և եմուտ երիվարաւն 'ի բակն. և տեսանէ այր մի նստեալ աթոռով 'ի ներքոյ երեսբաց հրրուանդանի՝ որ է այվան[7]). և տուեալ ողջոյն՝ և ասէ, վասն սիրոյ Շահին ընկալ զիս, զի պաղեցայ 'ի ցրտոյ։ Եւ ասէ այրն, որով-

(6) Թիկնապահ. սպասաւոր. նուիրակ. սուրհանդակ ևն։

(7) Սրահ կամ մեծ սենեակ։

հետև զՇահն յիշեցեր, էջ 'ի ձիոյդ. և կոչեաց այրն զծառայն իւր՝ և ասէ, զերիվարդ և զուրհանդակդ՝ բարուոք պաշտպանեա՛. և ինքն առեալ զՇահն՝ և մտանէ 'ի տուն մի զարդարեալ. և հանեալ զհանդերձն՝ Շահին առաքեաց 'ի տունն՝ և ասէ, ցամաքեցուցէք զդա. և բերեալ մեծ մուշտակ մի սամոյրեայ[8]) , և էարկ 'ի վերայ նորա. և ծիծաղելով ասէ, բարուոք է զայդ։ Ասէ հիւրն, այո՛ բարուոք է։ Ասէ այրն, ընդէ՞ր ոչ է բարուոք կաւատ բողն, որ է գ——————մաղ։ Դարձեալ ասէ այրն, եթէ լուցից խարոյկ, բարուոք լինի։ Ասէ հիւրն, այո՛ բարուոք լինի։ Ասէ այրն, ջերաւի բարուոք լինի կաւա՛տ։ Եւ հրամայեաց լուցանել զբոխարին[9])։ Եւ դարձեալ ասէ, թէ՝ արարից խորովածս, բարուոք լինի։ Ասէ Շահն, բարուոք լինի։ Ասէ այրն, իրաւի լինի բարւոք՝ կաւա՛տ։ Եւ այսպէս ասէր այրն, և այսպէս պատասխանէր Շահն։ Եւ զոր ինչ և ասէր այրն, և արար խորովածս, և բերեալ գինի, և նստան ուտել և ըմպել։ Եւ խօսէին յաշխարհէ և 'ի Շահէն։ Իսկ այրն միշտ բարուոք գովանայր 'ի Շահէն։ Եւ այսպէս խօսեցան մինչև 'ի մէջ գիշերին։ Եւ ապա ետ բերել մահիճս ազնիւս՝ Շահին և փայեկին. և ասաց 'ի ներքուստ աղխել զդուռն. և սակս ձիոյն՝ ասէ, մի՛ ինչ հոգայք։ Եւ եկաց մինչև ցառաւօտն. և 'ի լուսանալ առաւօտուն՝ ասաց Շահն ցայրն, ասա՛ զոր ինչ ծախեցեր 'ի վերայ մեր, տացո՛ւք զգինն։ Ասէ այրն, Աստուած մի՛ արասցէ, զոր Շահի անունն յիշօղն և վասն Աստուծոյ եկեալ հիւրն՝ պատառ մի հաց կերիցէ, զգինս նորա առից, և կորուսից զվարձս իմ. և այսպէս արձակեաց զնա։ Բայց Շահն եհարց ծառայի նորա՝ թէ՝ զի՞նչ է անուն տեառն քո։ Եւ նա ասէ. Ալլահվէրտի կոչի։ Եւ ելեալ անտի գնաց Շահն 'ի տեղի իւր. և առաքեաց արս Գ·իս 'ի Գուլփիքեան. այս ինչ տունն՝ ասէ, գնացէք և ասացէ՛ք ցՏէր տանն,

---

(8) Սամոյր. սամուրենի։

(9) Տխանկլիք. խունկ. 2) կրակարան։

հրամանն է Շահին առ քեզ՝ գնալ առ նա։ Եւ թէ ասիցէ՝ ուստի՞ գիտէ զիս Շահն. ասասջի՛ք, թէ 'ի տեսլեան գիշերոյ տեսեալ է զքեզ. վասնորոյ կոչէ զքեզ առ ինքն գնալ։ Եւ գնացեալ արքըն գտին զնա. ետուն ողջոյն՝ և ասեն, դու իցես Ալլահվէրտին։ Եւ ասէ, այո՛ ես եմ։ Եւ նոքա ասեն զպատգամս Շահին։ Եւ յետ բազում ասելոյ, եդ նոցա սեղան. և ինքն զգեցաւ ըզդիպակ պատմուճանն, և էառ զմիջոյն զպատուական շալեայ[10] գօտին, և 'ի վերայ ագաւ զսամոյր վերարկուն։ Եւ կապեաց ըզպողովատիկ թուրն։ Եւ եդ 'ի գլուխն զոսկէտառուն մանդէլն[11]. և զգեցաւ զպնտակօշիկն 'ի յոտսն. և էառ զթֆանկն[12] ընդ ուսովն. և հեծաւ զշլոդոս երիվարն. և առաջի արար զսուրհանդակն իւր. և ելեալ գնաց ընդ հրաւիրակացն։ Եւ 'ի ճանապարհին հարցանէր ցարսն, թէ՝ զի՞նչ կամի ընդ իս Շահն, գիտեմ՝ չի սպանանէ զիս։ Քանզի յանցեալ աւուրսդ եկն 'ի գիւղն մեր զինուոր մի, և արար անզգամութիւն. և ես ծեծեցի զնա. և նա գնացեալ գանգատեալ է Շահին. վասն այնորիկ խնդրէ զիս Շահն առ 'ի սպանանել։ Բայց ես արկ՛ից զթուրն իմ 'ի պարանոց իմ, և անկանիմ ցոտս (յոտս) նորա, և զի՛նչ կամեսցի առնել՝ արասցէ։ Իսկ արքն յառաջագոյն մտին առ Շահըն, և պատմեցին նմա զամենայն. և հրամայեաց բերել առաջի իւր։ Իբրև եմուտ առ նա, և ետ ողջոյն, և ծանեաւ՝ զի այն հիւրըն էր՝ որ ինքն հանգոյց զնա։ Ասէ Շահն, բարի եկիր կաւա՛ռ։ Եւ ապա ասէ, թէ ագուցից զազնիւ պատմուճանս, բարուոք լինի։ Ասէ այրն, բարուոք լինի։ Ասէ Շահն, յիրաւի բարուոք լինի՝ կաւա՛ռ։ Եւ թէ տաց քեզ ձի թամպօք, լաւ լինի։ Ասէ այրըն, լաւ լինի։ Ասէ Շահն, այո՛ բարուոք լինի կաւա՛ռ։ Եւ թէ տաց քեզ վրանս խոհանոցօք, բարուոք լինի։ Ասէ այրն, բարուոք։ Ասէ Շահն, իրաւի բարուոք լինի՝ կաւա՛ռ։ Եւ թէ

(10) Ցփսի. խարգ. ձունձ. մազեղէն. 2) ազնիւ այծեայք։
(11) Թաշկինակ։
(12) Հրացան։

տաց քեզ Գաւառութիւնն Միսէս քաղաքին՝ որ է Շիրազ, զի՞նչ լինի։ Ասէ այրն, քան զամենայն՝ բարի դա է։ Եւ ապա հրամայեաց տալ զամենեսեան՝ զոր ինչ և ասաց։ Եւ գրեաց թուղթ հրամանաց, և ետ Գաւառութիւնն Շիրազայ՝ նմա։ Այս այն Ալլահվէրտին է՝ զոր Առաքել պատմագիր յիշէ 'ի պատերազմին Արծկոյ և Վանայ, որ է ստոյգ այսպէս, որպէս և գրեցաք։ Զայս լուաք մեք Մուրատ Խան անուն յառնէ միոջէ։ Այլ և սակաւ ինչ 'ի մօրէ իմմէ։ Քանզի յորժամ Շահ-Աբաս երկիցս քշեաց և տարաւ յերկիրն Պարսից, մայրն իմ՝ հարբ և մարբ իւրովք բնակեցան 'ի Գուլվիքան. և յետոյ Քանաքեռցի Դաւիթ Մելիքն՝ որ էր գաւառապետ Կոտէից, բերեալ զնոսա՝ և բնակեցոյց 'ի գիւղն իւրեանց Արծնի. և զի հանն իմ Խօսրով՝ քենի էր Մելիք Դաւթին, որ ասէին ,,Մելիք Թուրքճայ Էկլմող,, և զմայրն իմ Խանաղայ՝ ետ 'ի կնութիւն նօտարին իւրոյ Մկրտչի, որք ծնան զիս. որ և զպատմութիւնս զայս արար մայրն իմ։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Աշխարհակալն Թագաւորութեան Շահ-Աբասին։

Բազմահնար և հանճարեղն՝ Շահ-Աբաս՝ յորժամ նըստաւ նա թագաւոր, աջողեցաւ գործ նորա. քանզի զոր ինչ երկիր՝ որ 'ի ժամանակս հօր իւր(ոյ)՝ և կամ յայլում ժամանակի առեալ էին, սա բազում քաջութեամբ յետս էառ՝ որ 'ի կողմանս Պարսից, որք էին՝ Ջօջանէթ՝ որ է Գիլան, զՄանտահար, զԽուրմուզ, զԽորէ, և այլք։ Եւ ապա զօրացաւ 'ի վերայ Օսմանցւոց։ Քանզի որպէս պատմէ Առաքեալ պատմագիր, թէ՝ եղուզակք՝ որ է Ջալալիք, որոց անուանքն գրեալ է, զի բազմացան նոքա 'ի Կոստանդնուպօլսէ մինչ 'ի Երեւան. վասնորոյ զօրացաւ նա. և ժողովեալ զզօրս իւր, և գնացեալ էառ զա-

ամենայն երկիրն, զոր առեալ էին Օսմանցիքն 'ի Պարսից։ Սակս որոյ շարադրեցաք մեք աստէն, որք են այսոքիկ, Թաւրէզ, Նախիջևան, Երևան, Տփխիս, Գօրի, Կախէթ, Գանձակ, Շամախի, Բաղդատ, և այլք՝ ամենայն գաւառք իւրեանց։ Իսկ ապա Օսմանցիքն ոգի առեալ՝ միաբանեցան և նոքա։ Եւ առաքեցին 'ի վերայ նորա սէրտար[13]) զՋղալօղլի Սինան Փաշայ։ Եւ կոտորումն սորա պատմէ Առաքել, 'ի նորուն պատմութենէ ուսարուք, և մեք մի՛ երկարեսցուք։ Եւ նախքան զգալ Ջղալօղլուն՝ զամենայն երկրի ռամիկն և շինականքն քշեաց և տարաւ յերկիրըն Պարսից։ Թէ զայսոսիկ՝ զոր ինքն էր հնազանդեցուցեալ, և թէ այնոքիկ՝ որք Խաներն էին բերեալ յայլում աշխարհէ, բովանդակ քշեալ տարաւ յաշխարհն Պարսից։ Վասնորոյ մեք կարևոր համարեցաք շարադրել աստէն՝ զինչ երկիր որ աւերեաց. որք են այսոքիկ յանուանէ թէ՛ յետ և թէ՛ առաջ. և դու 'ի միտ ա՛ռ սկսեալ 'ի կողմանցն Նախիջևանոյ՝ զԵղեգաձոր, զԳեղամ, զԼօռի, զՀամզա-չիման, զՆիգ, զՇարապխանայ, զՇիրակ, զԶարիշատ, և զգեղորայսն Կարուց, և զձորն Կաղզուանայ, զԱլաշկերտ, զՄակու, զԱղբակ, զՍալամաստ, զԽոյ, զՈրմի. և զկողմն Թաւրիզու, զդաշտն Արարատու, զԵրևան քաղաք, զԿոտէս գաւառ, զՏաղկնուձոր, զԳառնուձոր, զՈւրնաձոր, և որ զգաւառն Կարնոյ և զԲասենոյ՝ զԽնուս, և ըզՄանազկերտ, զԱրճկէ, զԱրճեշ, զԲերկրի, և զամենայն գաւառս Վանայ, և այլ ամենայն տեղիս գերեաց և աւերեաց, այրեաց և հրդեհեաց զամենայն բնակութիւնսն, զի մի՛ մնասցէ շէն։ Այս ամենայն՝ զոր գրեցաք, քշեաց և տարեալ բնակեցոյց յամենայն գաւառսն Պարսից. և յայս տեղւոջ են՝ զորս բնակեցոյց. Արտաւիլ, Ահար, Ապահր, Գաղուին, Համատան, Շիրազ, Գուլփէքան, Քրման, Ասպահան, Խունսար, Միլախօռ, Փարիա, Փուավարի, Գէնտուման, Լնջան, Ալինճան, Խոյեկան, Շըխ-

(13) Սէրտար՝ որ թարգմանի Զօրագլուխ։

շարան, և յայլ գաւառսն Պարսից, զորս ոչ գիտեմ յանուանէ. որք կացին և մնացին անդէն մինչև ցայսօր. և առաջ քան զասա՝ երկիրն Կախեթու և Քարթլայ ևս քշեալ տարաւ 'ի Ֆրահրապատ, և յԱշրաֆ, 'ի Քուշան։ Նա և այսպէս բնակեցոյց զնոսա յաշխարհն Բաղայ(Իրաղայ). և մարդաշատ արար զամենայն տուն Պարսից։ Նա այլ ամենայն գործս նորա գրեալ է Առաքեալ վարդապետ։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

### Գնալն 'ի տուն Գուրիթ Երիցու։

Ըստ սովորութեան իւրում Շահ-Աբաս թագաւորն՝ եղև թեպտիլ-սուրաթ[14] 'ի կերպ մանրավաճառի՝ որ է խուրտաֆուրշ։ Նա ելեալ շրջէր 'ի մէջ ռամկաց. հարցանէր և տեղեկանայր։ Նա այսպէս գնալով և շրջելով եմուտ 'ի գիւղ մի՝ որ ասի Լնճան. և գնացեալ եմուտ 'ի տուն այրի Երիցու միոյ, որոյ անունն էր Գուրիթ, և էր գրիչ, և գրէր Այսմաւուրք. և Շահն եմուտ 'ի տունն՝ ասէ, խուրփայ առնո՞ւք։ Ասէ երէցն, ունի՞ս լաւ գրիչ կտրիչ։ Ասէ վաճառականն, այո՛ ունիմ ազնիւ և լաւ դանակ։ Ասէ երէցն, բե՛ր՝ զի տեսից։ Իսկ նա եդ առաջի նորա զվաճառելին իւր. և առեալ փոքրիկ գրչահատ, և ետ զգինն նորա ԺԴ փող։ Նա սկսան խօսել բազում ինչ։ Ասէ սուտ վաճառականն, Քէշիշ բաբայ՝ 'ի Շահէն գո՞հ էք, եթէ գանկատ։ Ասէ երէցն, դեռ ոչ լաւն գիտեմք Շահի, ոչ վատն. այլ զի թագաւոր է, ոչ է արժան վատ ասել նմա։ Նա յետ բազում խօսից՝ ասէ վաճառականն, զի՞նչ է գիրքդ՝ զոր գրես։ Ասէ երէցն, մերս լեզուաւս Այսմաւուր ասի, և ձեր լեզուաւդ Շէխփ-ոլայ։ Ասէ Շահն, վասն սիրոյն Աստուծոյ՝ եթէ Շահն սիրես, պատմեա վասն շէխփացն, թէ ո՞րպէս են եղեալ շէխփ[15]);

(14) Կերպարանափոխ, ծպտեալ կերպարանօք։

(15) Շէհէփ որ է Նահատակ։

Եւ ապա բացեալ Երէցն եգիտ զճառն Յակովբայ Նահատակին. ընթեռնոյր և պատմէր տաճկերէն մի ըստ միոջէ զամենայն հատումըն մարմնոյ սրբոյն։ Իսկ Շահն ունկն եդեալ մտօք լսէր և 'ի միտ առնոյր։ Ասէ Շահն, ո՞վ էր Թագաւորն ժամանակին, որ զայդ արար։ Ասէ Երէցն, Յազկերտ էր անուն նորա։ Ասէ Շահն, զի՞նչ հաւատոյ էր։ Ասէ Երէցն, Պարսիկ էր. սակայն կրակապաշտ էր, և ոչ էր տաճիկ։ Ասէ Շահն, այժմ ևս գոյ յԱսպահան կրակապաշտ, և ասեն գեաւուր[16])։ Ասէ Երէցն, այո՛ նոքա էին յայնմ ժամանակի Թագաւոր։ Եւ յետ բազում խօսից ելեալ Շահն՝ և ասէ, դուա էյլէ[17])։ Եւ ելեալ գնաց 'ի տեղի իւր. բայց 'ի մտի ունէր զպատմութիւնն՝ զոր Երէցն պատմեաց։ Յաւուր միում կոչեաց Շահն զգլխաւորս հաւատոյն իւրեանց՝ զոր ասեն Մուֆթի և կամ Վաքիլ[18]), և զՇէյխիւլ-իսլամըն[19]) որ է Վէզիր[20]). որոյ անունն էր Մարութաղինեկքինի. և այլք 'ի գլխաւորացն։ Եւ ասէ ցնոսա, յայսմ գիշերի տեսի զարմանալի տեսիլ. և ահա զողայ սիրտս։ Ասեն նոքա, պատմեա՛ զերազն քո, զի լուծցէ Վաքիլն։ Ասէ Շահն, ոչ է լուծանելի, այլ կատարելի գործով. և զոր լուեալ էր Երիցուն(յԵրիցուէ), զայն 'ի վերայ ինքեան եդ, որպէս թէ ինքն արարեալ էր։ Եւ յետոյ ասէ, յորժամ կատարեցաւ հրամանն իմ, ապա լոյս յերկնից սաստիկ և ահեղ էջ 'ի վերայ նորա, այնքա՛ն՝ որ զլոյս արեգականն արգելաւ։ Արդ ես ասեմ ձեզ. գրեցէ՛ք 'ի գիրս ձերկանոնս՝ և նզովիւք փակեցէ՛ք, զի թէ քրիստոնեայք տաճկանան, և յետոյ դառնան 'ի հաւատս իւրեանց, մի՛ արգելուք կամ չարչարէք. այլ թոյլ տուք նոցա կալ 'ի հաւատս իւրեանց. մի՛ գուցէ սպանանէ՛ք զնոսա, և իջանէ լոյս 'ի նոսա, և տեսցեն զայս.

(16) Այս է՝ կեավուր՝ որ անհաւատ թարգմանի։

(17) Աղօթս արա՛, աղօթեա՛։

(18) Նախարարապետ, սատրապ. 2) յառաջագահ ևլն։

(19) Արքունական, պետական իմամակալ։

(20) Վէզիր՝ որ է փոխանակ արքայի, Նախարարապետ։

Մահմետականք և երկմտեցլին 'ի հաւատոց իւրեանց. և լեցի պակասութիւն մեծ ազգի մերոյ. այլ յորժամ գան առ ձեզ, տուք նոցա գիր պաշտել զհաւատն իւրեանց. և լինին Տոմար[21]), և տան հարկս ձեզ ։ Եւ կատարի հրամանս այս մինչև ցայսօր։ Զի թէ ոք պատճառանօք իւիք տաճկացեալ իցէ, երթեալ առնուն Ընծա[22]) արքունի, և եկեալ պաշտեն համարձակ զհաւատս իւրեանց. և 'ի տաճկաց ոչ ոք ասէ ինչ։ Իսկ մեք գնացաք 'ի Պաղաւին քաղաք 'ի Թուին ՌՃԻԳ, սակս վանից գործոյ։ Եւ վասն փարպեցի տաճկաց առաք նօմոս ի Շահ-Սուլէյմանէն՝ Նո տրանց. և ահա կան քրիստոսական հաւատով, և պաշտեն զՔրիստոս, որպէս և այլք պաշտեն։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

### Վասն ըմբռնելոյ Եղիազարայն։

Ասել կամիմ վասն սորին Շահ-Աբաս Թագաւորիս. քանզի կարի հնարաւոր էր՝ և յոյժ հանճարեղ, և շահօղ զմիտս մարդոյ. և ըստ հանճոյից մարդկան առնէր զգործս իւր։ Եւ եղև՝ զի դէպ իւր զարդարեաց սուկեզարդ սարօք, թէ՛ թամբն, թէ՛ սանձըն, թէ՛ կշտապանակն, թէ՛ ամբարձին, թէ՛ սրտապանակն, և այլ ամենայն կազմուածքն երիվարին արար ոսկի։ Նաև զհանդերձն իւր նոյնպէս գեղեցիկ և պատուական՝ ըստ օրինի թագաւորաց։ Եւ յորժամ ելանէր յուս երէոց կամ 'ի զբօսանս, այնպէս զարդարեալ երթայր։ Եւ տեսանէր, զի զօրքն ամենեքեան արարին զհանդերձս իւրեանց, և զկահս ձիուցն արարին նման նորքեան. և առ սակաւ սակաւ եղեն 'ի կերպս Շահին։ Եւ իբրև ետես Շահն՝ թէ ամենեքեան կերպաւորեցան իբրև զնքն, և ասէ

(21) Այս է՝ Մէ-ըլ-Նէ-ֆ, ուրացեալ, ուխտադրուժ։
(22) Հրովարտակ, հրամանագիր։

ցէշհտիմալ-տօլուաթն[23]), Լալա՛յ՝ ունիմ ինչ ասել քեզ. զի ահա տեսանեմ՝ զի ամենայն զօրքս իմ զգենուն հանդերձս. զազնիւ քան զիս. և զորդս երիվարաց նոցա պատուական քան զիմն։ Նա՛ և արդ ի՞ւ իւիք մեծ իցեմ քան զնոսա. զի եթէ ոք անծանօթ գայ 'ի մէջ զօրաց մերոց, զիա՞րդ ճանաչէն զիս՝ թէ Շահն իցեմ. զի ամենայն ոք զկերպարանս Շահին ունին, և ոչ են պակաս քան զիս։ Զի թէ անունս իմ Շահ է, նոքա կերպարանաւ ամենեքեան Շահ են։ Թէ ասեմ նոցա, զմէ՞ զգենուք իբրև զիս, նոքա հայհոյեն զիս, թէ ինքն ոչ տայ մեզ ըզխիլայս, և մեք մեզէն առնեմք, դա զչարի է զգենուլն մեր. և արդ պատուիրեմ քեզ՝ Լալա՛յ, զի կոչեսցես զմունէտիկն, որ շրջին 'ի մէջ քաղաքիս Սպահանայ, և ազդակեն նոցին՝ ասելով, հրաման է Շահին, եթէ ոք զգեստն իւր և զկահ ձիոյն՝ ոսկի ոչ առնիցէ, զգլուխ նորին հատանեմք. ահա լուարո՛ւք ամենեքեան սաստիւ զհրամանս Շահին։ Զայս իբրև լուան, եթէ ոք՝ որ կարող էր, և թէ՝ ոչ, արարին զպատուէր Շահին վաղվաղակի։ Իսկ ինքն Շահ արար զկահն ձիոյն իւրոյ 'ի խամ[24])կաշւոյ, և զգեստն իւրոյ որպէս հասարակ մարդկան։ Նա՛ այսու հնարիւք ամենեցունց միտսն շահէր, և հաճոյանայր առ ամենեսեան։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

### Գնալն է փուռն Ընայէն։

Կամիմ՝ թէ զոր ինչ եղեալ է 'ի ժամանակի Շահ-Աբասին՝ գրել, այլ ոչ կարողանամ. քանզի սակաւք են գիտօղք ժամանակին՝ որք ասէին զամենայն ստուգութեամբ։ Սակայն զոր ինչ լուեալ եմ, զայն գրեմ։ Ի ժամանակին՝ յորում գնաց Շա-

(23) Տե՛ս յիրսն 21 րդ ի ծանօթութեանն 19.րդ։

(24) Հում. 2) խակ. տհաս. 3) թերավարժ. 4) անկազմ կաշի ևլն.

հըն 'ի Վրացտուն, և հնազանդեցոյց զնոսա, և 'ի դառնալն՝ եկն 'ի Կայանոյ ձոր, որ այժմ ասի Դրաղէ ձոր, և զկայ առաւ զձմեռն անդէն։ Իսկ ըստ սովորութեան իւրոյ՝ յայսմ վայրի ևս եղև Նատրղէր ոտ—րաՆ, և զգեցաւ փոքայ կօշիկս՝ որ է տրեխ կամ չարուխ, և կերպարանեցաւ 'ի կերպ խուրդաֆուրուշի. շրջէր 'ի գիւղորայսն, հարցանէր և տեղեկանայր և վերահասու լինէր ամենայն իրաց։ Իսկ գնալով եհաս 'ի գիւղ մի՝ որ ասի Մ՝խափոր. և էր եղանակս աշնան։ Եմուտ 'ի տուն մի, և ետես կին մի, զի լուցեալ էր հուր 'ի խարուկի, և նստեալ մերձ՝ և գործէր գուլպայ, և փոքրիկ աղջիկ մի՝ որպէս հնգից ամաց՝ ընդ նմա. մտեալ 'ի տունն՝ ասէ, խուրդայ առնո՞ւք։ Ասէ կինն, ունի՞ս ուլունս։ Ասէ Շահն, այո ունիմ մեծամեծս և մանունս։ Ասէ կինն, բե՛ր զի տեսից։ Իսկ եդ առաջի նորա զարկղն, որ է սանդուխ. և բացեալ զուլունսն եդ՝ առաջի նորա։ Ասէ կինն, որքա՞ն է գինն սորա։ Ասէ սուտ վաճառականն, զի՞նչ որ տացես, այն է։ Իսկ ասէ, կարի քաղցեալ եմ, բե՛ր ինձ հաց 'ի գինս ուլունացդ։ Ասէ կինն, մի՞թէ հաց տամք մարդոյ՝ և գին առնումք և լինիմք վարձավաճառ։ Զայս ասաց, և ելեալ եբեր երիս ձուս, և փոքր պուտկաւ եդ 'ի վերայ հրոյն. և խարշեալ եդ առաջի նորա. եբեր և մածուն, և կողի, և հաց կորեկախառն. և եկեր զայն Շահն. և բազում հարցաքննութիւնս արար։ Իսկ յետոյ՝ ասէ, մա՛յր իմ՝ գո՞յ քեզ այր։ Ասէ կինն, գոյ. բայց հովիւ է և արածէ զխաշինս։ Ասէ Շահն, ձե՞ր են ոչխարքն, եթէ այլոց։ Ասէ կինըն, գոյ մեզ՝ և այլոց ևս, զի Գ ընկերք են և ի միասին պահեն. և երբեմն երբեմն գան՝ և գնան, զի մերձ է արօտն։ Ասէ Շահն, զի՞նչ է անուն առն քո։ Ասէ կինն, Աթայ կոչի։ Իսկ ապա բացեալ զարկղն, և բազում շար ուլունս արկեալ 'ի պարանոց աղջկանն՝ և մօրն ապարանջան դեղին, և ասէ, Աստուած շէն պահէ՛ զտուն քո։ Ասէ կինն, ասա՛ զգին սոցա, զի տաց։ Ասէ փոքրիկն, զի թէ դու վարձս քո ոչ վաճառես, ես իմն վաճառիցե՞մ արդեօք։ Իսկ զայս ասացեալ՝ ելեալ գնաց 'ի

տեղի իւր. և առաքեաց յերկիրն ահարկու, թէ՝ ո՞վ ոք 'ի Պարսից ազգէ բռնութեամբ ինչ առնու ի ռամկաց, զգլուխն հատանեմ. այլ զոր ինչ առցեն, տացեն զգինն. քանզի գանգատեալ էր կինն։ Եւ յետ երկուց աւուրց՝ առաքեաց զինուոր մի 'ի գիւղըն Միափոր, և ասէ, գնա՛ 'ի տուն չօպան[25]) Աթային, և ասա՛ ցնա և ցկին իւր, թէ՝ Շահն կոչէ զձեզ. և թէ ասեն՝ ուստի՞ գիտէ զմեզ Շահն, ասա՛, լուեալ է համբաւ ձեր. վասնորոյ խնդրէ զձեզ։ Եւ գնացեալ զինուորն եգիտ զտունն. և ահա էր 'ի ժամուն Աթայ 'ի տուն. և ասաց զպատգամս Շահին. և յետ ասելոյն և լսելոյն, պատրաստեցան 'ի գնալ ։ Եւ գնացեալ Աթայն և երեք 'ի հօտից իւրոց մեծաեղջիւր խոյ մի, և կինն զգեցաւ հանդերձս՝ զոր ունէր, և յանձնեցին զտունն իւրեանց դրացեացն. և այրն շալակեաց զաղջիկն, և ա՛յնպէս հովուական զգեստիւն զխոյն առաջի արկեալ գնացին. և 'ի փութիւն հասին առ Շահն։ Եւ ըստ պատուիրելոյ զինուորին՝ անկեալ 'ի վերայ երեսաց իւրեանց՝ երկիրպագին նմա. և ապա մտին 'ի վրանն։ Եւ ասէ Շահն, բարի եկիր անա[26])։ Ասէ կինն, բարին եղիցի անձինդ և հոգւոյդ։ Ասէ Շահն, ճանաչե՞ս զիս։ Ասէ կինն, այո՛ դու այն ես՝ զոր շնորհեցեր դստերս իմոյ զուլունս զայս։ Եւ ապա ծիծաղելով ծափս եհար Շահն՝ և ասէ, ա՛յ հա՝ որ յայնժամ ուլունավաճառ էի, և այժմ զի՞արդ եղէ Շահ։ Եւ հրամայեաց նստիլ. և խօսեցաւ ընդ նոսա բազում ինչ ։ Եւ լուաւ 'ի նոցանէ բան իմաստութեան՝ և հաճելի և հաւանելի։ Խօսէր երբեմն ընդ առն, և երբեմն ընդ կնոջն. և ուրոյն ուրոյն լսէր պատասխանի պատշաճաւոր և կարի խելացի։ Եւ յետ երկուց աւուրց խիլայեաց զայրն՝ և զկինն՝ և զաղջիկն՝ յոտից մինչև ցգլուխ. և հրամայեաց նօտարին գրել Նօմոս՝ որ է Բարաթ[27])

(25) Հովիւ։

(26) Մայր։

(27) Հրովարտակ, արտօնագիր ևն։

Մելիքութեան[28]), և ետ նոցա յորդւոց յորդիս լինել Մելիք այնմ գաւառի։ Նա հրամայեաց նոյն զինուորին՝ տանել զՄելիք Աթայն և շրջեցուցանել զգաւառն, և ծանուցանել զհրաման Շահին. և է մինչև ցայսօր Մելիք ի նոյն գաւառին Կայենաձորոյ՝ որ է Ղրաղի ձոր։ Նա 'ի Թուին ՌՃՕ. եառ զիս եղբայրն իմ Խաչատուր, և գնացաք 'ի գիւղն Մխափոր. և 'ի տան մելիք Աթայքն կալաք խանութ, և գործէաք արուեստ ոսկերչութեան. և 'ի նոցանէ ուսաք զամենայն։ Նա էր Մելիք Աթայ անուն ըստ անուան հաւոյն իւրոյ առաջնոյ մելիք Աթային. բայց պատառ մի հաց՝ այսքան մեծութեան հասոյց։

## ԳԼՈՒԽ ԺՕ.

### Սպանումն Ղարչղայ խանին։

Չէ պարտ զանց առնել վասն իրացն անցելոց, այլ պատմել ըստ մերում կարեաց, և ըստ լրոյ համբաւոյն։ Քանզի որպէս պատմէ Առաքեալ վարդապետ, եթէ Վրացն Մովրաւն գնացեալ եբեր զՇահ-Աբասն, և տարեալ 'ի Վրացտուն, զոր քակեալ աւերեաց զամենայն տունն Վրաց և զԿախէթ. և Թագաւորըն Կախեթու Թէյմուրազ փախոյց 'ի 'ի խորին Վիրս. և Թագաւորն Տփխիսու Շաւարսափ առեալ տարաւ ընդ իւր 'ի Պարսս, և եթող յերկիրն Վրաց՝ զՂարչղայ խանն բազում հեծելօք, և ընդ նմին Մովրաւն, և ասէ, յորժամ հնազանդեցուսցես զամենայն աշխարհն Վրաց, տուր 'ի Թիւլիզ զՄովրաւն, և Թագաւորեցո զդա. զի այնպէս էր խոստումն նորա առ Մովրաւն։ Նա ինքն Շահ-Աբաս էր 'ի Պարսս, և Ղարչղայ խանն կայր և զմտաւ ածէր վասն երկրին՝ թէ՝ ո՞րպէս կարիցէ նուաճել աշխարհն Վրաց։ Իսկ բազմահնարն Շահ-Աբաս, որ

(28) Մելիք, որ թարգմանի գաւառապետ։

բնաւորեալ ունէր 'ի սրտի իւրում զչարութիւնն, և կամէր իսպառ բառնալ զիշխանութիւնն քրիստոնէից. և խորհեցաւ 'ի միտս իւր, թէ Մովրաւն մնայ կենդանի՝ և լինի թագաւոր աշխարհին Վրաց, լինի մեզ խոչնդակ և ներհակ թագաւորութեան մերոյ: Ապա արար խորհուրդ ընդ համախոհս իւր՝ սպանանել զՄովրաւն. և գրեաց թուղթ առ Գառչղայ Խանն: Եւ էր պատճէն գրոյն այս. "'ի Շահ-Աբասէ մալում[29]) լինի քեզ՝ Գառչղայ Խան: Զի յորժամ աշխարհդ Վրաց ընդ ձեռամբ քո արասցես, եթէ ինչ իւիք և է՝ ջանա՛ սպանանել զՄովրաւդ, զի մի՛ լիցի մեզ հակառակ, և կամ պակասութիւն ինչ թագաւորութեանս մերում": Գրեաց զթուղթս զայս, և կնքեալ ետ 'ի ձեռս սուրհանդակի՝ ասելով, այլ ումեք մի՛ տացես ըզթուղթս, բայց միայն Գառչղայ Խանին: Իսկ շաթրն զգեցաւ զգեստ փայեկի՝ նօսր, և կապեաց յոտսն բժիժ, և առեալ ըզթուղթն՝ և գնաց: Իսկ խորհեալն Շահին խափանեցաւ, և ներհակ նորին եղև, ըստ գրեցելումն՝ առցեն զայն՝ զոր և խորհին. կամ ըստ Սողոմոնի՝ որ փորէ խորխորատ ընկերին, անձամբ իւրով լցցէ զայն. որ և եղև իսկ: Քանզի փայեկն որ գնաց, եհաս 'ի տեղին՝ ուր էր բանակ զօրացն. և Մովրաւն զվրանն իւր հարեալ էր յեզր բանակին 'ի վերայ ճանապարհին. և ահա գայր պատագարոսն. և լուաւ Մովրաւն զձայն բժժացն, և ել արտաքըս 'ի վրանէն. և տեսանէ զպատագարոսն՝ զի գայր, և կոչեաց առ ինքն զփայեկն: Եւ ասէ, ո՞վ ես, կամ ուստի՞ գաս, և կամ յո՞ երթաս: Եւ նա ասէ, շաթր եմ, 'ի Շահէն գամ, և երթամ առ Գառչղայ Խանն, զի ունիմ թուղթ 'ի Շահէն առնա: Եւ ասէ Մովրաւն, ես եմ. և առեալ տարաւ զնա 'ի վրանըն իւր. և 'ի զօրացն ոչ ոք իմացաւ զգալն շաթրին. և առեալ զթուղթն 'ի նմանէ՝ և հրամայեաց արբանեկացն 'ի գաղտ պահել զսուրհանդակն. և բացեալ զգիրն և ետ ընթեռնուլ.

(29) Ցայտ. յայտնի:

և իմացաւ զերն. և հրամայեաց զշաթրն կորուսանել։ Եւ ՚ի նոյն աւուր կոչեաց մի մի զամենայն իշխանսն Վրաց՝ գաղտ ՚ի Պարսից, և առաջի նոցա ասաց զգաղտնի նէտս Շահին։ Եւ խօսեցաւ ընդ նոսա՝ և ասէ, զի՞նչ մնաս արարի նմա, որ նա սպանանել կամի զիս. և այս է հատուցումն փոխարինին. որ զՎրացտունն աւերեցի, զԹագաւորս նոցա հալածեցի, և արդ այս քեզ խոստումն՝ որ կամէր առնել զիս Թագաւոր ՚ի վերայ Վրաց. արդ ազգ իմ և ընտանի իմ՝ դուք էք. մի՛ թողուցուք անհաւատ ազգին Պարսից՝ սպառել զազգն մեր. եղերո՛ւք արք արիք յայսմ գիշերի ՚ի ջնջել զնոսա։ Եւ բաժանեաց զազգն Պարսից ՚ի վերայ ազգին Վրաց, և՝ ինքն իւրովք զօրօք. և եդ պայման՝ թէ՝ յայս նշանի ժամու անկերո՛ւք ամենեքեան իւրաքանչիւր բաժնի և կոտորեցէ՛ք անխնայ։ Իսկ Պարսիկք ոչ գիտէին զայս, և ննջէին յիւրաքանչիւր տեղիս։ Եւ ՚ի պայմանեալ ժամուն յարեան Վրացիքն ՚ի վերայ Պարսիցն, և կոտորեցին զնոսա որպէս մրջիւն ջերմ ջրով, և սպանին զՂարչղայ խանըն, զՅուսուփ խանն և զՂազաղ խանն։ Եւ այլք ՚ի մեծամեծացն՝ և որք լուանն՝ ելեալ փախեան գօտէլուծ՝ գլխիբաց՝ բոկոտն, թողեալ զկարասի և զգանձս՝ ապրուստ անձանց խընդրէին. և ոչ մնաց ՚ի Պարսիցն անդ յայնմ գիշերի և ոչ մի։ Իսկ Վրացիքն անկան ՚ի վերա՛յ ընչիցն Պարսից, յափշտակեցին և կողոպտեցին. և մտեալ ՚ի գաւառն աւար արարին զամենայն. և զինչ Տաճիկ տեսանէին՝ ՚ի սուր հանէին անխնայ, և զկանայսըն գերէին։ Եւ այս ամենայն չարիքս արարին Վրացիքն։ Այլ և զքրիստոնէից զինչսն կողոպտէին և մարդոյ չառնէին մնաս. զայս պատմեաց մեզ Պետրոս Աբեղայ Աղջոց վանից, որ բնակէր ի Յօհաննավանք. զի զինքն ևս էին կողոպտեալ Վրացիքն ՚ի ՌՃԴ թուին։

## ԳԼՈՒԽ ԺԴ.

### Պատերազմ Պարսից ընդ Վրաց։

Յորժամ կոտորեաց Մովրաւն զՊարսիկսն՝ և զերկիրն աւերեաց, և գիտաց թէ՝ Շահն ոչ լուի 'ի լսել համբաւոյս այս, զկին իւր և զորդիս և զկարասի իւր առաքեաց յՄըզդուն, և ինքն ժողովեաց զամենայն Վրացիսն, և պատուիրեաց նոցա՝ պատրաստ լինել, մինչև տեսցո՛ւք՝ թէ՝ զի՞նչ է լինելոց։ Իսկ Պարսիկքն որ փախեան 'ի Մովրաւէն, գնացեալ պատմեցին Շահի՛ն։ Յորժամ լուաւ զպատգամս զայս Շահն, փնդայր, մռնչէր, հնչէր և գոչէր որպէս ձագակորուստ առիւծ. և ապա հրամայեաց իշխանի միոյ, որ ասէին Շուջի-բաշի, ժողովել զզօրս, և ինքն լինել գլուխ նոցա, և գնալ 'ի վերայ Վրաց։ Եւ նա արար զհրամանս Շահին. և չուեաց 'ի կողմն Վրաց։ Նոյնպէս և Մովրաւն առեալ զզօրս Վրաց և հասեալ մօտ զօրացն Պարսից՝ ախոյեան միմեա՛նց՝ 'ի վերայ գետոյն՝ որ կոչի Ալգէթ. և 'ի զօրացն Վրաց էր այր մի յաղթամարմին՝ հաստատանձն, լայնաճակատ և մեծագլուխ քաջ 'ի պատերազմի. որոյ անունն էր Աղայ-Խանլի. նա եղև առաջընթաց 'ի պատերազմի, որ ասէր ամենայն զօրս Պարսից ինձ լիցի բաժին, բայց միայն է չէզ վարազէն գոյ ինձ երկիւղ, այսինքն՝ յԱմիրգունայ Խանէն գոյ ինձ կասկած։ Եւ 'ի նոյն տեղին Ալգէթ հարան ընդ միմեանս սաստիկ և յոյժ բախմամբ՝ որպէս դարբինք հարկանել զերկաթս, և պղնձագործք 'ի տափելն զպղինձ. և այնպէս մարտեան ընդ միմեանս զօրն ողջոյն. և 'ի ձայնէ թուանքացն, 'ի ճայթմանէ աղեղանցն, և 'ի գոչմանէ արեանցն և 'ի Փռնչելոյ երիվարացն, զամենայն բեռնակիր անասունքն Պարսից՝ թէ՝ ուղտք, թէ՝ ձիք, թէ՝ ջորիք, թէ՝ էշք, ամենն գլուխ առեալ փախեան 'ի տեղիս իւրեանց։ Եւ ասացին՝ թէ՝ 'ի նոյն գիշերի ուղտքն հասին 'ի Շիրազ, որ էր ճշմարիտ. զի 'ի ճանապարհին՝ որոց

պատահեցան, 'ի ներքոյ իւրեանց առեալ սպանին, և ինքեանք շտապաւ հասին 'ի տեղիս իւրեանց։ Իսկ 'ի նմին պատերազմի պատահեցան միմեանց Ամիրգունա խանն և Աղայ Թանկրին. ասէ Ամիրգունա խանն, ո՛ դու Ցոփայ, - որ է քարեայ բլուր - ուր փախչիս. և առ ժամայն շարժեցին զԹուրսն 'ի վերայ միմեանց 'ի միում քթթել ական։ Նախ Աղայ Թանկրին բերեալ զԹուրն 'ի վերայ ձախ թևին խանին՝ և խոցեաց. նոյնպէս խանըն ևս 'ի վերայ ձախոյ յուսոյն Վրացւոյ, որ և հատեալ ընկէց յերկիր, և ինքն մնաց կախեալ 'ի ձիոյն. և եկեալ պաշտօնեայք նորա՝ առեալ տարան առ ինքեանս, և մեռաւ անդէն։ Իսկ Ամիրգունա խանն եղև խոցեալ. և էր որդի նորա Թահմազ Ղէկ ընդ նմա. որ եկեալ պատեաց զհայրն իւր՝ և առաքեաց յԵրևան. և ինքն մնաց անդէն ընդ զօրս Պարսից։ Իսկ 'ի պատերազմի անդ անկան Շահբանտայ խանն և Սէլիմ Սուլթանն, և այլք 'ի մեծամեծացն Պարսից. և թէպէտ անկան նոքա, սակայն Վրացիքն կորեան և ոչնչացան. և Մովրաւն փախեաւ յերկիրն Օսմանցւոց. և Պարսիկք զօրացան և տիրեցին երկրին Վրաց մինչև ցայսօր։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Աղօթամիջին Դաւիթ խանի։

Վասնզի կամեցայ պատմել զգործս Պարսից, տեսցուք և զայս ևս։ Զի յորժամ էառ Շահն զԳեանջայ, եդ անդ իշխան զԴաւութ խանն, այրն նենգաւոր և հպարտ, ինքնահաւան և գոռոզ. որ ոչ երբէք խոնարհէր ումեք ամենևին։ Իսկ յորժամ եթող Շահն զՂարչղայ խանն 'ի Վրաց աշխարհն՝ հնազանդել զնոսա, եթող անդ և Դաւութ խանն, և ասաց, լե՛ր խօսքն Ղարչղայ խանի, և կա՛ց հնազանդ նմա։ Իսկ նա թէպէտ մնաց անդ, ոչ գնաց առ Ղարչղայ խանն. և ոչ

Ղառչղայ Խանն կոչեաց զԴաւութ Խանն առ ինքն։ Այսպէս մախանօք կային ընդ միմեանս։ Իսկ Դաւութ Խանն հանապազ երթայր առ Մովրաւն. և եղեն հաշտակից սիրելիք միմեանց. և Դաւութ Խանն միշտ հայհոյէր և անարգ բանս խօսէր սակս Ղառչղայ Խանին, և ասէր, թէ լիցի ինձ իշխանութիւն 'ի վերայ նորա, ոչ թէ թրով սպանանեմ զնա, այլ մասն մասն յօշոտեմ։ Եւ այսպէս ասէր ամենայն որ առաջի Մովրաւին։ Եւ եղև՝ զի յորժամ Շաթրն բերեալ գիրն էառ Մովրաւն, կոչեաց զԴաւութ Խանն, և եցոյց նմա զթուղթն։ Իսկ նա խրատեաց զնա՝ որպէս և արար իսկ. և փախեաւ Դաւութ Խանն և գնաց 'ի Գեանջայ։ Իսկ յորժամ Շահն առաքեաց զՂօռչի-բաշին 'ի վերայ Մովրաւին, առաքեաց առ Դաւութ Խանն, զի գնասցէ ընդ Ղօռչի-բաշուն. և նա ոչ գնաց 'ի կոչ նորա, այլ պատճառս յօղեաց՝ որպէս թէ ունիմ վէրս, որոյ սակս ոչ կարեմ գնալ։ Եւ 'ի վճար պատերազմին և 'ի փախչել Մովրաւին յերկիրն Օսմանցւոց, լուաւ Դաւութ Խան և իմացաւ՝ թէ՝ ներհակ եղև Շահին, վասնորոյ փախեաւ և ինքն Զ արամբ. և գնացեալ յաշխարհն Օսմանցւոց՝ եգիտ և զՄովրաւն. և անդ մնաց, և անդէն կորեաւ յաշխարհն Օսմանցւոց։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

### Գնալն Շահին յԵրևանայ։

Զոր ինչ պատմութիւն՝ որ լուեալ եմ՝ զայն գրեմ. բայց յետ և առաջ լինելն և զթուականն ոչ գիտեմ. և որք ընթեռնուք՝ մի՛ մեղադրէք. այլ թէ հաճիք 'ի սմա, Տեառն շնորհ. և թէ ոչ, դուք ողջ լերո՛ւք։ Այլ վասն պատմութեանս՝ որ առաջի կայ մեզ, եթէ ո՞վ պատմեաց մեզ, ծանուցից։ Էր այր մի ծեր վաղեմի՝ 'ի Վաղարշապատ գեղջէ, և անուն նորա Երանոս։ Նա ասաց. յորժամ Շահն քշեաց զերկիրս, ես Իսա-

մեայ էի, և մօրի ջորեպան Շահին, որ է ղամբրճի. ուր և 'ի գաւա-նայն է Թաւրիզոյ և է գնայն 'ի Պաղուին, եհաս 'ի գիւղաքաղաք մի՝ որ ասի 'ի Նախիանայ, յայսմ կողմանէ Պափլանթու լերինն 'ի կողմն Թաւրիզոյ. և ըստ վաղաշուտ սովորութեան իւրոյ՝ հրաման ետուն, զի ամենայն մանկամարդ կանայս և զաղջկունս ժողովեսցեն 'ի մի վայր. և նստոյց շուրջանակի հանդէպ միմեանց, և ոչ եթող անդ այր արու, այլ ամենեքեան կանայք էին և փոքրիկ աղայքներ: Նշարկ սեղան յուտել և ըմպել և պարել. և ինքն ելեալ ոսկէ բաժակաւ գինի տայր նոցա. և որոց և սիրէր, զկես բաժակին ինքն ըմպէր, և զկէսն տայր նմա: Նա էր ընդ բազմելոցն կոյս մի գեղեցիկ՝ որ ոչ ուտէր, ոչ ըմպէր, ոչ խօսէր, և ոչ 'ի վեր հայէր. և էր խօսեցեալ ընդ երիտասարդի միոջ: Նա գնացեալ Շահն մերձ առ նա՝ և կալեալ 'ի ծնօտից աղջկանն՝ ասէ, աղջի՛կ դու, ընդէ՞ր ոչ հայիս 'ի վեր: Սա ուրեմն հայեցեալ աղջիկն 'ի վեր՝ և բացեալ զբերան իւր՝ և ասէ, փափլահօմ[30]), դու ես 'ի վեր հայի՛ր. Ի անգամ ասաց զայն բանն: Իսկ Շահըն 'ի միտս իւր պահեաց զբանս աղջկանն. և յորժամ վճարեաց զուրախութիւնն իւր, հրամայեաց մէն մի երես ծածկոց արկանել 'ի գլուխս կանանցն, այսինքն՝ ռօհփակ, և մէն մի գըտակ աղայոցն, և արձակեաց զնոսա: Նա ինքն գնաց 'ի տեղի իւր. և կոչեաց զաղջի՛կն որ խօսեցաւ զբանն ընդ ինքեան և համբուրեաց զնա՝ և ասէ, ա՞հ դու իմ դուստր՝ որպէս խօսք էր զայն՝ զոր դու ասայեր յերեսս իմ: Ասէ աղջիկն, հա՛յր իմ Շահ, ես աղախին քո եմ. ահա Ի ամ է՝ զի ասացեալ են զիս երիտասարդի միոյ, և բնաւ յերես մարդոյ ոչ եմ հայեցեալ և ոչ խօսեցեալ բնաւ, և ոչ 'ի տանէ մերոյ ելեալ արտաքս մինչև ցայսօր. որ պատառեցաւ քօղ երեսաց իմոց: Պարտ էր ինձ մտանել 'ի հող, քան տեսանել երես մարդոյ: Ասէ Շահն, բազումք ցանկան տեսանել զերես Թագաւորի՝ և

(30) Ո՛վ Թագաւոր:

ոչ կարեն. և դու տեսանես և խոկաս։ Նաև աղջիկն, եթէ տեսանել զերեսս ռամիկ մարդոյ ամօթ է, ո՞րչափ ևս առաւել զերես մեծ թագաւորի՝ ամօթ իցէ։ Նա ապա Շահն զարդարեաց զաղջիկն, և ասաց առնել զհարսանիսն. և զնա զքաղաքըն ևս նմա արքունական ՙՌօմոսի, զի յորդւոց որդիս լիցի նմա մինչև յաւիտեան, և է այնպէս, աւագ զատեր բաժին տան. և ոչ այլ ոք իշխէ այնմ գիւղաքաղաքի, բայց աւագ դուստրն. և անուն Գդ-շահրէ, որ է աղջկանց քաղաք, և մերձ Միանայ։

## ԳԼՈՒԽ Ի.

### Վասն Գոզալայ անուան կնոջ և գործոյ նորա։

Ի ժամանակին՝ յորում քշեաց զերկիրս Շահն և տարաւ 'ի Պարսկաստան, ընդ նոսին քշեաց և Աստապատ գիւղ։ Եւ էր յԱստապատ գեղջէն կին մի գեղեցիկ, լայնաձակատ, յունակից, բազմահեր, այլ և խաղացող և գովիչ։ Սա 'ի մեռանել առն իւրոյ, այլ ոչ ևս եղև առնակին. և բնակէր յԱսպահան քաղաք։ Եւ եղև՝ զի շրջէր Շահն 'ի Ջուղայ. և ահա ամենայն տնարգել կանայք ելանէին 'ի տանց իւրեանց զբօսնուլ և տեսանել զՇահն. եւ և կինն այն՝ որոյ անունն էր Գոզալ։ Իսկ Շահն ակնածէր յայսկոյս և յայնկոյս, հայէր ընդ կանայսն. և 'ի հայելն ետես զԳոզալն, և զտեղի եառ անդէն. և առաքեաց ներքինի մի՝ տեսանել զնա և հարցանել զո՛ւստն և զո՛վն. և գնացեալ ներքինին տեղեկացաւ ամենայնի։ Եւ եկեալ պատմեաց Շահին։ Իսկ Շահն առաքեաց առ աւագն Ջուղայու՝ և ասէ, այս անուն կին դիք ընդ ներքինւոյդ և առաքեցէ՛ք զալ առ իս։ Եւ եկեալ ներքինեացն՝ և թէ՛ կամայ թէ՛ ակամայ առեալ տարան զնա առ Շահն։ Եւ Շահն տեսեալ զնա՝ որպէս խելագար ապուշ մնաց. և սիրեաց զնա առաւել քան զչափն՝ և թէ ուրեք գնայր, տանէր ընդ ինքեան. և թէ բազմէր յընթրիս, 'ի վերայ ծնկաց իւրոց նստուցանէր. և սիրէր և գրկէր զնա։ Եւ

յորժամ ելեալ խաղայր՝ և տանէր երգս պարուցն՝ և շարժէր զմէջսն՝ և ծնծայր, և Շահէն խնդայր և ուրախանայր 'ի տեսանելն զնա։ Իսկ կացեալ այնպէս ժամանակս բազումս, բայց ոչ երկմտեցաւ 'ի հաւատոյն, և ոչ Շահէն ասաց ինչ վասն հաւատոյն. և կայր նա այնպէս 'ի հաւատս քրիստոնէութեան. երբեմն երբեմն գնայր յեկեղեցին և աղօթէր. և ո՛չ ոք ասէր ինչ նմա։ Իսկ եղև՝ զի Շահէն գնաց 'ի Բաղդատ առնուլ զնա. ոչ տարաւ զԳօզալն ընդ իւր 'ի Բաղդատ, այլ մնաց յԱսպահան։ Իսկ յետ սակաւ աւուրց յիշեաց Գօզալն զահեղ դատաստանըն Աստուծոյ. զմտաւ էած և զմեղս իւր. և զգեցաւ զգեստ միայնակեցի, և եղև 'ի կարգի հաւատաւոր կանանցն. և եմուտ 'ի վանս կուսանաց և ապաշաւէր զմեղս իւր ապաշխարութեամբ, բազում արտասուօք քաւէր զմեղս իւր։ Իսկ եղև՝ զի Շահէն էառ զԲաղդատ և դարձաւ յԱսպահան։ Իսկ յաւուր միում Շահէն ելեալ 'ի ձի՛ և Բ շաթրաւ երթայր 'ի մէջ քաղաքին. և յանկարծ պատահեցաւ նմա Գօզալն սևաւ զգեստիւն, և ծանեաւ զնա Շահէն՝ և ասէ, ո՛վ բոզ՝ մի թէ դու չիցե՞ս Գօզալն։ Ասէ Գօզալ, ես եմ սևերես և մեղաւոր աղախին քո։ Ասէ Շահէն, զի՞նչ ձև է զայդ՝ որ զգեցեալ ես։ Ասէ Գօզալն, յիշեցի զօր դատաստանին Աստուծոյ, և զմտաւ ածի զմեղս իմ, և զգեցայ զսևաւս զայս, զի թերևս գտից ներումն յանցանաց իմոց։ Իսկ Շահէն լռեաց պահ մի. և ապա տարածեաց զձեռս իւր յերկինս՝ և ասէ, ո՛վ Տէր Աստուած, և դու արժանի արասցես զմեզ հաւատոց. և զայս ասացեալ՝ անցեալ գնաց։ Իսկ իբրև հեռացաւ քայլընկէց մի, զտեղի էառ, և կոչեաց առ ինքն զԳօզալն՝ և ասէ, ո՞ւր բնակիս դու։ Ասէ Գեօզալն, 'ի մէջ Ջուղայու բազում են կանայք սևազգեստ իբրև զիս, անդ լինիմ ես ևս ընդ նոսա։ Ասէ Շահէն, ուստի՞ կերակրիք։ Ասէ Գօզալն. քումդ (ի Վըռ) փօլ-ա-ըէ[31]). և զոր ինչ Աստուած պար-

(31) ի Տէրութենէ.

գեւէ՝ նոխազաւ շատանանակք։ Եւ ապա թողեալ զմի փայլեկն առ նմա՝ ասէ. դու ընդ շաթրիդ առ սակաւ սակաւ եկեսցես առ մեզ. և ինքն մի շաթրաւն գնաց. իսկ Գռօզայն գնայր լալով և կականելով, և կարծէր թէ վասն չար գործոց կոչէ զնա. երթայր բազում մտածութեամբ, և եհաս յարքունիսն. և ետես զի նստեալ կայր Շահն աթոռով, և գնաց մօտ առ նա՝ և համբուրեաց զոտնս։ Ասէ Շահն, տաց քեզ թուղթ ազատութեան, զի մի՛ ոք նենգ ինչ գործեսցէ ընդ քեզ. և կոչեաց զծառայն՝ և ասէ, գրեա՛ այսպէս. ,,Ես Շահ-Աբաս ետու գիր ազատութեան Գռօզայ անուն կնոջ. զի ուր և իցէ՝ պաշտեսցէ զհաւատն քրիստոնէից. և մի՛ ոք լիցի հակառակ դմա վասն հաւատոյն. զի դա քրիստոնեայ է։ Եթէ Տաճիկ ոք ասէ դմա տաճիկ, ինքն ոչ է տաճիկ. և թէ քրիստոնեայք ասեն դմա տաճիկ, ինքեանք լիցին տաճիկ։ ,, Զայս գրեալ կնքեաց և ետ ցնա։ Եւ կոչեաց զգանձապահն՝ և ասէ, բե՛ր Ճ. ոսկի՛ և տո՛ւր դմա. և ասէ, այդ քեզ մխիթարոյ ծախս վասն հանդերձից։ Եւ ասէ ցխոհազործսն, ձ. լիտր բրինձ, Ե. լիտր իւղ, Գ. բեռն ցորեան առաքեցէք անդ՝ ուր և դա իցէ. և արարին որպէս և հրամայեաց։ Եւ որքան Շահ-Աբասն կենդանի էր, մնաց Գռօզայն յԱսպահան. և յորժամ Շահ-Սաֆին եղև թագաւոր, դարձաւ Գռօզայն՝ և եկն յԱստապատ։ Եւ յաւուր միում պատահի նմա Զաքարիա վարդապետն Վաղարշապատցի, այն՝ որ եղև առաջնորդ Յովհաննու վանից, և էր նախածանօթ Գռօզային. և ասէ ցնա վարդապետն՝ Պարսիկ բարբառով, ծափար, չի տունէ չի հալտարի։ Ասէ Գռօզայն, շուքրի խուտայ, հալըմ-ճուպէ. խուտայա տէվլէթէտ հէմիշէ նիսպարատ։ Ասէ վարդապետն, ինչու։ Ասէ Գռօզայն. մի գօյանէ՞քիլիսա՛ ուրանիկ։ Որ թարգմանի Հայերէն այսպէս. Մա՛յր որպէս կաս, զի՞նչ առնես։ Պատասխանի. փառք Աստուծոյ՝ բարւոք կամ. բայց քահանայքն ոչ տան հաղորդ՝ Հարց. ընդէ՞ր ոչ տան։ Պատասխան. ասեն՝ թէ դու ուրացեալ ես։ Եւ բարկացեալ վարդապետն քահանայիցն, և ի վաղիւն

հրամայեաց փոքրագոյն Աբեղայի միում Յակոբ անուն, որ և եղև Առաջնորդ Աստապատու վանիցն, առնել պատարագ. և կանգնեցոյց զԳօղայն առաջի բեմին. և ապա յաւարտ պատարագին՝ քարոզ ասաց վարդապետն վասն դարձելոց. և զըլուխ բանին այս էր. «Ոչ թէ դարձցի մեղաւորն 'ի մեղաց իւրոց, կենօք կեցցէ»։ Եւ հաղորդեաց զնա։ Եւ կացեալ Քրիստոսի հաւատովն՝ և ապաշխարեալ զմեղս, և հանգեաւ մահուամբ. և եղաւ 'ի գերեզմանի պոռնիկն արդարացեալ՝ շնորհօքն Քրիստոսի օրհնելոյն յաւիտեանս, ամէն։

## ԳԼՈՒԽ ԻԸ.

### Վասն կօշկաց դրամին առնելոյ։

Յուցից և՛ զՀնարագիտութիւն Շահին, և զմարդաշահութիւն նորուն։ Քանզի մինչ էր նա 'ի Բաղդատ, և յամեցաւ անդ, զի զժուարաւ էառ զնա, և պակասեցաւ դրամ բանակին, և առևտուր զօրացն հատաւ, զի ոչ գոյր դրամ՝ զի զընեսցեն, և վաճառեսցեն, և գտցեն զկարևոր պէտս իւրեանց։ Վասնորոյ բողոքեցին առ Շահն՝ ասելով, կամ տուր սպայիցս ռոճիկ, կամ թող զգործ պատերազմիդ, և գնասցուք 'ի տեղիս մեր, և անդ վաստակօք մերովք կեցուցանեսցուք զմեզ։ Իսկ Շահն անճարակ եղեալ շուարեցաւ։ Եւ ապա խորհեցաւ այս ինչ. զի կոչեաց զկաշեայ գործսն (կաշեգործ)՝ որ է՝ դաբաղ, և ասաց գործել բազում սպիտակ կաշի. և ետ բերել զկօշկակարսն, զի մանրեսցեն զկաշիսն՝ միաչափ, բոլորաձև որպէս դրամ պղնձի։ Եւ ետ շինել զերկուս կնիքս երկաթեայ, և գրել 'ի վերայ միոյն անուն Շահին, և միւսոյն՝ անուն Բաղդատայ. և ամրացոյց զմինն 'ի վերայ սալ փայտի, և արկանէին 'ի վերայ նորա զփողն կաշեայ, և զմիւս կնիքն 'ի վերայ փողոյն, և կռանաւ հարկանէին 'ի վերայ կնքոյն. և այնպէս ներքին և վերին կնի-

քըն տապէին զգիրն 'ի վերայ կաշուոյն. և տապեցին անթիւ և անհամար դրամս. և անուանեցին դանկ, և Հայերէն դեկան, և Եբրայեցերէն լոմայ: Նա կոչեաց զգլխաւորս զօրուն՝ զհազարապետս և զհարիւրապետս, և ետ 'ի նոսա զդրամսն՝ և ասէ, և բաժանեցէք զօրացդ, որքան տաս եմք՝ վաճառեսցեն և գնեսցեն. և յորժամ գնամք յԱսպահան, բերեալ տուք ինձ զկաշեայ փողըն՝ թուղթ. և նոյն թուղթն առէք յինէն պղնձէ փող: Նա արարին այնպէս, և եղև առատութիւն զօրացն՝ մինչև որ էառ զԲաղդատ: (Ի)ՌՃԳ թուին դարձաւ և գնաց յԱսպահան, և արար որպէս և ասաց:

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Օրէնք Շահին կանոնաց:

Լուարո՞ւք և զայս, զի ազգն Պարսից վասն վաւաշոտ և բորբոլիտ ցանկութեան իւրեանց՝ շնան ընդ որս որ կարողանան անխտիր. բայց եթէ ոք ընդ կանայս նոցա հայի, մեղք է՝ ասեն, և ամօթ և նախատինք ևս: Թէ ոք մեծաց 'ի նոցանէ գնայ ուրեք կնաւ իւրով, և հրամայէ պնդապահս առնել 'ի ճանապարհին, այսինքն՝ ղուրուղչեայ[32]), զի մի՛ ոք երևեսցի՝ մինչև անցանի կին իւր: Այսպէս առնէր և թագաւորն Շահ-Աբաս. զի յորժամ կամէր շրջել կանամբ և հարճիւ, յառաջագոյն ղուրուղչեայ առնէր՝ ոչ երևիլ ոք արանց. և հրամայէր զարդարել զփողոցս քաղաքին, զպողոտայսն, զխանութսն, և զամենայն անցս գնացից նոցա. զի յանցանելն տեսցեն և ուրախասցին: Այսպէս առնէր և յայգիս և յանդաստանս՝ ուր և գնալոց էր: Նա յաւուր միում ելեալ արտաքոյ քաղաքին՝ յանդաստանս՝ ամենայն հարճիւն, և զբօսնոյր. Երէց մի այրի 'ի Ջուղայոյ՝

(32) Մունետիկ քարոզ:

դրուժ ասէին Չէ՛ Տէր Սանփանինոս. սա եղանէր երբեմն երբեմն արտաքս 'ի քաղաքէն, շրջէր սաղմոսելով միայն։ Յաւուր միում եւս գնացեալ երէցն՝ և շրջէր, և տեսանէր 'ի Հեռաստանէ զյատակ մի, զի մեղմով գայլին։ Իսկ իբրև Հուպ եղև սակաւ մի, և ետես բազմութիւն կանանց, և ապա ծանեաւ լինել Ռահին. և ահ և դողումն կալաւ զերէցն, և Հաստատեաց 'ի սրտի իւրում զմահ իւր։ Իսկ անձնարեալ ոչ գիտէր զի՞նչ արասցէ, զի աՀա՛ մեռանիմ. վասնորոյ էարկ զաղաղաբողոնն 'ի վերայ գլխոյն՝ և անկեալ յերկիր և դողայր։ Իսկ աՀա՛ եկեալ Ռահն կանամբք՝ կանգնեցաւ 'ի վերայ նորա՝ և ասէ, ո՞վ ես, ե՞ր։ Իսկ նա ոչ կարաց խօսիլ։ Ասէ դարձեալ Ռահն, Ո՞վ ես՝ թէ Թուրք՝ ե՞ր։ Իսկ ասէ, Հայ եմ և Երէց, երկնչիմ ի սպանանելոյ. վասնորոյ ոչ յառնեմ։ Ասէ Ռահն, մի՛ երկնչիր, զի ոչ լինի քեզ վնաս։ Իսկ ապա ելեալ երէցն դողալով, և 'ի վերայ ծնկացն գնաց և համբուրեաց զոտս Ռահին։ Ասէ Ռահն, ասա զի՞նչ առնես։ Ասէ երէցն, այրի եմ, շրջիմ աստ աղօթելով վասն կենաց և արևշատութեան Ռահին։ Ասէ Ռահն, վասնզի այրի ես, ա՞ռ յայսմ կանանցս՝ որոց և Հաւանիս։ Ասէ երէցն, զոքա իմ մայր՝ և քոյր՝ և դստերք են։ Ասէ Ռահն, քո մայր և քոյրն և դստերքն՝ այսպէս և այնպէս առնեմ։ Իսկ ապա Հրամայեաց տալ նմա զինի մեծ պնակիւ, զոր ինքեանք. . . ասեն, լցեալ զայն՝ ետ երէցն՝ և ասէ, ա՛րբ զայդ։ Ասէ երէցն դողալով, շատ է, ոչ կարեմ զամենն ըմպել։ Ասէ, արբ զամենն 'ի մի շնչոյ։ Զայս արար փորձելով, զի տեսցէ՝ եթէ որպէս զառաջինն խօսի՝ թէ ոչ։ Դարձեալ ասէ Ռահն, ա՛ռ քեզ զմի 'ի կանանցս, զի իմ կամաւ տամ՝ քեզ։ Դարձեալ զնոյն ասէր երէցն։ Իսկ շատ խօսեցաւ ընդ նմա Ռահն՝ Հարցանէր և լսէր. և իմացաւ զնեղութիւն երիցուն՝ և ասէ, [illegible][53]). և ապա ետ նմա կնքեալ թուղթ մի՝ և ասէ. 'ի ձեռաց պահեա, զի յետին

(53) Թուղթ նշանագրեալ կեցցե՛ս կրօնաւոր։

եկող՝ ներքինիքն ոչ խօսիցին. և ասէ, դուա էյլայ հօճէ[34]). և անցեալ գնացին. և ո՛վ որ եւս զթուղթն, ոչինչ ասացին նմա: Իսկ յաւուր միում առաջի Գ՝ուզայու խօճանցն[35]) յի-շեաց Շ՝ահն զներքինութիւն իւրեանն: Իսկ խօճայքն ճշմար-տեցին, թէ յիրաւի այդպէս է, որպէս հրամանքդ ասացեր:

## ԳԼՈՒԽ ԻԳ.

### Սպանումն որդւոյն իւրոյ:

Անդադար և չարանախանձ աքքայն և խորամանկն Շ՝ահ-Աբաս՝ կարի վրէժխնդիր լինէր այնոցիկ՝ որք վասն իւր և կամ հնազանդելոց նորուն ասէին ապիրատ ինչ. եթէ մեծ ինչ լսէր, չարամահ առնէր զնոսա, որպէս և է իսկ տեսանել առ որդին իւր: Յաւուր միում՝ մեծամեծքն ժողովեցան 'ի միում տե-ղւոջ, ընդ նմին և որդի Շ՝ահին՝ որոյ անունն էր Սաֆի-Միրզայ, և խօսէին զբանս 'ի Շ՝ահի կողմանէ: Իսկ 'ի կարգ զրուցացն ասացին, մինչև երբ ծառայեմք մեք այս սեաւ իշոյս. եկա՛յք՝ սպանցո՛ւք զսա, և զորդիս այս Սաֆի-Միրզայ դիցո՛ւք 'ի տեղի նորա: Ասացին և որդւոյն զբանն. և հաճեցաւ նա զբանն: Իսկ էր գլուխ նոցա Գ՝անի Խանն. և եդին պայման զօ-րըն զայն՝ յորում սպանանելոց էին: Իսկ պատահեցան անդ 'ի հաւատարմաց Շ՝ահին, և գնացեալ պատմեցին նմա: Իսկ յոր-ժամ լուաւ զայս Շ՝ահն, սաստկացաւ, և 'ի բարկութենէն դա-դայր, և ոչ կարէր խօսիլ. և լռեաց վայր մի. և ապա առա-քեաց զնոյն այր՝ որ պատմեաց նմա՝ զպատանութիւն իւր, և ասէ, երթ և լռելեայն կոչեա՛ զՍաֆի-Միրզայն՝ գալ առ իս: Իսկ իբ-րև եկն առ հայրն՝ խնդալով, եհարց զնա Շ՝ահն՝ և ասէ,

(34) Աղօթս արա՛ կրօնաւո՛ր

(35) Տէր. իշխան. 2) դատաւոր, 3) վաճառական. 4) ծեր. ևլն

այսօր ո՞ւր էիր, զի ո՛չ եկիր առ իս: Ասէ որդին, չի՛ք իմ գնացեալ ուրեք: Ասէ Շահն, ո՞չ ապաքէն ես անդ էի, յորժամ Գանի-խանն և այլքն արարին զքեզ Թագաւոր, և դու խնդութեամբ յօժարացար. և նա լռեցաւ, և ո՛չ կարաց խօսիլ: Ածին անդ դահիճք, և հրամայեաց նոցա հատանել զգլուխ նորա, և դնել ուրոյն սկուտեղը, և զմարմինն ընկենուլ 'ի խոտափիտ: Նոյնպէս և առաքեաց զնոյն այր առ Գանի-խանն զանխլաբար, և կոչեաց զնա, և եկն: Ասէ Շահն, զի՞նչ էր ժողովումն ձեր յայս ինչ յարկ, և կամ զի՞նչ խօսակցութիւն ձեր: Ասէ խանն, մեք ինչ ո՛չ խօսեցաք: Ասէ Շահն, թագաւորեցուցէք զՍաֆի-Միրզայն 'ի վերայ ձեր: Եւ լռեցաւ խանն: Եւ ետ բերել զգլուխ որդւոյն, և ասէ, ահա՛ թագաւոր ձեր, տես և ուրախ լե՛ր. և հրամայեաց և զնա ևս գլխատել: Նոյնպէս արար առ ամենեսին, որք խորհեցան զմահ նորա՝ աւելի քան զԺԵ այր, որ 'ի նոյնում աւուր կոտորեաց զամենայն յանդիմանելոյ ումեքէ. և այսպէս կորոյս ամենայն չարայոյզքն իւր:

## ԳԼՈՒԽ ԽԳ.

### Մահ Շահ-Աբաս Բռնաւորին:

Թէպէտ և բազում ունէր աշխարհ և քաղաք Թագաւորն Շահ-Աբաս, այլ նա քան զամենայն երկիր առաւել սիրեաց զՖահրապատ և զքաղաքն Աշրաֆ. և յորժամ պարապէր՝ 'ի պատերազմէ, երթայր յԱշրաֆ, և անդ հանգստանայր. և լինէր անդ: Եւ եղև յետ առման քաղաքին Բաղդատայ, եկեալ յԱսպահան, բայց ո՛չ յամեաց անդ, այլ գնաց 'ի Ֆահրապատ՝ ի քաղաքն Աշրաֆ, և տկարացաւ նա 'ի ցաւ մահու. և գիտաց՝ զի մահ իւր է այն տկարութիւն, և ո՛չ ևս է յառնելոց նա անտի. և կոչեաց առ ինքն զթոռն իւր, որ էր որդի Սա-

ֆի - Միրզային, որ և անուն սորա Սաֆի, ընդ նմին և Ինջիմալ փօլատաննէն[36]), որոյ անուն Սարուխթաղի, և զՍաֆի - Խանն՝ որ էր իշխան Բաղդատայ, և յայնմ ժամանակին էր եկեալ 'ի տե-սութիւն Շահին, և անդ էր։ Նա առաջի նոցա կոչեաց զԹո-ռըն իւր՝ և ասէ, որդեա՛կ՝ ես զհայր քո սիրեցի, զի լեցի նա 'ի տեղի իմ Թագաւոր։ Իսկ նա կամէր սրոյ մահուամբ մահացու-ցանել զիս. վասնորոյ ինքն ընկալաւ զմահն զայն, և դու եղեր ժառանգ Թագաւորութեանս. լո՛ւր՝ զոր ինչ ասեմ՝ անսա՛ ինձ՝ մինչև մեռանիմ, և դու գնա՛ յԱսպահան, և անդ Թագաւո-րեա՛. բայց զայնոքիկ՝ որք հրամանաւ իմով իշխանք են և գործակալք, զնոսա բա՛րձ 'ի միջոյ, զի մի՛ նենգ ինչ գործեսցեն քեզ։ Նա զՍաֆի Խանս այս առաքեա՛ 'ի տե՛ղի իւր՝ գնալ 'ի Բաղդատ. և Սարուխթաղիս այս լինի քեզ դաստիարակ և խրա-տատու. և զոր ինչ սա ասէ, դու լո՛ւր սմա։ Զայսքան բանս ասաց. և յետ աւուրց մեռաւ 'ի Թուին ՌՀԸ՝ Թագաւո-րեալ ամս Ծ։

## ԳԼՈՒԽ ԻԵ.

### Թագաւորութիւն Շահ-Սաֆոյն։

Ժամանակ է ասելոյ վասն այս Սաֆի Թագաւորիս։ Քանզի յետ Խ աւուր մահուան Շահ-Աբասին՝ գնաց Սաֆի Թոռն նորա յԱսպահան ընդ Սարուխթաղի Ինջիմալ փօլատաննէն, և ընդ Սաֆի - Խանին, և եղև նա անդ Թագաւոր. և աւուրս Գ՝ մունետիկն՝ որ է ջառչի, գոչէր՝ Թէ՝ ահա՛ եղև Թագաւոր Շահ - Սաֆի, ամենեքեան լուարո՛ւք և զգոյշ լերո՛ւք, և էր ԳԺ ամաց Շահ - Սաֆին 'ի Թագաւորելն իւրում։ Զի Թէ-պէտ տղայ էր աւուրբք, սակայն կատարեալ էր գիտութեամբ.

(36) Արքունական խնամակալ. հոգաբարձու։

և էր կարի խելօք և քաղցրախօսք. և զոր ինչ և ասէր՝ հաճոյ լինէր լսօղացն; և ոչ ոք պախարակէր զնա 'ի մտի իւրում. զի ոչ ումեք լինէր դժուարութիւն վասն նորուն ասացելոյն. վասնորոյ սիրէին զնա վասն խելօքութեան նորա։ Եւ յաւուր միում առեալ ընդ իւր զՍաֆի խանն, և եմուտ 'ի բուրաստանն. և 'ի մտի ունէր զասացեալսն հաւրն իւրոյ Շահ-Աբասին։ Եւ հայեցեալ 'ի ծառն ճանապարհ՝ որ է գինարի, և ասէ, կարի երկայնացեալ են սոքա, և լայնացեալ, հատանել պարտ է զսոսա, և տնկել նոր տունկս, զի աճեսցին բարուոք։ Եւ Սաֆի խանն իմացաւ զխորհուրդ բանին, զի զպատուիրան Շահ-Աբասին կամէր կատարել։ Եւ ասէ Սաֆի խանն, այո՞ արքայ բարուոք ասացեր, արա որպէս ասացեր. և անկեալ 'ի ծունկս՝ կորացոյց զպարանոցն՝ և ասէ, ծառայ քո եմ, նախ զիս հատ։ Ասէ Շահն, դու չես հատանելոյ ծառ, գնա՛ 'ի տեղին քո. և ապա հանեալ զԹուրն, և Գ. անգամ կարկառեաց 'ի վերայ պարանոցին, և ոչ մերձեցոյց 'ի նա. ասէ, համարեա՛ զքեզ հատեալ. և եդ զԹուրն 'ի պատեան իւր։ Իսկ Սաֆին ելեալ համբուրեաց զոտըս Շահին։ Եւ ապա՝ մի մի կոչեաց զամենայն մեծամեծսն, և կոտորեաց զամենայն աւագանին, և զգործակալս՝ մինչև աւելածուն և զաղքահանն, և զհաւատարմն։ Եւ այնպէս սպառեաց զամենայն իշխանսն։ Նախ Գօտի-ջաղչին, և այլքն որպէս ասացաք։ Եւ նորա հօրաքոյր մի՝ դուստր Շահ-Աբասին։ Գոյին նմա երկու որդիք, որք տրտնջեցին զՇահէն, թէ զի՞նչ առնէ այս խելագարս, զի սպառեաց զզօրս արեաց ազգիս։ Լըւեալ զայս Օսմանցւոցն՝ և եկեալ՝ զաշխարհս մեր առեր առնեն, ո՞ կարէ կալ ընդ դէմ նոցա. զի ամենայն արք պատերազմի ջնջեաց անմիտ Շահս այս։ Եւ եկեալ ծանուցին զայս Շահին։ Եւ զաղտ 'ի մօրէն առաքեաց՝ և բերին զգլուխս երկուց եղբարցն, և Թագուցին։ ԵրԹայք՝ ասէ,. և կոչեցէք զմայր դոցա՝ գալ առ իս, և մի՛ ինչ ասիցէք վասն որդւոցն։ Եւ իբրև եկն՝ և բազմեցաւ, ասէ Շահն, Գ.իծի՞, ուտե՞ս ես ի Թշնա-

միս. արդ զի՞նչ արարից ընդ նոսա։ Ասէ հօրաքոյրն, Թշնամիք քո եղիցին 'ի կորուստ, որպէս և եղեն այլքն։ Ասէ Շահն, ահա դան նոքա առաջի քո, և տես զնոսա աչօք քո։ Եւ հրամայեաց բերել զգլուխ որդւոց նորա սկտեղը, և դնել առաջի մօրն. և ասէ, ահա Թշնամիք իմ դոքա են։ Եւ իբրև ետես զգլուխս որդւոցն, ճիչ բարձեալ բարկութեամբ, և ելեալ բուռն եհար ի շրթանց Շահին, և խոցեալ վիրաւորեաց։ Եւ ըստ մայրական գթոյն՝ աղաղակէր լալով, և ասէր, արիւն հեղցի 'ի բերանոյդ, դոքա զիա՞րդ էին քեզ Թշնամիք, որ դու լափեցեր զարիւն զայդ։ Վասնորոյ բարկացեալ Շահն, և հրամայեաց մերկացուցանել զնա իբրև 'ի մօրէ, և արկանել զխիվայր յաղբանոցն։ Եւ այսպէս ահ նորա անկաւ 'ի վերայ ամենայն ումեք։ Վասնորոյ գովիչքն Պարսից ողբս լալականս երգեցին վասն կորստեան իշխանացն։ Իսկ Շահն կարգեաց այլս 'ի տեղի սպանելոցն. և կայր ահարկութեամբ Թագաւորեալ 'ի վերայ ամենայն արեաց աշխարհին։

## ԳԼՈՒԽ ԻԶ.

### Թագաւորութիւն որդւոյ Շահ-Աբասին։

Մեծ Թագաւորն Պարսից Շահ-Աբաս՝ բազում որդիս ունէր յայլ և այլ կանանց. որք ետուն 'ի պահ սատ և անդսնուցանել, բայց ոչ յայտնել ինքեանց որդի լինել Թագաւորի։ Սակայն մի յորդւոց նորա յայտնեցաւ (առ) Թագաւորութեամբն Շահ-Սաֆոյ, որոյ ասէին Խաբայ. Թէ՛ զգուանօք, և Թէ ուղղական անուամբ Շահ-Խաբայ ասէին։ Սա ժողովեաց սակաւ զօրս 'ի վերայ իւր։ Եւ առաքեաց հրեշտակս առ Շահ Սաֆին՝ և ասէ, դու քեզէն արա՛ դատաստան. ահա ես որդի եմ Շահ-Աբասին, և (դու) Թոռն ես նորա. և հայր քո մեռեալ է

առաջի Հօր իմոյ. և օրէնքն ոչ հրամայեն դադամահրումին[37]) տալ յընչից հօր. և ահա դու բռնութեամբ ես տիրեալ թագաւորութեանդ՝ և ոչ օրինօք. վասնորոյ 'ի բաց տո՛ւր զթագաւորութիւնդ, և նիստ 'ի տեղի ուրեք լռիկ. զի թէ ոչ լսես, վնաս մեծ լինի ազգիս Պարսից. ահա՛ ասացի ստուգութեամբ, և դու խորհեա՛ զօգուտն։ Իսկ Շահն դարձոյց զպատգամաւորսն՝ ասելով , ես ոչ որդի եմ Շահ-Աբասին, ոչ թոռն և ոչ բնաւ յազգէ Շահ-օղլուն. և ստացայ զթագաւորութիւնս իմով զօրութեամբ. և ահա՛ կամ և իշխեմ սմա. արդ՝ թէ դու Շահզադայ[38]) ես, եկ և նիստ 'ի տեղի Հօր քում. ապա թէ օտար ես, 'ի հեռաստանէ մի՛ լինիր վայրախօս. ահա՛ և դու ընկա՛լ՝ զոր լուար։ Իսկ Բաբայն յուսացեալ 'ի սակաւ զօրս իւր, և կարծէր՝ եթէ նոքօք մարթասցի առնել զի՛նչ և կամի։ Ապա առաքեաց արս սակաւս 'ի գեղօրայս, և յափշտակեցին յանասնոց գեղօրէից։ Ապա առաքեաց դարձեալ առ Շահն՝ և ասէ, տեսեր՝ զի ահա՛ կողոպտել ետու զերկիրն քո՝ զօրաց իմոց։ Այսպէս առնելոց եմ և զտեղիդ՝ զոր և դու նստեալ ես՝ մնոտի յուսով ։ Ապա եկեալ պատմեցին Շահին, զոր գնացեալ էին լրտեսել , և ասեն, պակաս են արքն նորա քան զՌ. և ոչ են Ղզլբաշք, այլ Օզպէկ, Գիլաք, և Վ.յալթ. և ահա՛ են մերձ 'ի թախտ Ռուստամին։ Ապա բարկացեալ Շահն՝ հրամայեաց իշխանի միոյ՝ առնուլ ընդ իւր արս Ռ՝ և գնալ մարտնչել ընդ նմա. և թէ պատահիցիք Շահ-զատային, կալջիք զնա, և ընդ ձեզ բերջի՛ք։ Իբրև տեսին զօրք Շահ-զատային զզօրս Շահին, փախեան. և նոքա արարին զնոսա հալածականս։ Ապա գնացեալ հասին 'ի տեղին՝ ուր Շահ-զատէն կայր վրանօք նըրտեալ անպատրաստ. և յարեան 'ի վերայ նորա, և կալեալ տարան ընդ ինքեանս առ Շահն։ Ապա հրամայեաց դնել շըղ-

(37) Դատազուրկին, կամ զրկելոյ յիրաւանց։

(38) Շահորդի, արքայորդի։

*թայ յոտս նորա՝ և տանել յԱնուշ (յԱնյուշ) կոչեցեալ Բերդ. զոր ինքեանք Գախայ-Գալայ ասեն. և այսպէս եղև վախճան իրացն։*

## ԳԼՈՒԽ ԻԱ.

### Ծանուցումն համառօտ։

*Այն ինչ՝ զորս գրեցաք՝ սկսեալ 'ի Ջահան-Շահէ մինչև 'ի Շահ-Սաֆին, համառօտ ծանուցմամբ՝ զոր ինչ գտաք՝ յայտ արարաք։ Այժմ տասցուք սակս Արարատեան աշխարհիս դիպուածք և պատահմունք՝ սկսեալ 'ի Շահ-Սաֆիէ թագաւորէն մինչև ցՇահ Հիւսէյին թագաւոր, յԱմիրգունայ խանէն մինչև ցՖարզալի խան. որք տիրեցին տանս Երևանայ. 'ի նոցունց ժամանակաց եղեալսն 'ի գիր արկից աստ՝ յուշ առնելով այնոցիկ՝ որք զկնի մեր գալոցեն։ Թէև թէ յայլում աշխարհէ գիտեմք ինչ, զայն ևս գրեմք. զորս լուեալ եմք, և զորս տեսեալ, զնոյնս շարադրեմք։ Վասնորոյ աղաչեմ՝ մի՛ պախարակէք։ Այլ և զոր ինչ և դուք գիտէք, դուք ևս գրեցէ՛ք՝ և զիմս ևս ընկալարուք զսեաւն, և շարադրեցէք ըստ գեղեցկագունիցն կարգի։ Վասնզի այս է կարն իմ։*

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Վասն Ամիրգունայ խանին։

*Յորժամ էառ զԵրևան Շահ-Աբաս թագաւորն Պարսից, կարգեաց անդ իշխօղ զԱմիրգունայ խանն, այր քաջ՝ և սրտապինդ՝ և արի 'ի պատերազմունս, անահ և աներկիւղ, շինարար և սիրող քրիստոնէից։ Սա 'ի տիրելն իւրում Երևանայ, իսկոյն ձեռն էարկ շինութեան և մարդաշատութեան։ Նախ ըսկ-*

սաւ շինել զբերդն, և ապա ապարանս, և դղեակս, և զբու-րաստանս, և զպարտէզս, և հանել զառուս, և առաւելուլ զջուրսն։ Այլ և խս եղխս տեղիս թեթևացոյց զհարկն, և ե-բարձ զծանր լուծ 'ի պարանոցէ ռամկաց։ Բայց զի բազմացոյց զ--խրայն՝ այսինքն կռոն. քանզի որպէս ասացաք՝ թէ շէն-ուածս առնէր. վասն այնորիկ բազմացոյց զկռոն։ Վանորոյ առասպելեցին, թէ կին յղի գոլով այր նորա տանէին կռո, և ոչ թողուին գնալ 'ի տուն իւր. և կինն ծնանէր որդի և զար-գանայր, և առաքէին զնա՝ կռոն, զի հայրն երթիցէ 'ի տունն։ Զայս առասպելս վասն բազմութեան կռոնաստացին։ Զի թէպէտ բազում էր կռոն, սակայն Խանն տայր զհաց մշակացն կռոին. վասնզի ողորմասիրտ էր. բազում հաց եփեալ, և բառնայր ձիոց, և առեալ գնայր, շրջէր յանդաստանսն, և բաժանէր զհաց՝ որք վաստակէին յանդս։ Վանորոյ (աշխին[39]) զերդս գո-վասանութեան ասացին վասն առատաձեռն լինելոյն։ Եւ այս-պէս կացեալ՝ շինուածս առնելով յերկրին։ Մինչ ինքն կեն-դանի էր, սա բազում քաջութիւնք արար ընդ դէմ Օսման-ցւոցն։ Քանզի Բ անգամ գնաց 'ի գաւառն Կարնոյ, աւե-րեաց և գերեաց զերկիրն, և եհաս մինչ 'ի դուռն բերդին Ար-զրումոյ, և Լաղթոնն (լախտ) եզարկ զդուռն բերդին. և զգերի-սն բերեալ յերկիրն Երևանայ բնակեցոյց։ Այլ և գնաց զկող-մամբն Վանայ և Մշոյ. և գերեալ զնոսա՝ եբեր զգերիսն և բը-նակեցոյց 'ի նահանգսն որ 'ի մէջ Երևանու 'ի դաշտն։ Քանզի գեղորայքն՝ որ 'ի մէջ Երևանայ և Էջմիածնայ են, այսինքն՝ Քալար, Գոկզումբէթ, Կաւակերտ, Փարաքար, Ապարա, և այլք՝ որք գերեաց 'ի գաւառացն Օսմանցւոց, բերեալ բնակե-ցոյց յայսմ գեղորայս. և ահա կան շէն մինչև ցայժմ։ Եւ այսպէս կայր նա քաջութեամբ, և փոյթ 'ի շինութեան աշ-խարհին Արարատեան. այլ և սիրեաց ազգս Հայոց. և միշտ

(39). Տարփածու. խանդակաթ. 2) քերթող Եղն։

գնայր 'ի տունս քրիստոնէից, ուտէր և ըմպէր ընդ նոսա։ Նա կարգեաց գաւառապետս՝ որ է Տիւէ։ Ի գեղջէն Քանաքեռոյ՝ զոմն Պաւուլթ անուն կարգեաց Մելիք Կոտէից և Ընջելրդու։ Նա Գէօզալ-բէկ անուն ոմն 'ի Կարբոյ՝ արար ընկեր և խորհրդակից Պաւուլթին։ Նա Խանն՝ զոր ինչ և առնէր, հարցանէր նոցա. և յորժամ նստէր յընթրիս, յաջմէ և յահեկէ իւրոյ նստուցանէր զՄելիք Պաւուլթն և Գէօզալ բէկն, և ասէր, դուք հայր իմ էք, և ես որդի ձեր։ Զայս առնէր, զի հաճոյասցի յաչս ամենեցուն, և լինիցին փոյթ 'ի շինուածս աշխարհին։ Նա այսպէս խոհեմ իմաստութեամբ վարեաց զկեանս իւր մինչև 'ի մահ։

## ԳԼՈՒԽ ԻԹ.

Պէյրու–աղէ վարդոյ 'ի սորա ժամանակի։

Կատարած աշխարհի մերձեալ է՝ վասն այնորիկ կարապետք նեռին երևին 'ի տեղիս տեղիս, և ծանուցանեն մեզ զգալուստ նորա։ Որպէս յայտ է տեսանել յայսմ ժամանակի՝ որ եղև։ Քանզի այր մի ազգաւ Եղուան, որ այժմ ասեն Ուտի, 'ի Գանձակ քաղաքէ Եղուանից, որ գնացեալ 'ի սուրբ ուխտն Գանձասար, որ է Կաթուղիկոսարան Եղուանից, և յարեցաւ առ Կաթուղիկոսն Յովհաննէս. և ուսեալ սաղմոս և գիր, և արարին զնա Եւագ-Սարկաւագ. և ետուն փիլոն և վեղար. և էր ճարտար 'ի լրբութիւնս և ի խօսս անզգամս և անպատշաճս։ Նա առաքեաց զնա Կաթուղիկոսն 'ի յերկիրն վասն պիտոյից Սանիցն։ Իսկ նա գնացեալ ձևացոյց զինքն վարդապետ, և քարոզէր թիւր և անուղիղ հայհոյանս և չարաբանութիւնս։ Նա լցոյց զերկիրն ամենայն խաբէութեամբ՝ և պատիր բանիւք. վասնորոյ եկին և գանկատեցին զնմանէ Կաթուղիկոսին։ Նա Կաթուղիկոսն առաքեաց և բերին զնա 'ի վանքն. և բարկացեալ

Կաթուղիկոսն՝ էառ զփիլոնն և զվեղարն, և ասէ՝ ոչ պաշտել զաւրկաւագութիւնդ, այլ որպէս անուանեն Մուղտեսի՝ կացցես 'ի վանս, և ծառայ միաբանիցս: Իսկ նա ասէ, որովհետև առեր զկարգս, գերծ և զմորուսս և զգանգուրս, զի ամօթ լիցի ինձ, և ոչ ելից արտաքս 'ի վանացս: Ասէ Կաթուղիկոսն, բաւական է քեզ զարշութիւն երեսաց քոց՝ ամօթ քեզ: Քանզի էր տեսլեամբն դժնեայ, խաժակն և խոր երկայնաքիթ և սուր, ծակծակերես և պեպենոտ, շեկագոյն և պակասամօրուս, մեծատամն և նոսր, կարճահասակ և սրագլուխ, լի ամենայն աղտեղութեամբ, և արագախօս և ճարտարալեզու, փոյթ 'ի բամբասանս, և արագ 'ի չարութիւնս: Իսկ վասն այսքան աղտեղի կերպարանացն՝ ծիծաղէին զնա տեսանօղքն, և այպն առնէին: Վասնորոյ չարացաւ նա քան զսատանայ 'ի լսելն անարգանս իւր, և կամէր արկանել յորոգայթ զԿաթուղիկոսն. վասնորոյ ասէր գերծել զգլուխն և զմորուսն. և ո՛չ եղև զոր խորհէրն. վասնորոյ ինքն՝ որ բնաւորեալ ունէր զչարութիւնն, և զանձեալ էր 'ի մտի իւրում զանզգամութիւն, գաղտ ելեալ 'ի վանացն, և գնաց 'ի Գանձակ քաղաք, և եգերծ զերեսն և զգլուխն. և գնացեալ առ իշխանն Գաւութ խան, —այս՝ ա՛յն Գաւութ խանն է, զոր յառաջն յիշեցաք՝ թէ ապստամբեցաւ, և գնաց վերց արամբ առ Օսմանցիս, —և գանկատեաց նմա, թէ՝ քարոզեցի զՄահմէտ ճշմարիտ մարգարէ գոլ, յայսմ պատճառէ այսպէս խայտառակ արար զիս Կաթուղիկոսն, և էառ զկարգն իմ: Իսկ բարկացեալ Խանն՝ բերին զԿաթուղիկոսն, և էառ 'ի նմանէ բազում տուգանս, և ասէ, տո՛ւր դմա զկարգ իւր՝ և գիր քարոզելոյ: Իսկ յահէ Խանին ետ 'ի նա՝ զոր ինչ կամէրն. և 'ի Խանէն ևս էառ հրաման: Իսկ ելեալ քարոզէր զարտուղի: Իսկ եղև Թշնամի աբեղայից. և ուր տեսանէր աբեղայ, մերկացուցանէր, և բրածեծ առնէր: Իսկ ասէր ցժողովուրդն, ով որ աբեղայի տայ ինչ, ինքն 'ի դժոխքն իջանէ: Քանզի ոչ է արժանի աբեղայն առնել պատարագ. վասնզի շնացողք են և պիղծ: Այլ

երիցուն արժան է առնել պատարագ, զի սուրբ ամուսնաւ-կայ. և այլ այսպիսի խաբեբայ բանիւ պատրեաց զաշխարհն Եղուանից: Նա եկեալ յարեցան 'ի նա մարդիկ աւելի քան զՃ. ոչ միայն գռեհիկ աշխարհականք և ռամիկք, այլ և տգէտք երիցունք, և փարթամ և մեծազգի մարդիկք: Նա 'ի նոցանէ ընտրեաց ԲԺ. կտրիճ և զօրեղ մարդիկք, և ետ 'ի ձեռս նոցա լախտ՝ որ է Տօփուզ, և կապեաց թուրս զմէջօքն նոցա, և անուանեաց զնոսա՝ առաքեալս. և հրամայէր նոցա առնել՝ զոր ինչ ինքն կամէր. թէ ծեծէր, թէ կալանս առնէր, նոքօք առնէր զամենայն: Նա կեղծաւորեալ ոչ առնոյր ինչ յումեքէ, այլ ձեռամբ ԲԺ.ից առնոյր և բաժանէր Ճ.ից՝ և ասէր, Քրիստոսի աշակերտացն չէ՝ պիտոյ ստանալ ոսկի կամ արծաթ, և կամ զգենուլ հանդերձս ազնիւս, այլ մազ և շալ պիտոյ է նոցա զգենուլ: Նա ինքն զգեցեալ էր զմազեղէնս. և 'ի սիրտ մազեղէնին հաստատեալ էր երկուս բևեռս երկաթեայ՝ հնարիւք, և ցուցանէր ամենեցուն ասելով, այսպէս արժան է զգենուլ աբեղայիցն: Նա այսպէս տարածեցաւ խաբեբայ անուն նորա 'ի մէջ Տաճկաց և Քրիստոնէից, որ և Տաճիկ կոչէին նմա Դէլու Բաբայ[40]), և Հայք Դէլու վարդապետ: Նա ելեալ յաշխարհէն Եղուանից՝ բազմութեամբն գայ 'ի գաւառն Գեղամայ. և կապեալ ունէր Ժ աբեղայ, և միոյն անուն էր Միքայէլ, որ էր 'ի գեղջէն Քանաքեռոյ: Իսկ երէց մի Յովհաննէս անուն՝ 'ի գիւղաքաղաքէն Կարբւոյ, պատահի նմա 'ի Գեղարքունի, և ընդ նմին գայ մինչև 'ի Կոտես գաւառ. Նոքա պատմեցին[41]) ինձ զայս ամենայն: Նա եկեալ մեխլուն 'ի գիւղն Նորք, և հայի ընդ բերդն Երևանայ. և տարածեալ զձեռս իւր որպէս Թռչուն, և շարժէր: Ասէ Յովհաննէս երէցն, զի՞նչ առնես վարդապետ: Ասէ Մեխլուն, կամիմ թռչել մինչև 'ի

(40) Բևեռաւոր հայր:

(41) Եթէ չէ [illegible] [illegible] [illegible] էր [illegible]՝ Նա պատմեաց:

բերդն։ Իսկ երէցն կալեալ զձեռն նորա՝ ասէ, կամիս խայտառակ լինիլ որպէս նեռն. և զի՞արդ կարիցես թաչել, զի դու մարդ ես, դադարեա՛ 'ի կախարդասարաս գործոյդ, արձակեա՛ և զարեղայսդ, զի մի՛ գուցէ լուիցէ խանն, և զքեզ չարամահ սպանցէ։ Իբրև լուեալ զբանս իրիցուն՝ արձակեաց զարեղայսն, և ուղղեցաւ դէպ ի բերդն։ Իսկ Ամիրգունայ խանն ելեալ 'ի բերդէն՝ երթայր 'ի գնին. և հայեցեալ տեսանէ զբանակն. և զարհուրեալ հարցանէ, ո՞հ զի՞նչ է գումարն այն։ Ասեն, նա է Ճեխըլ-ճաչայն, զոր սպասէին. և ապա դարձաւ խա՛ն՝ և եմուտ 'ի բերդն։ Իսկ և մեխլուն, և նա ևս եմուտ 'ի բերդն՝ բազմութեամբն իւրով, և գնաց եկաց առաջի խանին։ Իսկ անդ առ խանն և Աւետիս Կաթուղիկոսն և Բ. Եպիսկոպոս ընդ նմա։ Եհարց խանն՝ և ասէ ցմեխլուն, ի՞նչ մարդ ես, ուստի՞ գաս, կամ ու՞ր գնաս։ Ասէ մեխլուն, սևագլուխ եմ աղօթող վասն կենաց քոց։ Իբրև խանն ձգեալ զձեռն դէպ 'ի Կաթուղիկոսն, և ասէ, սոքա բաւական են աղօթող վասն իմ. և դու երթ՝ աղօթեա՛ վասն Պաւուլթ խանին։ Իբրև ասէ խանն, ընդէ՞ր ես ծածկեալ զերեսդ. քանզի զմերջ 'մեղարին կախեալ էր զերեսօքն. ասէ, ո՛չ եմ արժանի տեսանել զերկինս։ Իբրև խանն ծայրիւ փայտին՝ որ 'ի ձեռին ունէր, բարձրացոյց զքօղն, և եսես զերեսն նորա, զի դարշ էր, ասէ, Նալլաւն ասդ-ասաֆուլանայ -ասաւսան -նաւ-[42]), վասն աղտեղի պատկերիդ ծածկեալ ես, զի մի՛ ոք տեսցէ զնախշաւն [43]) դէմս քո, և երախտիս բանաս 'ի վերայ երկնի։ Ասէ դարձեալ խանն, զի՞նչ է լաշկարդ այդ, ու՞ր գնաս դոքօք 'ի պատերազմ,-'ի Վ-ա՞ն՝ թէ յԱրզրում։ Ասէ մեխլուն, ո՛չ ուրեք գնամ. այլ զի ես քարոզեմ զճշմարտութիւն, վասնայնորիկ շրջին դոքա ընդ իս։ Ասէ խանն, արդ քարոզեա՛ և սոցա՝ որք աստ են։ Իբրև ունէր գիրք մի ժողովածու

(42) Անէծք լիցին կերպարանացդ։

(43) Նէտաչէնը՝ որ թարգմանի անարգ, թշուառական. չար, ապիրատ։)

և նմա ասէր՝ զի՞նչ որ ասէր։ Նա բացեալ զգիրքն՝ և ասէ, սա գրեալ է վասն սևագլխոց. զի ասէ, մի՛ ստանայք՝ մի՛ ոսկի և մի՛ արծաթ ևլն։ Նա էր անդ Գառնեցի մի՝ որ թողեալ էր Աբեղայութիւնն, և եղեալ էր զինուոր, որոյ անունն էր Զա-քար-Բէկ, նմա ասաց Խանն՝ թէ՝ դու թարգմանեա՛ զասա-ցեալն դոցա. և զոր՛ ինչ ասաց Մեխլուն՝ Զաքար-Բէկն յետ պատմեաց։ Ասաց Խանն ցԿաթուղիկոսն, դու ևս ասա՛ գքոյդ։ Նա էր առ Կաթուղիկոսն աւետարան մի, որ ասէին Զրե-հաւոր, և բացեալ զայն՝ որ ասէ, "յարիցեն սուտ Քրիստոսս, և սուտ մարգարէք,, ևլն։ Նաև զայն ևս՝ թէ՝ "զգոյշ լերուք, որք գան առ ձեզ հանդերձիւք ոչխարաց, և 'ի ներքուստ գայլք են յափշտակողք,,։ Զայն ևս թարգմանեաց Զաքար Բէկն։ Նա ապա ասաց Խանն, այս ճշմարիտ է, և դու հարամզադայ(44) ես. վասն այն ես զգեցեալ զայդ հանդերձ. զի պատրես զանմեղ քրիստոնեայսդ։ Նա հրամայեաց արկանել զնա ի հաւուզն(45) և խեղդել 'ի ջուրն. և որքան հանէր զգլուխն 'ի ջրոյն, և սպա-սաւորք Խանին կոխէին 'ի ջուրն։ Նա հրամայեաց Խանն կո-ղոպտել զԲժշան նորա՝ իբրև 'ի մօրէ մերկացուցանել՝ Բ Տաճկի և Ա Հայի 'ի հեծելոց նորա կողոպտել. և աղերսանօք Կաթուղիկոսին հանին զնա 'ի ջրոյն. և կարգեցին զինուորս, զի յերկրէն Երևանայ հեռացուսցեն զնա. և հանեալ 'ի բերդէն, առեալ տանէին զնա դէպ 'ի Քանաքեռ. և տգէտ ռամիկքն Քանաքեռոյ՝ յորժամ լուան զգալուստ նորա, գրոհ տուեալ ելին ընդ առաջ նորա՝ մինչև տնարգել աղջկունքն ևս գնային ի տես կախարդին այնորիկ. որք երթեալ քսէին զստորոտ հանդերձի նորա յերեսս իւրեանց։ Նա թագուն ողջագուրելով ընդունէին զնա։ Նա էր այրի պառաւ մի, զոր ասէին Եղիայի կին, մնու-ցեալ էր որթ մի կովու։ Նոյն պառաւն՝ ընդ որ գնայր, և որթն

(44) Յափշտակող, 2) գող, 3) անիրաւ, 4) աւազակորդի։
(45) Աւազան։

եւս գնայր ընդ բազմութեան՝ որք գնային 'ի տես կախարդին. գնաց և պառաւն այն, և որթն որ մնացեալ էր, ցցեալ զձետըն՝ աղաղակելով գնայր զկնի պառաւին։ Եւ տեսեալ արքանեկաց կախարդին՝ կալան զորթն, և ասէին, մատաղ է եկեալ վարդապետին։ Իսկ պառաւն լայր և ասէր, իմ է որթդ այդ, և ո՛չ է մատաղ, վասն Աստուծոյ թողէ՛ք զորթս իմ։ Եւ ո՛չ լըւան նմա, այլ զենին զորթն, և մասն մասն բաժանեցին, մինչև և կաշին և զապուառն եւս բաժանեցին՝ որպէս օրհնութիւն։ Եւ առեալ զկախարդն բերին 'ի Պանաքեռ, և տարան 'ի ներքի եկեղեցին։ Եւ 'ի չքաւել տեղոյն, ելեալ նստաւ 'ի վերայ սեղանին. և զոտսն հախեալ 'ի վայր՝ և ղօղանջէր դէպ յաբեղայսն՝ եւ ասէր, ո՛վ ոք՝ որ սպանանէ աբեղայ մի, այլ ո՛չ գոյ հարցումն մեղաց նորա, այլ երթայ յարքայութիւնն Աստուծոյ։ Այր մի ի նոյն գեղջէն Պանաքեռոյ, որ ասէին Խութակենց Յակովբ. այս Յակովբս գնացեալ խոստովանի նմա, և խնդրէ ապաշխարութիւն. և նա ասէ, ե՛րթ սպա՛ն աբեղայ մի. և բե՛ր 'ի մնոյն և յարենէն, զի կերայց զմիսն՝ և արբից զարիւնն, և արարից պատարագ, և զքառասնամեայ մեռեալն յարուցից, յայնժամ լիցի թողութիւն մեղաց քոց։ Եւ հաւատացեալ յիմարն այն, և 'ի նոյն գիշերին գնացեալ 'ի դուռն վանիցն՝ և սպասէր՝ զի թերևս ելցէ Միքայէլ Աբեղայն. այս այն Միքայելն է՝ զոր 'ի մէջ ճառիս յիշեցաք. զի նա էր փոքր քան զայլսն։ Եւ տեսանէ՝ զի ահա եկն Փիլիպպոս Եպիսկոպոսն. և այրն Յակովբ յարեաւ 'ի վերայ նորա, և կառկարեաց զնածախն [46]) 'ի վերայ գըլխոյ Եպիսկոպոսին։ Եւ ասէ Եպիսկոպոսն, գժուեցա՞ր Յակովբ։ Եւ ասէ Յակովբն, մեղայ քեզ՝ Տէ՛ր Փիլիպպոս. զի ես կարծեցի՝ եթէ Միրանն ես. զի առաջին անունն Միքայէլին՝ Միրան էր։ Եւ պատմեաց նմա Յակովբն զամենայն։ Իսկ Եպիսկոպոսն խրատեաց զնա՝ և ասէ, նա ո՛չ պատարագօղ է և ո՛չ մեռեալ

(46) Տապար. կացին։

յարուցանող. այլ ա՛յս է, զի զքեզ մարդասպանս առնէ՝ և արեան տէր։ Իսկ գնաց եւ Յակովբ՝ ո՜հ և ատամն կարդալով իւնքեան։ Իսկ էր անդ 'ի Բանաքեռ և Կաթուղիկոսն և զինուորք Խանին. զոր լուեալ զայս, և հանեալ վարեցին զնա մինչև 'ի Նիգ գաւառ. և գնաց մինչև ցԱրզրում. և ասէր, գնամ յԵրուսաղէմ։ Իսկ էր յԱրզրում Կեղացի Պօղոս վարդապետն. և աստի գրեցին առ նա՝ վասն նորա չարութեան. և նա կալեալ զնա՝ էառ զմեղարն և զփիլոնն, և պատուիրեաց ուխտաւորացն Երուսաղեմի ոչ ընդունել զնա ընդ ինքեանս։ Իսկ նա այնպէս կոբեալ և բարձեալ 'ի միջոյ՝ ընկալեալ զյաւիտենական կորուստն։ Իսկ յետ կորստեան նորա համբաւեցին արքանեակք նորին՝ թէ Ամիրգունայ խանն ծիպոտաւ մի էզարկ վարդապետին. յայնժամ թիւրեցաւ երես խանին, և թուլացան ձեռքն. զեռ ևս ասեն մինչև ցայսօր։

## ԳԼՈՒԽ Լ.

### Պատմութիւն Մովսէս Կաթողիկոսին՝ սակաւիկ։

Որ ինչ վասն Մովսէս Կաթուղիկոսի՝ գրեալ է Առաքել պատմագիր 'ի ծննդենէն մինչև 'ի մահ նորա։ Այլ մեք (ես)* զոր ինչ լուաք 'ի Յակովբ Կաթուղիկոսէն վասն նորա, աստէն բացայայտեցից։ Զի որպէս և գրեալ է Առաքել պատմագիր, թէ Մելքիսէթ Կաթուղիկոսն թշնամացաւ ընդ Մովսէս վարդապետին, և ասաց, ե՛լ յայսմ՝ աշխարհէ, և գնա՛ աստի՝ ուր և կամիս։ Իսկ նա գնացեալ 'ի Խնկելոյ-ձոր գեղ, զոր այժմ ասի Չորագեղ՝ մերձ 'ի բերդն Երևանայ, և անդ քարոզէր զբանն Աստուա[illegible] Քրիստոս, մինչզի գտցէ ընկերս ինքեան, և ընդ նոսին գնալ յաշխարհն Յունաց։ Այլ նորա բանն եղև ըստ հրամանի Փրկչին՝ որ ասէ, լուցեալ ճրագ ոչ թաքչի, և թէ պատրոյկ կայծեալ ոչ շիջանի. որ և եղև այս առ սուրբ վար-

դապետն Մովսէս՝ այսպիսի պատճառաւ։ Էր այր մի յԵրեւան քաղաքի՝ Յովհաննէս անուն, և ունէր կին՝ Ճապ-խան անուն. և քոյրն Ճապ-խանին էր կին Ամիրգունա-խանին՝ [illegible]ուսմի-խան անուն։ Եւ եղև ատելութիւն Ճապ-խանին ընդ առն իւրում Յովհաննիսի, որպէս թէ՝ չքնաղագեղ ընդ անգեղոյ, և մեծազգի ընդ անչգոյ։ Եւ այսպէս հանապազ պճրանօք և պռոտելով կայր, և ոչ հաղորդէր ընդ առն իւրում. և խրատու քահանայիցն ոչ անսայր, մինչև Խանն ևս խրատեաց զնա, և նա ոչ լուաւ նմա։ Եւ յաւուր միում գնաց Ճապ-խանն 'ի Զորագեղ, զի լուիցէ զքարոզս վարդապետին։ Եւ վարդապետն 'ի կարգ քարոզին ասաց, կին՝ եթէ ելցէ յառնէ իւրմէ՝ շնայ. զայս բանս ասելով՝ պատմեաց սուրբ վարդապետն՝ ժողովրդեանն։ Իսկ Ճապ-խանն իբրև լուաւ զայս, և էր (գուցէ հարկանէր) զգլուխն իւր Ի՞ ձեռամբ՝ և ասէ, վա՜յ ինձ, զի և ես շուն կոչիմ։ Եւ մինչ վարդապետն ասէր զքարոզն, նա մտախոհ լինէր վասն այնմ բանին։ Եւ յորժամ վերջ արար զքարոզն՝ և արձակեաց զժողովուրդն, ասէ Ճապ-խանն ցերէցն՝ որ աջ տայր, ունիմ ինչ ասել վարդապետին. խնդրեմ 'ի քէն՝ կացցես աստ, և քումդ բերանով խօսեցայց ընդ վարդապետին. և յորժամ ել վարդապետն, կինն անկաւ յերկիր և համբուրեաց զոտս նորա, և հեծեծանօք ասաց զկանցանս իւր։ Եւ երջանիկ Վարդապետն աստուածային բանիւն խրատեաց զնա. և 'ի վաղիւն կոչեաց զայր նորա, և յանձն արար միմեանց, զի կացցեն երկիւղիւն Աստուծոյ զգուշութեամբ։ Եւ լուաւ Ամիրգունա-խանն՝ և ասէ, ես բազում անգամ խրատեցի զքենին իմ, և նա ո՛չ լուաւ ինձ. և արդ՝ զիա՞րդ եղև հաշտիլ նորա։ Եւ ասեն, խրատովն Մովսէս վարդապետին եղև։ Ասէ Խանն, կոչեցէ՛ք զնա, զի տեսից զն[illegible]թէ՝ որպիսի՞ այր է նա, որ այս բարի համբաւս լսեմ։ Եւ յորժամ ետես, սիրեաց զնա քան զչափն առաւել։ Եւ այս եղև [illegible]կիզբն, որ ծանօթացաւ Շահին. որ և եղև Կաթուղիկոս։ Իսկ Յով-

հաննէան և Ճապ-խանն մնացին առ միմեանս ժամանակ ինչ, և յետոյ հրամանաւ վարդապետին հրաժարեցան 'ի միմեանց սիրով: Յովհաննէս գնաց 'ի Սևան կղզին, և եղև միայնակեաց: Իսկ Ճապ-խանն առեալ զդուստրն իւր Լուկիա՝ և մտին ի վանս Կուսանաց. և եղև 'ի կարգի հաւատաւոր կանանցն. և Ճապ-խանն անուանեցաւ Աթանասիա:

## ԳԼՈՒԽ ԼԱ.

### Վասն մանկանցն ժողովելոյ:

Մոռացումն եղև, զի 'ի կարգս Շահ-Աբասին գտեալ էաք. յետոյ գտաք՝ և եդաք աստ: Քանզի Թագաւորն Աբաս կայր սիրէր զպատմութիւնս, զհակաճառութիւնս, զկատակս, և զծաղրս, զքննութիւնս հաւատոյ, և զխօսակցութիւնս: Յաւուր միում ժողովեալ էին առ նա ամենայն աւագանին, և խօսէին վասն հաւատոյ, և լեզուաց քաղցրութեան և փարթամութեան: Եւ վասն առաջին լեզուին, որ տուաւ Ադամայ, ոմանք ասացին՝ Հրէից լեզուն գոլ առաջին. ոմանք՝ Եթովպացւոցն, ոմանք՝ այս, և ոմանք՝ այն: Իսկ Շահն ոչ հաւանեցաւ ասացելոց միում 'ի նոցանէ: Այլ հրամայեաց Լալա-բէկ իշխանին՝ և ասէ, տես՝ թէ ո՛րքան ազգի լեզու գտանի յաշխարհիս Սպահանու. դու ժողովեա՛ յամենայն ազգաց ստնդիաց մանկունս՝ արու և էգ, որ չև իցեն արձակեալ լեզուս իւրեանց, և լի՛ց 'ի տուն մի արձակ և մեծ. 'ի գիշերին վառեա՛ զճրագ. եթէ ցրտասցի, լո՛յց խարոյկ, և մարց նոցա պատուիրեա՛ բնաւ ոչ խօսիլ և ժպտալ. այլ զպել և մաքրել, դիեցուցանել, և լոգացուցանել առանց խօսելոյ, և ոչ դնել յօրօրոց և ոչ 'ի ճոճ, այլ 'ի յերկրի 'ի մահիճ. և զծախսն յարքունուստ եղիցի մարց և տղայոցն. 'Ի գիշերի նըն-ջեսցեն մարքն առ մանկունս, և 'ի տունջեան կացցեն յայլում

տան. և կացուցեն Բ ներքինիս պահապան նոցա. զի թէ ոք լացցէ, նոքա ազդ առնիցեն մարցն նոցա՝ լռելեայն, զի եկեալ դարմանեսցեն տղայսն: Զայս պատուիրեաց առնել. և ասէ, տեսցուք՝ զի՞նչ լեզու արձակեն նոքա, այն է լեզուն՝ որ տուաւ Ադամայ: Իսկ իշխանն Ջալալ-բէկ արար զհրամանն: Եւ զար-դարեաց զտուն մի բացագոյն 'ի շինութենէ, զի մի՛ լուիցեն զձայնս երգոց և գուսանաց: Եւ ժողովեաց մանկունս 'ի Ի ազգաց, որք գտան յԱսպահան. որք են 'ի քրիստոնէից Ը ազգ, և յայլ ազգաց ԺԲ: Նախ 'ի քրիստոնէիցն՝ այսոքիկ են, Հայ, Յոյն, Լատին, Ասորի, Վիր, Աղուան, Բոշայ: Եւ յայլ ազգաց ԺԲ ազգ, որք էին Տաճիկ, Պարսիկ, Վյաթ, Գեաւռ, Մար, Լոռ, Լակզի, Օզբէկ, Ջաղաթայ, Գիլաք, Հրեայ, Հնդիկ, Եթովպացի: (Ց) Այսքան ազգաց ժողովեաց բազում մանկունսն երկամեան, և ելից զտունն՝ արու և էգ: Եւ եթէ ոք մեռանէր 'ի նոցանէ, բերէին փոխանակ նորա այլ: Եւ յետ տարւոյ միոյ արձակեցին լեզուս յօդաւորս. և ահա և ոչ մի էր լեզուացն, այլ խժական, և բեկբեկ. և գային բազումք ան-մռունչ՝ և լսէին զխօսս նոցա, և ոչ իմանային. կռուէին, խա-ղային, ծիծաղէին, լային: Եւ յորժամ մարք նոցա մտանէին առ նոսա, և նոքա գային և խուճապէին՝ զմարբքն, և մորմոքէին: Իսկ Շահն ևս եկն և ետես զխժական խօսս նոցա. և հրաման-յեաց սփռել չամիչ. և նոքա թափեցան 'ի վերայ ճուալով և ճչալով. և ոչ ոք գիտաց՝ եթէ զի՞նչ լեզու էր: Եւ ասէ Շա-հըն, կոտորեցէ՛ք զդոսա, զի մի՛ աճեսցի բարբառդ այդ: Բայց Ջալալ-բէկն ոչ եթող կոտորել, և ետ ցմարս իւրեանց՝ և ա-սէ, երթեալ ուսանիցեն զլեզու մօր իւրեանց: Եւ արարին այնպէս. և փութով ուսան զհայրենի լեզուն: Զայս պատմեաց Մար-կոս վարդապետն Ջուղայեցի, որ էր Առաջնորդ Հաւուց-Թա-ռու, և ասէր, ժողովեալ մանկանց մինն՝ հօրեղբայրն իմ է լեալ:

## ԳԼՈՒԽ ԼԲ.

### Վասն ժողովրդոցն։

Որպէս պատմէ Առաքեալ պատմագիր, թէ՝ Շահ-Աբասն զերկիրս Արարատեան արտասահման արարեալ քշեաց, և տարեալ բնակեցոյց յաշխարհին Պարսից. և մնաց երկիրն Արարատեան ամայի և անմարդաբնակ։ Վասնորոյ գազանք բազմացան յաշխարհիս, և կաղաղ առեալ 'ի գիւղս և 'ի տունս բնակէին, և որջս արարեալ ծնանէին ձագս։ Եւ էին գազանքն՝ ինձ, արջ, բորենի, գայլ, աղուէս, կուզ, ոզնի, և այլ այսպիսիք՝ մեծամեծք և մանունք, և ոչ գոյր մարդ՝ որ հալածէր զնոսա. և նոքա համարձակ 'և աներկիւղ կային և շրջէին։ Իսկ գայլք առաւել համարձակեցան քան զայլ գազանսն։ Քանզի մարդիկք՝. որք մնացեալք էին, ծերք և պառաւք, և տկարք, որք ոչ կարացին գնալ ընդ բանակս, մնացին աստէն, գային գայլքն՝ պատառէին զնոսա և լափէին, և զանկարսն ուտելով՝ սովորեցան՝ և զառողջսն ևս ուտէին, եթէ պատահէին. վասնորոյ անուանեցան Մարդագայլ։ Եւ մեք կարևոր համարեցաք գրել սակաւուք զվնաս նոցա։ Ալևոր մի յԱռինջ գեղջէ եկեալ 'ի Քանաքեռ, և բարձեալ աղ շալակաւ՝ գնայր 'ի [illegible]ն իւր. և եհաս 'ի գլուխս ջրաղացացն. և ահա գայլք երկու իջին 'ի բլրէն՝ որ ասեն Գարապապ, և կալեալ զալևորն, և նա աղաղակեաց առ ջրաղացսն, մինչև ի հասանիլ նոցա՝ սպանին զալևորըն, զմի ձեռն և զերեսն կերին։ Այլ մի 'ի Նորք գեղջէ՝ նըստէր 'ի դրան իւրում, 'ի գիրկս ունելով զմանուկ դուստր իւր. և ահա գայլ մի տեսեալ 'ի հեռաստանէ, և եկեալ ըմբռնէ զհանդերձից մանկանն, և քարշէր առ ինքն։ Եւ կինն աղաղակէր, և գրկեալ զմանուկն ոչ թողոյր 'ի բաց. և 'ի ձայնէ կնոջն՝ եկին ոմանք և հալածեցին զգայլն, և զմանուկն խլեցին մեռեալ։ Այր մի Մխիկ անուն՝ 'ի գեղջէն Քանաքեռոյ, որ

էր ջրպետ գեղջն. սա ըստ սովորութեան գնացեալ՝ զի բաց-
մացուսցէ զջուրն, և եհաս 'ի գիւղ մի աւեր, որ ասէին Մէ-
հուտ 'ի գաւառն Կոտէից, և տեսանէ՝ զի Ե գայլ շտապա-
փութան դէպ ի ինքն։ Եւ Մխիկն գնայ և ելանէ 'ի տանիս ե-
կեղեցւոյն. և գայլքն գան մինչև 'ի ներքոյ որմին, և ջանան ե-
լանել 'ի տանիս եկեղեցւոյն։ Իսկ Մխիկն արձակէ զմիջոց գօ-
տին, և կախէ ընդ որմովն. իսկ գայլքն 'ի բաց կացեալ նստին
հայելով դէպ 'ի Մխիկն, զի թերևս իջցէ, զի կերիցեն. և այն-
պէս մնաց մինչև 'ի լուսանալն։ Եւ յորժամ ծագեաց արեգա-
կըն, ահա արք երեք գային բեռնակիր երիվարօք, և Մխիկն ա-
ղաղակեաց առ նոսա. և նոքա եկեալ հալածեցին զգայլսն. և
Մխիկն դողալով գնաց ընդ նոսա 'ի գիւղն իւրեանց։ Եղբայրն
իմ Խաչատուր բարձեալ բղղաւ մածուն՝ և տանէր յԵրևան՝
կնքահօրն իւրում. և եհաս 'ի տեղին՝ որ ասի Քանդակեր, և ահա
վեց գայլք եկեալ շրջապատեցին զնա, և մերձ էին պատառել.
և ահա ողորմութեամբն Աստուծոյ եկն այր մի Յովհաննէս ա-
նուն՝ երիվարաւ՝ Քանաքեռցի, և փախոյց զգայլսն, և զԽա-
չատուրն հեծոյց յերիվարն, և տարաւ յԵրևան։ Եւ այլ բա-
զում են վնասք գայլոցն, և մեք ոչ գրեցաք, զի մի՛ ձանձրու-
թիւն լիցի ընթերցողացն։

## ԳԼՈՒԽ ԼԳ.

### Պատերազմ կնոջն ընդ գայլոյն։

Եւ յորժամ էառ Շահն զԵրևան, կարգեաց անդ իշխան
Ամիրգունա-խանն, և պատուիրեաց նմա նորոգել զբերդն, և
տնկել զայգիսն, և փոյթ լինիլ շինութեան։ Վասնորոյ ամենե-
քեան սկսան շինել և տնկել զայգիս։ Որ և Տաճիկ մի տնկեաց
զայգի, և բերեալ այր մի 'ի Կոտէից՝ Սարգիս անուն՝ կնաւ
իւրով և ստնդեայ որդւով, և կացոյց զնա պահապան նորա-

տունկ՝ այգւոյն։ Իսկ այրն ցանեաց 'ի մէջ որթոցն վարունգ, և սեխ, մեղրապուպ և խաւարտ։ Այրն 'ի տունջեան երթայր 'ի մշակութիւն 'ի վերայ բերդին։ Իսկ կինն դարմանէր զայգին և զպարտէզն. և յերեկոյին փայտեայ սանդխօք ելանէին 'ի տանիս հնձանին՝ յահէ գայլոցն, և զսանդուխն քարշէին 'ի վեր։ Եւ յաւուր միում ըստ սովորութեան իւրոյ գնաց Սարգիսն 'ի մշակութիւն իւր։ Իսկ կինն լիջոյց զօրօրոցն մանկամբն, և եդ 'ի հնձանն, և զդուռն ոչ աղխեաց. և գնաց դարմանել ըզպարտէզն։ Եւ գայլ մի տեսեալ զայն, գնաց եբաց զդուռն՝ և եմուտ 'ի ներքս. և դուռն ինքնին գնաց 'ի վերայ։ Իսկ գայլն կալեալ 'ի կապանաց մանկանն, և կամէր պատառել զմանուկն։ Իսկ կինն լուաւ զճղփումն դրանն, և ասէ, մի՛ գուցէ ոք եմուտ 'ի հնձանն գողանալ ինչ։ Եւ գնաց և ետես զայն, և ճիչ բարձեալ ըմբռնէ զերկու ականջն գայլուն, քարշէ, զի զերծուսցէ զմանուկն, և ոչ կարաց. և կինն 'ի քարշ տանէր զգայլն. և գայլն ոչ թողոյր զկապանս մանկանն. և կինն 'ի քարշ հասեալ 'ի դուռն, և ոտամբն եբաց զդուռն, և ձայնէր առ դրացի կանայսն. և կանայք երկու լուան զձայնն, և եկին և տեսին զտառապանս կնոջն. մի կինն առեալ հատոց, և միւսն մեծ բիր, հարին զգայլն, և սպանին։ Իսկ մանուկն բնաւ ոչ խօսէր, և ոչ եռայր, կարծեցին՝ եթէ սպանեալ է. և մայրն բացեալ զ[illegible]եսս տղային, իսկ տղայն ժպտեցաւ դէպ 'ի մայրն. և մայրն յուրախութենէն յուշաթափ եղև, և հազիւ յուշ բերին։ Եւ այս լուաք 'ի Զաքարիայ վարդապետէ, որ էր Առաջնորդ Յովհաննու վանից. որ նա ինքն լուեալ է 'ի Սարգսէն՝ յանապատն Երևանայ 'ի թուին ՌՋ։

## ԳԼՈՒԽ ԼԳ.

### Զէնք Պարսից ՚ի դաշտն Շարուրայ։

Զի որպէս ասացաք զկոցիլ Եմիրգունա-խանին ՚ի պատերազմի Մովրավին, և տանիլն յԵրևան, և մնալն առ Գօռչի-բաշին՝ Թահմազ-բէկի՝ որդւոյ նորա։ Նուան ազգն Մարաց, որ է Քուրտ, յայնմ կողմանէն Մասեաց լերինն՝ ժողովեցան ՚ի մի, և խորհեցան գալ ՚ի դաշտն Շարուրայ՝ և առնել աւար։ Եւ եհաս համբաւս այս առ Եմիրգունա-խանն։ Վասնորոյ յղեաց առ որդին իւր Թահմազ-բէկ զպատգամս խիստս, և ասէ, աւուրք տառապանաց և օր նեղութեան հասին ՚ի վերայ քո. արդ՝ որո՞վ յուսոյ ակնունիս կալով այդր։ Եւ իբրև լուաւ Թահմազ-բէկն զպատգամս Հօրն՝ և ի խոր խոցեցաւ, վասնորոյ առանց գիտելոյ Գօռչի-բաշուն՝ առեալ զզունդն իւր՝ և գնաց ՚ի նոյն օր ՚ի գաւառն Գեղամայ, և ի միւս օրն ՚ի Վայոցձոր, և ի միւս վաղն ՚ի դաշտն՝ որ կոչի Վէթի. և ետես՝ զի տարածեալ էին արքն զվայրս դաշտացն։ Եւ Թահմազն գոչեաց բարձր ձայնիւ, և ասէ, հայ փուր. Գըզլբաշ, հայ փուր[44])։ Եւ այր ոմն ՚ի Պարսից՝ ոչ յաւագացն, այլ անարգ և յոռի, պատասխանեաց արհամարհանօք՝ և ասէ, քէշ քափըման փաստօնում նա հալ օլուր[45]). որ է ստուգութիւն խօսացս այս. զի սղութիւն էր հացի. և այրս այս Ոսլուֆայն առեալ էր կորեակ, և յայսմ վայրի երես եհան անարգանօք. և մինչև ցայսօր առակ ասի այս՝ յայսմ աշխարհի։ Եւ ՚ի վերայ այս բանի՝ թուլացան Պարսիկքն, և ոչ կամէին մտանել ՚ի պատերազմ։

---

(44) Հայ կամ հայլ աղաղակ է ըստ Պարսից, զոր բառնան ի յարձակելն ի վերայ թշնամեաց։ Տուր թարգմանի հեռի. Գըզըլբաշ կամ Գըզըլպաշ կոչի Պարսիկն։

(45) Զի՞նչ հալ լինի կորեկան հնգից լտրից (Լիտրն է 12 գրուանքա. իսկ գրուանքայն կշռէ իբր 113 ⅕ տրամ)։

Վասնորոյ ինքն Թահմազ բէկ՝ սակաւ արամբք եմուտ 'ի բա-նակն Քրտաց՝ և կոտորէր. և տեսեալ զօրացն՝ արիացան. և նոքա մտեալ 'ի պատերազմն՝ յաղթեցին Քրտացն, և հալա-ծեցին, և գնացին մինչև 'ի տեղին, որ կոչի Եյաղլու-սարայ, և անդ կանգնեցին զնշանն Քրտաց՝ սպիտակ՝ որ ասի ալամ, կամ պայրաղ[46]։ Եւ տեսեալ Քրտացն զնշանն իւրեանց, կար-ծեցին ճշմարիտ գոլ. վասնորոյ դիմեցին առ նա։ Իսկ Պարսիկ-քըն ըմբռնէին զնոսա, 'ի կալանս առնէին, կոտորէին, և աւար առին զամենայն ինչս նոցա, և մնացեալքն մազապուրծ եղեալ անկան 'ի տեղիս իւրեանց։ Եւ մինչդեռ անդէն կային առ Եյաղ-լու-արայն, եկն միւս ևս բօթ, թէ՝ ահա գունդ մի Օսմանցւոց 'ի Կարուց ելեալ և եկեալ հասեալ են 'ի Կուաշ և 'ի Վաժան 'ի լեռնոտեաց Արագածու, և կամին գնալ 'ի Կարբի։ Եւ լուեալ զայս Թահմազն, զամենայն գերիսն և զգլուխս սպանելոցն [illegible]ա-ւարն առաքեաց առ հայրն իւր Եմիրգունա-խանն, և ինքն ոչ գնաց, այլ առեալ զօրքն 'ի նոյն երեկոյն գնացին 'ի գիւղն Նորագաւիթ, և վերիվարսն յագեցուցին. և 'ի հաւախօսին ելին և անցին զգետն Հուրաստան, որ է Զանգի. և ելին յառա-պարն, և առանց ճանապարհի հասին 'ի վեր քան զՕշական, և անցին զգետն Քասաղ, և 'ի ներքոյ այգեացն՝ որ ասի Կար-բոյ դաշտ, անցեալ գնացին. և հասին յանդաստանն Վաժանայ, և տեսին զՕսմանցիսն, և հարին զփողն պատերազմի. և խառ-նեցան ընդ միմեանս՝ Պարսիկն և Օսմանցին։ Եւ երիվարք Օսմանցւոց ոչ էին սովոր ձայնի փողոցն Պարսից. և 'ի հնչել փողոցն՝ փախուստ առին՝ և Պարսիկն զկնի նոցա՝ հալածելով զնոսա։ Բայց Թահմազ-բէկն մոլոր անկեալ 'ի զօրացն իւրոց՝ գնայր միայն։ Եւ ահա Գ. Օսմանցիք տեսին զնա 'ի հեռա-ստանէ, և գիտացին, որ Ղզլբաշ է, բայց ո՛չ իմացան՝ թէ ով իցէ, և ծպտեցան զկնի նորա. և նա՝ զի ունէր ձի զօրաւոր

(46) Դրօշ, նշան։

կիսաքանական, որ ասէին Պաղէ գհէր, և փախեալ առաջի Օս-մանցւոցն, և ապա պատահի փոսի մի, զոր՝ ասէին՝ լայնութիւնն էր ԽԴ. թիզ, զխորութիւնն և զերկայնութիւնն անչափ. և մըտ-րակեալ զձին, և շեշտակի ջուռնթ առեալ թռեաւ, և էանց յայն-կոյս. և կացեալ 'ի վերայ ոտին, և իջեալ համբուրեաց զաչս ձիոյն. և գնացեալ եկեալ եգիտ զօրքն, և թուեցին զնոսա Զ. այր պակասեալ 'ի զօրացն: Եւ ինքեանք ունէին կապեալս Ե և գլուխ Գ.: Եւ առեալ գնացին յԵրևան առ խանն. և գրեցին զպատճէն երկուց պատերազմացն, և ետուն 'ի ձեռս պնդա-գեսպանի, և առաքեցին առ Շահն:

## ԳԼՈՒԽ ԼԵ.

### Մահ Ալիրզոնա-խանին:

Յորժամ գնաց Թահմազ-բէկն զօրօք իւրովք՝ և ոչ հրա-մանաւ Պօղչի-բաշուն, վասնորոյ 'ի խոր խոցեցաւ նա մահու-չափ՝ նախատինս համարելով ինքեան: Եւ սա ևս գրեաց թուղթ գանգատանաց 'ի Թահմազ-բէկէն, և պնդագեսպա-նիւ առաքեաց առ Շահն: Եւ այնպէս պատահեցաւ, զի եր-կոցունց պնդագեսպանքն՝ Պօչի-բաշուն և Թահմազ-բէ-կին՝ 'ի միում աւուր մտանել առ Շահն: Եւ իբրև ընթեր-ցաւ թուղթն, իմացաւ՝ զի Պօչի-բաշին առ նախանձու է գրեալ. և ոչ ընկալաւ զասացեալսն Պօչի-բաշուն: Իսկ Թահմազ-բէկինն ընկալաւ և գովեաց զնա: Եւ գրեաց թուղթ և ետ նոյն պնդագեսպանին. և էր պատճէն այս: Հրաման է ի մերում թագաւորութենէ առ քեզ Թահմա'զ բէկ, զի թէ հայր քո մեռանի, թաղեա. և թէ կեցցէ, մի' կացցէ այդր, կամ գայցէ առ իս, և կամ նստցի լռիկ. և դու արա խանութիւն: Զայս իբրև լուաւ Թահմազն, իսկոյն եսպան զհայր իւր: Ոմանք ասեն՝ լարիւ խեղդեաց, ոմանք ասեն՝ եդ բարձն 'ի վերայ բե-

բանոյն, և նստաւ 'ի վերայ նորա, և շնչարգել արար, և մեռաւ։ Եւ ոմանք ասեն, իւրով մահուամբն մեռաւ 'ի խստութենէ վիրին։ Քանզի բժիշկք ոչ կարացին բուժել։ Վասնզի որքան դեղ դնէին, վէրն առաւելոյր, և 'ի կսկծոյն մեռաւ։ Թէ այսպէս և թէ այնպէս՝ բարձաւ 'ի կենաց քաջն և արին Ամիրգունա-խան խարտեաշ առիւծն. և կալաւ զտեղին՝ որդի նորա Թահմազ բէկն, և նստաւ խան՝ ծանր իշխանութեամբ։ Բայց տարակուսութիւն է ինձ սակս սորա. քանզի Առաքեալ պատմագիր՝ ասէ, թէ՝ յորժամ խոցեցաւ Ամիրգունա-խանն, որդի նորա Թահմազ-բէկն էր առ Շահն. և յորժամ լուաւ Շահն զխոցիլն Ամիրգունայ խանին, առաքեաց զորդին առ հայրն, զի պահեսցէ զերկիրն։ Իսկ 'ի լրոյ համբաւոյն՝ այն էր զոր գրեցաք, քանզի կարծեմ համբաւն յիրաւի գոլ։ Վասնզի ես մանուկ էի՝ զի ասէին, ահա Թահմազն եկն ի Վրացտանայ՝ և ի Քրտացն՝ զոր ըմբռնեցին, շղթայեալ բերին 'ի Քանաքեռ պահ եդուն։ Եւ մեզ ևս եդուն ոմն պահ Լեկիկի անուն, որ գիտէր Հայերէն. նա պատմեաց մեզ վասն պատերազմին։

## ԳԼՈՒԽ ԼԶ,

### Գնալն Օսմանցւոց 'ի վերայ Բաղդադայ։

Լուաւ թագաւորն Օսմանցւոց Մուրատ՝ թէ մեռաւ Շահ-Աբասն, և նստաւ թոռն նորա Սաֆի, և է տղայ և անարի. վասնորոյ գումարեաց զօրս, և ետ 'ի ձեռս Վազիր-Խոսրով Փաշային՝ գնալ 'ի վերայ Բաղդատայ՝ առնուլ զնա։ Եւ գնացեալ նստաւ 'ի վերայ նորա՝ բազում աւուրս, և ոչինչ կարաց առնել. դարձաւ և գնաց յԱնկբատան՝ որ է Քըրմին-Շահն, և ի Համադան, և 'ի Գարկաղին, և ոչինչ կարաց առնել. դարձաւ և գնաց յաշխարհն Օսմանցւոց, և կամեցաւ

ձմեռել 'ի Թուխաթ[47]): Եւ լուաւ Թագաւորն Մուրատ, բարկացաւ և առաքեաց զՄուրթուղայ փաշայն, և եհատ զգլուխն Խոսրով փաշային, և ինքն կալաւ ըստ'ղին:

## ԳԼՈՒԽ ԼԵ.

### Գնալն Ռոստոմ խանին 'ի Վան:

Իսկ Թագաւորն Պարսից Շահ-Սաֆի լուաւ զմարտեալն Սուլթան Մուրատին, և ինքն ևս կամեցաւ առնել՝ զոր նա արար. վասնորոյ ժողովել հրամայէ զզօրս և գնալ 'ի վերայ Վանայ: Եւ կացոյց գլուխ նոցա՝ Ռուստամ խանն, որ էր իշխան Թաւրիզոյ: Եւ իբրև էառ նա զիշխանութիւնս զայս, հպարտութեամբ առաքեաց յԵրևան առ Թահմազ-խանն՝ գալ առ ինքն, զի գնասցեն 'ի վերայ Վանայ: Իսկ Թահմազ խանն խստութեամբ ետ պատասխանի, և ասէ, ես ոչ եմ կարող գալ, նախ՝ զի ոչ ունիմ հրաման 'ի Շահէն. և երկրորդ՝ զի, Գ· կողմանէ թշնամիք գոն Երևանայ, 'ի Վրաց, 'ի Քրդաց. և յՕսմանցւոց, զիա՞րդ թողուցում զերկիրս անտէր, և զամ մտանել 'ի ծառայութիւն. և ոչ գնաց: Նաև առաքելոցն ոչ ետ շուք, և դարձան անարգեալ: Վասնորոյ անբժշկելի վիրօք վիրաւորեցաւ Ռուստամն, և ոչ գիտէր զինչ արասցէ: Քանզի ոչ եղև բանն իւր, այլ արհամարհեցաւ 'ի Թահմազէն: Եւ ինքն առեալ զօրքն՝ և գնաց 'ի Շամիրամակերտ, և նստաւ 'ի վերայ նորա. սկսաւ պատերազմիլ բազում աւուրս. և իմացաւ՝ զի ոչ կարէր առնուլ. խորհեցաւ փախչել. և հրամայեաց զօրացն սփռիլ յերկիրն, և աւար առնել զոր ինչ կարասցեն մինչև յերիս աւուրս, և յետ երից աւուրց դառնալ առ ինքն: Եւ գնացեալ զօրացն՝ գերփեցին զոր ինչ գտին, և դարձան առ

(47) Եւդոկիա:

նա։ Իսկ նա գաղտ կոչեաց զամենայն հազարապետս՝ և ասէ, դուք կոչեցէք զանխլաբար զՃ՚ապետս, և նոքա զյիսնապետսն, և յիսնապետքն՝ զտասնապետսն, և նոքա զօրաց իւրեանց, զի պատրաստ կացցեն յայս նիշ գիշերի փախչիլ միանգամայն, զի մի՛ գիտասցեն Օսմանցիքն, և եկեսցեն 'ի բերդէն, և պնդեսցին զկնի մեր, և ոճիրս գործեսցեն։ Եւ արարին այնպէս՝ Թողեալ զճրագսն 'ի վառ, զի մի՛ կարծիս առցեն Օսմանցիքն։ Եւ այնպէս փախեան 'ի միում ժամու։ Եւ 'ի վաղիւն տեսին Օսմանցիքն զփախուստ Պարսիցն, և զհետ մտեալ ոչ կարացին հասանիլ. դարձան առ հանդրուանս նոցա, և ոչ գտին ուրուք մի՝ բաց 'ի ճրագացն։ Իսկ Ռուստամն գնաց 'ի Թաւրէզ, և գրեաց զանգատ 'ի Թահմազէն, և առաքեաց առ Շահն։ Իսկ Շահն արհամարհեաց զնա, և զթղթաբերսն զանիւ արձակեաց. և ակամբ հայէր առ Ռուստամն մինչև 'ի մահ նորա։

## ԳԼՈՒԽ ԼԲ.

### Վասն Գէօլ-Խ Բերդայոյն։

Մինչդեռ կենդանի էր Ամիրգունայ խանն, այր մի Մուրատ Բէկ անուն՝ յազգէն Օսմանցւոց, փախուցեալ 'ի սպանմանէ վասն գողութեան, և գայ առ Ամիրգունա-խանն, և մեծարի 'ի նմանէ, և երբեմն լինի առաջնորդ Պարսիցն, և տանի 'ի վերայ Օսմանցւոցն. և այսպէս սիրեցաւ 'ի խանէն վասն արիութեան իւրոյ։ Եղբայր մի էր սորա՝ Ասլան աղայ անուն. սա լուաւ, թէ՝ եղբայրն իւր մեծարեալ եղև 'ի խանէն, վասն որոյ և ինքն ևս ապստամբեցաւ. և հատուածեալ ամենայն ընտանեօքն՝ և եկն առ եղբայրն. և նա առեալ տարաւ զնա առ խանըն։ Եւ երկոքեանն կային 'ի միասին առաջի նորա։ Եւ յետ Ամիրգունայ խանին նստաւ Թահմազ-ղուլի բէկն։ Եւ սա ևս սիրեաց զնոսա, և արար Մուրատ բէկն՝ երկրորդ իւր, և Ասլան

աղայն՝ վերակացու Հարկացն։ Այս Ասլան աղայն առաքեաց յերկիրն, զի գրեսցէ զգլուխս արանցն և ամենայն իրացն։ Եւ եկն նախ 'ի Քանաքեռ յաւուրս ձմերայնոյ. և կոչեաց առաջի իւր զգեղականսն՝ ցուցանել զգլուխն իւրեանց, եկն նախ Մելիքն Դաւիթ՝ և երեք Բ որդին իւր, և զորդի դստերն, և եցոյց։ Գայլին ամենեքեան որդւովք իւրեանց՝ և մտանէին 'ի գիրն։ Իսկ Հայրն իմ Մկրտիչ շալակեաց զիս զԶաքարիայս, և զեղբայրն իմ զԽաչատուր առաջի արկեալ՝ գնաց. և իբրև ետես զմեզ փոքր և կաղ՝ և թիւր ոտամբ, բարկացաւ՝ և ասէ, զառողջ որդիսն քո պահեալ ես, և զանգամալոյծքդ բերեալ ես. և հրամայեաց արկանել յերկիր 'ի վերայ երեսացն. և բերեալ ջուր թափեցին 'ի վերայ անձինն, յոտաց մինչև ցգլուխն՝ ջրողող արարին. և նստոյց այր մի 'ի վերայ գլխոյն և այր մի 'ի վերայ ոտիցն. և հրամայեաց չորից զինուորաց՝ Բ կողմամբ հարկանել. և այնքա՛ն հարին, մինչզի մորթն 'ի մարմնոյն 'ի բաց ոստեաւ, և ինքն անշնչացաւ. և համարեցին զնա՝ մեռեալ. և ապա քարշեալ զնա թաղեցին 'ի մէջ փայինի։ Եւ այր մի Բարսեղ անուն, և այր մի Ղազար անուն՝ հանին զԻ եղնգունսն. և այլ ոմն Մարուգէ անուն Երևանցի կախեցին զմիոյ ձեռանէն, և այնքա՛ն հարին, մինչև յօդուածքն ամենայն խախտեցան։ Եւ այսպէս ահ նորա տիրեաց 'ի վերայ ամենեցուն՝ մեծաւ սաստիւ։ Վասնորոյ ո՛չ մնաց ստնդեայ մանուկ՝ զոր ո՛չ ցուցին։ Եւ եթէ ծերք գային, հրամայէր երթևեկս առնել առաջի իւր. և տեսանէր, զի թէ գլուխն 'ի կոր ունէր, և Բ ձեռքն զկնի իւր տանիւր, ո՛չ գրէր. իսկ թէ գլուխն ուղիղ ունէր, և ձեռքն առաջի տանիւր, զնա գրէր։ Եւ ո՛չ ոք իմացաւ զայս։ Իսկ եթէ մանկունք գային, բերէր առասան, և շուրջ պատէր զպարանոյաւ պատանոյն, և երկուքին ծայրք պարանին դնէր 'ի բերան մանկանն, և ասէր՝ ըմբռնել ատամամբ, և օղ արարեալ տանէր 'ի վերայ գլխոյն. եթէ անցանէր զգլխովն, թողոյր զնոսա գնալ. և եթէ ո՛չ անցանէր զգլխովն, գրէր զնա. Եւ

այսպէս գրեաց զամենն յոյժ ճշտիւ՝ զմարդ, զկով, զձի, զջորի, զէշ, զոչխար, զջրաղաց, զձիթաղած, զարուեստս, զընձաղաց, զայգիս, և զպարտէզս, և այլ որ ինչ գտաւ՝ գրեաց և 'ի ներքոյ հարկի արար։ Եւ էարկ 'ի դիւան արքունի զամենայն գրեալսն։

## ԳԼՈՒԽ ԼԹ.

### Վասն Աճպարար Շահ-ղուլի բէկին։

Շահ-Աբաս Թագաւորն Պարսից՝ կարի սիրէր զքօսանս և զհնարքութիւնս։ Յաւուր միում առեալ զոմանս իշխանացն՝ գնաց 'ի բուրաստանն՝ ընթրիս առնել և ըմպել գինի. և նստեալ 'ի ներքոյ խնձորենւոյ 'ի վերայ խոտոյ, և հայեցեալ 'ի ծառն՝ և ասէ, ո՞րքան ունիցի պտուղ ծառս այս։ Ոմանք այսքա՛ն ասացին լինել, և ոմանք այնքա՛ն։ Եւ առաջի կացեալ այր մի Շահ-ղուլի բէկ անուն, որ էր սպասաւոր խոհարանին, և ասէ, Թագաւոր՝ ողջ լե՛ր, զի այսքան լիտր խնծոր գոյ 'ի ծառիս, հրամայեա՛ քաղել և կշռել. և թէ՝ մթխալ մի աւելի կամ պակաս լինի՝ զաչս իմ հա՛ն։ Եւ զայս իբրև լուաւ Շահն, սոսկացաւ. և հրամայեաց երկուց արանց՝ ելանել 'ի ծառն, և քաղել զամենայն, և ոչ թողուլ մի՛ բնաւ, և ոչ կորուսանել։ Եւ ելեալ արքըն քաղեցին զամենայն՝ և իջուցին, և կշռեցին, և կշիռն նորա որպէս և ասաց Շահ-ղուլի բէկն, մէտ մի ո՛չ աւելի՝ և ո՛չ պակաս։ Ասէ Շահն, իմաստութիւն քո միայն առ դա՞ եղև՝ թէ ամենայն իրաց։ Ասէ այրն, ո՛չ թէ դմա միայն, այլ առ ամենայն իրս. քանզի ծառայ քո է 'ի տան խոհագործացն արքունի, և զոր ինչ գայ և գնայ, ո՛չ 'ի չափ անկանի և ոչ 'ի կշիռ. և զոր ինչ ես ասեմ, այն լինի։ Եւ հրամայեաց արքայն բերել խորքով ցորեան՝ և ասէ, որքա՞ն լիտր է սա։ Ասէ այրն, այսքան լիտրր է։ Եւ չափեալ տեսին՝ այն էր՝ զոր նա ասաց։ Եւ հիա-

ցեալ Շահն՝ հրամայեաց վարել զնա յաշխարհէն. ասէ, աչք դորա չար է, զվէմս պատառէ, և զաղբիւրս խնու, և զբոյս չորացնէ։ Եւ հանեալ զնա տամբ և ամենայն ընչիւք՝ և հալածեցին։ Եւ գնալով եհաս յԵրևան. և ծանօթացաւ Ամիրգունայ-խանին. քանզի յառաջագոյն գիտէին զերեար։ Եւ Խանն կարգեաց զնա 'ի վերայ արտորէիցն՝ տեսանել որքանութիւն հինգերրորդացն, զոր ինքեանք հողարչի[48]) ասեն։ Իսկ նա ելեալ երկիրն առ 'ի հողչել, թէ գնայր 'ի վերայ արտի՝ ասէր, այսքան ցորեան գոյ աստ, և թէ 'ի վերայ դիզոյ՝ ասէր, այսքան խուրձ է, և թէ գնայր 'ի վերայ սեղ ջի՝ ասէր, այսքան լիտր է, և թէ 'ի վերայ հօտից խաշանց գնայր՝ և կամ նախրաց անդէոց՝ ասէր, այսքան փաչար[49]) է և ոչխար, և լինէր այնպէս, և ոչ վրիպիւր բնաւ։ Եւ անուանեցին զնա՝ Ամալդար-Շահ-Գուլի-Բէկ։ Եւ այսպէս եկաց նա 'ի վերայ արտորէիցն, և 'ի թուելոյ խաշանցն։ Ի կենդանութեանն Ամիրգունայ-Խանին նա էր հողաչրչի և առնողչի[50])։ Եւ յետ Ամիրգունայ-Խանին՝ եղև Խան Թահմազ-ղուլին։ Գ. Տաճիկ միաբանեցան, և դաւ 'ի մարդկանէ սպանին զնա, և ոչ ոք իմացաւ զմահ նորա. քանզի տեսին զգէշ նորա անկեալ 'ի վայրի՝ մերկ։ Եւ այսպէս բարձաւ չարն 'ի միջոյ։

## ԳԼՈՒԽ Խ.

### Թէ՝ որպիսի ոք էր Թահմազ-ղուլի խանն։

Այն ինչ՝ զոր գրեցաք 'ի սկզբաննէ պատմութեանս մինչև ցաստ, զամենայն 'ի համբաւոյ և 'ի լրոյ՝ և 'ի պատմութենէ գրոց և 'ի յիշատակարանաց էր։ Այսուհետև ականատես եմ

(48) Զգուշացուցիչ կամ հսկօղ։

(49) Տուար, խաշն, անասուն, արջառ։

(50) Փորձիչ, քննիչ, ընտիչ։

և ականջալուր մերձակայ երաց. վասնորոյ գրեմ զամենայն անվրէպ։ Նախ՝ զայս, թէ՝ որպիսի այր գոլն Ուահմազ-Խանին։ Եւ Նա գեղեցիկ պատկերօք, մեծակն, յունակից, լայնածակատ, թիկնեղ, փոքրաբերան և մանրատամն, քաղցրազրոյց, և համեղախօսք։ Իրաւարար և ուղղադատ, ճշմարտասէր և անաչառ, սիրօղ քրիստոնէից։ Օր միշտ գնայր 'ի տունս Նոցա՝ ուտէր և ըմպէր, և ոչ խտրէր 'ի զէնլեացն քրիստոնէից, և ոչ յեփոցացն։ Եւ ասէր, թէ՝ են Տաճիկք՝ զքրիստոնէից միսն ուտեն և զգինին ըմպեն, և ասեն թէ՝ քրիստոնէից զենեալն մի՛ ուտիցէք, զի մեղք է։ Եւ գնացեալ 'ի հարսանիս Գրիգորին՝ որդւոյ Պաւուլթ մելիքին, և ոչ տարաւ ընդ ինքեան բազմութիւն Տաճկաց, զի մի՛ բազում ծախսք լիցին 'ի տան մելիքին։ Այլ տարաւ ընդ իւր զՄուրատ բէկն, և զԱսլան աղայն, և զՄասում քալանթարն, և ծառայք ոմանք։ Եւ յորժամ բազմէր յընթրիս, յաջմէ և յահեկէ իւրոյ նստուցանէր զմելիք Պաւուլթն և Կարբեցի Պօղալ բէկն։ Եւ յորժամ յառնէր, յառնէին և նոքա։ Յորժամ ննջէր, ասէր, ննջեցեն ամենեքեան, և ոչ ոք մնասցէ արթուն։ Եւ այս էր սովորութիւն Նորա։ Եւ եղև՝ զի 'ի նոյն հարսանիսն 'ի տան Մելիքին՝ Նստաւ յերեկոյէ մինչև 'ի մէջ գիշերին՝ յուտել և յըմպել զուսանօք և երգօք՝ պարուք և խնդութեամբ բազմաւ։ Եւ յորժամ եհաս գինին, յարեաւ 'ի ննջել՝ և ասէ, երթա՛յք ննջեցէ՛ք ամենքեան և մի՛ ոք մնասցէ արթուն։ Եւ ինքն գնացեալ ննջեաց, և յագեցաւ 'ի քնոյն. յարեաւ և ելոյց լապտեր. և ետ 'ի ձեռն դստեր մելիքին, որոյ անուն էր Վարդայ խաթուն, և շրջէր տեսանել՝ թէ մի՛ ոք 'ի Տաճկաց լիցի արթուն։ Եւ եմուտ 'ի ներքին մառանն, և ետես՝ զի տօպրակ[51]) եղեալ էր 'ի վերայ թուղրի, և սեղան արկեալ 'ի վերայ քուրսոյն, և հաց և կերակուր 'ի վերայ սեղանին, պնակ գինւոյ և բաժակ 'ի վերայ. և Ասլան աղայն ոտքն

(51) Աթոռ, գահ. Զ) ամպիոն, բեմբ։

պարզեալ 'ի ներքոյ քուրսւոյն, և ձեռքն 'ի վերայ միմեանց եդեալ, և գլուխն 'ի վերայ ձեռացն եդեալ՝ ննջէր 'ի վերայ քուրսւոյն։ Իբրև տեսեալ զայն Խանն՝ դարձաւ յետս, և ասէ ցաղջիկն, մի՛ ումեք ասիցես ինչ. և ե՛լ 'ի մահիճս՝ և ննջեաց դարձեալ։ Իբրև էին արք երկու՝ սպասաւորք հարսանեացն՝ անուն միոյն՝ Սահրատ, և միւսոյն Խարիսան. սոքա արթուն էին՝ տեսին զայն, և երթեալ զարթուցին զԱսլան աղայն, և պատմեցին նմա զամենայն։ Իբրև յորժամ լուաւ զայս, դողումն և սարսափումն անկաւ 'ի վերայ նորա՝ և ասէ, գիտեմ զի սպանանէ զիս. սակայն թէ հարցանէ Խանն, ես զճշմարիտն ասացից։ Իբրև յարեաւ գնաց 'ի տեղի իւր։ Իբրև 'ի վաղիւն կոչեաց Խանն զտաճկունս 'ի միասին, և ասէ ցնոսա, յետ գնալոյն իմոյ աստի՝ ո՞վ մնաց արթուն։ Ասէ Ասլան աղայն, ես գնացի 'ի ներքին մառանն՝ և տեսի սպասաւորքն ուրախանային քումդ մեծութենէ, և ես եւս նստայ 'ի ներքոյ քուրսւոյն, և բազումս արարի սէր. և նիրհս կալաւ զիս, և ոչ կարացի յառնել, այլ ննջեցի 'ի վերայ սեղանին։ Ասէ Խանն, եթէ ոչ էիր ճշմարիտն ասացեալ, զգլուխ քո վերանայր 'ի քէն։ Իբրև այսպէս կայր ահարկութեամբ 'ի վերայ Տաճկաց, և սիրելով զքրիստոնեայսն.

## ԳԼՈՒԽ ԽԸ.

### Արշաւանք Խանին յաշխարհն Օսմանցւոց։

Տեսեալ զանմիաբանութիւնն Օսմանցւոց՝ որք էին 'ի Դարըս քաղաքն, քանզի երկոքին մեծամեծ Պարոնայքն՝ որք ասէին՝ Սաղ-աղասի[32]) և Սօլ-աղասի[33]), որ է յաջ և յահեակ պարոնայքն, սոքա անկան ընդ միմեանս պատերազմաւ վասն

(32) Աջապահ, աջապետ։

(33) Ձախապահ, ձախապետ։

իշխանութեան իւրեանց. և գնացին յԷրզրում առ աւագ իշխանն, որ է մեծ փաշայ, զի դատաստան արասցէ նոցա. և մնաց Դարս առանց վերակացուի: Լուեալ զայս Խանն, և ժողովեալ զօրս ետ 'ի ձեռս Թեալանթար Մասումին, և առաքեաց 'ի գաւառն Կարուց. և պատուիրեաց նմա, զի թէ քրիստոնեայ գերեսցես, խաղաղութեամբ բերցես. իսկ թէ Տաճիկ, զարս կոտորեսցես, և զէգսն գերեսցես, և զշէնսն այրեսցես և աւերեսցես: Զայս պատուէրս ետ նմա. և ինքն առեալ զմնացեալ զօրքն՝ գնաց զկողմամբքն Կաղզուանայ, և զամենայն վայրսն գերեաց և աւերեաց: Եւ եհաս մինչև 'ի հին քաղաքն Բագրևանդ, որ այժմ ասի՝ Զառաֆխանայ՝ 'ի վերայ Երասխ գետոյ. գերեաց զբնակիչսն, և քակեաց զշէնսն, և մնաց աւեր մինչև ցայսօր. և զգերիսն առաքեաց 'ի Վաղարշապատ: Եւ գնալով եհաս մինչև 'ի Կարնոյ գաւառ, և գերեաց՝ զոր ինչ եգիտ: Եւ դարձաւ 'ի Բասենոյ վերայ, և 'ի Պարտիզաձորոյ, և եկն 'ի գաւառն Կարուց, և զոր ինչ մնացեալ էր 'ի գերելոցն Մասումին, զայն ևս Խանն գերեաց: Քանզի Օսմանցիք ոչ կարացին զդէմ ունել. վասնզի Եղուզակք՝ որ է Ջալալիք՝ բազմացան 'ի փոքր Կողոնիայ Հայոց, այսինքն՝ Շապղարասար (Շապին-գարա-հիսար): Եւ հրամանաւ Մուրատ թագաւորին Օսմանցւոց՝ գընաց 'ի վերայ նոցա Փաշայն Կարնոյ, և մնաց աշխարհն անտէր: Մանայօրիկ զօրացան Պարսիկք՝ և արարին զայս ամենայն:

## ԳԼՈՒԽ ԽԲ.

### Պատմէ Շէխ-Իսլամին Մահմէտին:

Եպիսկոպոս մի Միքայէլ անուն՝ 'ի Քանաքեռոյ. այս՝ այն Միքայէլ արեգայն է, զոր 'ի պատմութեան Մեխլուին յիշեալ եմ. այր երկայնահասակ, պակասախելք, տգէտ 'ի գրոց, և ճարտար 'ի խօսս աշխարհի: Սմա եղև թշնամի Պարսիկ մի. զի ա-

72

սէր,՝ ես ազգական եմ քեզ, և զոր ինչ գոյ քեզ, զամենայն ինձ պատեհ է. զի ես Մուսուլման (Միւսլիման[54]) եմ. և օրէնքն մեր այսպէս հրամայեն։ Նա բազում անգամ հայհոյէր զՆեպիսկոպոսն՝ թաֆուր (քեաֆիր[55]) և դինսուզ (տինսիզ[56]) և Ջանըլ[57]) անելով։ Նա այսպէս կայր և կռիւ էր 'ի մէջ երկոցունցն։ Նա գնացին երկոքեանն առ դաղին 'ի դատաստան. և Պարսիկն կարծէր ինքն ճշմարիտ, զի պարծէր 'ի Թուրքութիւնն։ Նա գնացեալ կացին առաջի Շ՟խին։ Ասէ Պարսիկըն, միրզայ ես ազգ եմ մահրասիս, և եմ Տաճիկ, և զապարանս խնդրեմ 'ի ամանէ ըստ օրինացն. և սա ոչ տայ։ Ասէ Շ՟(է)խն ցՆեպիսկոպոսն, յիրաւի՞ ազգ է դա քեզ։ Ասէ Նեպիսկոպոսն, ես զդա ոչ գիտեմ, և ոչ ճանաչեմ. այլ թէ ազգ է դա ինձ, բերցէ վկայս, և հաստատեսցէ զազգակցութիւն իւր առաջի ձեր, և ինքեանց լիցի զամենայն գոյսն իմ։ Ասէ Շ՟(է)խն ցՊարսիկն, ունի՞ս վկայս՝ որ ազգ ես դմա։ Ասէ Տաճիկն, վկայն իմ՝ հաւատս իմ է։ Ասէ Շ՟(է)խն, բազումք են այդմ հաւատով, բայց ոչինչ օգնեն. և թէ ունիս վկայս՝ բերցես. և թէ չունիս, մի՛ աշխատ ունելը զոք. զի առանց վկայի ոչինչ շահիս։ Նա Պարսիկն ելեալ գնաց 'ի Վանաքեռ, զի 'ի տաճկացն Վանաքեռոյ բերցէ վկայս, և նոքա ոչ եկին, այլ անարգեցին զնա։ Իսկ Դ՟աղին գրեաց գիր, և ետ ցՆեպիսկոպոսն՝ բազում տաճկաց վկայութեամբ և կնքով. և սուտ հանեին զՏաճիկն։ Նա Նեպիսկոպոսն առեալ զղաղղեկամոյն[58]) և գնաց։ Նա յետ ամսօրեայ աւուրց՝ եկն Պարսիկն դարձեալ առ Շ՟(է)խն՝ և ասէ, վասն միոյ անվարտի սևագլխոյ զի՞ ամօթ արարեր և սուտ հաներ զիս. արդ ես տաց քեզ այսքան արծաթ, և դու արա

---

(54) Տաճիկ, հագարացի, մահմետական։

(55) Ծածկօղ, 2) հայհոյիչ, անաստուած, հեթանոս. 3) ապախտաւոր։

(56) Անհաւատ, անկրօն։

(57) Ջանըլ, սնոտի, 2) պիղծ, 3) տգէտ, ևլն։

(58) Դատավճիռ, դատաստանական վճիռ։

զբանս իմ ուղիղ։ Իսկ Պազին լուաւ նմա. զի կաշառն կուրացուցանէ զաչս դատաւորաց. և առեալ զկաշառն՝ ետ նմա գիր, և արար զնա ազգական Եպիսկոպոսին. և տանձիկն առեալ զթուղթն՝ գնացեալ նստաւ յայգի Եպիսկոպոսին։ Իսկ Եպիսկոպոսն գնացեալ առ Շ(է)խին՝ և ասէ, զի՞նչ է այս, զի բազում արանց վկայութեամբ ետուր ինձ այս շխալամայս[59]). և այժմ տուեալ ես նմա հրաման, և ահա եկեալ և նստեալ է յայգւոջ իմում։ Ասէ Շ(է)խն, ես ոչ էի ճշմարտութեամբ վերահասու եղեալ իրացն. և այժմ հաւաստեաւ ծանեայ, զի ազգական քո է նա, և ըստ օրինաց մերոց զամենայն ինչքն քո նմա պատկանին։ Ասէ Եպիսկոպոսն, յորժամ ոչ էր տուեալ քեզ կաշառս, վասն որոյ ոչ արարեր ինձ ազգական. այժմ առեր զկաշառս, և արարեր ինձ ազգական։ Եւ բարկացեալ Պազին՝ հրամայեաց ծառայիցն՝ հանել զնա արտաքս։ Եւ ծառայքն բթելով հանին 'ի պալատէն։ Եւ նա գնացեալ գրեաց թուղթ գանգատանաց 'ի Շ(է)խէն, եդ ընդ նմա Պազիլամէն, և ձեռամբ Մելիք Պաւլթին՝ առաքեաց առ Խանն։ Եւ իբրև ընթերցաւ, կոչեաց Խանն զԵպիսկոպոսն առաջի իւր, և ստուգեաց։ Եւ բարկացեալ Խանն, առաքեաց արս խստասիրտս՝ բերել զՊազին՝՝ հետիոտս և սրընթաց։ Եւ գնացեալ բերին, և կացուցին առաջի Խանին։ Եւ Խանն եցոյց նմա զՊազիլամայն Եպիսկոպոսի. և ասէ, դու ես գրեալ զայդ։ Ասէ Պազին, այո։ Եցոյց և զարզն[60]) Եպիսկոպոսի՝ և ասէ, այս ի՞նչ է։ Ասէ Շ(է)խն, ինձ թիւր ծանուցին, և յետոյ իմացայ զիրաւն։ Ասէ Խանն, կաշառն ծանոյց քեզ իրաւն, որ դու զօրինագիրն քո սուտ առնես։ Պատահեցան անդ և յայնոցիկ՝ որք կնքեալ էին Պազիլամայն՝ ասեն, մեր առաջի գրեցաւ թուղթդ այդ բազում հարցաքննութեամբ։

---

(59) Նոյն է նշանակութիւնն ընդ Ղոչիլամէի, թէպէտ և ղենպէտավճիռ թարգմանի։

(60) Խնդիր, աղերս, թուղթ աղաչանաց կամ խնդրանաց.

Ասէ Խանն, սմա զի՞նչ պատասխանի տաս։ Նա լռեցաւ Շ_(է)խն, և գոյն երեսացն այլափոխեաց։ Նա բարկացեալ Խանն հրամայեաց առնել զնա Նախտրա ժի–լահ՝ այսինքն՝ տախտակեայ պէ-տակ. և բերին մեծ և ստուար տախտակ մի, և ծակեալ զայն անցուցին ընդ պարանոց Շ_խին, և կախեցին 'ի տախտակէն բժիժս, և զանգակս և ունկունս պուտկաց, և զձետս աղուեսուց և շանց, և սատակեալ կատուս, և զչոր զանգս ամանոց, և զպատառատուն եւս զհին վարտիս կանանց, և կապեցին պարանաւ 'ի պարանոցն, և ետուն 'ի ձեռն պառաւ տաճկի միոյ, որ գնայր առաջի՝ և քարշէր զպարանն. և ծառայք Խանին ծեծէին ղամչօք[61]) և վարոցօք՝ ձայնել բարձր, թէ՝ ո՛վ ո՛ք կաշառօք առնէ դատաստան, պատիժ նորա այս է։ և գոչէր բարձր ձայնիւ՝ տաճկերէն. Հայր ժէմ դէ–անփայ օղո–ամ ալո–ր, Ջողամ պո–փո–ր փէ։ Նա Եպիսկոպոսն անուանեցին Պ_ողիղոան[62])։ Իսկ Շ_խն այսպէս նախատանօք շրջեցուցին դահօ–լօք և դաբօք[63]) շփշփելով։ Նա առին 'ի նմանէ զիշխանութիւն Շ_խութեանն. և եկաց այնպէս արհամարհեալ՝ մինչ կենդանի էր Թահմազ-Խանն։ Նա զապանումն նորա յիւրում տեղին ասասցուք։ Իսկ Եպիսկոպոսն հրամանաւ Փիլիպպոս Կաթուղիկոսին՝ նստաւ Առաջնորդ Յուշուոյ սուրբ Սարգսին. և ապա հրաժարեալ գնաց յանապատն Յօհաննու վանից, և անդ մեռաւ. և մեք 'ի նմանէ ուսաք բզպատմութիւնս, թէպէտ և մեք եւս տեսաք աչօք։

(61) Մտրակ, խարազան։
(62) Կործանող զդենպետ։
(63) Թմբկօք։

## ԳԼՈՒԽ ԽԴ.

### Վասն անուանի Եպիսկոպոսաց։

Էին 'ի ժամանակին ընդ այնու (այնմիկ) հին Եպիսկոպոսունք անուանիք և լաւք, պարկեշտք և սրբասէրք. որոց անուանք էին, Փիլիպպոս, Յովհաննէս, և Մխիթար։ Եւ ես կամիմ զվարս նոցա ուրոյն ուրոյն պատմել։ Նախ զՓիլիպպոսին. որ էր 'ի Բանաքեռոյ, և 'ի մեծ ազգէ, որք կոչէին Նուկղարենք, և ծննդեան անուն նորա ևս Նուկղար։ Եւ էր 'ի մանկութենէ՝ պարկեշտ, սրբաբերան, պահեցող, ծոմակաց, աղօթասէր, հրաժարեալ 'ի տղայական շարժմանց, միշտ գնայր 'ի դուռն վանիցն, և ունկն դնէր աբեղայիցն, և լսէր զբանս հոգևորս՝ և 'ի միտ առնոյր։ Վասնորոյ ծնօղքն նորա տեսին զնա յայնպիսի ջանս, և ետուն զնա 'ի վանս գեղջն յուսումն. քանզի արագամիտ էր և բազմաջան. վասնորոյ փութով ուսաւ Սաղմոս և Շարական, և ժամակարգութիւնն անթերի։ Եւ եկեալ 'ի վանքն Բանաքեռոյ Կաթուղիկոսն Առաքեալ, և տեսեալ զպարկեշտ վարս նորա, և օրհնեաց զնա կուսակրօն քահանայ՝ Ժ.Օ. ամաց, և անուանեաց Փիլիպպոս, որ թարգմանի բան ջահից՝ և բերան ձեռաց։ Այնպէս պարկեշտ և առաքինի վարուք պատարագէր զՔրիստոս։ Եւ կացեալ 'ի վանքն, և ոչ ելեալ 'ի վանիցն արտաքս բնաւ, մինչև յայտնեցաւ երկրորդ Լուսաւորիչն Մովսէս վարդապետն Տաթևացի. և գնաց Փիլիպպոսըն, և յարեցաւ 'ի նա. և շրջէր ընդ նմա՝ ուր և գնայր. և ոչ մեկնեցաւ 'ի նմանէ, մինչև եղև Կաթուղիկոս՝ Մովսէսն, և օրհնեաց զՓիլիպպոսն՝ Եպիսկոպոս, և առաքեաց 'ի վանքն Բջնւոյ՝ իշխել նմա. ետ 'ի նա և զԲանաքեռ՝ 'ի պատիւ նմա՝ ձեռագրով, զի մինչ կենդանի է նա՝ լիցի նմա, և յետ նորա լիցի Բանաքեռ՝ վանքին իւրոյ. և ահա կայ գիրն այն։ Եւ գընացեալ 'ի վանքն, և ժողովեաց զմիաբանս աւելի քան զ.Օ.։

Ուղղեաց նախ զկարգս հոգեւորս, զսահմանս աղօթից, և ապա զմարմնաւորս։ Նորոգեաց և զխախտեալ տանիս Եկեղեցւոյն, շինեաց և փայտեայ գաւիթ 'ի վերայ արեւմտեան դրան Եկեղեցւոյն, և զտնտեսատունն, և զխցերն. շինեաց և ձիթաղացս, և ջրաղաց, զգոմս անասնոց, և զախոռս ձիուց, և զփարախս խաշանց։ Ժողովեաց զբազում անասունս, և զխաշինս, և այլ արդիւնս բազումս։ Այլև էր աղօթասէր և երբեմն երբեմն աներեւութանայր՝ և գնայր 'ի պրակս մայրեաց, և աներկբայ մտօք աղօթէր առ Աստուած՝ օր մի և կամ երկու, և ապա դառնայր 'ի վանքն. զայս արարեալ էր սովորութիւն ինքեան միշտ։ Նոյնպէս և յաւուր մի ևս աներեւութացաւ, և կարծէին թէ՝ այսօր գայ. և յետ երից աւուրց եկն, ունելով ընդ ինքեան բուրվառ և մաշտոց. և հարցին ցնա, թէ՝ ուստի՞ գաս, զի՞նչ են այդքիկ։ Իսկ նա ոչ ասէր զարարեալն իւր։ Եւ էր 'ի վանքն պարկեշտ աբեղայ մի Ստեփաննոս անուն՝ 'ի Կոստանդնուպօլսէ. նա ասաց թէ, եթէ բազում միանձունս թաղեալ է դա. և գիտեմ՝ զի այժմ ևս գնացեալ է վասն այդմ իրաց. զի ահա ունի մաշտոցն և բուրվառն։ Եւ աղաչեցին բազում թախանձանօք՝ և ասէ, օտար ոմն մեռեալ է 'ի գլուխ վանացս, և գնացեալ թաղեցի զնա. և մեք կրկին աղաչեցաք՝ զի ասիցէ զանունն, և ցուցցէ զտեղին. և ասէ, անուն նորա՝ Մինաս է, և յայս ինչ տեղի։ Եւ մեք գնացեալ գտաք և համբուրեցաք զգերեզման երանելի Ճ'գնաւորին. և դարձաք 'ի վանքըն, և ասացաք ցԵպիսկոպոսն, թէ՝ քանի՞ ամ էր նորա անդ լինելն։ Ասէ Եպիսկոպոսն, Զ ամ էր, և ես յամենայն ուրբաթի տանէի նմա Բ հաց, և այն էր կերակուր նորա մինչև 'ի միւս ուրբաթն. և ձմեռն գայր մերձ վանացս յայսմիկ տեղի, և ես տայի հաց նմա. և յամարայնի ես գնայի առ նա։ Զայս ևս աղաչեցին նմա. որ և պատմեաց զամենայն։ Եւ այսպէս բարի վարուք կացեալ 'ի վանքն՝ բազում ամս, և յետոյ գնաց առ Փիլիպպոս Կաթուղիկոսն, և խնդրեաց 'ի նմանէ զՄովսէս

փիլիսոփայ վարդապետն, որ էր 'ի Կոտէս գաւառէ՝ 'ի Տամարաբակ գեղջէ. և բերեալ կացոյց զնա Առաջնորդ վանիցն. և ինքն հրաժարեալ շրջէր 'ի վանորայս և յանապատս՝ յաղօթից պատճառէ։ Եւ յետ Փիլիպպոսին եղև Կաթուղիկոս Յակովբ Ջուղայեցի. և տարաւ զՓիլիպպոս Եպիսկոպոսն 'ի սուրբ Էջմիածին. և կարգեաց խոստովանահայր 'ի վերայ ամենայն միաբանիցն։ Եւ կացեալ 'ի սուրբ աթոռն ժամանակ ինչ, և տըկարացաւ սակաւ ինչ. և ասաց տանել զինքն 'ի բուն վանքն իւր 'ի Բջնի, զի անդ մեռցի։ Եւ հասեալ 'ի հայրենի գիւղն իւր 'ի Քանաքեռ, և ժողովեցան գեղականքն առ նա, և ոչ թողին գնալ 'ի Բջնի. և մնաց անդ 'ի Քանաքեռ. և յետ երկուց աւուրց վախճանեցաւ. և թաղեցին առ դրանն սուրբ Յակովբ Եկեղեցւոյն։ Եւ 'ի գիշերին յայնմիկ ուրացեալ այր մի Թադէոս անուն՝ գնայր 'ի Ջրաղացն. և իբրև եհաս յԵկեղեցին, ասէ, երթամ և համբուրեմ զգերեզման պարոն Տիրին։ Եւ իբրև մերձ եղև, ետես Գ. ճրագ վառեալ 'ի վերայ գերեզմանին, և կարծեաց զգալի ճրագ լինել. և իբրև հուպ եղև, երեք ճրագքն միացան և մտին 'ի լուսանցս եկեղեցւոյն։ Իսկ ուրացօղն Թադէոս բազում եհեղ զարտասուս 'ի վերայ գերեզմանի Եպիսկոպոսին։ Եւ զղջացեալ զչար գործն, և գնացեալ 'ի Սեւան կղզին, և եղև միայնակեաց. և ապաշխարեալ և անդ մեռաւ։ Եպիսկոպոսն Փիլիպպոս կացեալ 'ի վերայ երկիր բարի վարուք՝ և փոխեցաւ առ Քրիստոս շնորհօք նորա. որում փառք յաւիտեանս։

## ԳԼՈՒԽ ԽԳ.

### Վարք և պատմութիւն Յովհաննէս Եպիսկոպոսի։

Էր սա 'ի գիւղաքաղաքէն Կարբւոյ՝ 'ի մեծ ազգէ, որք կոչէին Թամզբէնք, և այժմ ասին՝ Սահակեանք։ Եւ էր արուեստիւ՝

պատուական ամուսնութեամբ՝ ըստ Պօղոսի՝ սուրբ անկողնով, ողջախոհութեամբ որպէս՝ տատրակ, արդարութեամբ՝ որպէս զարագիլ. և մնացին նոքա որպէս զառինս 'ի միասին՝ ժամանակ ինչ. և ապա օրհնեցին զնա՝ քահանայ՝ կամօք և հաճութեամբն Աստուծոյ. և առնէր քահանայութիւն անաչառութեամբ, և ոչ հայէր յինչս և 'ի տուրս ժողովրդեան՝ ոչ ագահելով և ոչ ճնշելով. և եկաց նա ամուսնութեամբ և քահանայութեամբ սակաւ ինչ: Եւ մեռաւ ամուսինն, և մնաց Տէր Մխիթարն միայնացեալ: Եւ խորհեցաւ գնալ յանապատ ինչ: Իսկ գեղականքն արգելուին, և ոչ թողուին գնալ. վասնզի սիրէին զնա յաղագս բարի վարուցն և պարկեշտ գործոյն: Քանզի խրատէր և մխիթարէր զուղիղսն: Սաստէր և յանդիմանէր զըստահակսն: Եւ էր 'ի գիւղն այր մի գաւառապետ այնմ նահանգի, որ ասէին Մելիք Փարսադան, և էր կարի ագահ և յափշտակող, հպարտ և գոռոզ: Եւ Երէցն Մխիթար խրատէր զնա, զի 'ի բաց կացցէ յայնմ անիրաւ գործոյն, և մի՛ կեղեքէլ և զրկել զռամիկսն: Իսկ Մելիքն Փարսադան փոխանակ զղջանալոյն և դառնալոյն 'ի չար գործոյն՝ յաւել ևս ատել զպատուական երէցն զՄխիթար: Ոխայր և մախայր, և կամէր ձգել զնա 'ի փորձութիւն: Եւ երէցն Մխիթար խնդրէր պատճառս ելանել 'ի գեղջէն, և գնալ յանապատ. և ոչ գտանէր: Յաւուր միում լծեալ զերկս լուծս եզանց՝ և ծեծէր զորայն 'ի կալոն: Եւ մելիքն առաքեաց առ նա ծառայս իւր՝ և ասէ, տո՛ւր զեզինսդ քո, զի կասեցից զորայն իմ. զի ահա իջանէ անձրև, մի՛ գուցէ՝ զի թրջեսցէ զկալն: Ասէ երէցն, եթէ զքոյդ թըրջէ, ապաքէն զիմն ևս թրջէ: Ահա տեսանեմք՝ զի կասեմ, զի գոնեայ 'ի չորոյ բարձից կալս. վասնորոյ ոչ տամ զեզինս: Եւ գնացեալ ծառայն՝ պատմեաց Տեառն իւրում: Եւ դարձեալ առաքեաց կրկին անգամ՝ և ասէ, եթէ քումդ կամաւ տաքես, բարի է. և թէ ոչ, գիտեա՛ զի չարիս գայ 'ի գլուխ քո: Ասէ երէցն Մխիթար, ես իմով կամօքս ոչ տամ. իսկ թէ բռնու-

թեամբ յափշտակէ, կարօղ է առնել. զի թէ սպանցէ զիս, սպանանէ, զի մելիք է մեծ իշխանութեամբ։ Եւ դարձաւ ծառայն և պատմեաց զայս ևս։ Եւ ապա խրոխտացեալ Մելիքն՝ և բարկութեամբ լցեալ՝ որպէս որդեկոտոր արջ, և գոյնն սևացաւ որպէս զածուղ, և զայրացմամբ առաքէ զերեքեան կառավար ծառայս՝ և ասէ, գնացեալ բերջի՛ք զեզինսն այնպէս լծեալ կառասայլիւն և կառավարաւն՝ և ամենայն որ ինչ . 'ի վերայ նորա է։ Եւ գնացեալ ծառայքն արարին որպէս և հրամայեաց նոցա։ Իսկ անյիշաչարն Տէր Մխիթար՝ ոչ ըմբոստացաւ, ոչ ընդդիմացաւ, և ոչ ասաց բան խստութեան։ Այլ որպէս Պօղոսն արար, և ասէր, ասացէ՛ք ցմելիքն, գոհանամ զքէն, զի ազատեցեր զիս 'ի հոգոց աշխարհիս. ահա տուն իմ և զաւակ իմ քեզ. լիցի փոխանակ բարեաց՝ զոր արարեր առ իս։ Եւ զայս ասացեալ՝ ոչ գնաց 'ի տուն իւր. այլ գնաց 'ի դուռն եկեղեցւոյն, համբուրեաց. և զգեցաւ փակակօշիկն, և եդ գտակ 'ի գլուխն, զքծափն և զկօշիկն պատեաց 'ի փիլոնն, և անկաւ ի ճանապարհ, և ուղղեցաւ դէպ 'ի Սևան. և ոչ ոք ետես զընալ նորա. և ոչ ոք իմացաւ ուր լինելն. և ոչ ոք պատահեցաւ է ճանապարհին։ Եւ գնացեալ եհաս 'ի նաւահանգիստն Սևանայ. և ձայնեալ բերին զնաւն, և եմուտ յանապատն, և աղաչանօք պատուիրեաց միաբանից՝ զի մի՛ յայտնեսցեն ուրեք վասըն իւր։ Իսկ գեղականքն ասեն ցմելիքն, ո՞չ ապաքէն դու կորուսեր զքահանայն մեր, վասնորոյ զարիւն նորա 'ի քէն խնդրեմք։ Եւ մելիքն առաքեաց առ մերձակայ գիւղօրայս, և դարձան ունայն։ Եւ յետ ժ. աւուրց եկին միակեցունք յանապատէն՝ և պատմեցին՝ թէ տէր Մխիթարն է 'ի Սևան։ Եւ մելիքն առեալ զոմանս 'ի գեղականացն և գնացին 'ի Սևան. զմեղանս յանձն առեալ բողոքում աղաչանօք խնդրէին դառնալ. և ոչ լուաւ նոցա, այլ մնաց անդ. մշտամատոյց և մաքուր մտօք աղօթէր առ Տէր։ Եւ Կաթուղիկոսն Հայոց Փիլիպպոս լուաւ զբարի համբաւս նորա, և առաքեաց և բերին զնա 'ի սուրբ

Աթոռն Էջմիածին, և օրհնեաց զնա՝ Եպիսկոպոս, և դարձեալ առաքեաց 'ի Սևան հովուել զմիաբանսն։ Նա գնացեալ վարեաց զվերակացութիւն անպատուին բարուք կենցաղավարութեամբ. և փոխեցաւ յանմահական կեանսն, և թաղեցաւ անդէն 'ի մերում թուականիս ՌՃՂԵ և 'ի փառս Քրիստոսի Աստուածոյ։

## ԳԼՈՒԽ ԽԶ.

### Վասն ոսկերաց Ջաֆար փաշային։

Յորժամ կոտորեաց Թահմազ-ղուլի խանն զԹուրքսն 'ի դաշտին Վժանայ, ըմբռնեաց և զոմանս 'ի մեծամեծացն, և կնդեալ առաքեաց առ մեծ Շահ-Աբասն. և նա հրամայեաց մերկացուցանել և արկանել առաջի առիւծուցն՝ առս երիս՝ 'ի զբօսանս զօրաց իւրոց։ Նա ապա հարցեալ վասն Ջաֆար փաշային՝ թէ ո՞ւր իցէ դէշ նորա, և ասացին՝ թէ 'ի Թաւրէզ է։ Նա առաքեաց հանել և բերել առ ինքն. և մանրեալ զնա կացնաւ, խառնեաց ընդ գարւոյ. և աղացեալ արար ալեւր, և եփեաց հաց, և մանրեալ էարկ առաջի շանց. և կերին։ Նա այսպէս ունէր նախանձ ընդ ազգին Օսմանցւոց։

## ԳԼՈՒԽ ԽԷ.

### Գնալն Օսմանցւոց 'ի գաւառն Արարատեան։

Դարձան յԱրզրումայ պարոնայքն Կարուց՝ որք ասէին Սաղ և Սօլ աղայք[64]), և մեղադիր լինէին Շախիճան-փաշային, թէ ընդէ՞ր ոչ պատերազմեցար ընդ Թահմազ-ղուլի խանին՝ յոր-

(64) Աջապահ և ձախապահ։

ժամ եկն նա 'ի սահմանս երկրին քո։ Ասէ Շխիձանն, դուք չէիք աստ, և զօրքն իմ ցիր և ցան էին, ես որո՞վ ընդդիմանայի զօրացն Պարսից. արդ այժմ պատրաստ լերուք՝ զի մեք ևս գը-նասցուք 'ի վերայ նոցա։ Վասնզի Ամիրգունայ խանն մեռեալ էր, և որդի նորա Թահմազ-ղուլի խանն գնացեալ էր 'ի Վը-րաց աշխարհն 'ի վերայ Թամրազին։ Վասնորոյ ժողովեցան Օսմանցիքն՝ և գնացին 'ի գաւառն Շիրակայ և Նգայ, և 'ի հիւսիսոյ կողմանէ Արայ լերինն գնացին 'ի գաւառսն Կոտէից. և աւար առին զոր ինչ գտին. և եկին յՄծղուարդ գիւղ. և պատեցին զամրոց նորա. և գեղականքն պատերազմեցան ընդ նոսա քարամբ։ Իսկ Օսմանցիքն տևեցին մինչև սպառել քա-րանց նոցա։ Եւ ապա դիւրաւ առին զամրոցն, և կոտորեցին 'ի նոցանէ արս Լ, և գերեցին զորս գտին 'ի նմա՝ մարդ և անա-սուն. ըմբռնեցին ևս այր մի Ծատուր անուն, և կապեցին զձեռս յետս, և ձաղէին զնա ցուցանել զինչս. քանզի աւագ էր գեղջն։ Եւ նա ցանցեալ և խզեաց զկապն, և յերկթօքն ան-կաւ 'ի տուն մի, և հնարիւք ելեալ յառաստաղս, և ատամբ և ձեռօք ըմբռնեալ զգերանն, և եկաց 'ի կախ. և Օսմանցիքն մը-տին 'ի տունն, որոնեցին և ոչ գտին. ելին արտաքս և գնացին փախստեայ. քանզի լուան՝ թէ՝ Թահմազ խանն դարձեալ է 'ի Վրաց աշխարհէն և գայ։ Եւ շտապեալ Օսմանցիքն՝ և կամրջօքն Աշտարակու գնացին 'ի վերայ Թալնոյ յաշխարհն իւրեանց 'ի Կարս։

## ԳԼՈՒԽ ԽԲ.

### Գնալն խանին 'ի վերայ Օսմանցւոց։

Եկն ապա խանն յաշխարհէն Վրաց, և լուաւ զհնասն՝ զոր արարին Օսմանցիքն ընդ Արարատ. և փղձկեալ սրտիւ յոգւոց հանէր, և մռնչայր որպէս առիւծ։ Եւ ապա հրամայեաց զօրա-

կամս առնել 'ի Հայոց, այսինքն՝ Թուֆէնկչի. և ժողովեցան աւելի քան զՌ, յԵղուարդայ և 'ի Քանաքեռոյ, յԵրևանայ, 'ի Նորագաւթայ, յԷջմիածնայ, յՕշականոյ, յԱշտարակայ, 'ի Կարբւոյ, և 'ի Յովհաննուվանից, արք ընտիրք և կորովիք 'ի գործս Թուֆէնկի[65]. զնոսա և զօրս իւր առեալ՝ և ելեալ գնացեալ 'ի հիւսիսոյ կողմն Արագածոյ, և զտեղի առեալ անդ, և կարգեաց զգլուխ զօրացն զՄուրատ բէկն, զոր յառաջն գրեցաք. և սպասէր գնալ պատահել զօրացն Օսմանցւոց. որ ժողովեալ էին 'ի Շիրակ գաւառ՝ առ ափն Ախուրեա գետոյ, ոմանք ննջէին, ոմանք լողային, ոմանք դարմանէին զերիվարսն. և այսպէս կային յանհոգս։ Իսկ Մուրատ բէկն ելեալ 'ի գլուխ բլրի միոյ, և ձայնեաց առ Օսմանցիսն։ Իսկ Օսմանցիքն շտապեալ յարեան վաղվաղակի և հեծան 'ի ձի, և 'ի միւս կողմանէ բլրին անկան 'ի վերայ զօրացն Պարսից. և տեսեալ զնոսա Պարսիցն՝ փախուստ առեալ գնացին դէպ 'ի խանն։ Իսկ խանն նստեալ 'ի տեղի ինչ երկոտասան արամբ ըմպէր գինի, և Թուանքչիքն Հայոց շուրջ զնովաւ. և լուեալ զփախուստն Մուրատ բէկին՝ յարեան վաղվաղակի. և զգեցեալ էր զզրեհն երկաթեայ՝ որ է գէյիմ, և զսաղաւարտն եդեալ 'ի գլուխն, և զկռնապանակն 'ի թևն. և այնպէս ամրացուցեալ զինքն ամենայն պատրաստութեամբ. նոյնպէս և ունէր զգործի պատերազմին՝ զկապարճս լի նետիւք, և զթուրն՝ որ ասէին ղըլֆըղար, և լախտն, և զնիզակն, և արծաթեայ վահանն զթիկամբ, այսպէս և ազուցեալ էր զերիվարն՝ որ ասէին ղաղի գհէր, զկշտապանակն, զսրտապանակն, և ոչ գոյր տեղի՝ որ ոչ էր ծածկեալ. և այսպէս զինեալ և մղեաց ընդ դէմ թշնամեացն։ Նա Մուրատ բէկն փախստեամբ եհաս առ խանն. իսկ խանն բարկացեալ նմա՝ և ասէ, ով սեաւ էշ, դեռ ևս ունիս սիրտ առ ազգն քո. և եհար 'ի գլուխ նորա նիզակաւն՝ և ասէ, դարձի՛ր՝ զի գնամք. և գնացեալ պատահե-

(65) Թֆանկ. Բնդուքանկ, Հրացան։

ցան զօրացն Օսմանցւոց: Նա էր գլուխ զօրացն Օսմանցւոց ոմն՝ զոր ասէին Պէլալի (գուցէ Պէլ-Ալի). որ եկեալ յառաջ՝ ասէ, խանին՝ խան է պիտոյ, պարոնին՝ պարոն, ծառային՝ ծառայ. արդ ո՞վ իցէ խանն, եկեսցէ 'ի մօտ՝ զի տեսցուք: Իսկ խանն առաջ կացեալ՝ և ասէ, ես եմ խանն, եթէ ունիս ինչ ասել՝ ասա: Իսկ Պէլալին հայեցեալ ետես զխանն՝ զի ոչ գոյր տեղի ինչ բաց, բայց միայն բերանն. և զեղարդն՝ որ ունէր 'ի ձեռին՝ եհար ընդ բերան խանին, և զվերին շուրթն պատառեաց: Նա խանն մտրակեաց զերիվարն, և հանեալ զիւր թուրն՝ և եբեր 'ի վերայ ձախ ուսոյն՝ խոտորնակի եհատ մինչև 'ի ստինսն, և եհատ աջ թևն, և գլուխն 'ի մի կողմն կախ մնաց, և ձախ թևն 'ի միւս կողմն: Իբրև տեսին Օսմանցիքն՝ թէ անկաւ առաջնորդն իւրեանց, դարձան 'ի փախուստ: Նա Պարսիկք հնչեցին զփողն պատերազմի. և երիվարքն Օսմանցւոց անընտելք էին ձայնի փողոցն, խրտնեցան և փախեան. և Պարսիկքն վարեցին զնոսա մինչև 'ի դուռն Կարուց. և եմուտ արեգակն, և զգիշերն օթեցան 'ի դուռն Կարուց: Նա 'ի վաղիւն սփռեցան յերկիրն, գերեցին զոր գտին, և դարձան յԵրևան՝ ընդ ինքեանս ունելով բազում Օսմանցիս: Զայս պատմութիւնս ուսաք 'ի Պարիպ անուն Մուղտեսոյ Էջմիածնեցւոյ, յանապատն Յովհաննու վանից. զի ասէր, ես ևս էի Թոֆանկչի[66]). և առաջի պատմութիւնն լուայ 'ի Յակոբ անուն միայնակեցէ՝ յանապատն Սաղմոսավանից. և ինքն էր յԵղևարդ գեղջէ, և ինքն էր անկեալ 'ի գերութիւն Օսմանցւոց:

---

(66) Հրացանաւոր. 2) Հրացանագործ:

ԶԱՔԱՐԵԱՅ

ՍԱՐԿԱՒԱԳԻ

# ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ

ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

Ռ·ՅԻ—1870

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ԿԱԹՈՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

# ՀՐԱՄԱՆԱՒ

## Տ. Տ. ԳԷՈՐԳԵԱՅ Դ.

ՎԵՀԱՓԱՌ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ։

# ՑԱՆԿ

## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՍ.

# ԱՌԱՋԱԲԱՆ

Զոր մինչև աստ գրեցաք զպատմութիւնս Թագաւորացն պարսից՝ որք կոչին շխ-օղլի, Առեալ սկիզբն 'ի Ջհան-շահ Թագաւորէն 'ի Թուին ՌԸ մինչ 'ի Թագաւորն շահ-սաֆի և 'ի Թիւն ՌԵ ՅԳ Քրեզ Ծանուցի Թէ՛ սուտ Թէ՛ իրաւ՝ զոր լուեալ էի 'ի համբաւոյ։ Այսուհետև գրեցից զայն՝ զոր տեսի աչօք և լուայ ունկամբ 'ի ներկայումս ժամանակի 'ի կատարեալ արանց՝ Բազ բանիւ յուշ արարից ապագայիցդ։ Ի գալն մուրատ Թագաւորին օսմանցւոց 'ի յարարատ և առնուլն երևան քաղաք. Ապա գալն սաֆի Թագաւորին պարսից և առնուլն յետս զնոյն երևան։ Յիշեցուցից նաև զտառապանըս մեր՝ զոր կրեցաք, զի դուք 'ի միտ առեալ զգուշանայք, և զձերն տեսանելով մեզ ողորմիք, և լինիք ողջ յամենայնի։

## ԳԼՈՒԽ Ա.

### Վասն տանուտէր Ամիրճանին։

Այր ոմն Ամիրճան անուն, այր հպարտ և գոռոզ, ինքնահաւան և ծաղր առնող. քանզի ո՛վ ոք դնէին տանուտէր գեղջն իւրեանց Քանաքեռոյ՝ նա այպանէր և ծաղր առնէր՝ ասելով, աւերող և քակող գեղջն։ Վասնորոյ միաբանեցան ամենայն գեղականքն՝ և ասեն, եկա՛յք դիցո՛ւք զսա տանուտէր, Թերևս սանձեսցուք զհպարտութիւն դորա։ Եւ արարին այնպէս. և եդին զնա տանուտէր Քանաքեռոյ։ Եւ Մկրտիչ ոմն՝ այր ճարտար և ճոռոմաբան, գիտող լեզուացն Պարսից, ընթերցեալ էր և զաղմոսն՝ և 'ի մտի ունէր, զնա կարգեցին նա-

տար նմա, զի զոր ինչ առաւօտուր լեյի վասն գեղջն՝ ձեռամբ Մկրտչին եղիցի, և գրեսցէ զամենայն, զի մի՛ ինչ կորիցէ ընդ վայր։ Եւ կացին այնպէս միաբան՝ տանուտէրն Ամիրճան և նօտարն Մկրտիչ՝ ամս Գ. և զոր ինչ ծախիւր՝ Մկրտիչն գըրէր թուականաւն և աւուրբք ամսոյն։ Եւ եղև՝ զի յաւուր միում ժողովեալ էին մեծամեծքն գեղջն, և խօսէին սակս շահու իւրեանց։ Եւ Մկրտիչն ևս խօսեցաւ բան մի վասն օգտի գեղջն։ Իսկ տանուտէրն ըստ հպարտութեան սրտին և ըստ գոռոզութեան բարուցն՝ ցասուցեալ 'ի վերայ Մկրտչին՝ և ասէր, քեզ ո՞ ետ հրաման խօսել 'ի հրապարակի։ Ասէ Մըկրտիչն, զի՞նչ վնաս եղև խօսելն իմ, զի դու ցասնուս։ Եւ Ամիրճանն կառկառեաց զմահակն 'ի վերայ նորա՝ և հայհոյեաց զկին նորա՝ բոզ ասելով նմա։ Իսկ Մկրտիչն ոչինչ խօսեցաւ, այլ ելեալ լռելեայն և գնաց։ Ելին և բազումք ընդ նմին։ Եւ Մկրտիչն գնաց առ տագր քէնւոյն իւրոյ՝ Աղամ անուն, որ էր այր պատուական և խաղաղարար, և գանգատեաց նմա ասելն բոզ կնոջ նորա։ Եւ Աղամն խրատ ետ նմա համբերել աւուրս երկուս, զի զղջասցի և կոչէ զքեզ։ Եւ նա համբերեաց Գ. օր. իսկ Ամիրճանն ոչ կոչեաց և ոչ խօսեցաւ ընդ նմա խաղաղութեամբ, այլ առաքեաց առ նա բարկութեամբ և սպառնալեօք՝ և ասէ, առաքեա առ իս զթուղթն առևտրի։ Իսկ Մկրտիչն յետս դարձոյց զնոսա անարգանօք, և ասէր, ես նորա հրամանաւն ոչ եմ գրեալ, այլ հրամանաւ աւագաց գեղջս։ Զայս ասաց Մկրտիչն՝ և ելեալ գնաց առ Աղամն. և Աղամն ասաց, այժմ դու գիտես, արա զոր ինչ գիտես։ Եւ նա գնաց առ համախոհս իւր, որք էին Գ. արք աւագք, անուն միոյն՝ Բարսեղ՝ որ ասէին Բիսցնող, Երկրորդն՝ Սարգիս՝ որ ասէին Մոծակ, երրորդն՝ Գազար՝ որ ասէին Փալանտուզ. և միաբանեցան ընդ այլ աւագսն, և գնացեալ ժողովեցան 'ի մի տեղի. և առաքեալ կոչեցին և զտանուտէրն, և ասեն ցնա, մեք ժողովեալ եմք վասըն քո, և դու տուր զհամար տանուտէրութեան քո։ Եւ նա

լռեալ էր և ոչ խօսէր. և ասացին ցՄ.կրտիչն, ընթերցիր զգիր առևտրի ձեր։ Եւ նա ընթերցաւ զամենայն՝ զոր ինչ տուեալ էին 'ի ձեռն տանուտեառն՝ մինչև ձու մի՝ զոր գրեալ էր. և կուտեցին 'ի վերայ նորա Գ. ամաց հարկն Յհ. Թուման, և խնդրէին զհամարս։ Իսկ Ամիրճանն շարժեալ 'ի դիւէ՝ սկսաւ հայհոյել զնոսա, և ասէ, դուք զի՞նչ շուն իցէք՝ որ ես ձերով բանիւ համարս տայցեմ, այլ գնացէք և բերէք 'ի խանէն ոստիկան, զի առաջի նորա տաց համարս. և ապա դարձաւ առ Մ.կրտիչն՝ և բազում զօղանջէր ասելով, զայդ Յհ. Թումանդ՝ զոր տուեալ ես ինձ, քո կնոջ Վ.արդոյ գինն։ Եւ ապա ցասեան և գեղականքն. և առաքեցին զնոյն Մ.կրտիչն առ խանն։ Եւ նա գնացեալ խօսեցաւ ընդ խանին բերան առ բերան. քանզի վաղու ծանօթ էր նմա վասն Պարսկաց լեզու խօսելոյն։ Եւ առեալ ոստիկան մի՝ Գ.ուլ-Նազար անուն՝ բուն Պարսիկ, որ ոչ գիտէր լեզու տաճկաց, և առեալ պատուէր 'ի խանէն առնուլ զհամար տանուտէրութեան, և թէ՝ մնացէ ինչ 'ի վերայ, կախեսցես զնա՝ և բրածեծ արասցես, և առեալ տացես գեղականացն։ Եւ եկեալ Գ.ուլ-Նազարն, և կոչեաց զտանուտէրն յատեան հրապարակին՝ և ասաց, տո՛ւր զհամար Յհ. Թումանին։ Իսկ նա զոր ինչ ասաց, նոքա հաճեցան և ընկալան։ Եւ մնաց Կ Թուման, և ոչ կարաց գիտել՝ թէ՝ զի՞նչ է արարեալ. և ասէ Գ.ուլ-Նազարն, արդ հատո՛ զԿ Թումանն. և նա լռեցաւ. և ապա բերեալ կունդ եդ 'ի պարանոցն՝ և կախեաց 'ի բարձր որմէ, և Բ. կողմամբ հարկանէին՝ ասելով, տո՛ւր զԿ Թուման։ Իսկ ազգայինք նորա անկան յաղերս առ գեղականսն՝ շնորհել մասն ինչ. և նոքա շնորհեցին զԿ. Թուման, և զԿ. պահանջէին, և կախեալ հարկանէին սաստիկ յոյժ։ Իսկ նա անճարացեալ՝ ասէ, ունիմ ես Գ. որդիս, և դուստր մի գեղեցիկ, զնոսա առցէ խանն՝ և ազատեսցէ զիս։ Եւ Գ.ուլ-Նազարն իջոյց զնա 'ի կախաղանէն, և ետ 'ի պահ եղբօր նորա Առաքեալ երիցու՝ և ասէ, պահեա՛ զդա, զի մի

փախիցէ՝ մինչև գնացից ես առ խանն։ Իսկ երթեալ ծանոյց խանին զբան Ամիրճանին։ Իսկ խանն բարկացեալ՝ ասէ, միթէ զի՞մ դրամս իցէ վատնեալ, զի ես զորդիս և զդստերս նորա առից։ Արդ տացէ Թանաքեացւոց՝ և զերծցի. և դու արա որպէս ասացի։ Իսկ նորա գնացեալ կախեաց զնա. և աստ տես դու զչարչարանս նորա. զի այնքան հարին զոտսն՝ մինչ զի եղնգունքն թափեցան, և շշուկն բարձրացաւ քան զծունկն. և յաւուրս Զ՝ այնպէս ձաղէին զնա սաստիկ։ Իսկ էր յաւուրս Զատկի Յինանցն՝ 'ի չորրորդում շաբաթու. և յաւուրն եօթներորդի նորուն պատժի 'ի միջօրէ եղև ամպ 'ի ներքոյ արեգականն, և մթացաւ երկիր, և եղև որպէս գիշեր, և յամպոյն գոռումն, և ճայթմունք, և փայլատակմունք, և կայծակունք, և անձրև և կարկուտ մեծամեծ 'ի չափ ձուոյ հաւու։ Իսկ ամենեքեան՝ որք էին անդ՝ փախեան. և Ամիրճանն մնաց 'ի կախաղանին 'ի ներքոյ կարկտին։ Իսկ ապա եկեալ կին մի Խանսօլթան անուն, որ էր հօրեղբօր դուստր Մկրտչին, եհան զկապս ոտին, և եդ առաջի նորա զկօշիկն, և ասէ, երթ և փախիր։ Իսկ նա գնացեալ 'ի ջրաժան տեղին՝ որ կոչի Կրունք, և անդ պատահեալ այր մի Առաքեալ անուն, և ջարդեաց զկուռն, և գնաց փախստեամբ մինչև ցԱղստև, և զերծաւ։

## ԳԼՈՒԽ Գ.

### Գալն Մուրատ Թագաւորին յԵրևան։

Զպատմութիւնս Ամիրճանին նախ սկիզբն վասն այն եդաք՝ զի զգալն Խոնթկարին յԵրևան՝ պատճառաւ նորա լինի։ Քանզի 'ի թուին ՌՁԳ-ին եկին վաճառականք յաշխարհէն Յունաց, և ասացին խանին՝ թէ Օսմանցիքն զօրաժողովք են եղեալ, ոմանք ասեն՝ երթամք 'ի Բաղդատ, ոմանք՝ յԵրևան, և ոմանք յ[illegible]ալ. բայց զճշմարիտն մեք ոչ իմացաք։ Իսկ խանն

առէ ցաւագանին, տեսէ՛ք զայր մի՝ որ առաքեսցուք լրտես յաշխարհն Օսմանցւոց։ Եւ ասեն, թէ՝ տանուտէր Ամիրձանն կարի հմուտ և տեղեակ է այնմ աշխարհին։ Եւ խանն ասաց Բանաքեռցւոց, զի երթեալ բերցեն զնա։ Եւ նոքա առաքեցին նմա թուղթ՝ և բերին, և առեալ տարին առ խանն։ Եւ խանն ետ նմա թռչակ ճանապարհի՝ և ձի՛ և ասէ, գնա՛ ի Ստամպօլ, և իմացի՛ր՝ թէ ո՞ւր կամի գնալ Խոնթկարն, և բե՛ր մեզ պատգամս։ Եւ ել Ամիրձանն յերեսաց խանին, և ուղղեցաւ ՚ի գնալ։ Իսկ Մուրատ բէկն գաղտ ՚ի խանէն առեալ զնա և տարաւ ՚ի կայանս իւր. և ետ ՚ի նա Գ․ թուղթ կնքեալ, և երես թղթոցն գրեալ՝ մի՛ն՝ յանուն Խոնթկարին, մին՝ Վազիրին[1]), մին՝ Գազասկարին[2]), մին՝ մեծ Աֆանտուն[3]), և գրեալ էր ՚ի նոսա. թէ ես լուայ զշարժիլն ձեր, զի կամիք երթալ ՚ի պատերազմ. մի՛ այլ ուրեք գնայք, այլ եկա՛յք յԵրևան. զի ՚ի ձեռս իմում է, յորում աւուր դուք աստ մտանէք, ես ՚ի նոյն օր ՚ի ձեռս ձեր տաց զԵրևան։ Եւ ելեալ Ամիրձանն յԵրևանայ ՚ի դեկտեմբերի մուտն, և ՚ի մարտի ԻԸ եմուտ ՚ի Բիւզանդիա. յորում աւուր հանդերձեալ էին նոքա գնալ ՚ի Իլովայ վերայ։ Եւ յորժամ ետ զթուղթսն, յայնժամ հրամայեցին մունետիկաց՝ աղաղակել բարձր, թէ ամենայն ոք՝ որ լուիցէ զձայնս մեր, պատրաստեսցէ զինքն յետ երից աւուրց երթալ յԵրևան։ Եւ այսպէս բուռն հրամանաւ կազմեցին զինքեանս. և ՚ի ԻԵ մարտի ելին ՚ի Կոստանդնուպօլսէ, և յ՚ գոստոսի ՚Օ․Ն հասին յաշխարհն Արարատեան, և Ամիրձանն ընդ նոսա. և էին ՚ի Շիրակ գաւառի։ Ասէ Ամիրձանն, ես առաջ գնացեալ՝ տաց աւետիք խանին վասն գալստեան ձեր. և եկեալ եմուտ ՚ի բերդն. և գնացեալ առ խանն, և խանն հրամայեաց տալ նմա զինի.

(1) Նախարարապետ, մեծ եպարքոս, փոխարքայ։

(2) Ղազասքէր, ղազի-ասկէր, կամ օրտուքէր. մեծ դատարապետ. սպայապետ, ընդհանուր ստրատեղատ։

(3) Էֆէնտի՝ տէր, իշխան, պետ, վարդապետ։

և ապա եհարց, զի՞նչ պատգամ ունիս։ Եւ ասէ նա ի սկիզբն խօսիցն, ահա Խոնթկարն բերեալ հասուցի 'ի Շիրակ։ Ասէ Մուրատ բէկն, մեք զքեզ առաքեցաք պատգամ բերել, և դու գնացեալ և Խոնթկա՞րն բերիր։ Ասէ Ամիրճանն, ոչ ես բերի, այլ չորեքին Թուղթքն քո եբեր։ Եհարց խանն, որպիսի՞ թուղթք էին։ Եւ նա պատմեաց զամենայն մի ըստ միոջէ։ Իսկ խանն բարկացեալ եհար ոտամբ զգլուխ Մուրատ բէկին՝ և ասէ, ով սե՛աւ էշ, ես ո՛չ գիտէի՝ զի շնութիւն քո գործէր չարութիւն. և զայս ասացեալ՝ ելեալ գնաց։ Իսկ Մուրատ բէկըն ելեալ ինքնին եսպան զԱմիրճանն, և էարկ 'ի հոր աղբին։ Եւ յետ երից աւուրց եկն Խոնթկարն, և պատեաց զբերդն. և յետ Ժ աւուրց էառ զբերդն՝ և տիրեաց. և ասաց ցՊարսիկսն, ով որ զմեզ սիրէ՝ մնասցէ աստէն. և ով որ ոչ կամիցի մնալ, գնասցէ ուր և կամի։ Եւ Ջ Պարսիկք ելին՝ զի գնասցեն 'ի Գեանճայ. և գնացին մինչ 'ի անդաստանն Քանաքեռոյ՝ 'ի տեղին՝ որ կոչի Ղուանափոս. և տեսին անդ իջեալք զօրք Օսմանցւոց, անկան 'ի վերայ նոցա՝ և կոտորեցին, և աւար առին զինչսն. մինչ իմանալ Թագաւորին և առաքել զօրս 'ի վերայ նոցա, նոքա փախուցեալ գնացին դէպ 'ի Գեանճայ։ Իսկ Խոնթկարն եդ 'ի բերդն Երևանայ զքեռայրն իւր զՄուրթուզայ փաշայն ԵԺան Ռ արամբ, և ինքն գնաց 'ի Թաւրէզ։ Եւ եկն թուղթ 'ի մօրէն, թէ՝ Լատինք առին զաթոռ քո. և ելեալ 'ի Թաւրիզոյ 'ի վերայ Վանայ, և գնաց 'ի Կոստանդնուպօլիս։

## ԳԼՈՒԽ Գ.

### Սպանումն Մուրատ Բէկին։

Յետ առնլոյ բերդին՝ կոչեաց զԹահմազ - ղուլին, և անուանեաց զնա Ուսուփ փաշայ, և Մուրատ բէկին՝ Մուրատ փաշայ, և առա[illegible]եաց 'ի Ստամպօլ մինչ 'ի դրանն իւր։ Եւ նոքա

Եղեն ամենայն աղխիւ իւրեանց՝ ծառայիւք և աղախնեօք, գնա-
ցին ընդ նոսա Մասում բէկն և Ասլան աղայն, և այլք ան-
նշանք։ Եւ յորժամ հասին 'ի սահմանս Օսմանցւոց, ելանէին
մարդիկք աշխարհին տեսանել զնոսա, և ոմանք ծաղր առնէին
և հայհոյէին, և մականուն եդեալ կատականօք խօսէին։ Եւ
այն անարգանս վարկաւ ինքեան Թահմազ-ղուլին. յիշէր զմե-
ծութիւն ժամանակին իւրոյ, և զանարգանս՝ զոր տեսանէր և
լսէր, յոգւոց հանէր և փղձկէր, և ոչ կարէր առնել ինչ. և
կայր լռեալ։ Երթալով՝ գնացին և հասին 'ի պանդոկ մի, զոր
ասէին Ալաճա-խան, և անդէն զետեղ առին։ Եւ ոչ ոք միա-
բանեցաւ ընդ Մուրատ բէկին՝ և ոչ եղբայր նորա Ասլան աղայ՝
և ոչ այլ ոք. այլ ամենեքեանքն ընդ Թահմազ-ղուլուն մի-
ատեղեան հացակից և համակամ։ Իսկ Մուրատ բէկն կայր ու-
րոյն՝ իւր ծառայիւք, և կայր առ վրանաւ իւրով։ Եւ յաւուր
միում առաքեաց առ նա խանն զԱսլան աղայն՝ և ասէ, կոչեա
զսեաւ էշ զեղբայր քո՝ գայ, զի ունիմ ինչ ասել նմա։ Եւ գը-
նացեալ Ասլան աղայն՝ և ասէ, կոչէ զքեզ խանն։ Ասէ Մու-
րատ բէկն, միթէ ծառա՞յ լինիմ նմա, զի գնացից առ նա. փաշայ
մի՝ նա, փաշայ մի՝ ես. և ոչ գնաց։ Եւ եկեալ Ասլանն պատմեաց
խանին։ Ասէ խանն, կրկին կոչեա զնա։ Եւ գնացեալ դարձեալ
կոչեաց։ Եւ նա բարկացեալ՝ ասէ, փո—շմն(1). զի՞ կոչէ զիս, ես ոչ
ունիմ ինչ ասել, զի գնացից առ նա. և թէ ինքն ունի ինչ
ասել, եկեսցէ առ իս։ Եւ գնացեալ պատմեաց նմա զամենայն։
Եւ ասէ խանն ցԱսլան աղայն, ած զթուրն քո՝ ընդ մէջ քո,
և եկ ընդ իս, և զոր ինչ ասեմ՝ արա. և գնացին 'ի վրան Մու-
րատ բէկին։ Իսկ նորա ամբարտաւանութիւնն և կամապաշտու-
թիւնն իւր 'ի կորուստ եղև ինքեան, զի ոչ յարեաւ 'ի տեսա-
նելն զնա, այլ սնոտի յուսով փքացեալ նստէր։ Ասէ խանն,
սեաւ էշ՝ դու բերիր զՕսմանլուն 'ի վերայ իմ. դու աւերե-

(1) Փո—շմն. Նզովեալ մանուկ։

ցեր զերկիր իմ, դու եսուր զեկրդն իմ. դու արկեր 'ի գերու-թիւն զիս և զաշխարհս Նորա. և աճա լսեմ՝ զի ոմանք՝ Աճամ5) ասեն, ոմանք՝ տէնաղ6), ոմանք՝ գեաֆիր7) ասեն, և այլք ռաֆըզի8). և այս վասն քո շնուրթեանդ եկն 'ի վերայ իմ. և այժմ ա՛յնքան մեծ եղեր՝ որ խոտոր ես կոչես զիս։ Նա ապա ասէ ցԱպան աղայն, մուտ առ շունդ այդ. և հանեալ զաչքն՝ և պատառ պատառ արար զնա. և այնպէս կորեաւ 'ի փառս սա-տանայի. և թաղեցին զնա անդէն. և կանգնեցին 'ի վերայ Նո-րա արձան բռեայ։ Իսկ վարիչք Նոցա՝ պատմեցին զայս Խոնթ-կարին. և ասէ՝ Խոնթկարն, բարւոք արար, զի ծառայն իւր սպան։ Նա՛ եկեալ գնաց 'ի Ստամպօլ. և կոչեաց զնա թագա-ւորն՝ և ասէ, աճա երկիրդ առաջի քո, և ուր հաճի սիրտ քո՝ անդ արա քեզ բնակութիւն։ Նա նա գնացեալ 'ի կողմն Բաղ-կեդոնի՝ 'ի քաղաքն Ուսկուտար, և անդ շինեաց բնակութիւն ըստ շինուածոց Պարսիցն. և անդ եկաց մինչև ցօր մահուաննն։ Նա մահ նորա 'իտեղի նորա պատմեսցուք։

## ԳԼՈՒԽ Ե.

### Աւարումն Կարբեցւոց։

Իբրև լուաւ խանն Խահմազ-ղուլի, թէ՝ մտեալ է Օս-մանցին զալ՝ յերկիրս Արարատեան, հրաման ետ ամենայն աշ-խարհին Երևանայ ցրուել և գնալ, ուր և կամիցին՝ փախիցեն, զի Օսմանցին եկեալ աւեր տեսցէ. և ոչ կարգեաց Նոցա վա-րիչս և ասէ, ամենեքեանքն իւրեանց կամօքն գնասցեն ուր և

(5) Աճէմ. Պարսիկ։

(6) Տէնաէղ. անհաւատ։

(7) Գեաֆիր. անիրաւ։

(8) Ռաֆըզը ըէֆաֆըզը. դասալիք. 2) Հերետիկոս. Հերձուածող. 3) Հեր-ձուածապետ։

կամին։ Եւ ելին 'ի բնակութենէ իւրեանց՝ և ցրուեցան, ոմանք յաշխարհն Վ՟րաց, ոմանք յԱ՟ղուանս, 'ի Վ՟ական, 'ի Գ՟եանձայ, 'ի Խաչէն, 'ի Վ՟արանդ, և այլ ուր և կարացին։ Իսկ Կարբեցիքն ելին միահաղոյն 'ի Վ՟արդավառի բարեկենդանի շաբաթի օրն՝ և դիմեցին դէպ յերկիրն Բաշթաղու, և հասին մինչ 'ի գիւղն Ջօչէս. և անդ բնակեալ էին սեաւ վրանօք բազում տունք Քրդաց. իբրև տեսին զնոսա, և ասացին, սոքա փախստականք են, եկա՛յք կոտորեսցուք զսոսա, և կողոպտեսցուք զինչսն։ Իսկ Կարբեցիքն իմացան զխորհուրդս Քրդացն, զինեցան նոքա ընդ դէմ նոցա 'ի պատերազմ. և անկան Քուրդքն 'ի վերայ Կարբեցւոցն սաստիկ բախմամբ, և սպանին Եօ այր, զտէր Մխիթարն, զՏաթլու-Բաբն, զԳ՟աւիթն, զԳ՟իլառն և զՄ՟յվազն։ Ողի թէպէտ և Կարբեցիք ևս սպանին 'ի նոցանէ, սակայն յաղթեցան. քանզի նոքա հանգիստ էին և անաշխատ, և սոքա վաստակեալք և անպատրաստ. և կողոպտեցին զնոսա. և զկանայս մերկացուցին, և հասուցին 'ի վերջին թշուառութիւնն. և գերեցին զերիս մանկունս. և այնպէս կային մերկ և կողոպուտ. քանզի գեղականքն ևս ձեռնտու եղեն Քրդացն։ Վ՟ասնզի երկեան 'ի նոցանէ՝ զի մի՛ գուցէ և զինքեանս ևս թալանեսցեն։ Իսկ Կարբեցիք մնացին անդէն հայելով 'ի կատարածըն։ Եւ էր այր մի 'ի Կարբւոյ՝ որում ասէին Ժանտենց Միրզայ, և էր նա յայնմ աւուր 'ի Թ՟աւրէզ՝ վաճառականութեան աղագաւ: լուաւ զկողոպտումն գեղին իւրոյ, և կսկծայր յոյժ. լուաւ ևս թէ Շ՟ահն հանդերձեալ է գնալ 'ի վերայ Երևանայ. և գրեաց թուղթ գանգատանաց 'ի Քրդացն առ Շ՟ահն։ Եւ էր պատճէն այս։ Շ՟ահի ոտաց հողի յայտնի լիցի 'ի Կարբւոյ ողորմելի շինականացս։ Ողի մեզ լուաք՝ թէ Օսմանլու է գալիս յաշխարհս մեր, մեք Ղ՟զլբաշի եմք սովոր, գեղով ելանք փախանք՝ թէ Օսմանցւոցն ծառայ չեմք կարող լինել. և եկաք դէպ 'ի սահմանս քո՛յոյ տերութեանդ, զի 'ի ներքոյ ոտաց քոց կեցցուք. և հասաք ի Ջօչէս գիւղն. և անդ եկեալ Քուրդք

կողոպտեցին զմեզ, և զքաղաքս 'ի մէնջ կոտորեցին. և զկա-
նայս մերկացուցեալ խայտառակեցին. և զմանկունս մեր գերե-
ցին. և զամենայն ինչս մեր յափշտակեցին. և մնացեալ կանայք
մեր և մանկունք կան մերկ և ողորմելի։ Եւ չունիմք ոք՝ որ օգնէ
մեզ՝ բաց յԱստուծոյ և 'ի քէն. զի տէրութիւն քո խնամես-
ցէ մեզ՝ որք եմք հնազանդեալք ծառայք և կոխան ոտից Շա-
հին. ողջ լեր։ Եւ առեալ զթուղթս այս միրզայն՝ և գնաց
ընդ առաջ Շահին. և ողորմութիւնն Աստուծոյ յօգնութիւն
եհաս. զի առեալ Շահն զթուղթն ընթերցաւ, և եհաս 'ի
վերայ իրաւանցն. և առաքեաց բազում զօրս 'ի վերայ Պարսա-
ցըն. և ետ պատուէր ասելով՝, մի՛ ողորմիք նոցա. եթէ ուղ մի
առեալ են 'ի Հայոց, առցեն ուղտս. փոխանակ հաւին՝ ձիս
առցեն. և ամեն մի սպանելոց առցեն Ժ. թուման. փոխանակ
խայտառակեալ կանանցն՝ խայտառակեսցին կանայքն նոցա։
Երդ զոր ինչ և պատուիրեցի ձեզ՝ արասջի՛ք անպակաս։ Եւ
Պնուրաքն այնոքիկ էին դաւանութեամբ Օսմանցւոց. վասն
այն այսպէս անդութեամբ պատուէր ետ Շահն 'ի նախատինս
ազգին։ Եւ ընկալեալ զպատուէրս զայս զօրականացն՝ գնացին
նախ առ Կարբեցիսն. և նոքա եկեալ և անկան յոտս զօրակա-
նացն, լային գոչալով՝ և աղաղակէին, և ցուցանէին զմերկու-
թիւնս իւրեանց։ Իսկ զօրականքն գրեցին զամենայն՝ զոր ինչ
մնացեալ էին առ քրիստոնեայսն։ Եւ ապա եկեալ գնացին առ
Պնուրասն։ Տեսէ՛ք այժմ և լուարո՛ւք՝ զի ոչ մնաց չարիս՝ զոր
ոչ արարին Պնուրաքն առ Կարբեցիսն։ Եւ ոչ մնաց փոխարէ-
նըն՝ զոր ոչ ընկալան 'ի զօրականացն բազմապատիկն։ Պանդղի
կալան զարսն Պարսացն ամենայն, և կապեցին զձեռս յետս ա-
մենեցուն, և ձաղէին անողորմ. և զկանայս նոցա ապականեցին
խայտառականօք. յափշտակեցին և կողոպտեցին զինչսն և զստա-
ցուածսն, և թափուր արարին յամենայնէ։ Եւ ապա կոչե-
ցին զԿարբեցիսն, և բաժանեցին առ նոսա զինչս Պարսացն. և
զգերեալ մանկունս յետս դարձուցին. և զարեան գինն սպանե-

ըոց առին ինքեանք. այլ և զաղջկունս զոմանս՝ զորս գեղեցիկ էին՝ ի Պարսաց գերեալ և տարին առ Շահն։ Եւ այսպէս եղև զբաւ գործոյն. և Միայրին անդէն Կարբեցիք՝ մինչև էառ Շահն զԵրևան. և ապա դարձան և եկին, և բնակեցան ՚ի գիւղն խուրեանց Կարբի։

## ԳԼՈՒԽ Զ.

### Գալն Շահին յԵրևան։

Եւ յորժամ եղև Թուականն մեր ՌՁԵ, զօրաժողով արար Թագաւորն Պարսից Շահ-Սաֆի իբրև Ճ՛Ռաց. այլ արուեստաւորս և զվաճառականս աւելի ՚քան զպատերազմօղ զօրսն. և եկեալ նոքօք՝ և եկն ՚ի վերայ Երևանայ. և յաւուր չորեքշաբաթի պահոցն սուրբ Յակոբայ՝ պատեցին զբերդն. և նստան ՚ի վերայ նորա երեք ամիս. և ողորմութեամբ Աստուծոյ ոչ եկն ձիւն և ոչ կաթ մի. և յամենայն կողմանէ գոյր (գոյին) դարմանք և պիտոյք զօրացն. վասնորոյ անհոգ էին յամենայն կողմանէ, և խաղաղութեամբ նստէին. և թագաւորն տաճկաց Սուլթան Մուրատ իբրև լուաւ. եթէ յամեցաւ պատերազմն և ոչ առին զբերդն, առաքեաց յօգնութիւնս բերդին զոմն փաշայ՝ որ ասէին Քօռ-Խազինատար՝ բազում զօրօք. և իբրև եհաս յԱրզրում, յանկարծակի եկն ձիւն բազում՝ սաստիկ յոյժ, և ոչ կարացին շարժել զօրքն Օսմանցւոց. և հրամայեաց Քօռ-Խազնատարն սուխրայ հանել՝ այսինքն կոռ՝ առ ՚ի պեղել զձիւնն, և բանալ ճանապարհ զօրացն. և զոր ինչ ՚ի ցերեկի պեղէին, գիշերն (՚ի գիշերին) լնոյր հոսանն. բազումքս չարչարեցան, և ոչ եղև օգուտ ինչ։ Ասէ Քօռ-խազինատարն, Աստուած է օգնական Ղզլբաշին, և մարդ ոչ կարէ ընդդիմանալ նոցա. և դադարեցին ՚ի գործոյ. և ՚ի մեծ պահոց միջնոց Գ. շաբաթին առին զբերդն։ Քանզի Մուրթուզա

փաշային՝ որ տէր էր բերդին, իբրև ետես՝ զի ոչ կարացին ընդդէմ կալ զօրացն Պարսից, առեալ զդեղ մահու՝ և մեռաւ. և որք ի բերդին էին՝ ետուն զբերդն. և Պարսիկք տիրեցին բերդին: Եւ Շահն հրաման ետ Օսմանցւոցն գնալ ուր և կամին: Եւ նոքա առին զդէշն Մուրթուզայ փաշային, և ելին 'ի գնալ: Իբրև գնացին կէս աւուր ճանապարհ, նենգաւոր ազգն Պարսից գնացին զկնի նոցա, և կոտորեցին զնոսա, և յափշտակեցին զինչսն. և մնացեալքն առին զդէշն Մուրթուզին, և փախեալ գնացին յԷրզրում: Եւ Շահն ետ զերկիրն Երևանայ Ղալղալի խանի. և ինքն առեալ զՇխիճան փաշայն, զՄայմուն փաշայն, զԻպրահիմ փաշայն, և գնաց յԱսպահան. և առաքեաց զփաշայսն յԱնուշ բերդն, զոր ինքեանք Դախայղալա ասեն. անդ մնացին, և անդ մեռան:

## ԳԼՈՒԽ Ը.

### Պատմութիւն կատապաշտ տանն:

Մինչ էր Շահն յԵրևան, հրաման ետ քակել զբերդն Մակուայ, և զբնակիչսն գեղին բերել յԱրարատ 'ի գաւառն Կոտէս, և բնակեցուցանել 'ի գիւղն Գամրէզ. և արարին այնպէս: Եւ է նոյն գեղէն Մակուայ՝ այր մի բարեպաշտ և երկիւղած քրիստոնեայ՝ Կիրակոս անուն՝ Բ որդւովքն Յովհաննիսիւ և Սափարաւ եկն 'ի Բանաքեռ, և բարեկամացաւ տան հօր իմոյ, և բնակիւր առ մեզ: Երբեմն երբեմն երթայր 'ի վաճառականութիւն, և գայր. և էր ճարտարաբան և կարի խելօք: Եւ յաւուր միում ժողովեալ էին 'ի տան մերում արք գեղջականք, և խօսէին վասն սղութեան հացի: Իսկ Կիրակոսն պատմեաց բան ինչ: Թէ ժամանակ մի եղև սղութիւն հացի 'ի գիւղն մեր Մակու. և 'ի նահանգի մերում ոչ գտանիւր ցորեան: Եւ ասացին մեզ, թէ՝ յերկիրն Խոյայ ցորեան առատ է. և

մեք արք չորք ելաք դրաստօք և դրամօք՝ և գնացաք ՚ի գիւղ մի՝ և հարցաք վասն ցորենոյ. և ասացին մեզ, թէ՝ գոյ ցորեան յայս ինչ տան. և մեք գնացեալ գտաք զտունն, և տուաք ողջոյն. և նոքա զողջոյնն մեր ոչ ընկալան. և մեք հարցաք զտանուտէրն, թէ ունիցի ցորեան վաճառելոյ: Ասէ այրն, ունիմք: Եւ մեք ասացաք, տո՛ւր մեզ ցորեան ՚ի գնոյ. և տուաք նմա զդրամին. և նա առեալ զդրամն և ելից զքուրձսն մեր ցորենօք. և ինքնին լարեաց: Եւ ապա եդ առաջի մեր հաց. և մեք ասացաք, օրհնեցէք զԱստուած: Իսկ այրն բարկացեալ սաստկութեամբ՝ և եբարձ զհացն՝ և ասէ, զո՞վ կամիք օրհնել, զայն՝ որ ոչ առնէ բարի ումեք. և թափեալ զցորեանն իւր ետ ՚ի մեզ զքուրձսն և զդրամն մեր. և ասէ, ելէք և կորէք ՚ի դրանէ մերմէ: Եւ մեք կարծեցաք, թէ՝ գեղականքն ամենեքեան այսպէս են. և ելեալ գնացաք լռելեայն: Եւ յետ աւուրց դարձեալ պակասեցաւ ցորեանն, և վշտացաք ՚ի սովոյ. և ապա ասացաք մեք, եկա՛յք դարձեալ գնասցուք յայն գիւղ՝ առ այն այր, և ոչ տացուք ողջոյն. և թէ տացէ հաց, լռելեայն կերիցուք, և անուն Աստուծոյ մի՛ յիշեսցուք. և առեալ ցորեան և դարձցուք: Եւ մին յառաջին ընկերաց իմոց՝ և Բ այլ ոք՝ և ես ելեալ և գնացաք ՚ի գիւղն, և հայեցաք զտուն առնն. և ահա վիհ մեծ՝ սաստիկ խոր և լայն, և հիացեալ զարմացաք, եթէ զի՞նչ իցէ այս: Եւ ապա հարցաք ցկին ումն, թէ ո՛ մայր, կայր ՚ի գիւղս այս մեծատուն ոմն՝ որ վաճառէր ցորեան, ո՞ր է տուն նորա. և նա ձեռամբ ցուցեալ զվիհն՝ ասէ, այս է տուն նորա: Եւ մեք հարցաք զպատճառն: Ասէ կինն, դա Աստուած մեր ո՛չ պաշտէր. այլ ունէր ինքեան Աստուած պղնձի, և զնա պաշտէր. և բազմացան դմա ամենայն ինչք՝ թէ շարժուն և թէ անշարժուն. և տայր դա հարկս բազումս իշխանին. վասն այն ոչ ոք կարող էր ասել ինչ դմա. ոչ խօսէր ընդ ումեք, ոչ մըտանէր ՚ի հրապարակս, ոչ առնէր առևտուր ընդ մեզ. և ոչ տայր ողորմութիւն ումեք. և հայհոյէր զմեզ և զԱստուածն

մեր։ Վասնորոյ բարկացաւ Աստուածն մեր 'ի վերայ Աստուծոյ նորա, և 'ի միում գիշերի եղև թեթև շարժ, և ոչ ումեք եղև վնաս ինչ և ոչ կորեաւ հաւ մի. և 'ի վաղիւն տեսաք կործանեալ տունդ, և ո՛չ մնաց դմա կենդանի և ոչ հաւ մի։ Եւ մեք լուեալ զայս փառս մատուցաք Աստուծոյ արդարադատին՝ ասելով, որպէս արդար եղիցիս 'ի բանս քո, և յաղթող 'ի դատել քում։

## ԳԼՈՒԽ Բ.

### Սպանումն Շէխ-Խալիլին։

Որպէս յառաջն ասացաք, թէ՝ Միքայէլ Եպիսկոպոսն Գա-նաքեցի՝ Թախտա-քուլահ ետ առնել զՇխ-Խալամն՝ և զշըխութիւնն հատանել, և այնպէս կայր արտաքսեալ։ Եւ եղև գալ Խոնթկարին և առնուլ զԵրևան. հրամայեաց զօրացն Պարսից գնալ ուր և կամին։ Իսկ Շէխ-Մահմատս այս ոչ գընաց ընդ զօրացն Պարսից, այլ մնաց աստէն. և գնացեալ առ գլխաւորսն Օսմանցւոց, և էառ 'ի նոցանէ իշխանութիւն Շըխութեան։ Եւ յորժամ էառ Շահն զԵրևան՝ և ետ անդ իշխան զԲաղպալի խանն, և Շխ-Մահմատն վարէր զշխութիւնըն, և եղև վէճ ընդ երկուց տաճկացն. և գնացին նոքա առ Շէխն 'ի դատաստան. և Շէխն առեալ զկաշառս 'ի նոցանէ՝ ուրոյն ուրոյն, և թիւրեաց զդատաստանն։ Իսկ Տաճիկքն միաբանեցան, և ժողովեցին բազում Պարսիկս 'ի վերայ ինքեանց, և գնացեալ առ նա՝ և քարամբ և փայտիւ հարեալ սատակեցին զնա։ Եւ ազգականք նորա աղաղակ բարձին առ խանն. և խանն կամեցաւ ըմբռնել զնոսա. և նոքա ասացին, սա սունըլ- (սիւնլիւ) էր, վասն Օմարին և վասն Օսմանին աղօթս առնէր. և մեք վասն այն սպանաք զնա։ Եւ թողլ ետ խանն՝ և ոչինչ արար. և այնպէս բարձին զնա 'ի միջոյ։

## ԳԼՈՒԽ Թ.

### Առումն Մաղասայ Բերդին։

Թագաւորն Յունաց Մօրիկ էր ազգաւ Հայ՝ յԱրարատ գաւառէ՝ յՕշական գեղջէ. և բարւոյ պատահեալ Թագաւորեաց 'ի Կոստանդնուպօլիս ամն ԽԲ։ Սա առաքեաց 'ի Հայրենի երկիրն իւր 'ի Հայս՝ այր ոմն Հայ ազգաւ՝ Մաղաս անուն՝ շինել քաղաք մի յաշխարհին Հայոց յանուն իւր։ Եւ նա երթեալ՝ գտանէ տեղի մի 'ի Շիրակ գաւառի՝ մերձ 'ի յԱնի հարաւակողմն՝ 'ի վերայ Ախուրեան գետոյ՝ 'ի մէջ երկուց լերանցըն է տափարակ տեղի, որ Գ. կողմն բարձր քարափք էին. և յարևմտեան կողմն փոքր ինչ դիւր և սակաւ ինչ զառ ի վայր. և հաւանեալ տեղւոյն՝ պարսպեալ զայն, և կախեալ դուռն՝ անուանեաց Մաղասաբերդ։ Եւ մինչ գոյր իշխանութիւն աշխարհիս 'ի ձեռն քրիստոնէից, տիրեցին քրիստոնեայք Մաղաս բերդին։ Եւ յորժամ անկաւ երկիրս 'ի ձեռն Պարսից, տիրեցին և Մաղասայ բերդին մինչև յաւուրս մեր։ Եւ 'ի մերումս ժամանակի տաճիկ ոմն՝ դաւանու և Դեամբն Օսմանցւոց՝ կեղծաւորեալ 'ի կերպ Կարմրագլխոց, զգեցաւ մորթ, և անուանեաց զինքն օրինապահ, որ է Ադբալկամ Դարւէշ։ երբեմն երթայր 'ի Կարբի, և երբեմն գնայր 'ի Մաղասաբերդ։ Եւ այսպէս երթևեկութեամբ ծանօթացաւ Սուլթանին Մաղասայ բերդին. և հաւատարմութիւն ցուցեալ՝ մինչզի զբանալի բերդին հաւատացին տալ նմա։ Եւ եղև գնալ Սուլթանին յԱրեւան, որ էր ինքն ազգաւ Խօզչալու, և եթող 'ի բերդն զորդին իւր։ Իսկ դաւրիշն ևս էր 'ի բերդին. և յաւուր միում առաքեաց առ փաշայն Կարուց՝ և զեկոյց նմա՝ թէ յայս նիշ գիշերի եկայք դուք 'ի դուռն բերդիս, և ես տաց զսա 'ի ձեռս ձեր։ Յորժամ լուան զայս Օսմանցիքն՝ խնդացին. և պատրաստեցան արք Մ, և 'ի պայմանեալ գիշերին կազմեցին զինքեանս,

և ելեալ գնացին փութագնաց երիվարօք մինչ 'ի բերան ձորոյն. և իջեալ կապեցին զերիվարսն անդ, և ինքեանք հետիոտս ընթացան անմռունչ մինչ 'ի դուռն բերդին։ Իսկ անիծեալ առդալն կայր 'ի վերայ պարսպին և հայէր. և ետես զզօրս Օսմանցւոցն. և զի 'ի ձեռին ունէր զբանալի բերդին, եբաց զդուռն՝ և եմոյծ զնոսա 'ի ներս, և կալան զորդի Սուլթանին, և գերեցին զորս 'ի նմա էին։ Իսկ կին Սուլթանին իբրև ետես՝ զի առին զբերդն, պատեաց զերեսն իւր փակեղամբ, և ընկէց զինքն 'ի բարձր քարանցն 'ի վայր՝ և մեռաւ. և այսպէս անկաւ քաղաքն 'ի ձեռս Օսմանցւոց մինչև ցայսօր։ Եւ լուեալ զայս խանըն Երևանայ, և կալեալ զսուլթանն՝ եհան զմորթն 'ի տիկ, և ելից խոտով, և առաքեաց առ Շահն։ Եւ ինքն առաքեաց զօրս առ կողմն Վրաստանայ, և բերեալ բազում աւարս և գերիս թուով Ճ՛Խ։ Այս եղև ի ՌՁԻԵ թուին։

## ԳԼՈՒԽ Ժ.

### Գնալն Խանին յԵրևան։

Յորժամ առին Ղարսեցիք զՄաղասաբերդ, առաքեցին զաւետիս արքային իւրեանց Սուլթան Մուրատին։ Եւ հրամայեաց թագաւորն, զի տայցեն բերդն առողի նորին՝ որդւոց յորդիս. և է այնպէս. և կոչի Խաթուն-օղլի։ Եւ ինքն Սուլթան Մուրատ առեալ զզօրս իւր աւելի քան զՁՌ, և գնաց 'ի վերայ Բաղդատայ։ Եւ առաքէ Շահ Թաթար 'ի Վաֆայոյ յԵրզրում առ Վանան փաշայն, և պատուէր ետ նմա ժողովեալ զմերձակայ փաշայքն զօրօք, և գնալ 'ի կողմն Պարսից՝ առնել աւար և գերութիւն։ Եւ նա ժողովեաց զամենայն՝ որպէս և էառ հրաման, զփաշայն Կողոնիոյ՝ որ է Շապղարասար, զփաշայն Գարունոյ՝ որ է Հասան-ղալայ, զփաշայն Կարուց, զՍաֆար փաշայն Ախլցխոյ, և ժողովեցան աւելի քան զԽ. և եկին

'ի վերայ երկրին Արարատայ, և հասին մինչ 'ի գաւառն Կոտէկից. գերեցին և աւար առին զոր ինչ գտին։ Իսկ խանն Երևանայ լուեալ զայս՝ ժողովեաց զզօրս իւր յոյժ սակաւ, և ելեալ յառապարն հանդէպ Բռնաքերոյ՝ անկոխ տեղեաւ գնաց 'ի վերայ զօրացն Խամսելացւոց. և գնացեալ մինչ 'ի գետ լոռ և անցին զԲուրաստան գետ, որ ասի Զանկի. և երիվարք նոցա պապքեալք էին 'ի ծարաւոյ, արբին ջուր և ծանրացան. և գնացին մինչ 'ի վեր աւերակ գեղջն՝ որ կոչի Պտղունս, և հարան ընդ միմեանս։ Իսկ գոչեցին Խամսելացիքն քաջաձայն աղաղակաւ՝ և անկան 'ի վերայ Պարսիցն, և ոմանք զհետ եղեն խանին՝ և հարին զնա լախտիւ՝ որ է Թօփուզ. և փախեաւ խանըն և ամենայն զօրք իւր։ Իսկ 'ի փախչելն խանին՝ վաստակեցաւ ձին և մնաց, և ոչ կարէր գնալ. ոմն Պարսիկ Ռխուղաթ-բէկ անուն՝ էջ 'ի ձիոյն, և նստոյց զխանն 'ի ձի իւր, և փախոյց. և ինքն կալեալ զերասանակ ձիոյ խանին՝ և քարշեալ 'ի տեղի ինչ՝ թաքեաւ, զերծաւ։ Իսկ խանն միով չոխրաւ[9]) մազապուրծ եղեալ անկաւ 'ի բերդն։ Իսկ Խազարացիքն հալածեցին զԱարմրագլուխսն, զոմանս սպանին, զոմանս գերեցին, և զոմանս կիսամեռ արարին. և ինքեանք սփռեցան զերկրաւն անահ և աներկիւղ։

## ԳԼՈՒԽ ԺԸ.

### Ըմբռնումն Աբլխայր խանին։

Այր ոմն ուժեղ և յաղթանդամ, լայնաճակատ և հաստաթաղուկ, քաջասիրտ և յաղթող 'ի պատերազմի՝ Աբլխայր-խան անուն, և կորովի 'ի նետաձգութիւնս։ Սա իբրև ետես՝ եթէ

(9) Շոխրք, չոխեր, ազատաւոր, ծառայ, 2) Թիկնապահ 3) յառաջընթաց. ուղեցոյց։

փախստեաւ խանն, իջեալ 'ի ձիոյն՝ և թաքուցեալ ղկապարճն՝ որ է քէշի, և ձգէր նետ դէպ 'ի Օսմանցիսն. և յետս նահանջեաց գնոսա՝ մինչև փախստեաւ խանն. և մի 'ի նետիցն յերկիր ոչ անկաւ, այլ հարաւ 'ի մարդ և 'ի ձի: Իսկ յորժամ պակասեցաւ նետն, ձայնեաց ասելով, բերէք քէշս. յայնժամ կարեցաւ լար աղեղանն՝ և եզարկ յերկիր՝ և ասէ, ող և հաց զաչս քո տացէ Պօլպալի խա՛ն: Զայս ասացեալ՝ կապեաց զձեռս 'ի սրտին, և ասէ, առարէք ընդ իս ո՛րպէս և կամիք: Իսկ ամն անանուն այր եկեալ՝ կալաւ զնա: Իսկ եկեալ ամն իշխան կամէր խլել 'ի նմանէ. և էր կագ 'ի մէջ նոցա: Իսկ գնացին առ փաշայն. և եհարց փաշայն՝ և ասէ ցԻշխանն, թէ ո՞վ կալաւ զքեզ: Ասէ Իշխանն, այս Անանուն այրս: Իսկ փաշայն ետ 'ի ձեռս նորա՝ և առաքեաց առ խոնթկարն: Իսկ գնացեալ մնաց անդ. և ոչ գիտեմք՝ զինչ եղև:

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Փախուստ Թահմազայն:

Զկնի փախչելոյն Պարսից՝ սփռեցան Օսմանցիքն զամենայն երկրաւն. և փաշայն գնացեալ զօրօքն մինչ 'ի գիւղն Նորք, և անդուստ հայէին 'ի բերդն, զքօանուծին: Իսկ ապա ընտրեցին Ր Թաթար և Յ Օսմանցի՝ Ռ գլխաւորօք, և առաքեցին 'ի գաւառն Գառնւոյ. և պատուիրեցին նոցա, թէ՝ այսօր և վաղն աւար առէք զերկիրն, և 'ի վաղուեան երեկոյին գայք մերձ 'ի բերդն՝ 'ի տեղին՝ որ կոչի Տաշ-քէսան, որ է Վարահանք, և մեք եւս գամք անդ, միացցուք 'ի դաշտն Շարուրայ 'ի Սատարակ և 'ի Վէթի. և ամիս մի շրջեսցուք յաշխարհիս Արարատեան: Իսկ գնացեալ նոցա ըստ պատուիրելոյ փաշային, և ինքն Ջանան փաշայն միացեալ զօրօքն սփռեցան և տարածեցան զերկրաւն. և գնացեալ 'ի վերայ գաղթա-

կանայցն Քանաքեռոյ՝ 'ի գլուխ ամրոցին՝ որ կոչի սուրբ Սարգսի այր, և ըմբռնեցին զՍարգիս երէցն՝ և Ի․ արք Վարդան և Սահակ. և այսպէս կային անհոգութեամբ: Իսկ Նախախնամօղն Աստուած ոչ ետ թոյլ խռպառ աւերել երկրիս: Քանդէ էր այր մի 'ի մէջ զօրացն Հագարացւոց՝ Պարսկազէն, և անուն նորա Մասում աղայ: Սա այն Մասում աղայն է՝ որ էր յԵրևան Քալանթար. զոր՞ և Թահմազ-ղուլին ընդ իւր առեալ գեղեցյան և գնացին է Ստամպօլ. և այժմ էր ընդ Քանան փաշային: Սա իբրև ետես զհայրենի երկիրն իւր՝ զի աւերէին, կսկծայր և մրմռայր և ոչ գիտէր՝ թէ զի՞նչ արասցէ: Եւ ահա օգնութեամբն Աստուծոյ ըմբռնեցաւ նա այր մի քրիստոնեայ 'ի Կոտէս զաւառէ, և ուրախ եղև յոյժ. և եդ 'ի բերան նորա բան՝ և ասէ, ես տանիմ զքեզ առ փաշայն, և դու ասա նմա, թէ՝ Ոստամ խանն ՃԻՍ արամբ եկն 'ի դուռն բերդին, և ահա գան 'ի վերայ ձեր. զայս ասա և մի՛ երկնչիր: Եւ առեալ տարաւ առ փաշայն. և 'ի հարցանելն փաշային, զնոյն պատասխանեաց՝ զոր ուսոյց Մասում աղայն: Եւ ապա հրամայեաց զօրացն փաշային, թէ՝ ամենեքեան գլուխ ձեր զերծուցէք. և որք լուանն՝ թողին զառ և զաւար՝ և փախեան յիւրաքանչիւր դէմս իւր՝ ուր և կարացին: Եւ ապա գրեաց Մասումն թուղթ մի այսպէս. Ո՛վ խան, զոր ինչ ասիցէ քեզ Հայդ՝ լուիցես: Եւ կնքեալ ետ զթուղթն ցՀայն. ասաց և զանուն իւր. և պատուիրեաց նմա, թէ՝ ահա յայսմ երեկոյիս 'ի մթանալն՝ Ը֊ Թաթար գան 'ի Տաշ-քէսան տեղին, ասա ցխանն, թէ որս ձեր են նոքա. ջանացարո՛ւք և մի՛ երկնչիք, զի անկար են: Եւ արձակեաց զնա՝ և ասէ, փութա և տուր զթուղթդ՝ և ասա նմա զոր ինչ պատուիրեցի քեզ: Եւ առեալ զթուղթն, սրընթաց եհաս 'ի բերդն՝ 'ի մտանել արեգականն. և ետ զթուղթն ցխանըն Պարսից, և (ասաց) զպատուէր Մասումին և զփախուստ Օսմանցւոցն: Եւ իբրև լուաւ զայս, հրամայեաց մնետկաց աղաղակել, թէ՝ ամենայն ոք՝ որ լուիցէ զձայնս մեր՝ զգեցցի

զգեստ պատերազմի հանդերձ զինուք, և հեծցի 'ի ձի, և գնաս-
ցէ 'ի Բարահանքն. զի յայսմ երեկոյ պատերազմ մեծ է ընդ
թաթարսն։ Իսկ որ ոք ոչ գայցէ զիրս կատարել, զգլուխ նո-
րին հատանիր։ Իսկ աղաղակեցին 'ի մէջ բերդին և դրանն. և որք
լուանն՝ ելին յարևելեան դուռն բերդին, և խումբ առեալ գը-
նացին 'ի Բարահանքն։ Իսկ էր նսեմացեալ օրն. և զի (գուցէ ո՛չ)
տեսանէին զմիմեանս, բայց ճանաչէին զիրեար. գումարեալ էին
անդ և զօրքն թաթարաց. յորժամ հուպ եղեն միմեանց, կար-
ծեցին թաթարքն՝ զօրք Օսմանցւոցն գոլ. և ձեռամբ արարեալ
ձայնէին՝ գնալ առ նոսա։ Իսկ էր Օսմանցի մի հաւատուածեալ
տամբ իւրով 'ի Կարուց, և անուն նորա Ուզուն-Ալի, և էր
այժմ ընդ խանին. սա ետես զթաթարսն՝ և ասէ, երթիցո՛ւք և
անկցո՛ւք 'ի վերայ նոցա, զի --- [10]) են մեզ։ Ասէ խանն, գուցէ
բազումք իցեն, և ո՛չ կարիցեմք յաղթել նոցա։ Իսկ բարկացեալ
Ուզուն-Ալին՝ ասէ, այդ անուամբդ առնես խանութիւն Երևա-
նայ։ Իսկ գնացեալ ըմբռնեաց Ի թաթար, և բերեալ առ խա-
նըն՝ ասէ, ահա քեզ նշան զզօրութենէ թաթարացն։ Իսկ ապա
սրտապնդեալ խանն հրամայեաց հնչեցուցանել փող պատե-
րազմին, և անկան 'ի վերայ թաթարացն. զորս կոտորեցին, զորս
ըմբռնեցին, և զորս հալածեցին. կալան և Ի գլխաւորս նոցա։
Իսկ այսպէս եղև զբաւ գործոյն. կարծեմ թէ ի Ը_իցն՝ Ռ՛
հազիւ զերծեալ փախեան։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

Բաղդոնեան առն միոյ։

Փախեան Օսմանցիքն 'ի սուտ համբաւոյ Հայուն. և այք ե-
բեք ոչ իմացան զփախուստ նոցա, այլ գնացեալ անկան յար

(10) Ալ. որս։

գլիքն Ռուինջ գեղջն, և ժողովէին վասն ինքեանց միրգս. և զի թնաւ ոչ էր անկեալ 'ի ձեռս նոցա աւար ինչ, և տեսանեն՝ զի այր մի երթայր միայն 'ի ճանապարհս իւր դէպ 'ի Զագավանք գիւղ, և երեքեանն տեսին զնա, և ելեալ յայգեացն ծպտեցան զկնի առնն. և այրն տեսեալ զնոսա՝ փախս էառ. և տաճիկքն երիվարօքն զկնի նորա վարէին զնա. և այրն ոչ գտեալ տեղի փախստեան և գնացեալ եմուտ 'ի ներքոյ ջրաղացի մի՝ որ ասեն Ցրտօն: Իսկ նոքա եկեալ 'ի ներքուստ նիզակաւ խթէին, թերևս նիզակն 'ի նա հարեալ վիրաւորեսցէ, և 'ի կսկծոյն ելցէ արտաքս. և նիզակն ոչ հարաւ 'ի նա, և ոչ ել արտաքս: Իսկ նոքա գնացեալ թողին զջուրն 'ի վերայ նորա, զի վշտացեալ ելցէ. և ոչ նովաւ կարացին հանել զնա: Եւ դարձեալ հատին զջուրն՝ և զմի յինքեանց առաքեցին 'ի ներքս՝ հանել զնա: Իսկ Հայն քաջացեալ յարեաւ 'ի վերայ նորա, և ըմբռնեալ կոխեաց զնա 'ի ջուրն, և նստաւ 'ի վերայ սրտին՝ և խեղդեաց: Եւ ապա բարբառէր նոցին լեզուաւ՝ և ասէ, ընկեր մի 'ի ձէնջ ևս եկայք. զի սա ուժգնակի գոլով՝ և ես ոչ կարեմ յաղթել սմա. և եմուտ միւսն ևս: Եւ զնա ևս կալեալ և խեղդեաց 'ի ջուրն, և եդ քարինս 'ի վերայ սրտից նոցա. և հանեալ զմի 'ի թևոց կնդոյ ջրաղացին՝ և ելեալ արտաքս և եհար թևովն զգլուխ տաճկին՝ որ պահէր զերիվարսն, և խելագարեալ անկաւ: Իսկ քրիստոնեայն Պաւլթայ նման արարեալ՝ եհան զսուսերն նորին, եհատ զգլուխ նորա. և մտեալ 'ի Ցրտօնն, և զդէշս նոցա քարշեալ արտաքս՝ և եհատ զգլուխս նոցա. և մերկացուցեալ եդ 'ի վերայ միմեանց զդէշն. և առեալ զգլուխս և զերիվարսն՝ և գնաց առ խանն: Իսկ խանն զամենայն ինչսն տաճկացն ետ նմա. և զնա ազատ արար մինչ ինքն խան էր:

## ԳԼՈՒԽ ԺԴ.

Միւս փախչողին մեր տան:

Միւս ևս քաջութիւն այլումն պատմեցից: Զի յորժամ փախեան Խանթարքն, ամենայն ոք՝ որք ժողովեալք էին 'ի դու-ռըն բերդին յահէ Օսմանցւոցն, գնացին 'ի տունս իւրեանց. ընդ որս և այր մի 'ի Փարաքար գեղջէ՝ ասէ ցընտանիս իւր, դուք առ սակաւ սակաւ եկեսջիք, և ես ձեպով գնացից. զի դրունք տանց մերոց 'ի բաց թողաք, մի՛ գուցէ ոք մտանէ 'ի տունն մեր, և զհաւերն տարցէ: Նա և գնացեալ մտանէ ի տունն, և ահա գայ ձայն շշնչանաց. և որոնեալ զտունն՝ ոչ տեսանէ զոք: Նա և բացեալ զխուփ թոնրին՝ տեսանէ Բ Օսմանցի 'ի մէջ թոնրին. և արձակեալ զգօտի իւր՝ կապեաց զձեռս նոցա յետս 'ի մէջ թոնրին, և եհան զնոսա: Նա և ասէ ցնոսա, ո՞ւր են երիվարք ձեր: Ասեն նոքա, վաստակեցան և ոչ կարացին գալ, թողաք 'ի բաց: Իսկ այրն առաջ արկեալ զնոսա՝ և գնաց 'ի բերդն: Նա և ահա խանն ելեալ 'ի բերդէն գնայր 'ի զառիվայրն կամրջին. անդ եկեալ այրն հանդերձ տաճկօքն՝ պատահի խանին. և յետ բազում հարցանելոյն՝ ասէ, դուք ուստի՞ էք: Ասեն, 'ի Կարուց: Իբրև լուաւ՝ թէ 'ի Կարուց են, հրամայեաց սպանանել զնո-սա. և զհատուածս գլխոց նոցա ես տեսի աչօք իմովք:

## ԳԼՈՒԽ ԳԵ.

Նա՛ա փախչողին երկուց մանկանց:

Չև ևս էին փախուցեալք Օսմանցիքն 'ի սուտ համբաւոյն, ըմբռնեալ էին երկուս մանկունս 'ի Կոտէից. և 'ի փախչելն իւ-րեանց կապեալ զմանկունս (մանկանց) զձեռս յետս՝ և առաջի արկեալ վարէին զնոսա. և հասեալ 'ի գիւղն Արծնի՝ 'ի գլուխս բարձր քարանցն՝ որ ասի Գժուարադէմ, ասեն մանկունքն

ցմարիչսն, արձակեցէք զձեռս մեր, զի մի՛ նեղիցուք. քանզի փախչել եւս ոչ կարեմք. վասնզի մին կողմն քարափն է՝ եւ մի կողմին ջուր։ Նոքա արձակեցին զձեռս նոցա։ Իսկ մանկունքն միաբանեալ՝ գնացին մինչ 'ի գլուխ քարին, յիշեցին անուն Աստուծոյ, եւ անկան 'ի քարանցն 'ի վայր՝ եւ մեռան։ Յաղագս Գից իրաց ընկալան կամաւ իւրեանց այնպիսի դառն մահ. նախ՝ զի զերծցին յանառակ պղծութենէ. երկրորդ՝ զի քրիստոնէութեամբ մեռցին՝ քան թէ ուրացութեամբ կեցցեն։ Վասնորոյ ոչ վարկպարեղի համարիմ զմահ սոցա։ Նմա պսակակից Մ. Ժիլոնի Նազիսկապոսին, որ անկաւ 'ի բարձանց՝ եւ մեռաւ վասն այնպիսի գործոց. եւ Ս. կուսանքն՝ որք անկան 'ի գետն վասն Քրիստոսի, եւ մեռան։ Նոյնպէս եւ սոքա կատարեցան երանելի մահուամբ։ Նու էին 'ի ձոր անդր որք թագուցեալք, եւ ետեսին զանկանել մանկանցն, մնացին մինչեւ 'ի միւս վաղիւն. եւ եկեալ բարձին զնոսա, եւ տարեալ 'ի գիւղն Սրճնի թաղեցին։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

### Նահատակութիւն Գազըր անուամբ Ճիւղէ.

Ի փախչելն Թաթարաց յերեսացն Պարսից՝ Ի Թաթար դը-նացին փախստեամբ մինչեւ 'ի գիւղն Նորաքաղաքիթ. եւ էր մթացեալ օրն։ Նու Գազարս այս եկեալ 'ի տանէ իւրմէ. երթայր առ դրացիսն՝ բերել հրատ 'ի տուն իւր. եւ պատահի երկուց Թաթարացն, որք իջեալ 'ի ձիոցն՝ կալան զնինն եւ հանին 'ի ձին. եւ նա անկաւ 'ի վայր. եւ դարձեալ հանին 'ի ձի. եւ նա դարձեալ անկաւ. եւ երրորդ անգամ նստուցին զնա 'ի ձի. իսկ սըրբոյն կինն դարձեալ անկաւ։ Իսկ տաճիկքն ձանձրացեալ, քանզի եւ երկիւղ կայէին 'ի Պարսիցն, վասնորոյ սրախողխող արարին զերանելի կինն Գազար, թողին կիսամահ եւ փախեան։ Նու Պարսիկքն պատահեցան նոցա, զմինն սպանին, եւ միւսն կա-

լեալ տարին։ Նա կինն մնաց աւուրս Ն. և եկեալ քահանայք հաղորդեցին զնա. և յետ երկուց աւուրց հանգեաւ 'ի Քրիստոս։ Սա կին էր առն միոյ՝ որ ասէին Սեաւ-Զաքարիա, 'ի նոյն գեղջէն Նորագաւթայ, որ գայր 'ի վաճառականութենէ. և աւազակքն սպանին զնա Բ ընկերօք ի Մուշաղբիւր գիւղ։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### Վասն Գալոյ Երէխայրէն։

Օսմանցիքն մինչդեռ կային խաղաղութեամբ, և աւար առնէին զերկիրն, աւար առին և զգիւղն Արծնի. թէպէտ մարդիկքն գաղթեցան, սակայն անասունքն ամենայն աւար առին, և ոչ մնաց ուլ մի։ Եւ էր 'ի գիւղն այր մի՝ Գաւիթ անուն՝ որ էր տանուտէր գեղջն, և ունէր նա ազնիւ ձի մի՝ կապուտ գունով, բարձր հասակաւ, լայնամբակ, երկայնապարանոց, փոքրագլուխ, և արագաքայլ. ուսուցեալ էր և լեզու, և անուն եդեալ էր նմա Գ—ռ. և զոր ինչ Գաւիթն ասէր, ձին իմանայր։ Այս ձիս եւս տարին, և անկաւ 'ի ձեռն Գարսեցւոյ միոյ. և էր տուն նորա արտաքոյ բերդին. և յամենայն օր հեծնոյր այրըն զձին, և գնայր 'ի զննին, և ուրախանայր վասն արագընթացութեանն։ Եւ յաւուր միում ըստ սովորութեանն հեծաւ զձին, և ելեալ 'ի զբօսանս, և դարձաւ 'ի տուն, և եմուտ 'ի բակն բուրեանց. իջեալ 'ի ձիոյն՝ եարկ զերասանակն ընդ թամբօքն, և մտեալ 'ի տուն՝ ասէ ցծառայն, երթ անղթամբ ձիոյն։ Եւ ելեալ ծառայն ետես՝ զի ձին ելեալ 'ի բակէն՝ և գնայր խաղաղիկ։ Իսկ ծառայն ընթացաւ, զի կալցէ. և ձին փախս առեալ դէպ յարեւելս, և ծառայն երթեալ պատմեաց տեառն։ Եւ այրն հեծաւ յայլ ձի՝ և գնաց զկնի նորա. իսկ ձին արագագոյն զընթացն՝ և ոչ կարաց հասանել նմա. դարձաւ յետս։ Եւ իմաստուն ձին յայնմ գիշերի գնացեալ Զ

աւուր ճանապարհ՝ եհաս 'ի գիւղն Արծնի, և եմուտ 'ի բակն իւրեանց: Իսկ մայրն Գուլթի նստեալ 'ի գիշերին՝ զի երթիցէ յեկեղեցին առ 'ի յաղօթել, և տեսեալ զնա ձին՝ վրնջէր՝ և զոտսըն հարկանէր յերկիր. և կինն դարձաւ 'ի տուն՝ և պատմեաց որդւոյն: Իսկ Գուլիթ ել արտաքս, և ձին որպէս բանական արկեալ զպարանոցն ընդ ուսովն Գուլթին՝ անդադար վրնջմամբ աղաղակէր: Իսկ 'ի լուսանալ առաւօտուն ժողովեցան ամենայն գեղականքն, և ասեն ցԳուլիթն, տա՛ր զձին առ խանն, և պատմեա նմա: Իսկ առեալ զձին՝ տարեալ եցոյց խանին, և ասաց պատճառն: Իսկ խանն ասաց, քո արդար վաստակն եկն 'ի ձեռըս քո, առեալ գնասցես: Իսկ մի՛ ոք ծաղր արասցէ զմեզ. զի վասն այն գրեցաք, զի անասունք սիրեն զտածիչս և զտէրս իւրեանց, և մարդիկ ոչ իմանան զերախտաւորս իւրեանց, որպէս 'ի մերում ժամանակի եղեալ աբեղայքն: Քանզի յետ երկուց ամսոցն յիւրում գերութեան փախեաւ ձին՝ և եկն առ տէր իւր. իսկ մեք Ռ օր ոչ պահեմք 'ի մտի զերախտիս տէրանց մերոց: Իսկ տաճիկն՝ որ զձին տարեալ էր, յետ աւուրց ինչ եկն յԱրծնի. ետես զձին, և տեղեկացաւ՝ զի 'ի նոյն գիշերին որ փախեաւ՝ եկն 'ի գիւղն Արծնի: Այնուհետև եղեն սիրելիք միմեանց Գուլիթն և տաճիկն:

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Հաշտութիւն երկուց Թագաւորացն:

Սուլթան Մուրատ թագաւորն տաճկաց գնացեալ էառ զԲաղդատ 'ի ձեռաց Պարսից. և մինչ էր 'ի Բաղդատ, անդուստ առաքեաց դեսպան առ թագաւորն Պարսից Շահ-Սաֆի, զի արասցեն խաղաղութիւն 'ի մէջ իւրեանց: Իսկ Շահն ևս առաքեաց դեսպանս առ Խոնթքարն՝ այր մի որ ասէին Ջաղաթա-Քօթուկ-Մահմատ խան. և արարին հաշտութիւն և

րոյ մեր 'ի պատերազմ։ Իսկ երանելի վարդապետն ոչ կարէր ուղղակի խօսել տաճկերէն. և խօսի թարգմանաւ՝ և ասէ, ես իւղավաճառ եմ, ով որ գնէ յինէն իւղ՝ դրամով գնէ. և ով որ ոչ գնէ, ոչ տայ դրամ։ Ասէ փաշայն, Եթէ վաճառական ես, ապա ընդէ՞ր հայհոյես և անիծանես զմեզ։ Եւ առ այս բան ասէ վարդապետն, ոչ է այդ գործ իմ։ Եւ ապա հանեալ զԻ մոմըն 'ի ներքուստ փիլոնին՝ և պարզեաց առ փաշայն։ Իսկ փաշայն ձգեալ զձեռն եառ զմոմն. յայնժամ շնորհօք սուրբ Հոգւոյն լուցաւ մոմն՝ և վառեցաւ 'ի ձեռն փաշային։ Եւ սոսկացեալ փաշայն՝ և սարսափմամբ ասէ ցվարդապետն, երթ գնա 'ի տեղին քո։ Եւ երանելի վարդապետն խոնարհութեամբ երկիր եպագ, ել արտաքս։ Եւ փաշայն ասէ ցարսն, զի՞նչ է այս զարմանքս։ Ասեն արքն, սքանչելիք բազում լինին դովաւ. վասնզի սուրբ է և արդար։ Եւ հրամայեաց փաշայն դարձուցանել ըզվարդապետն՝ և ասէ, Բաբայ[13]) տեսանես՝ զի երաշտութիւն է, և ոչ գայ անձրև, և չորացաւ ամենայն երկիր. եթէ կարող ես՝ բեր անձրև։ Ասէ վարդապետն, ողորմութիւնն Աստուծոյ բազում է. բայց տաճիկք ոչ թողուն զմեզ աղօթել ըստ օրինաց մերոց։ Ասէ փաշայն, ես տաց քեզ վերակացու, և ով որ հակառակեսցի՝ սպանցեն զնա. և դու աղօթեա ըստ քում օրինաց։ Եւ եդ ընդ նմա Ժ զինուորս, և պատուիրեաց նոցա՝ թէ ով որ ընդդիմակաց լիցի դմա՝ սպանէ՛ք զնա։ Եւ ապա ելեալ յերեսաց փաշային՝ գնաց յեկեղեցին՝ որ ասի Միաբանից Աստուածածին. և հրամայեաց ամենայն եկեղեցականաց զգեստաւորիլ. և ինքն ևս զգեցաւ զգեստ Պատարագին. էարկ զիւրեաւ զ[illegible]փորոնն և եդ 'ի գլուխն զԽագն, և էառ 'ի ձեռն զԽաչն. և ելեալ յեկեղեցւոյն. Խաչիւ և Աւետարանաւ, ծնծղայիւք և զանգակաւ, և սկսան շարական ասել, **Սուրբ Աստուած Հայր անսկիզբն**։ Եւ գրոհ տուեալ քաղաքն ամենայն՝ ելին 'ի հիւսիսոյ կողմն քա-

(13) Պապա, Հայր։

ղաքին՝ որ ասի Սուրբ Նշանի բլուր. մինչ գնացին երգելով դշաւրականն, սկսաւ ամպել օդն. և մինչ հասին 'ի սահմանեալ տեղին, սկսաւ ցօղել։ Եւ իբրև ընթերցան աւետարանն՝ Օչ որ-ոյէ փոյլոյն, Պ. (երիցս) գոռաց ամպն։ Եւ յորժամ սկսան թափոր, սահանք երկնից բացան, և իջին անձրևք յորդ. և մինչև աւարտել թափորին՝ եղև ղաշտն իբրև զծով։ Եւ ապա դարձան յեկեղեցին՝ ասելով. ,, Թագաւորչէ այէ տէր յաւի-տեան,,։ Եւ մտեալ յեկեղեցին՝ ասաց, Խնդրէացուք Հաա"։ Պահպանէաւ"։ Եւ յորժամ զայս Բ. աքանչելիքս ետես Փաշայն, կալաւ զչարախօսն Մինաս, և եառ 'ի նմանէ Ռ. Մաղչիլ[14]) ՝ ասէ, խրատ լիցի քեզ զի մի' այլ չարախօսութիւն առնիցես։ Զայս պատմեաց Յովհան վարդապետ Կարնեցի՝ որ էր աշակերտ նոյն Մինասին։

## ԳԼՈՒԽ Ի.

### Նահապետութիւն Գալուստ Երէցուն։

Յորժամ եղև հաշտութիւն 'ի մէջ երկուց թագաւորացն Պարսից և Տաճկաց՝ երթևեկութեամբ Գաղաթայ-Քօթուկ-Մահմատ խանի, թագաւորն Շահ-Սաֆի ետ 'ն պարգևնմա զխանութիւնն Երևանայ. զի մեռեալ էր Քալպալի խանն 'ի թուին ՌՉԲ։ Ի սորա երկրորդ ամին եկն այր մի կնաւ իւրով 'ի Բասենայ, և բնակեցաւ 'ի Կոտէս գաւառ՝ 'ի գիւղն Նորախուս։ Եւ կլինն այն ծնաւ որդի, և ետուն զնա մկրտել Գալուստ երիցուն. որպէս ծնունդ քրիստոնէի մկրտեաց, և ոչինչ եառ 'ի նոցանէ վասն աղքատութեան նոցա. այլ ետ նոցա Ժ. Բ. լիտր ցորեան, զի հաց արասցեն իւրեանց։ Եւ յետ աւուրց ինչ եկին հայր և եղբայր կնոջն՝ և ասեն ցայր նորա, դու զաղ-

---

(14) Մի մաղչիլն է մի դահեկան, որ է իբր 6 $\frac{1}{2}$ կոպէկ.

ջիկն մեր առեւանդ արարեալ՝ փախուցեալ եկիր աստ, ղուղուկն(15) ընդէ՞ր գողացայք և բերիք ընդ ձեզ։ Եւ նոքա ուրացան և ասեն, ո՛չ գիտեմք զոր ասէքդ։ Եւ ՚ի բազում ասելն և ՚ի լսելն՝ և նոցա ուրանալն, ձանձրացան արքն, և գնացեալ գրեցին գիր գանգատանաց ՚ի փեսայէն և յաղջկանէն իւրեանց, և ետուն խանին։ Եւ կոչեալ զնոսա՝ ասէ, տո՛ւք ՚ի դոսա զինչս իւրեանց։ Իսկ նոքա՝ զի վատնեալ էին, ոչ կարացին հատուցանել, տանկացան այրն և կինն, և յաւելին չարիս՝ մատնել զԳալուստ երէց, թէ մեք վաղուրենն կամէաք տաճկանալ, Գալուստ երէցըն ոչ եթող. այլև մկրտեաց զորդին մեր. և ետ մեզ կաշառ՝ ցորեան, և ասէ, ես պահեմ զձեզ, և դուք մի՛ տաճկանայք, զի մի՛ կորիցէ հոգի ձեր։ Եւ խանն առաքեաց արս խիստ՝ և բերին զանմեղ քահանայն, և կացուցին առաջի նորա։ Ասէ խանըն, դու ընդէ՞ր ես մկրտեալ զորդի Թուրքիս։ Ասէ երէցն, ես զնոսա ոչ գիտէի՝ թէ Թուրք իցեն. զի նոքա աղաչեցին ինձ, և ես որպէս օրէն էր մեր՝ արարի առ նոսա։ Քանզի բազումք ՚ի Քրիստոնէից տաճկանան, նոյնպէս և դոքա տաճկացան, և մեք զի՞նչ մեղաք։ Ասէ խանն, ապա ընդէ՞ր ես տուեալ դոցա ցորեան և կաշառ։ Ասէ երէցն, մի՞թէ ողորմութիւն տալն կաշառ իցէ, զի սովորութիւն է քրիստոնէից՝ տալ ողորմութիւն ամենեցուն ըստ հրամանի Աւետարանին մերոյ։ Ասէ խանն, զայդ ասելով կամիս զերծանի՞լ յինէն, ոչ է այդպէս. կամ տաճկացի՛ր՝ և կամ չարչարանօք սպանանեմ զքեզ։ Ասէ երէցն, Աստուած մի՛ արասցէ թողուլ ինձ զհաւատն իմ. բայց թէ առանձ յանցանաց սպանանես զիս, պատրաստ եմ ՚ի մեռանել։ Ասէ խանն, զի՞նչ յանցանք իցեն մեծ քան զայս՝ որ ծընունդ տաճկին քրիստոնեայ արարեր։ Ասէ տէր Գալուստն, ասացի՝ թէ ես ոչ գիտէի զնա տաճիկ, և թէ՝ գիտենայի զնա տաճիկ՝ ՚ի գալ նորա ՚ի գիւղն մեր՝ ոչ թողուի մտանել մե-

(15) Եղուկ. ինչք, մեծութիւնք։

լորեւոյն այնմիկ առ ուղիղ հաւատն մեր։ Եւ բարկացեալ խանն՝ հրամայեաց ձաղանօք տանել զնա 'ի բանտ։ Եւ առաքեաց (Ի Մ––ղըէ[16])՝ և ասէ, խրատ տուք՝ թերևս կարիցէք դարձուցանել։ Եւ գնացեալ խօսեցան ընդ նոսա բազում մարմնական բանիւք։ Իսկ երանելի քահանայն Գալուստ տղէտ էր 'ի գրոց գիտութենէ. այլ աշխարհօրէն բանիւ յանդիմանեաց զնոսա՝ և ասէ, առաջնորդն ձեր 'ի դժոխս ամենայն համախոհիւք խւրովք ընդ սատանայի, և զի՞ս ևս հրաւիրէք առ նա գնալ։ Եւ բարկացեալ Ֆօշնայքն[17])՝ և ելեալ հարին զնա ոտամբ. և գնացեալ պատմեցին խանին։ Եւ առաքեաց խանն զօրականս, զի կապեսցեն զձեռս նորա յետս, և տարէք 'ի դուռն արևմտեան՝ և քարկոծ արարէք։ Եւ գնացեալ չար զինուորքն՝ և հանին զնա 'ի բանտէն. և առաջի արկեալ տանէին զնա 'ի տեղի սպանմանն, մերթ 'ի քարշ, մերթ 'ի յոտին, ոմանք հարկանէին, և ոմանք կռփահարէին, ոմանք ձաղէին և ոմանք խթէին, ոմանք փետէին զմօրուսն և ոմանք զգանգուրսն, ոմանք թքանէին զերեսն, և ոմանք հայհոյէին, ոմանք նախատէին և ոմանք չար խրատ տային, վասն որոյ ձանձրացեալ սուրբ քահանայն Գալուստ՝ սկսաւ նախատել զառաջնորդս նոցա՝ ասելով, անիծեա՛լ լիցի նա՛ և ընդունօղ նորին, և ով որ զնա մարգարէ դաւանէ։ Եւ ապա ասացին բերել քրիստոնեայս, զի քարկոծեսցեն զնա. և փախեան ամենայն քրիստոնեայք։ Եւ նոքա կալան այր մի՝ Բօշայ ազգաւ, և ասացին նմա, հա՛ր զդա քարամբ՝ զի մեռցի։ Եւ նա ոչ եհար։ Եւ եդին 'ի ձեռն նորա զծայր չուանին՝ և ասեն, քարշեա՛ զդա. և ոչ կալաւ զչուանն. և հարին զԲօշայն ա՛յնքան՝ մինչև եղև կիսամահ. և թողին զնա։ Եւ յարեան 'ի վերայ երիցուն՝ որպէս գայլք մարդախանձ, և քարկոծեցին զերանելին Տէր Գալուստ. և կատարեցաւ բարի դաւանութեամբ 'ի Քրիստոս. և էր մթացեալ զօրն, թողին զնա 'ի մէջ քարանցն՝

(16) Կարդացող · օրինագէտ.—(17) Մօլլա, օրինական, օրէնսգէտ։

և գնացին։ Եւ պահապանք պարսպաց բերդին Տաճկունքն տեսին 'ի վերայ մարմնոյ սրբոյն որպէս կայծակունք հրոյ, և կարծեցին՝ թէ նենգաւոր տաճկունք այրեն զմարմինն նորա, և ձայնէին առ խանութպանսն՝ և ասէին, զի՞նչ է՝ զոր առնէք։ Եւ նոքա ասեն, լոյս է և ոչ հուր։ Եւ 'ի լուսանալն՝ գնացեալ բերդապահացն՝ և պատմեցին խանին։ Եւ ասաց խանն, ես բռնութեամբ առաքեցի զերէցն յարքայութիւնն Աստուծոյ։ Եւ հրամայեաց քրիստոնէից բառնալ զնա և թաղել ըստ օրինաց իւրեանց։ Վասնորոյ եկին բազում քահանայք և ժողովուրդք, բարձին զմարմինն՝ և զքարինս և զհողն արենաշաղախ, և տարեալ թաղեցին յանապատն Երեւանայ մերձ Անանիա առաքելոյն։ Կատարեցաւ սուրբ քահանայն Գալուստ 'ի թուին ՌՉԺ՝ յաւուրս Քառասնորդաց պահոցն, յաւուրս Տեառն Փիլիպպոսի Կաթուղիկոսի Հայոց։

## ԳԼՈՒԽ ԻԸ.

### Հալածանքն Ջօրհնէից։

Մեծ և առաջին թագաւորն Պարսից Շահ-Աբաս քշեաց զաշխարհս Հայոց, և տարեալ բնակեցոյց յաշխարհին Պարսից։ Բայց ըստ հաճոյիցն առնէր ազգին քրիստոնէից. շինէր եկեղեցիս յամենայն տեղիս. և սահմանեաց յամենայն ամի յառաջի իւր Ջօրհնեք առնել։ Այսպէս ուսան ամենայն խանորայք՝ ուր լինէր քրիստոնեայք, բերէին առաջի իւրեանց, և օրհնէին ջուր։ Ըստ սոյն սարասի և այս Քօթուկ խանս հրամայեաց Փիլիպպոս Կաթուղիկոսին, զի արասցէ Ջօրհնէք հանդիսաւոր առաջի իւր։ Եւ գրեաց թուղթ մեծ Հայրապետն Փիլիպպոս. և ժողովեցան ամենայն վանօրէից Առաջնորդք և միաբանք, և գիւղօրէից երիցունք, զի ամենայն պատրաստութեամբ գայցեն 'ի կատարել զհրամանս իշխանին։ Եւ ըստ հրամանի մեծ Կա-

Թուղիկոսի ժողովեցան 'ի Կըոնկելոյ Չոր գետ, որ այժմ ասի Զօրագետ։ Եւ մտին 'ի պատարագ. և խանն էարկ վրան 'ի ներքոյ կամրջին. և նստեալ մնայր գալստեան Գրօրհնեքին։ Եւ ահա ժողովեցան վայրենաբարոյ Պարսիկքն՝ որ կոչէին Թաթար, աբարին և նոքա հանդէս 'ի նմանութիւն Գրօրհնեքին. և պատրաստեցին զինքեանս 'ի մէջ բերդին. և կացուցին դէտ արտաքոյ դրանն՝ և ասացին, յորժամ մերձենան Հայք ելանել արտաքս յեկեղեցւոյն, ազդ արասջիք մեզ, զի և մեք ընդ նոսա ելցուք։ Եւ ունէին ինքեանց առաջնորդ ոմն՝ ուրացեալ եպիսկոպոս՝ որ ասէին Ռ՚աճին։ Իսկ Հայք 'ի յաւարտել պատարագին ելին 'ի գնալ 'ի տեղին՝ զոր սահմանեալ էին 'ի ներքոյ կամրջին։ Եւ Զաքարիա վարդապետն՝ որ էր Առաջնորդ սուրբ ուխտին Յօվհաննու վանից, հեծեալ 'ի ջորւոջ՝ և Բ սուրհանդակք առաջի նորա՝ և գնայր։ Եւ յորժամ տեսին դէտքն, ազդ արարին Թաթարացն. և ելին արտաքս զօղանջելով և բարբանջելով՝ դահուլով՝ զուռնայով՝ և շըվշուելով և ծափելով, և ուրացեալ Ռ՚աճինն առաջի նոցա։ Եւ իբրև ետես Զաքարիա վարդապետն զայն, զտեղի էառ, և հրամայեաց՝ զի զգեստաւորեալքն յետս դարձցին։ Եւ ինքն իջեալ 'ի ջորւոյն՝ հրամայեաց փայեկացն ըմբռնել զուրացօղն Ռ՚աճին՝ և կոխել. և հանեալ զկօշիկ իւր՝ կալեալ զգլուխ ուրացողին՝ և բևեռօք կօշկին հարկանէր, մինչև վիրաւորեալ արիւնաշաղախ արար։ Եւ պիղծ ուրացօղն աղաղակէր, մի՞թէ հաւատք տաճկաց յերկիր խորտակեցան. զի Հայս այս սպանանէ զիս։ Եւ զայս լուեալ Թաթարացն՝ յարեան 'ի վերայ Զաքարիային, զի սպանցեն զնա։ Եւ մեծամեծ Տաճիկքն հանին սուր 'ի վերայ նոցա՝ և ասեն, դուք կամի՞ք զամենայն ազգս մեր տալ ջընջել. սոքա հրամանաւ Շահին առնեն առ 'ի զբօսանս մեր։ և ահա խանն պատրաստեալ մնայ սոցա. և դուք հակառակ Շահին և խանին գործէք։ Եւ զայս լուեալ դադարեցին։ Եւ ապա ծանուցին խանին զդառնալն յետս Գրօրհնեքին. և խանն ա-

ռաքեաց բազում միջնորդս. հազիւ հաւանեցան գնալ և օրհնել զջուրն. և յաւարտին Ջրօրհնեքին՝ հրամայեաց խանն և բերին երկու պատուական պատմուճան, մին Կաթուղիկոսին՝ և մին Զաքարիային: Եւ խանն կալաւ զԷջմիաթարան արս Ի, որք զհակառակն ալ արին. և եառ 'ի նոցանէ տուգանս Յ թուման. և զպիղծ ուրացող Դ'աշխինն եհան յերեսաց՝ և աքսորեաց 'ի բերդէն. և եկաց սեւերես յԱստուծոյ:

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Թագաւորութիւն քուր Շահ-Աբասին՝ և վարուցն:

Ի թուին ՌՂԱ. մեռաւ Շահ-Սաֆի թագաւորն Պարսից. և եառ թագաւորութիւնն որդին իւր Աբաս, այր խելօք և գիտուն. և 'ի թագաւորելն իւրում հաստատեցաւ գործ նորա: Քանզի հայր սորա Շահ-Սաֆի մինչ էր յԵրեւան, Հնդիկք առին զԴանտահար, և այս Շահ-Աբաս գնացեալ պատերազմեցաւ ընդ նոսա մեծաւ զօրութեամբ, և եառ զնա բազում հնարիւք. և դարձաւ յԱսպահան: Եւ խորհեցաւ գնալ 'ի վերայ Բաղդատայ՝ առնուլ զնա: Իսկ իշխանքն և մեծամեծքն ոչ թողին՝ ասելով, հայր քո հաշտութիւն արար ընդ նոսա երդմամբ և անիծիւք, և ետուն պայման ամս Ի մնալ հաշտ: Եւ ահա Ե և Զ ամ չև է հասեալ պայման ուխտին, և դու ընդդէմ լինիս ուխտազանց՝ և դաշնաւէր՝ և անիծահար: Եւ իբրև լուաւ զայս խոհեմ արքայն, դադարեցաւ 'ի խորհրդոյն, և եկաց հանդարտութեամբ: Եւ էր սիրող քրիստոնէից: Եւ յորժամ առնէր ընթրիս մեծամեծաց և նախարարաց իւրոց, կոչէր և զաւագանին Ջուղայու զխօճայ Սաֆրազն և զխօճայ Պըտումն: Այլ և գնայր 'ի տունս քրիստոնէից՝ և 'ի հարսանիս՝ և 'ի պատիւս, և ոչ խտրէր: Այլև էր ուղղադատ և իրաւարար: Եւ այսպէս եկաց նա 'ի կենդանութեան իւրում: Եղջարկ և

դրամ՝ անուանի իւրոյ մեծ քան առաջին Թագաւորացն, և անուանեաց Ահապ-Գուան:

## ԳԼՈՒԽ ԻԳ.

### Շինումն եկեղեցւոյն Արտաւիլոյ:

Որպէս բազում անգամ ասացեալ եմ՝ թէ՝ մեծ և առաջին Շահ-Աբասն քշեաց երկիրս Հայոց, և տարեալ բնակեցոյց յաշխարհն Պարսից, նոյնպէս և 'ի Արտաւիլ քաղաքն բնակեցոյց սակաւ քրիստոնեայս, և շինեցին փոքրիկ եկեղեցի մի հրամանաւ Շահին՝ մերձ 'ի մզկիթն իւրեանց՝ որ ասեն Շիխ-Սաֆի, փայտակերտ ըստ թուականին իւրեանց: Եւ սակաւ սակաւ բազմացան քրիստոնեայքն, և եկեղեցին փոքր էր և ոչ բաւէր ժողովրդեանն, և տառապէին յոյժ: Վասն որոյ խորհեցան՝ զի զարեւմտեան որմն եկեղեցւոյն քակեսցեն և ընդարձակեսցեն փոքր ինչ ըստ բաւականին: Իսկ իմացան Մուղրիքն և Մուլնայքն, և գրոհ տուեալ ժողովեցան, և միաբանեալ քակեցին զեկեղեցին 'ի հիմանց: Իսկ քրիստոնեայքն գնացեալ աղաղակ բարձին առ դուռն իշխանին. և իշխանն ոչ կարաց խափանել: Իսկ ասէ խանն, ահա նոքա արարին ըստ կամաց իւրեանց՝ և ոչ լուան ինձ. վասն որոյ գրեմ ես թուղթ առ Իհտիմալ-Տօլուաթն, և դուք գնացէք առ նա. և նորին հրամանաւն արզ արարէք Շահին, թերեւս այց լիցի ձեզ: Իսկ գրեաց թուղթ կարի օգուտ նոցա: Իսկ էր 'ի քաղաքին երէց մի՝ լեզուաւ ճարտար և ճոռոմաբան, զնա հաստատեցին՝ զի գնասցէ: Իսկ ժողովեցին դրամ բազում՝ և ետուն նմա. և առեալ զգիրս խանին՝ և գնաց. և եհաս յԱսպահան. և գնաց նախ առ Խոճայ Սաֆռազն, զի նա էր աւագ Ջուղայու. և նա առեալ տարաւ զնա առ Իհտէմալ-Տօլուաթն՝ որ անէին Սարութաղի, և ցուցին նմա զթուղթն խանին: Իսկ իբրև ընթերցաւ՝ ասէ,

երէց դու գրեա՛ արդ՝ որպէս և գիտես, և տո՛ւր խօճայիդ ընդ-
խանին Թղթին, և յորժամ գնամք առ Թագաւորն, անդ տա-
ցէ ինձ, և ես ցուցից Շահին։ Եւ գրեաց արդ լալագին դի-
մ.ք, և ետ ցխօճայն. և 'ի պայմանեալ աւուրն ետ Եհտիմալ-
Տօլուաթին, և նա ետ Շահին զՒ՝ Թուղթն։ Եւ աստ տես
զողորմութիւնն Աստուծոյ. զի որպէս քաղցրացաւ սիրտն Ար-
տաշէսի առ Մուրթքէ, այսպէս և սիրտ Թագաւորին Աբա-
սայ 'ի վերայ երիցուն, և ասէ, բերէ՛ք առիս զտէր արզիս։
Եւ կոչեցին զնա. և գնացեալ երիցուն և անկեալ 'ի վերայ
երեսաց՝ և առաթուր գնաց և համբուրեաց զոտս արքային՝
և յարեաւ։ Եւ ասէ արքայն, դո՞ւ ես գրեալ զարզս այս։
Ասէ երէցն, այո՛ տէր իմ արքայ։ Ասէ Շահն, ասա՛ և բե-
րանով, զի գիտացից։ Եւ նա պատմեաց զամենայն։ Եւ Շահն
ունկն եդեալ և լսէր։ Եւ ապա կոչեաց նոտար՝ և ասէ, գրեա՛
առ խանն և առ մօլնայքն Արտաւիլոյ, թէ դուք՝ որ քակեալ
էք աղօթանոցն քրիստոնէից, և զյիշատակ հաւոյն իմոյ ջըն-
ջեալ էք, փնաս ձեր մեծ է և արժանի մահու. սակայն նե-
րումն լիցի ձեզ յայսմ նուագի, վասնզի ծառայ էք Շխ-Սա-
ֆուն։ Այլ հրաման է 'ի մերոյս Թագաւորութենէ, զի դուք
ձեզէն և ձերով դրամով և գործավարօք, արուեստապետօք և
ծառայիւք՝ վերակացութեամբն Հայոց՝ շինել զեկեղեցի նոցա,
ո՛րպէս և ինքեանք կամին, նոյնպէս շինեսցեն եթէ մեծ և եթէ
փոքր. զի յիշատակ ազգին իմոյ մի՛ կորիցէ. զի աղօթեսցեն անդ
վասն Շխ-օղլոյ օճաղին։ Եւ կնքեալ զԹուղթն ետ ցերէցն՝
և ասէ, երթ գնա՛։ Եւ ելեալ երէցն յետս յետս գնաց։ Իբրև
հեռացաւ փոքր մի՝ դարձոյց յետս, և ասէ, գիտեմ զի ոչ ու-
նիս 'ի ճանապարհի հացագին. և ասէ ցգանձապետն, տո՛ւր դմա
ԺՐՍ թոման, զի հացագին արասցէ ինքեան 'ի ճանապարհի.
և ասէ, փութա՛ գնալ։ Եւ ելեալ երէցն՝ և գնացեալ յԱր-
տաւիլ, և եցոյց զռաղամն խանին։ Եւ իբրև ընթերցաւ զռա-
ղամն, ետես՝ զի սաստիկ էր դրեալ. և կոչեաց զշէխսն և զմուղ-

րիսն՝ և ասաց ցՀրաման Թագաւորին։ Եցոյց և զԹուղԹն Շահի՝ որ գրեալ էր, Թէ՝ դուք զայդ առնելով Թշնամի եղայք Շխ-Սաֆու օճաղին։ Եւ իբրև լուան զայս, սասանեցան ամենեքեանքն։ Վասնորոյ ասացին, Հրաման Թագաւորին 'ի վերայ գլխոց մերոց։ Եւ իսկոյն կազմեցին զուսուցիչս և զորմադիրն և զաղ'լասարարն, և հրամայեցին Հայոց՝ զի զտեղին չափեսցեն. և ապա սկսան դնել 'ի հիմունս քարինս մեծամեծս և անտաշս, և 'ի վերայ նոցա եփեալ կղմինդր. և 'ի բազմութենէ գործաւորաց փութով աւարտեցաւ աղիւսաշէն, հոյակապ և գեղեցկայարմար։ Եւ եղև յորժամ հաստատեցաւ եկեղեցին, կային քահանայք Գ. և կացուցին ժամկոչ մի կարի հնարաւոր, որ յամենայն գիշեր երԹայր և հարկանէր զդրունս և զերդս քրիստոնէիցն, զի եկեսցեն յաղօԹս։ Եւ 'ի գիշերի միում՝ որ էր ուրբաԹ, և մօնլայն ելեալ 'ի տանիս Մզկիթին՝ և աալլայն[17]) գոչէր. և ահա շունք քաղաքին ոռնային ընդ նմա. և յորժամ լռէր մօլնայն, շունքն ևս լռէին։ Եւ յորժամ կոչէր մօլնայն, շունքըն ևս ոռնային։ Եւ լուեալ ժամկոչն զոռնալն շանց, ասէ ինքն ինքեան, արդ շունքն ոռնան ընդ մօլնայիցն. և Թէ ես ևս ոռնացից, զի՞նչ վնասիցիմ. և սկսաւ բարձր ձայնիւ գոչել. Օրհնեալ է Աստուած. Օրհնեցէ՛ք զԱստուած։ Եւ լուեալ Մուղրոյն զձայն նորա՝ լռեաց, և գնացեալ եմուտ 'ի սուդ. և եկին աղօԹողքն և ասեն, ընդէ՞ր խափանեցեր զկանչելդ։ Ասէ Մուղրին, կորեաւ հաւատն մեր։ Ասեն տաճիկքն, ընդէ՞ր։ Ասէ մօնլայն. վասնզի Հայոց Ժամկոչն[18]) այնքան բարձր կոչեաց, մինչ զի մերն խափանեաց։ Եւ առեալ զմօլայն՝ և գնացեալ առ խանն՝ և աղաղակ բարձին։ Իսկ իշխանն ետ կոչել երեքեան զերիցունսըն՝ և ասէ ցնոսա, դուք այնքան լրբեցայք՝ որ զեկեղեցին ձեր տաճկացն ետուք շինել. այժմ զորմէ՞ առիք հրաման ժամ կո-

---

(17) Գանէճի, ձայնող, աղաղակող (ժամկոչ)։

(18) Սեղա. երգ, նուագ առաւօտեան։

չելոյ։ Ասեն երիցունքն, մեք չեմք ժամկոչ. և ունիմք ծառայ մի՝ թերևս նա իցէ ձայնեալ։ Հրամայեաց իշխանն՝ և բերին զնա։ Ու խանն (ասէ), դո՞ւ ես աղօթկոչ քաղաքիս։ Ասէ ժամկոչն, այո։ Ասէ խանն, հրամայեմ՝ զի արկցեն զքեզ առաջի շանց. զի չարաչար լափեսցին զքեզ։ Ասէ ժամկոչն, ընդէ՞ր։ Ասէ խանն, ո՞չ ես հրաման քեզ՝ որ ձայնիւ կոչես՝ և մեր մօլլայի ձայնն խափանի։ Ասէ ժամհարն, լո՛ւր իշխան. ես տեսի մօլլայն բանկ[19] տայր, և շունք քաղաքիս ոռնային ընդ նմա. և յորժամ լռէր մօլլայն, լռէին և շունքն. և յորժամ կոչէր մուղրին, ոռնային և շունքն. և ես ասացի, արդ շունքն ոռնան, նոցա ոչ գոյ պատիժ և ոչ տուգանք. և ես եմ մի 'ի շանց անտի, ես ևս ոռնամ. Թէ շանց պատիժ և տուգան լիցի, ինձ ևս լիցի։ Զայս իբրև լուան սաճկունքն՝ ծիծաղեցան և ասեն, դուք ձեզէն զձեզ շուն արարիք. արդ երթեալ ոռնացէք որպէս զշուն։ Ու յայնմ օրէ մինչև ցայսօր բարձրաձայն կոչէ ժամկոչն, և ձայն նորա անկանի 'ի մզկիթն՝ որ ասեն Շախսաֆի, և ասեն Հայոց շունքն ոռնան։ Արդ մի՛ ոք համարեսցէ զքանս զայս՝ մեզ նախատինս և անարգանս, այլ պարծանք և փառք։ Զի ասէ սուրբն Պօղոս, զի Թէ՛ պատճառանօք և թէ՛ ճշմարտութեամբ զՔրիստոս քարոզի։

## ԳԼՈՒԽ ԻԳ.

### Գաղափար Խոսրով Խանին։

Դաղաթայ-Բօթուկ-Մահմատ խանն կարի ագահ էր, և ռիշտ, և յափշտակօղ. քանզի զուծիկս սպայիցն ըստ սովորութեանն արգելոյր և ո՛չ տայր. և եբարձ զիշխանութիւն զօրացն, և ոչ տայր ումեք գործ ինչ, և ոչ առաքէր հարկահան ոք 'ի նոցանէ, այլ տայր այնոցիկ՝ որ ընդ իւրն էին եկեալք. վասնորոյ ձանձրացան ամենայն զօրքն, և միաբանեալք

(19) Պարս. ձայն. աղաղակ։

գրեցին թուղթ ամբաստանութեան, ետուն և կնքել Փիլիպպոս Կաթուղիկոսին, և առաքեցին առ Շահն։ Եւ լուեալ զայս Շահն՝ առաքեաց այր մի Խոսրով անուն՝ ազգաւ Վրացի, և պատուիրեաց նմա իշխել Երևանայ, և զՄահմատն առաքել առ ինքն։ Եւ գնացեալ Խոսրովն յԵրևան՝ և նստաւ խան, և առաքեաց զՄահմէտն յԱսպահան։ Եւ էր Խոսրովս այս՝ այր լաւ և բարեսէր, և բարեկամ քրիստոնէից. գնայր 'ի վանորայս, և տայր պարգևս և ընծայս վանորէիցն։ Նոյն և էր ողորմասիրտ և առատաձեռն. և թէ ոք տանէր նմա ձու մի, և նա ագուցանէր նմա պատմուճան մի։ Խնթևացոյց և զհարկն քրիստոնէից։ Եբարձ և մաքսն 'ի ճանապարհաց։ Եւ էր առատութիւն և լիութիւն ամենայն իրաց, և թեթևագին ամենայն ինչք ընչից։ Էր և ինքն գուսան և երաժիշտ, երգեցիկ և յօրինող երգոց։ Յորժամ երթայր 'ի վանորայս, կոչէր զմանկունս դպրոցաց, և տայր երգել զշարական և տաղ. և այնպիսի վարուք կայր բարեձևութեամբ։ Յորժամ բազմէր յուտել և ըմպել, նստուցանէր զմեծամեծս Հայոց ընդ իւր։ Եւ 'ի դատաստանս ուղղադատ և իրաւարար. և այսպէս կայր նա յԵրևան. և գնալն նորա յետոյ ասասցուք։

## ԳԼՈՒԽ ԻԵ.

### Սպանումն Դարայ-ղուլաթին։

Դարայ-ղուլաթս այս էր ազգաւ Պարսիկ՝ 'ի տոհմէ Մելիք Սալահենց։ Եւ մինչ էր Շահ-Սաֆին 'ի վերայ բերդին Երևանայ, Դուլաթս այս շրջէր 'ի դրունս իշխանացն, և բազում կաշառօք էառ զքալանթարութիւն երկրին Երևանայ, որ ասի Պարսկերէն՝ Շահրիարի, և Հայերէն ոչ գիտեմ զի՛նչ ասի. սակայն ինչ և իցէ՝ հաստատեցաւ 'ի վերայ գործոյն։ Եւ էր գործ նորա այս. զի զոր ինչ հարկ տան իշխանին, սա դրէ զա-

ւառապետացն, և զաւառապետքն գրեն գեղօրէիցն. և ժողո-
վեալ ձեռամբ ոստիկանաց՝ և տանուէրն իշխանին։ Իսկ Քաղան-
թարն Պարայ-Պուպաթ՝ զոր ինչ փոքր հարկն էր՝ գրէր գա-
ւառապետացն, և զոր ինչ մեծ լինէր՝ ինքն գրէր ներհակ և
հակառակ. զի գրէր յԷջմիածին՝ ածուղ, և յՆապարան՝ եղէգ,
'ի Քանաքեռ՝ գերան մայրեաց, և 'ի Ծապալկունեացձոր՝ աղոխ։ Եւ
այսպիսի վտանգօք տառապեցուցանէր զռամիկսն։ Եւ Կա-
թուղիկոսն Փիլիպոս բազում անգամ յանդիմանէր զնա. և նա
ոչ լսէր նմա։ Եւ էր նորա ծառայ մի՝ որ ասէին Պասա-Մահմատ.
սա առաքեցաւ 'ի Քաղանթարէն (ի) գործ ինչ 'ի գիւղն Գռանի-
կանոց, և նեղէր զգիւղականսն. և նոքա եկին առ Կաթուղիկո-
սըն՝ և գանգատեցին 'ի Մահմատէն։ Եւ Կաթուղիկոսն գրեաց
թուղթ առ նա սիրով։ Իսկ պիղծն այն Մահմատ եթուք 'ի
վերայ թղթին՝ և պատառեաց, և բազում հայհոյանս ասաց
Կաթուղիկոսին։ Եւ լուեալ զայս Քաղանթարն՝ և ծիծաղե-
ցաւ։ Եւ եկեալ պատմեցին Կաթուղիկոսին. վասնորոյ 'ի խոր-
խոցեցաւ 'ի չափ մահու. և առաքեաց հրաւիրակս, և ժողովեցան
ամենայն գաւառապետքն և տանուտեարք, և արարին քննու-
թիւն վասն իշխանական հարկացն. և կուտեցին 'ի վերայ նորա
անչափ և անհամար։ Իբրև ետես նա՝ թէ բարդեցաւ 'ի վերայ
իւր՝ և ոչ կարէ տալ համարս, այնուհետև սկսաւ աղերս ա-
կանել, և աղաչէր միջնորդս արկեալ, զի հաշտութիւն արասցէ
ընդ նա. և ոչ եղև։ Վասնորոյ յուսահատեալ եղև յամենայն
կողմանց, քանզի ճշտիւ պահանջէին տալ համարս։ Եւ ապա
գրեաց ձեռամբ իւրով մուրհակ այսպէս. թէ՝ ես Պուպաթս
գիր ետու Հայոց ազգին, թէ՝ ես, և կամ թէ՝ (ոք) յազգականաց
իմոց եթէ քաղանթարութեան ցանկամք կամ մտանեմք յայն
գործ, ԻՍ՝ թուման տամք յարքունիս, և գլուխ մեր հատցի։
Զայս թուղթս գրեաց և ետ Կաթուղիկոսին. ահա կայ դեռ
ևս 'ի սուրբ Էջմիածին։ Եւ զՊարայ-ղուպաթ աքսորեցին. և
կայր որպէս մի 'ի ռամկաց։ Եւ յետ այսորիկ եղև չարախօսու-

Թիւն 'ի Խոսրով խանէն առաջի Թագաւորին Պարսից։ Եւ Թագաւորն առաքեաց յԵրեւան այր մի Մահմատ անուն՝ նըստել անդ տեղապահ, և զԽոսրով խանն առաքել առ ինքն։ Եւ գնացեալ Խոսրով յԱսպահան, և Մահմատն նստաւ տեղապահ։ Եւ Պարսյ-դուպաթս այս. և իշխան մի՝ որ կարգեալ էր յարքունուստ հարկահան, սոքա երկոքեանս միաբանեցան ընդ Մահմատին. և առեալ զնա և տարեալ 'ի տուն Խոսրով խանին՝ և ցուցին նմա զկանայս նորա։ Ասեն՝ թէ Մահմատն բռնութեամբ շնացաւ ընդ աւագ կնոջ խանին, և յղացոյց զնա։ Իսկ խանն փութով դարձաւ և եկն յԵրեւան. և Մահմատն լուաւ զգալն խանին, առաջադոյն ելեալ փախստեայ գնաց երկուցեալ 'ի խանէն։ Եւ եկն խանն, եմուտ 'ի բերդն. և պատմեցին նմա՝ զոր ինչ արարին Պուպաթն և իշխանն։ Եւ բարկացեալ հրամայեաց ըմբռնել զնա, և դնել կունդ 'ի պարանոցն, և շղթայ 'ի յոտսն, և արկանել 'ի մթին և 'ի նսեմ՝ և ի գարշահոտ ի բանտի. և 'ի ոջլէն և աղտէն և 'ի բազմութենէ որդանցն՝ և յերկայնանալ հերացն՝ վիրաւորեալ սատակեցաւ։ Եւ ապա կալեալ ընկեր նորա արքունական ծառայ՝ և կախեալ ընդ շան՝ և չարաչար հարուածով էսպան. և ապա խոշտանկէր զկին իւր, ազգի ազգի գանիւք և հարուածովք նեղէր և վըշտացուցանէր զնա։ Եւ էր եղքօրորդի մի կնոջ նորա, որ գրեաց առ հաւն իւր՝ որ հայր էր կնոջ խանին, և ձեռամբ պնդադեսպանաց ծանոյց նմա զտառապանս դստերն։ Եւ էր նա մեծ առաջի Շահին, զի էր սեղանապետ, որ ինքեանք սուֆրաճի բաշի ասեն. որ այլ իմն կերպիւ ծանոյց Թագաւորին։ Լուեալ էր և զպատմութիւն ծառային. վասնորոյ բարկացեալ առաքեաց զնոյն Մահմատն՝ իշխել Երեւանայ, և զԽոսրովն աքսորել։ Որ գնացեալ ոչ եւտես զերեսս Շահին, այլ մտեալ 'ի կերպ սուֆայի (այս է ապթալ), և փախեաւ 'ի Հնդիկս, և անդ մեռաւ։

## ԳԼՈՒԽ Ի.Զ.

### Մահ և ապանումն Թահմազ-ղուլի խանին։

Գրեցաք զգերութիւն Թահմազ-ղուլի խանին, որ 'ի ժամանակս Մուրատ Թագաւորին Օսմանցւոց մնաց ի Ստամպօլ. և յետ Մուրատին Նստաւ Իպրահիմ եղբայր Նորա։ Եւ յետ Շահ-Սաֆուն Նստաւ Աբաս որդի Նորա։ Ի սորա ժամանակին Թուղթ աղաչանաց գրեաց Թահմազն առ Իբրահիմ. տօլուաթըն, զի ծանուսցէ Շահին վասն իւր. զի խնդրեսցէ զինքն 'ի Խոնթկարէն, զի եկեսցէ 'ի հայրենի երկիրն, և անդ մեռցի։ Եւ Իբրահիմ-Տօլուաթն ծանոյց Շահին։ Եւ Շահն 'ի ձեռն դեսպանաց խնդրեաց զնա 'ի Խոնթկարէն. և Խոնթկարն ինքն ետ հրաման գնալոյ Նորա։ Իսկ Ռոստամ խանն՝ որ էր իշխան Թաւրիզու, ոչ գիտէր զայս ամենայն։ Եւ յորժամ լուաւ, 'ի խոր խոցեցաւ 'ի չափ մահու. քանզի Թշնամի էր Նմա, և ոչ կամէր գալ Նորա աստ. զի գիտէր Նա՝ Թէ յորժամ Թահմազն լինէր աւագ և գլուխ ամենայն ղանորէիցն, և ինքն փոքրանայր քան զնա. և կայր ի վտանգի։ Վասնորոյ գրեաց Թուղթ առ վազիրն Օսմանցւոց, Թէ որո՞վ իմաստութեամբ Թողուք զդա գալ այսր. զի յորում աւուր եմուտ Նա յաշխարհս Պարսից, Ստամպօլ տեսանէք ելեալ 'ի ձեռաց ձերոց. վասնզի ելեւ։ մուտ աշխարհիդ ձեր իմացաւ, և գիտաց զամենայն։ Եւ իբրև եհաս Թուղթն Ռոստամին առ վազիրն, Գ. աւուրբ առաջ ելեալ էր Թահմազն 'ի Կոստանդնուպօլսէ։ Եւ առաքեցին զկնի Նորա հեծեալս, և հասին Նմա 'ի քաղաքն *Նիկոմիդա, որ այժմ ասի Իզնիմուտ, և սպանին զնա. և անդ Թաղեցին։ Եւ շինեցին 'ի վերայ Նորա ղուպայ։ Եւ որք ընդ Նմա էին եկեալ՝ պատմեցին Շահին, Թէ հրամանաւ Ռոստամ խանին սպանին զԹահմազն։ Եւ բարկացեալ Շահն՝ առաքեաց և անդամ անդամ յօշոտեցին զնա՝ և արկին շանց. և այնպէս կորեաւ։ Որով չափով

չափեաց, չափեալ եղև. զոր ինչ արար նա ընկերին, անձամբ էառ զփոխարինն։

## ԳԼՈՒԽ ԻԸ.

### Վասն խաւարման արեգական։

Ի Թուին ՌՃ՛ և Գ. յօգոստոսի Բ՛ յաւուր Գշի Աստուածածնի բարեկենդանին էի ես 'ի մայրաքաղաքն Պարսից 'ի Թաւրէզ, և 'ի Երրորդ ժամու աւուրն խաւարեցաւ արեգակն, և եղև տիւն որպէս ամպով ծածկեալ գիշեր, և խաւար կալաւ զտիեզերս, և աստեղքն ճառագայթեալ երևէին այլակերպ. և ամենայն արուեստաւորք և վաճառականք աղխեցին զդրունս խանութից և կրպակաց իւրեանց. վասնզի 'ի նոյն ժամու բազմացան գողք։ Նաև թռչունքն՝ որք կային 'ի քաղաքն՝ սասանեցան, և ահ և երկիւղ անկաւ 'ի վերայ ամենայն մարդոյ։ Նաև մնաց այնպէս խաւար 'ի չափ կէս ժամու. և ապա ծագեաց զլոյսն։ Իսկ իշխան քաղաքին՝ որոյ անուն էր Ռէճան բէկ՝ ժողովեաց զամենայն գիտունս Պարսից, զի քննեսցեն՝ թէ զէ՞նչ էր պատճառ խաւարման արեգականն։ Ոմանք ասացին՝ թէ թագաւոր մեռանի։ Ոմանք ասացին՝ պատերազմ լինի և հեղումն արեան։ Ոմանք ասացին՝ մահ անկանի։ Նաև այլք՝ այսպէս և այնպէս։ Իսկ իշխանին ոչ հաւատաց ասացելոց նոցա. այլ առաքեաց յեկեղեցին Հայոց, զի քահանայք նոցա քննեսցեն։ Նաև էր անդ վարդապետ մի՝ Զաքարիա անուն՝ 'ի գեղջէն Աստապատու, և մեք ևս ընդ նմա, և քննեցաք տօմարական արհեստիւ՝ և գտաք՝ զի լուսինն Լ օր ոչ կատարէ զգնացս իւր, այլ ԻԹ օր և կէս ընթանայ, և այն մնացեալ կէս օրն ընծայումն առնու. և այն է՝ որ յորժամ Հայոց տօմարի Կիսակ առնեն, ԻԹ և կէս երթան յերեսնիցն, և մնայ կէս, և այն է կիսակ ամսոյն։ Նոյն յայս խաւարմանս ԻԹ լուսնին կատարեալ էր զընթացս իւր, և 'ի կիսոյ աւուրն

ԻԹ․ և կէս առնուր լուսինն ընծայումն յայնմ գօտւոջ, որ ունէր և արեգակն, և 'ի նոյն գօտում 'ի ներքոյ արեգականն՝ ընծայումն էառ լուսինն և եկաց ընդդէմ արեգականն և խաւարեցոյց զնա։ Եւ զի մնաց խաւար կէս ժամ, այն կէսն երեսնիցն պակասն էր, զի անցեալ լուսնի պակասն էր, և նոր լուսնի սկիզբն որպէս ի մտանելն՝ արեգական ցերեկին՝ աւարտ լինի և գիշերին սկիզբն։ Այսպէս և յայն կէս ժամուն՝ որ լուսինն ընծայումն առնու՝ ոչ կատարեալ Լ է և ոչ ԻԹ, այլ կէս ժամ. այս կէս ժամքս և կէս աւուրքս ժողովին, և առնէ Ր. Գ. տարին՝ ԳՃ լուսին։ Եւ այս խաւարումն պատահեցաւ է ԳՃ լուսնին՝ է սկիզբն ընծայմանն լուսնի։ Զայս պատմեցաք մեք ծառայից իշխանին, թէ ոչ գոյ վնաս 'ի խաւարմանէ արեգականն. քանզի լուսինն 'ի ներքոյ կալով՝ խաւարեցոյց զնա։ Եւ գնացեալ նոքա՝ պատմեցին իշխանին, զոր և լուան 'ի մէնջ. և նա սրտապնդեալ ճշմարտեաց զմեզ, և զմօշնայսն իւրեանց ստեաց և արհամարհեաց. և առաքեաց մեզ բազում միրգ և չամիչ։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Վասն Մահմատ խանին ՝ և չար վախճանին նորա։

Այս Մահմատ-ղուլի խանս որդի էր մեծի իշխանին՝ որ Նայիպ-բէկ կոչէին. որ էր աւագ առաջի մեծ և առաջին Շահ-Աբասին. և փոքր Շահ-Աբասն ետ խանութիւն որդւոյ նորա Մահմատի, և առաքեաց յԵրեւան՝ իշխել նմա. որ եկեալ մեծաւ զօրութեամբ և փառօք՝ և եմուտ յաշխարհս մեր՝ խրոխտալով՝ և հպարտութեամբ, զի գոռոզ էր և ինքնահաւան և ագահ։ Վասնորոյ և քայքայեաց զամենայն ուղղութիւնս՝ զոր եդեալ էր Խոսրով խանն։ Վասնզի ծանրացոյց զհարկն. և հաստատեաց զմաքսն ճանապարհաց, և զոր ինչ վաճառիւր ծանրագնի թէ ցորեան և թէ այլ ինչ։ Այլ և յամենայն ամի

առաքէր քննիչս արտորէից գրել, և զՀնգորդն ամ յամէ յաւելուլին։ Նոյնպէս զԹուօղս խաշանց, զչափօղս այգեաց, և զգլխագիրս. և այսպէս 'ի ներքոյ հարկի եդ զամենայն. և զոր ինչ Խոսրովն Թեթևացուցեալ էր, սա ծանրացոյց. և մեծագին արար։ Եւ եղև Թշնամի և հակառակ ազգիս մեր։ Գնաց 'ի սուրբ Էջմիածին 'ի պատճառս զբօսանաց. և տեսեալ զվայելչութիւն և զփառս նորա՝ զչարէր. և ապա ասաց, հրաման է 'ի մէնջ՝ զի մինչ աստ եմ ես՝ ոչ հարկանել զանգակ, և ոչ կոչնակ, և ոչ այլ ինչ ձայն։ Եւ 'ի գիշերին այնմիկ եկեալ 'ի դուռն պարսպին ոմն Գուղայեցի հարկանէր, զի երԹիցէ աղօԹել։ Իսկ պիղծ խանն բարկացեալ՝ ասէ, ո՞չ ասայի ոչ հարկանել ինչ, և դուք ահա հարիք դառնաքուն. և կալեալ զայրըն՝ էառ տուգանս Գ. Թումանս։ Եւ 'ի վաղիւն ելեալ շրջէր զխոհանոց վանիցն, և Զաքարիա վարդապետն ընդ նմա, և ծանուցանէր զքաղցրութիւն ծախուցն, և սակաւութիւն մտիցն։ Եւ 'ի զբօսնուլն ետես սա մեծ կաԹսայ մի, և չարակնեաց 'ի միտըս իւր, և կամէր առնուլ զայն. սակայն 'ի ժամուն ոչինչ յայտնեաց։ Եւ յորժամ գնաց յԵրևան, առաքեաց 'ի սուրբ Էջմիածին, և տարին զկաԹսայն, և արար ջեռուցիչ ջրոյ բաղանեաց։ Եւ Զաքարիա վարդապետն էր 'ի տան իւրում 'ի Յօհաննավանքն, և ծանուցին նմա զքաշանս կաԹսային։ Եւ նա ելեալ գնաց 'ի բերդն. և 'ի դրան խանին բարձր ձայնիւ գոչէր, Թէ՝ երկիրս Արարատեան աւերեցեր, այժմ արկեալ ես զձեռն քո 'ի վանորայսն, և կամի՞ս ևս քակել. արդ առեալ զամենայն միաբանք վանօրէիցն՝ և գնամք առ ոտս Շահին. և Թէ դու զիս սպանանես, Մ Զաքարիա ևս գոյ, զնոսա ոչ կարես սպանել։ Զայս այսպէս գոչէր բարձր աղաղակաւ։ Եւ լուեալ զձայն նորա խանն՝ ասէ, ահա խայտառակ արար զմեզ. արդ տուք զգինս պղնձին. և Զ Թումանս լցին 'ի դաստառակ, և տարեալ ետուն վարդապետին։ Եւ զայս ոխս պահեալ 'ի սրտին, և կամէր պատճառանօք որսալ զվարդապետն, և ոչ կարաց. վասն զի

մեծամեծ տանջկունքն՝ բարեկամք էին վարդապետին։ Այլ Ռոստամ խանն Թիւլեզդյ եղբայրացեալ էր նմա, և համապազ առաքէր նմա աղերս, և գրէր Թուղթ առ խանն, թէ եղբայրդ իմ յանձն լիցի քեզ. վասն այսորիկ ոչ կարէր առնել ինչ։ Իսկ ապա այլ իմն կերպիւ կամեցաւ արկանել յորոգայթ։ Քանզի Փիլիպպոս Կաթուղիկոսն շինէր զԶանգակատուն սուրբ Էջմիածնի. և Զաքարիա վարդապետն նորոգէր զեկեղեցին Յօհաննուվանից. իսկ պիղծ խանն երբեմն առաքէր պատգամ՝ թէ՝ որո՞յ հրամանաւ շինէք զեկեղեցիսդ, երբեմն զարուեստաւորքն տանէր 'ի գործ իւր. և այսու պատճառաւ կամէր որոգայթ արկանել զոտերն մեր. և ինքն անկաւ 'ի գուբ իւր։ Քանզի էր իշխան մի կարգեալ հարկահան 'ի Շահէն՝ Միրզայ Իպրահիմ անուն։ Սա եկեալ պահանջէր 'ի խանէն զհարկն արքունի. իսկ խանն արգելոյր և ո՛չ տայր. և էր կագ անհնարին 'ի մէջ նոցա։ Իսկ յաւուր միում մինչդեռ ասէին և լսէին, և բարկացեալ խանն՝ հրամայեաց զօրականացն արկանել զՄիրզայ Իպրահիմն յաւազան ջրոյն, և հարկանել սաստիկ։ Իսկ հանեալ 'ի ջրոյն, և արտաքսեցին յերկրէն Արարատեան։ Իսկ նա գնացեալ առ Շահն՝ և գանկատեաց զխանէն, և պատմեաց զտառապանս երկրին Երևանայ, և զփետումն մօրուաց Յովհաննէս Եպիսկոպոսին, զոր յառաջիկայդ պատմելոց եմ։ Զկնի ամենեցուն ասաց և վասն նախատանաց իւրոց։ Իսկ լըւեալ Շահն՝ բարկացաւ, և հրամայեաց նոյն Միրզայ Իպրահիմին՝ գնալ և կապել զխանն, և դնել շղթայ յոտսն՝ և կունդ 'ի պարանոցն, և աւար առնել զամենայն ինչս նորա, և զինքն առաքել յԱնյուշ բերդն՝ որ ինքեանք Դայխայ-ղալէ ասեն։ Իսկ առեալ զհրամանս այս Միրզայ Իպրահիմն, և առեալ ընդ իւր 'ի հաւատարմաց իւրոց, և փութանակի հասին յԵրևան, և մտին 'ի բերդն, և փակեցին զդրունս քաղաքին։ Իսկ խանն նստեալ էր 'ի դատաստան. և եկեալ Միրզայ Իպրահիմն հանդերձ ընկերօքն՝ և ըմբռնեցին զօձիսն հանդերձին.

և քարշեցին յաթոռոյն՝ և արկին 'ի վայր, և առաթուր արարեալ հարկանէին՝ ասելով, մօրուս փետեմս, ահա ընկալեալ զպատիւ փոխարինին. և եդին շղթայ յոտսն, և կնքեալ արկին 'ի տուն ինչ։ Բայց յետ երից աւուրց հանին զկուռն 'ի պարանոցէն, և ոչ թողին ոք (ումեք) մտանել առ նա. բայց պատանի մի տանէր նմա հացս. և ոչ թողին հարթել զգլուխն։ Եւ յորժամ ածեցին հերքն, և տեսին զի սպիտակ էին հերքն։ Եւ յետ աւուրց առաքեցին զնա 'ի պայմանեալ տեղին յԸնդուշ կոչեցեալն բերդ. անդ եկաց, և անդ մեռաւ։

## ԳԼՈՒԽ ԻԹ.

### Մնացորդք բանից Յովհաննէս Եպիսկոպոսին։

Որպէս խոստացաք առնել զպատմութիւն Յովհաննէս Եպիսկոպոսին՝ գրեսցուք զամենայն։ Քանզի յետ պատերազմելոյն ընդ դիւաց 'ի յանապատն Լմայ՝ և յաղթելոյն՝ եկն նա 'ի սուրբ Էջմիածին. և Կաթուղիկոսն Փիլիպպոս ձեռնադրեաց զնա Եպիսկոպոս. և առաքեաց 'ի սուրբ ուխտն Յօհանավանք՝ լինել Առաջնորդ. որ եկաց ամս երկու։ Եւ թագաւորն Օսմանցւոց Մուրատ եկեալ էառ զբերդն Երևանայ. և ամենայն երկիրն Երևանայ ցրուեցան ուր և կարացին գնալ՝ գնացին. Նոյնպէս ելեալ Յովհաննէս Եպիսկոպոսն Յօհաննուվանից աշակերտօք իւրովք և գնաց յաշխարհն Աղուանից 'ի վանքն Գառնակերոյ։ Եւ 'ի նոյն ամի ձմեռն եկն Շահ-Սաֆի թագաւորն Պարսից, և յետ էառ զբերդն Երևանայ. և որք ցրուեալք էին՝ ամենեքեանքն եկին 'ի տեղիս իւրեանց։ Եկն և Յովհաննէս Եպիսկոպոսն 'ի տուն իւր 'ի Յօհանավանք, և ետես ամայի. և ժողովեաց զբազում միաբանս, և ուղղեաց զկարգ վանիցն. և կարգեաց ոմն վերակացու վանիցն, և ինքն առեալ ընդ իւր զԳ աշակերտաց իւրոց՝ և գնաց 'ի գաւառն

Ծաղկունաձորոյ առ 'ի ժողովել ցորեան վասն վանիցն։ Եւ պատուիրեաց աշակերտացն՝ մի՛ ինչ ասել վասն իւր՝ թէ ո՞ ոք իցէ. և էր ընդ նմա միակեաց մի Յակոբ անուն Կարբեցի՝ պակաս 'ի խելաց. և վասն պակասութեան խելացն ամենեքեանքն ճանաչէին զնա, և ծաղր առնէին և ծիծաղէին զնովաւ, և ասէին Գիժ-Յակոբ։ Եւ զոր ինչ ժողովէր Եպիսկոպոսն, Գիժ-Յակոբն Բ իշով տանէր 'ի վանքն՝ և դառնայր, և ուր և լինիւր Եպիսկոպոսն՝ երթեալ գտանէր։ Եւ ըստ սովորութեանն գնաց Գիժ-Յակոբն 'ի վանքն։ Եւ Եպիսկոպոսն գնալով եհաս 'ի գիւղն Նախամարք. և էին անդ Բ երէցք, մինն 'ի Կեչառուց՝ և միւսն 'ի նոյն գեղջէն Նախամարքուց, և անուանք նոցա Սահակ. և գնացեալ Եպիսկոպոսն անդ՝ ետ նոցա ողջոյն։ Եւ նոքա տեսին զնա գծուծ հանդերձիւ՝ և հետիոտս՝ և կաղ ևս, ոչ ետուն նմա պատիւ, այլ նստուցին զնա 'ի վերայ մորթոյ. և ինքեանք սկսան խօսել 'ի գրոց՝ վայրապար և սուտ։ Իսկ Եպիսկոպոսն ասաց մի բան, թէ ոչ է այդպէս՝ զոր ասէքդ. և նոքա նախատեցին զնա, և ասեն, դու այր միակեաց ես և մուրացիկ, ո՞ իցես դու՝ զոր ոչ հաւանիս խօսից մերոց, լուռ լե՛ր։ Եւ այլ ոչ խօսեցաւ բնաւ։ Եւ մինչ խօսէին նոքա, ահա եկն Գիժ-Յակոբն՝ և եմուտ 'ի ներս. և տեսին զնա երիցունքն՝ և ողջունեցին զնա, և կատականօք ասէին, բարի եկիր Մ՟ղտեսի՛։ Եւ հայեցեալ Յակոբն՝ ետես զԵպիսկոպոսն այնպէս անպատիւ. և ըստ բարբառոյ իւրոյ ասէ ցերիցունսն, հօ՜ հօ՜, գիտէ՞ք՝ թէ ո՞վ է դա։ Եւ Եպիսկոպոսն սաստէր նմա չխօսիլ։ Ասեն երիցունքն կատականօք, ո՞վ է դա՝ ոչ ճանաչեմք։ Ասէ Յակոբն, դա այն Կարբեցի Պարոն Տէր Յովհաննէսն է, որ 'ի Լ ամայ անապատն Ի տարի կռուեալ էր ընդ դիւաց։ Քանզի երիցունքն լուեալ էին զհամբաւն. վասնորոյ զամօթի հարան՝ և զամաչէին. և անկեալ առ ոտս նորա խնդրէին զթողութիւն. և ըստ արժանոյն պատուեցին զնա։ Եւ 'ի վաղիւն առաջի անկեալ՝ շըրջեցան յերկիրն, և ժողովեցին բազում ցորեան, և ինքեանց

գրաստովն առաքեցին 'ի վանքն։ Եւ յետ երկուց ամաց կամաւ իւրով հրաժարեցաւ 'ի վանացն. և գնաց յանապատն Սաղմոսավանից. և նորոգեաց զնա, և ամենայն կարգ և կանոնք հաստատեաց։ Եւ ժողովեցան անդ միաբանք աւելի քան զխ։ Իսկ Կաթուղիկոսն Յակովբ յանձնեաց 'ի նա և զԱռաջնորդութիւնն Սաղմոսավանից, զի անապատին և վանքին տիրեսցէ։ Եւ գաւառն Նիգ էր ընդ իշխանութեամբ Սաղմոսավանից։ Եւ էր անդ երէց մի գաւառապետ, զոր ասէին մելիք-տէր-Յովասափ։ Եւ Եպիսկոպոսն Յովհաննէս խրատէր զնա՝ և ասէր, ծերացեալ ես, բաւական է քեզ այսքան՝ զի գործեցեր զմարմնաւոր իշխանութիւնդ։ Արդ թող զդա որդւոց քոց. և դու հրաժարեա՛լ ե՛կ յանապատ, և կեցո՛ զհոգի քո։ Եւ բազում անգամ խրատէր զնա։ Իսկ անազորունն այն փոխանակ լսելոյն և առնելոյն՝ յաւել չարիս 'ի վերայ չարեացն իւրոց։ Եւ գնացեալ մատնեաց զնա խանին՝ և ասէ, սևագլուխ մի անիծանէ զիս, և զքեզ հայհոյէ, թէ ընդէ՞ր է արարեալ զքեզ Մելիք. և այլ բազում չարախօսութիւնս արար։ Եւ բարկացեալ իշխանն առաքեաց զինուորս. և տարան զԵպիսկոպոսն առաջի իւր։ Ասէ իշխանն, դո՞ւ ես Յովհաննէս Եպիսկոպոսն։ Պատասխանէ, այո՛ ես եմ։ Ասէ խանն, զի՞նչ վնաս հասոյց քեզ մելիքն՝ որ անիծանես զնա և յանդիմանես, և զիս հայհոյես։ Ասէ Եպիսկոպոսն, ես ոչ ունիմ հրաման 'ի Տեառնէ անիծանել ոք՝. կամ հայհոյել. այլ որք անկարգ են, զնոսա խրատեմք ըստ մերում օրինաց. եթէ լսէ՝ բարի է. եթէ ո՛չ՝ արիւն իւր 'ի գլուխ իւր եղիցի. Նոյնպէս խրատ ետու և մելիքին, և նա թէ ո՛չ լուիցէ, ինքն լիցի պարտական ինքեան. և մեզ ասել պարտ էր։ Ասէ խանն, և դու զնա խրատեցեր՝ և նա ոչ լուաւ քեզ, մեք զի՞նչ չար արարաք՝ որ զմեզ հայհոյես։ Ասէ Եպիսկոպոսն, ես չունիմ սովորութիւն հայհոյել զոք, զի մեղք մեծ է առ մեզ։ Ասէ խանն, դու զքեզ անմեղ ցուցանելով կամիս զերծանիլ յինէն։ Եւ հրամայեաց երկուց արանց փետել զմօրուսն և

զմռուղսն, զԹարԹափսն և զուռսն. և արարին այնպէս։ Հրամայեաց դնել 'ի գլուխ նորա քաղիրթ խաչանց՝ և շրջեցուցանել ի քաղաքն ամենայն. բայց ոչ արարին զայն, և Թողին, զի գնաց 'ի տունն իւր Սաղմոսավանք։ Եւ բարկութիւն Աստուծոյ և հատուցումն արդարադատին փութով եհաս առ նոսա։ Վասնզի 'ի նոյն ամի անկաւ ախտ չարաչար ցաւոց 'ի վերայ երիցուն. և ծակոտեալ մարմինն եղև որդնալից. և աղաղակէր ասելով, Պարոն Տէր, Պարոն Տէր։ Եւ ապա չորեքին որդիք նորա գնացին առ Պարոն Տէրն, բազում աղաչանօք և լալով խնդրէին Թողութիւն վասն հօրն իւրեանց։ Եւ գրեաց պարոն Տէրըն Թուղթ, Թէ Աստուած Թողցէ զյանցանս քո, արձակեալ լիցիս 'ի մեղաց։ Եւ առեալ տարան զգիրն, և ընթերցան 'ի վերայ հօրն իւրեանց, և եդին 'ի վերայ աչաց նորա. և առ ժամայն մեռաւ։ Իսկ պատիժ խանին այն էր՝ զոր կրեաց 'ի Շահէն 'ի նոյն ամի։ Եւ ինքն Յովհաննէս Եպիսկոպոսն իւրով կամաւ ետ Առաջնորդութիւն վանիցն եղբօրորդւոյն իւրոյ Գաբրիէլ վարդապետի, որ դեռ եկեալ էր 'ի նուիրակութենէ սուրբ Էջմիածնի. և մնաց յանապատին աւուրս ինչ։ Եւ եկին մուզտեսիք յԵղեգաձորոյ 'ի Շատիկ անապատէն, աղաչէին և ասէին, մեք ոչ գիտեմք զկարգ և սահմանք անապատի, դու եկ և կարգաւորեա զմեզ։ Եւ ըստ աղաչանաց նոցա եկեալ գնաց. և ըստ կարգի անապատի կարգաւորեաց զնոսա ուղղութեամբ և ամենայն բարեձևութեամբ։ Վասնորոյ մախաց սատանայ ընդ բարի վարս նորա. և յարոյց փորձութիւնս 'ի վերայ առն Աստուծոյ. զի միակեաց ոմն Շամախեցի՝ Սահակ անուն՝ նիւթեաց մահացու դեղ, և խառնեաց 'ի կերակուր նորա։ Եւ նորա առեալ պատառ մի եկեր. և ազդեցաւ նմա զհնարս չարին. և ասէ ցպաշտաւորն իւր, առ զկերակուրդ ընկերայն՝ և Թափեա արտաքս։ Եւ եկեալ ագռաւք և անծեղք կերին, և առ ժամայն կոտորեցան։ Իսկ երանելի այրն ոչինչ յայտնեաց նոցա. այլ զանխլաբար ելեալ

անտի միաբանօք իւրովք եկն 'ի սուրբ աթոռն Էջմիածին, և հրամանաւ Յակոբ Կաթուղիկոսին առաքեաց զմիաբանսն իւր յանապատն Սաղմոսավանից. և ինքն մնաց անդ աւուրս ինչ ասել դաս միաբանից. և սկիզբն արարաք զԱստուածաշունչն մինչև ցՄակաբայեցւոց աւարտն: Եւ ապա ելեալ ինքըն ևս գնաց յանապատն. և անդ կացեալ վախճանեցաւ: Եւ եղբօրորդին նորա տարաւ զմարմին նորա 'ի Սաղմոսավանք, և եդ յԱստուածածնի եկեղեցին ի հիւսիսոյ կողմն: Եւ գիտելի է, զի Գ. փորձութիւն կրեաց նա: Նախ՝ մաքառելն ընդ Դիւաց յանապատն Լմայ. երկրորդ՝ մօրուաց փետումն. երրորդ՝ մահու դեղն: Բայց մահն նորա եղև 'ի թուին Ռ.Ճ' և Գ.:

## ԳԼՈՒԽ Լ.

### Վասն ուղղափառ առն:

Գնացի ես 'ի Խնկելոյձոր՝ որ այժմ ասի Ձորագեղ, 'ի տեսութիւն քեռն իմոյ: Եւ մինչդեռ խօսէաք, և ահա եկն երիտասարդ այր մի՝ և նստաւ մերձ առ մեզ. և քոյրն իմ ասաց ինձ 'ի ծածուկ, հայեա՛ց յերեսս առնդ: Եւ տեսի՝ զի սևացաւ որպէս հնդի, և եկաց սակաւ մի, և տեսի՝ զի սպիտակացաւ որպէս ձիւն, և յետ սակաւու միոյ կարմրացաւ որպէս բոց, և 'ի միում ժամու Գ. գոյնս փոխեաց: Եւ ես հիացեալ զարմացայ. և ասացի ցայրն, եղբա՛յր, ուստի՞ ես դու: Ասէ այրն, 'ի յերկրէն Սիւնեաց: Եւ ես՝ հարցի, թէ այդ ի՞նչ է, զի գոյնզգոյն փոխի երես քո: Ասէ այրն, Աստուած գիտէ զիս: Եւ ասացի, աղէ՛ պատմեա՛: Ասէ այրն անուն գեղջին իւրոյ, բայց 'ի մտաց իմոց անկեալ է: Զի էր 'ի գեղի մերում կոյս մի գեղեցիկ և ազնիւ, և սիրեցաք զմիմեանս ես և աղջիկն. և ասացաք ծնօղաց մերոց՝ զու-

զանկեալ զմեզ. և ոչ կամեցան. քանզի թշնամութիւն էր 'ի մէջ նոցա։ Եւ մեք իբրև տեսաք՝ թէ ոչ լինի կամք մեր, և ապա միաբանեալ առեալ եղեալ փախեաք՝ բարձեալ ընդ մեզ հաց՝ և սփռելի՝ և վերարկու, և գնացեալ հեռացաք 'ի գեղջէն, և մտաք 'ի ձոր մի, և էր այր մի՝ և մտաք անդ, և գործեցաք զչար գործն մեր. և մնացաք անդ զգիշերն։ Եւ կամեցաք՝ զի ցերեկն ևս անդ կացցուք, և զմիւս գիշերն ելեալ գնամք յԵրևան. և վաստակեալ էաք՝ ննջեցաք զգիշերն, զի մերձ էր լուսոյն՝ և զցերեկն մինչև կէս օրն. և էի ես 'ի մէջ ծանր քնոյ, և աղջիկն ելեալ զարթոյց զիս լալով. և զարթեայ ես և տեսի՝ զի վիշապ մի ահագին կալեալ է զոտս աղջկանն՝ և 'ի բերան իւր առեալ կլանէր։ Ասէ աղջիկն, հա՛ր նաճախաւդ[20]) զգլուխ դորա՝ և սպա՛ն։ Եւ ես յամառեցեալ ոչ կարացի յառնել։ Եւ ասէ աղջիկն, տո՛ւր ինձ զդանակդ՝ և ես հարից զդա. զի դու անկար յարիւն իմ, և հաներ զիս 'ի ծնօղաց իմոց. արդ զի՞արդ թողուս զիս այսպիսի մահուամբ մեռանել։ Նա այսպիսի ողորմելի դիմօք յայր և աղաչէր. և ես յամառեալ և յապուշ կայի, և ո՛չ կարէի շարժել. և վիշապն եկուլ զաղջիկն մինչև ցանդամն։ Իսկ աղջիկն պարզեաց զբազուկսն, թերևս ոչ կարիցէ կլանել։ Եւ վիշապն ժողովեաց զոտուտն, և կծկեալ՝ սաստիկ բացեալ զբերանն՝ և քարշեաց զաղջիկն առ ինքն, և ջարդեաց զթևսն աղջկանն, և եկուլ զաղջիկն. և գնաց և եմուտ յորջ իւր։ Եւ ես մնացի որպէս մեռեալ անշարժ։ Եւ յետ պահու միոյ դարձեալ եկն արտաքս վիշապն՝ և հայէր յիս. և պատառեցաւ սիրտ իմ, և 'ի բերանոյս ել բազում արիւն, և ամենայն զգայարանք խափանեցան, և միայն զաչս մնաց 'ի բաց. և տեսի՝ զի եմուտ վիշապն 'ի յորջ իւր. և ապա յուշաբերեցայ. և զի չգոյր կարողութիւն ոտից իմոց ելանել արտաքս, և սողալով

(20) Նաճախ, կացին.

ելի մինչ 'ի լոյս առաւօտուն 'ի դուռն այրին. Մնացի 'ի դըրան այրին. և 'ի լուսանալն հազիւ կարացի կանգնել և գնալ։ Եւ ոչ գնացի 'ի գիւղն մեր յահէ հօր աղջկանն. այլ գտի ծանօթ մի յայլում գեղջէ, և պատմեցի նմա զամենայն. և ես եկի առ Փիլիպպոս հոգևոր տէրն, և խոստովանեցայ նմա. և ահա այս է պատճառն, զի գոյնզգոյն փոխի զերեսս իմ։ Եւ մեք լուաք 'ի նմանէ, և փառս մատուցաք Աստուծոյ։

## ԳԼՈՒԽ ԼԸ.

### Պատմութիւն ծերոյ և վիշապին։

Պատմեցին մեզ թէ 'ի գաւառն Աղստեւոյ 'ի մէջ պարակաց մայրուն է քարայր մի բարձր յերկրէ քան զՌ մարդաչափ, և բնակեալ էր անդ վիշապ մի ահագին, և 'ի միջօրէի տուընջեանն կախիւր յորջոյն՝ և հայէր այսր և անդր. և եթէ տեսանէր ինչ կենդանեաց՝ իջանէր և յառնէր 'ի վերայ նորա, զի եթէ կարողանայր՝ կլանէր. և թէ ոչ կարէր՝ դառնայր յորջ իւր։ Եւ ո՛չ ոք կարաց սպանանել զնա, զի բարձր էր այրն։ Եւ երէց մի հնարիւք եսպան զնա։ Վասնզի շինեաց երեքժանի 'ի ճանկ, և առ ծա՛յրն բունոյ ծայրն՝ օղ, և կապեաց առասան ընդ օղն։ Եւ եզեն ուլ, և եհան զմորթն 'ի տիկ, և եդ 'ի մէջ տկին զճանկն, և ելից խոտով զտիկն, և զգլուխն և ոտքն ուլին հնարիւք կապեաց ընդ տկին. և 'ի գիշերի գնացեալ մերձ յայրին, և կանգնեաց անդ զտիկն. և կալեալ զծայրն պարանին, և գնացեալ 'ի բացեայ նստաւ 'ի ներքոյ ծառի միոյ, և այր ոմն ընդ նմա։ Եւ 'ի հասարակել աւուրն, ելեալ վիշապն և կախեցաւ յայրէն, և ետես զուլն մերձ 'ի դրան այրին. և իջեալ եկուլ զուլն՝ և կամէր դառնալ յայրն. և երէցն քարշեալ զպարանն՝ և եմուտ ճանկն 'ի մորթ վիշապին, և ճչէր, և տատամբն ժողովէր զգոյսս և զկոտ՝ և զոր ինչ պատահէր. և երէցն քարշէր զպարանն. և վիշապն

դառնայր դէպ յայրն, ծչէր սաստիկ, և գալարէր, և տուտն հարկանէր այսր և անդր. և այնքան չարչարեցաւ՝ մինչև սատակեցաւ։ Իսկ երէցն եհան զմորթն 'ի տիկ, և արար աղ 'ի վերայ, և տարաւ առ իշխանն Խուրեանց. և չափեցին զերկայնութիւնն Ժ. Ը. թիզ, և զլայնութիւնն Գ. թիզ։ Եւ ապա լցին զմորթն ցորենաւ, և առաքեցին առ Շահն, և զպատանման պատմութիւնն գրեալ ընդ մորթոյն առաքեցին առ Շահն։ Իսկ նա զերէցն արար ազատ 'ի հարկէ արքունական, և կարգեաց զնա Ոււազ գեղջին իւրում։

## ԳԼՈՒԽ ԼԸ։

### Վասն օձահար առն։

Երկիրն Արարատեան պարարտ է և առատ յամենայն իրաց՝ և թեթևագին։ Վասնորոյ յամենայն կողմանց գան յԵրևան, և գնեն զոր ինչ և կամին, և դառնան 'ի տեղիս իւրեանց։ Այնպէս եկին և 'ի Թաւրիզոյ բազում կարաւան, և գնեցին բրինձ, բամբակ, իւղ, պանիր, ծրագու, ձէթ, կաշի, մորթ, և այլ զոր ինչ կամեցան՝ առին. և 'ի գիշերի գնային զճանապարհն վասն հովոյն. և 'ի ցերեկն իջանէին վասն շողոյն. և գնացին մինչ 'ի դաշտն Վէթւոյ, և իջին 'ի տեղի ինչ՝ զօրն ողջոյն. և յերեկոյն կամէին բառնալ։ Եւ մին 'ի նոցանէ գնաց առ ջուրն, և մերկացոյց զոտս իւր՝ զի լուասցէ. և ահա պատահեալ օձ մի՝ և եխած զոտն։ Եւ այրն աղաղակեաց առ ընկերսն. և եկեալ տեսին զնա, և գտին զօձն՝ և սպանին։ Եւ զի բառնային կարաւանն՝ զի գնասցեն, իսկ այրն օձահար լայր և աղաղակէր, զի ոչ կարէր հետևա՛լ գնալ, և դատարկ զրաստ ոչ գոյր՝ զի հեծուսցեն զնա. և ասացին ընկերքն, կա՛ց միա՛ դու աստ՝ մինչև մեք գնացեալ թափեսցուք զբեռինս, և բերցուք քեզ զրաստ, և տարցուք զքեզ 'ի գիւղ, թերևս բուժումն արասցեն քեզ։ Եւ 'ի ներքոյ

Ծնկանն կապեցին պարանաւ, և եդին քար 'ի ներքոյ ոտին, և պարզեալ ոտն 'ի վերայ՝ զի շշուկն գնասցէ 'ի յոտն՝ և մի՛ անկցի ընդ մարմնովն. և 'ի վերայ քամակին անկեալ, և արկեալ երեսօքն դաստառակ՝ և ննջեաց: Եւ ահա պիծակք թափեցան 'ի վերայ ոտին, և կրծեցին ա՛յնքան՝ մինչ զի քարշեցին զթոյն օձին և զուռոյցն. և բժշկեցաւ այրն: Եւ պիծակքն որք կրծեցին՝ սատակեցան. և նա ժողովեաց 'ի դաստառակ՝ որպէս թէ ի կուց, և զգեցաւ զպնդակօշիկն, յարեաւ և վազէր զկնի կարաւանին՝ որպէս թէ բնաւ չիցէ խայթեալ: Եւ իբրև գնաց զկէս ճանապարհըն, և ահա մի ոմն յընկերաց նորա հեծեալ 'ի ձի՝ և գայր. և պատահին միմեանց. և օձահարն պատմէ նմա զսքանչելիսն. և գնացեալ առ կարաւանն՝ ցուցանէ նոցա զպիծակսն փակեղամբ: Եւ լուեալ նոցա՝ փառս ետուն Աստուծոյ. զի յանարգ իրաց բժշկութիւն եղև ցաւոց: Որպէս թրի աղն 'ի յօձէ և դեղ օձահարի է. և գլեղէ արճճոյ՝ բժշկութիւն ձիոց. և իրան աղուեսոյ՝ ցաւագնեալ ականջաց: Ամօթ այնոցիկ՝ որք ասեն, ընդէ՞ր ստեղծան այսպիսի անարգ կենդանիք:

## ԳԼՈՒԽ. ԼԳ.

### Վասն ցլէ-ին կերպարանեալ կին:

Գրեալ է(զուցէ 'ի մէջ) պատմութեանց, թէ յետ ջրհեղեղին ծնաւ Նոյ որդի մի Մանիտոն անուն, և դուստր մի Աստղիկ անուն. սա՝ ասեն՝ խառնակեալ ընդ դիւաց՝ և ծնանի՝ զոր ասեն Յաւերժահարսունք: Ոմանք յառասպելս համարին զսա՝ և սուտ: Բայց ինձ ճշմարիտ թուի և իրաւ. զի ի բազում տեղիս գրեալ է խառնակումն նոցա ընդ մարդկանց: Քանզի 'ի վարս հարանց գրեալ է, թէ դևք 'ի կերպարանս միայնակեցի եղեալ՝ իջեալ 'ի լեռնէ գնային 'ի քաղաքն, շնային ընդ կանայս՝ և դառնային 'ի լեառն: Եւ 'ի պատմութիւնս Կիւրակոս վարդ-

ղապետի գրեալ է, թէ ի Գողթան գաւառ դեռ եղեալ 'ի կեր-
պարանս կնոջ՝ և խառնակիւր ընդ այր մի։ Այնպէս և յա-
ւուրս մեր եղև. զի տաճիկ մի՝ ազգաւ Բայաթ՝ 'ի ցեղէն որ ա-
սի Աչիղամարլու, և անուն նորա Ապազ, ո՛չ որպէս միւս տա-
ճիկս լիրբ և հայհոյիչ, այլ ամբարերան և լաւ. սա յաւուր
միում գնայր երիվարաւ 'ի գաւառ'ն Վաղարշապատու. և հա-
սեալ յականս Մեծամօր կետոյ՝ որ այժմ ասի Սեաւ-ջուր, և
տեսանէ նստեալ կին մի 'ի վերայ աղբերն՝ զարդարեալ ազնիւ
զգեստիւք և զարդուք. և ոչ խօսեցաւ Ապազն. և անցեալ
գնաց։ Նա իբրև հեռացաւ սակաւ մի, և տեսանէ նստեալ զնո
զկնի իւր 'ի վերայ ձիոյն։ Ասէ Ապազն, ո՞վ ես դու։ Ասէ
դևն, ես այն կինն եմ՝ որ նստէի 'ի վերայ աղբերն, և դու
տեսեր զիս՝ և ոչ խօսեցար ընդ իս։ Ասէ Ապազն, արդ զի՞նչ
խնդրես յինէն։ Ասէ դևն, ես կամիմ լինել քեզ կին։ Ասէ
Ապազն, ես ունիմ կին. եթէ տեսանէ զքեզ կին իմ, զքեզ
և զիս սպանանէ։ Ասէ դևն, ես ոչ երևիմ կնոջ քո, և ոչ
այլ ումեք՝ բայց միայն քեզ։ Նա ձայնն իմ լուիցեն, և զիս
ոչ տեսանիցեն. ուր և կամիս դու առաքել զիս, երթամ և բե-
րեմ քեզ պատգամ։ Պահեմ անվնաս զհօտս քո՝ և անդեայս
և զերամակս մատակ ձիոց քոց, որ ոչ գող և ոչ գազան կա-
րիցեն մերձենալ, և ոչ անկանիլ 'ի տեղի վնասու։ Ազդ առ-
նեմ քեզ՝ զինչ որ լինիցի 'ի վերայ երկրի։ Զայս ամենայն
և այլ այսպիսի բանիւք մոլորեցոյց զայրն. և հաւանեալ նմա,
և առեալ գնաց 'ի տուն։ Նա էր ընդ նմա միշտ, և շնայր ընդ
նմա հանապազ. և պահէր զերամակս ձիոցն։ Նա յաւուր
միում մատակքն ալանէին, և միոյն որոշեցաւ 'ի հօտէն. և
ահա գայլք Բ յարեան 'ի վերայ նորա՝ և կամէին պատա-
ռել. և վրնջաց մատակն՝ և եկեալ դևքն կալան զգայլսն,
և տարին 'ի մէջ երամակացն. և յարեան 'ի վերայ գայլոցն ե-
րամակքն, և ոտամբ և ատամամբ կոծելով և աքացելով սպա-
նին զգայլսն։ Դարձեալ յայլում աւուր գնացեալ էր Ապազն

այլուր. և գողք եբամակաց ձիոցն մասն ինչ գողացան. և ծանուցին կնոջ Եպաղին. և նա ասէ, ոչ կարեն վասնել նոքա զձիսն մեր. զի թէ իմանայ կին Եպաղին՝ երթեալ բերէ զնոսա։ Եւ յետ Խուց աւուրց եկին ամենայն ձիքն՝ և ընդ նոսա խրոխտ երիվար մի։ Եւ այսպէս կայր բարեկամացեալ ընդ դիւին։ Եւ եղև՝ զի 'ի կալանս արարին Եպաղն, և կապանօք առաքեցին յաշխարհն Պարսից. և մինչդեռ անդ էր, երթայր դևն առ նա, և տայր զրոյց նմա 'ի տանէ նորա. և 'ի նմանէ բերէր պատգամս 'ի տուն նորա։ Եւ եղև դառնալ նորա յաշխարհէն Պարսից, և գալ 'ի տուն իւր. և տկարացաւ կին նորա. և բերին 'ի սուրբ ուխտն Յօհաննավանք։ Եւ շնորհօքն Աստուծոյ բժշկեցաւ. և գնացեալ պատմեաց առն իւրում զսքանչելիս սուրբ Կարապետին. և վասն այնորիկ ծանօթացաւ Եպաղն վանքին. և արար բարեկամութիւն երթևեկութեամբ։ Եւ մեք 'ի նմանէ ուսաք՝ հարցանելով. իսկ նա պատմեաց մեզ զամենայն ստուգութեամբ։

## ԳԼՈՒԽ ԼԴ.

### Իշխանութիւն Նաճաֆ-խանին։

Զկնի որպէս գրեցաք զըմբռնումն Մահմատ խանին որդւոյ Լալա բէկին՝ և կապանօք տանիլն յԱսպահան, և Շահն փոխանակ նորա առաքեաց յԵրևան զոմն 'ի հարազատ ծառայիցըն իւրոց՝ Նաճաֆ անուն։ Սա եկեալ տիրեաց տանս Արարատեան մեծաւ զօրութեամբ. քանզի սիրէր զնա թագաւորն Շահ-Աբաս. և էր կարի խրոխտ և ահարկու 'ի վերայ ամենայն զօրաց իւրոց։ Սա գրեաց թուղթ գանգատանաց 'ի մեծամեծացն, և առաքեաց առ Շահն։ Իսկ Շահն գրեաց նմա՝ թէ ա՛յլ ոք որ գիտես՝ ըմբռնեա՛ և արա՛ կալանս։ Եւ յորժամ էառ զհրամանս զայս, իսկոյն առաքեաց զօրս, և կալեալ արս

ԺԸ 'ի մեծամեծացն, և եդ կուռն ի պարանոց նոցա, և եդ ի բանտի. և անուանքն նոցա զբովանդակն ոչ գիտեմ, այլ Ը մի-այն՝ որք են այս. Գ. եղբարք՝ Գալու-Նապլի, Գալու-Զօհ-րաբ, Գալու-Սուլէյման, Ապաղ մերոյգրեալն, Թեկղահ, Ը-դիլ, Մուրատի, և այլ Ժ. ևս։ Նա յետ աւուրց առաքեաց զնոսա յաշխարհն Պարսից՝ ի քաղաքն՝ որ կոչի Մոմր։ Նա մնացին անդ որքան Նաձաֆն կենդանի էր։ Այս Նաձաֆս ե-ղև բարեկամ Զաքարիա վարդապետին վասն խօսելոյ Պարսիկ լեզուաւն. և էր Կաթուղիկոս Էջմիածին պատուական Տէրն մեր Յակոբ Ջուղայեցի, որ գնայլն առ խանն ի միասին՝ և գային։ Մեռաւ Զաքարիա վարդապետն ի թուին ՌՃԸին։ Նա առաքեաց խանն ի վանս Յօհաննու և ի սուրբ Էջմիածին, զի կնքեսցեն զգլուխս մառանացն և տանցն, մինչև գայցէ Կա-թուղիկոսն. վասնզի գնացեալ էր նա յերկիրն Գողթան։ Նա ապա ծանուցին նմա, թէ՝ ի կենդանութեան իւրում եդեալ է ի տեղի իւր Առաջնորդ, և ոչ է անտէր տունն։ Նա ապա հրա-մայեաց բանալ զդրունս տանցն՝ զոր կնքեցին։ Նա էր խանս այս անարի և երկչոտ. քանզի գնայր սա յամառան եղանակին ի գա-ւառն Կոտէս ի յակունս բազմութեանց աղբերացն՝ որ ասէին Խորոխ-Պուլաղ, որ է Խ աղբիւր։ Նա անդ գովեցին զակունս Բասաղ գետոյն՝ և զքաղցրութիւն գաւառին Նգայ։ Նա հրա-մայեաց տանել զինքն անդ բանակօքն, զի անդ անցուսցէ ամառն. և մնացին անդ աւուրս ինչ։ Նա լուաւ, թէ ահա Օս-մանցիքն՝ որք են 'ի Կարս՝ ժողովեալ են, զի յանկարծակի անկցին ի վերայ քո։ Նա իբրև լուաւ զայս՝ և հաւաստոյ ճշ-մարիտ լինել՝ վասնորոյ երկեաւ, և հրամայեաց՝ զի փախիցեն ուր և կամին. և ինքն հեծեալ ի ձի՝ և փախեաւ ի Կարբի. և բա-զումք թողին զղամբարս իւրեանց և զկարասի՝ և փախեան ընդ խանին։ Իսկ խոհարարքն եդեալ էին կաթսայ ի վերայ հրոյ՝ և եփէին կերակուր վասն խանին. և իբրև տեսին՝ թէ փախեաւ խանն, նոքա թափեցին զկիսեփեաց կերակուրն, և առին զկաթ-

տայոն՝ և փախեան։ Իսկ լուեալ զայս Օսմանցիքն՝ ծիծաղեցին, և անուանեցին զնա Փլաւ-Թօքեան-խան, և ասի մինչև ցայսօր։ Իսկ Օսմանցւոց ժողովրդեան այս էր։ Զի լուան նոքա՝ թէ խանըն եկեալ է մերձ ի սահմանս իւրեանց, երկեան թէ սաստութեամբ է անդ նստեալ, մի՛ գուցէ ի յեղակարծութեան ժամու եկեսցէ յերկիրս մեր և աւար առցէ։ Նոքա այս կասկածս ունէին. և սա ի նոցանէ երկուցեալ փախեաւ. և եղև ծաղր և առակ։ Իսկ լուաւ Շահն՝ և կամէր պատուհասել զնա, այլ խնայեաց, զի ծառայ էր նորա։ Իսկ ասաց, թէ Իրևան շատ մերձ է Օսմանցւոց երկրին. վասն այն երկեաւ Նաձաֆ խանն՝ թէ մի՛ գուցէ Օսմանցիքն գերեն զինքն։ Արդ առաքեցից զնա ի միջ երկրատեղիս, զի Օսմանցիքն ոչ կարասցեն գերել զնա։ Իսկ հրամայեաց նմա ելանել յԻրևանայ՝ և գնալ ի Շամախի ամենայն ընչիւք իւրովք. և ելեալ գնաց։ Բայց յիշէր զաւերելն երկրին Արարատեան՝ և ոգւոց հանէր։ Արդարև բարելի է երկիրն Արարատեան՝ ծառովք և անկովք, պտղովք և սերմանեօք, ծաղկովք և բուսովք, լերամբք և դաշտիւք, գետովք և աղբերօք, այգեստանեօք և բուրաստանօք, թռչնովք և չորքոտանեօք, էրէիւք և որսովք, և ամենայն բարութեամբ լի և առատ։ Զայս ամենայն զմտաւ ածէր Նաձաֆ խանն, զզբօսանաց տեղեան՝ և ամենայն վայրքն՝ յիշէր և գոչէր։ Վասնորոյ գովեչքն ողբս երգեցին վասն հեռանալոյն նորա յԻրևանայ՝ և օտարանալոյն ի տար աշխարհ, և բնակելոյն յանբարի և նուաստ երկրին։

## ԳԼՈՒԽ ԼԵ.

### Վասն Յակոբ Կաթողիկոսին։

Սա այս Իրանելի Հայրս մեր և պատուական Հայրապետըս Յակոբ էր յԱստապատայ՝ ի գիւղաքաղաքէն Ջուղայու,

որդի բարեպաշտի, և աշակերտեցաւ Խաչատուր վարդապետին Կեսարացւոյ, որ էր Առաջնորդ Ջուղայու, և ուսաւ ի նմանէ զամենայն վարս առաքինութեան՝ և զամենայն գիտութիւնս Աստուածային գրոց. և եղև կուսակրօն քահանայ։ Իսկ յետ մահուան վարդապետին Խաչատրոյ եկն ի սուրբ Աթոռն Էջմիածին, և Կաթուղիկոսն Փիլիպպոս ետ նմա իշխանութիւն վարդապետութեան, և առաքեաց յաշխարհն Յունաց ի Նուիրակութիւն։ Իսկ դարձաւ անտի՝ և եկն ի սուրբ Էջմիածին։ Իսկ կացոյց զնա Կաթուղիկոսն Աթոռակալ և Հրամանատար. և կացեալ բազում ժամանակս ի գործն այն՝ բարւոք կառավարելով զհոգևոր և զմարմնաւոր կարգաւորութիւնսն։ Իսկ յետ բազում ժամանակաց միայրոյ նորա ի սուրբ Էջմիածնին՝ գնաց ի սուրբ Նախավկայի վանքն՝ որ է ի Շամբի-ձորգեղ. և քակեալ զհին և խախտեալ եկեղեցին, և շինեաց զեկեղեցին յօրինմամբ. զպարիսպն՝ զխոհանոցն՝ և զխցերն շինեալ աւարտեաց։ Իսկ մինչ էր նա անդ ի սուրբ Նախավկայի վանքն, մեռաւ Փիլիպպոս Կաթուղիկոսն ի սուրբ Էջմիածին ի ՌՃԴ թուին։ Իսկ առաքեցին սուրհանդակ,՝ և բերեալ զնա՝ և օրհնեցին Կաթուղիկոս ի Ծաղկազարդի կիւրակէն։ Իսկ նա այնուհետև սկիզբն արար բարեգործութեան. և բազմացոյց զմիաբանս սուրբ Աթոռոյն։ Աւարտեաց և զշինութիւն Զանգակատանն։ Շրջէր և ի վանօրայսն, և զոր ինչ պակասութիւն տեսանէր վանիցն՝ թէ հոգևոր և թէ մարմնաւոր կարիս լցուցանէր։ Հաստատեաց՝ զի յամենայն տարի տացեն ամենայն վանից Ժ. լիտր ձէթ վասն եկեղեցւոյն լուցանելոյ. և Ի. լիտր գինի ի պէտս երթևեկողացն։ Իսկ ապա գնաց յԱսպահան ի տեսութիւն փոքր Շահ-Աբասին, զի առցէ հրաման վասն Կաթուղիկոսութեան իւրոյ։ Նախ եւս Իշխանաց Իշխանն, զոր Էհտիմալ-Դօլուաթ ասեն, և ծանոյց նմա զխորհուրդ իւր։ Իսկ ասաց իշխանն, յորում աւուր ազդ արարից քեզ, եկեսցես։ Իսկ գնացեալ պատրաստեաց պատշաճաւոր աղերս և Յ ոսկի բռա

սահմանի առաջին Կաթուղիկոսացն։ Գրեաց և գիրս մաղթանաց, որ է արգայ։ Եւ կայր զգուշութեամբ՝ մեծաւ յուսով աղօթելով առ Աստուած վասն աջողելոյ գործոյն։ Եւ յաւուր միում Դշաբաթի՝ եկն հրաւիրակ նմա գնալ 'ի կոչն արքունի։ Եւ կոչեալ առաջի նորա, և ընծայեաց զաղերսն։ Եւ հայեցեալ 'ի նա արքայն՝ ասէ, դու տաճի՞կ ես՝ թէ կռապաշտ։ Ասէ Կաթողիկոսն, Աստուած մի՛ արասցէ, ոչ եմ կռապաշտ, սակայն և տաճիկ ևս չեմ։ Ասէ Շահն, ապա զի՞նչ ես։ Ասէ Կաթուղիկոսն, քրիստոնեայ եմ։ Ասէ Շահն, դուք Քրիստոսի զի՞նչ ասէք։ Ասէ Կաթուղիկոսն, զի՛նչ որ գրեալ են մարգարէքն, մեք նոցա բանիւն կամք, թէ բարի է, նոքա վարձս առցեն. և թէ չար է, նոքա պատժեսցին։ Ասէ Շահն, դուք Աստուա՞ծ ասէք Քրիստոսի։ Ասէ Կաթուղիկոսն, այո։ Իսկ տաճիկքն ակն ունէին՝ թէ՝ ահա պատառ պատառ առնէ զնա։ Քանզի որպէս ասէ Սողոմոն, թէ սիրտք թագաւորաց ի ձեռին Աստուծոյ են։ Եւ ինքն Շահ դարձոյց զերեսն առ մեծամեծսն՝ և ասէ Պարսիկ բարբառով, թէ մեք ևս ասեմք նմա Աստուած՝ զի՞նչ վնաս իցէ. և ապա հրամայեաց Կաթուղիկոսին՝ և ասէ, նիստ Խալիֆայ։ Եւ զի գիտէր լեզու Պարսից, յորժամ լուաւ զբարբառ Շահին, ուրախ եղև կարի առաւել։ Ասէ Շահն ցԿաթուղիկոսն, ասա զվկայութիւնս մարգարէիցն՝ որ վասն Քրիստոսի։ Եւ ապա սկսաւ Կաթուղիկոսն ասել, սկսեալ 'ի Մովսիսէ մինչև ցՔրիստոս մեկնել զամենայն. և լսէին մեծամեծքն զոր ինչ Կաթուղիկոսն ասէր։ Եւ յաւարտելն ասէ Շահն, ահա սա վկայ բերէ զմարգարէսն, առ այս դուք զի՞նչ պատասխանէք։ Եւ ի բազմելոցն ոչ ոք ասաց ինչ։ Դարձեալ ասէ Շահն, արդ զի՞նչ է կամք քո՝ գրեա՛ արդ, և ես կատարեցից զխնդիրս քո։ Եւ երկիրպագեալ արքային՝ ելեալ գնաց. և գրեաց թուղթ առ նա, թէ հզօր և մեծ թագաւորի ռաաց հողէն յայտ լիցի, զի հրամայեցեր՝ թէ թղթով ծանո՛ մեզ զխնդիրն քո. և ծա-

ռայ քո ոչ խնդրէ վասն իւր ինչս, այլ խնդրէ յիշատակ 'ի տէրութենէ քումմէ մնալ յաւիտեան յաղագս կենաց քոց և զաւակացդ ազգէ յազգ, այսինքն զտասանորդս գեղին Էջմիածնի շնորհել վանիցն. վասնզի ի բնէ վանիցն լեալ է, և ի թուլութենէ Առաջնորդացն մերոց՝ խանեալ յափշտակեալ են՝ առանց գիտելոյ Թագաւորաց՝ իշխանք վայելեն։ Իսկ Թագաւորն իբրև ընթերցաւ զգիրն, հրամայեաց որոնել զտաւթարն. և քննեալ զտաւթարն՝ և ոչ գոյր, և ծանուցին Շահին։ Նա հրամայեաց արքայն գրել արքունական հրամանաւ Ղօմաս՝ որ է ռաղամ, և տալ նմա, զի թէ կոյր պառաւ մի ևս նստցի յԷջմիածին, տիրեսցէ նմա, և ոչ ոք յիշխանաց կամ ի Թագաւորաց մի՛ իշխեսցեն հպիլ կամ մերձենալ տասանորդացն այնմիկ (այնոցիկ). և ո՛վ ոք հակառակի՝ Թշնամի է Շահ-Աբասու օծաղին։ Նա գրեալ զայս և զռաղամ հրամանաց Կաթուղիկոսութեանն, և կնքեալ ետուն ցնա։ Զոր և առեալ եկն ի սուրբ Աթոռն Էջմիածին. և սկսաւ բուռն հարկանել բարեգործութեան։ Նախ զտասանորդ գեղորէիցն գնել, այսինքն զԲասախուն՝ որ է ի Նիգ գաւառ, զԽեղնեացն, զՄանուոյն, զՄևաւեր, զՆորք, զՆորագեղ, զԲադռինճ, զԲիւրական, և այլ բազում տեղաց, որ է այժմ ընդ իշխանութեամբ սուրբ Էջմիածնի։ Այլև ի ներքոյ երկրի Նորք[21]) արարեալ՝ յԲ տեղւոջ է հանեալ ջուր, մինն հեռի ի գեղջէն Էջմիածնայ՝ տարեալ յանդաստանս ի յոռոգանել զարտորայսըն. և մինն բերեալ ի գիւղն, զի ի ձմերանի արբցեն անասունք։ Նա ի վերայ այսմ ջրոյ շինեաց ջրաղացս և բրնձահանս. և արար ծով՝ և ելից ձկամբ։ Տնկեաց և տունկս առ ափամբ ծովակին. և սերմանէին բազում սերմանս, և այլ բարութիւնս բազումս։ Զի՞նչ ասացից և վասն հոգևոր գործոյն՝ և բազմացուցանելոյ միաբանիցն։ Նա այլ բազում

(21) Նորք՝, ական. փոս. ծակ. 2) առու ողբանոցաց, կցանոց.

են բարութիւնք սորա, և մեք ոչ գրեցաք, զի մի՛ գայթակղեսջիք. և զմնացորդս բանիցն և զմահն նորա գրեսցուք ի տեղի իւրում։

## ԳԼՈՒԽ ԼԶ.

### Վասն իջանելոյ լուսոյն յերկնից։

Զայս պատմութիւնս պարտ էր առաջ գրել ի թուին ՌՁԳ, բայց ի մոռացմանէ աստ գրեցաւ։ Քանզի մինչ մանուկ էի ես ի տան մերում ի Քանաքեռ, և յաւուր խաչվերացին գնացաք ընդ հօր իմում յայգին մեր, որ մերձ է ի գիւղն Կարմիր-բերդ կոչեցեալ՝ առ ափն Հուրաստան գետոյն՝ ի ներքոյ կամրջին։ Եւ ի մտանել արեգականն, հայրն իմ աղօթէր յերեկոյեան ժամն. չև ևս էր մթացեալ, այլ լոյս աւուրն դեռ ևս կայր, յանկարծակի պատառեցաւ կապուտակ եթերն յարևելից կողմն, և էջ լոյս սաստիկ և ահագին, լայն և երկայն, և էջ մինչև մերձենալ յերկիր, և լուսաւորեաց ճառագայթ նորա զտիեզերս պայծառ առաւել քան զարեգակն. և սկիզբն լուսոյն ճախր առնոյր՝ որպէս անիւ երթայր դէպ ի հիւսիս՝ հանդարտութեամբ և մեղմով, և ճառագայթեալ լոյսն կարմիր և սպիտակ, և առաջի լուսոյն որպէս թէ աստղ ի չափ պուտեկին ընթանայր բացագոյն թզաչափ մի, և հայրն իմ թողեալ զժամ աղօթիցն՝ սկսաւ լալով երգել զշարական Գէ. Լոյս որ ընդ լուսով Աստուածութեան. Զշարական աւարտեալ՝ մինչ երևիւր լոյսն, և ապա հեռացաւ և եղև աներևոյթ։ Եւ լուաք՝ թէ մինչև Ախլցխէ տեսեալ են զաստուածային և հրաշափառ լոյսն։

# ԳԼՈՒԽ ԼԸ.

## Սպանումն Յովհաննէս վարդապետին։

Այս Յովհաննէս վարդապետս էր ի Նոր-Ջուղայու, որդի Եղիազարին՝ որ ասի Պէթոէշ, որ էր աշակերտ վարդապետին Կեսարացւոյ, որ էր Առաջնորդ Ջուղայու։ Եւ հրամանաւ վարդապետին Խաչատրոյ գնաց Յովհաննէս ի Փռանգստան ի քաղաքն Լեւոռնայ, և ուսաւ զտպագրութիւն. և դարձաւ յԱսպահան առ վարդապետն Խաչատուր, և հաստատեցին անդ ի Ջուղայ զտպարան. որ և տպեցին զգիրս բազումս։ Եւ ապա եկն վարդապետն Յովհաննէս ի սուրբ Էջմիածին։ Եւ Կաթուղիկոսն Փիլիպպոս արար զնա Եպիսկոպոս, և առաքեաց ի Հին-Ջուղայ, զի նստցի Առաջնորդ վանիցն։ Եւ նա գնացեալ կայր անդ և հովուէր զհնազանդեալսն իւր։ Եւ այր մի ի նոյն գեղջէն Ջուղայու, և էր նա պարտական ումեմն տաճկի, որ ազգաւ Քանկառլու, որ եկեալ առ քրիստոնեայն՝ և խնդրեաց զպարտս իւր։ Եւ նա ոչ կարաց հատուցանել։ Վասն որոյ բարկացեալ տաճիկն՝ և բռնութեամբ քարշեալ զդուստր նորա՝ և տարաւ ի տուն իւր. և ասէ ցայրն, եթէ յայս նիշ աւուր զդրամն իմ ոչ տացես, և ես զդուստրն քո ոչ տաց քեզ։ Իսկ այրն անճարացեալ՝ ոչ գիտէր զի՞նչ արասցէ։ Եւ ապա ելեալ գնաց առ վարդապետն, աղաչէր զնա, և ասէր, վասն Աստուծոյ մի՛ կորուսաներ զհոգի դստերն իմոյ, և դու ազատեա՛ զնա ի ձեռաց անօրինին, և փոխանակ նորա որդին իմ կացցէ քեզ ի ծառայութեան։ Եւ լուեալ վարդապետն զաղաչանս նորա՝ ետ նմա դրամ ըստ բաւականին. զոր և տարեալ ետ տաճկին, և առեալ զդուստր իւր, և գնացեալ խըն-դութեամբ, և տարեալ զորդին յանձնեաց վարդապետին. և ասէ, ա՛յնքան կացցէ առ քեզ, մինչ ես առ սակաւ սակաւ հատուցից զդրամն քո։ Եւ արարին այնպէս։ Իսկ անիծեալ տաճի-

կին լուաւ, թէ վարդապետն է եղեալ պատճառ ազատելոյ աղջկանն, վասնորոյ ոխացեալ ընդ վարդապետին, և հնարէր թէ զիարդ հանցէ զոխն։ Նա զի ունէր ծանօթութիւն ընդ վարդապետին, և յաւուր միում գնաց ի վանքն սիրոյ աղագաւ. և ի սրտի իւրում մթերեալ ունէր զոխն, և զննեալ իմացաւ ելեմուտ վանիցն, և ոլքանութիւն միաբանիցն։ Նա գնացեալ միաբանեցոյց ընդ իւր արք չորք չարագործք քան զինքն, և դիպօղ աւուր գտեալ գնացին այլում ճանապարհաւ ի վանքն. և հարին զդուռն վանիցն, և ձայնէին բանալ։ Նա նոքա արկեալ էին սեղան ի դրան եկեղեցւոյն, և կամէին ճաշակել. և իբրև գիտացին; թէ՝ ծանօթն իւրեանց է, բացին զդուռն, և տեսին զնոսա, զի սպառազինեալք էին. և սկսան թաքչել ի մէջ վանիցն. և վարդապետն եմուտ յեկեղեցին՝ և աղխեաց զդուռն, և բերեալ զգրքակալն՝ նեցուկ արար դրանն. և անկեալ ի վերայ գրքակալին՝ կռուէր ընդ նոսա։ Իսկ տաճիկքն արտաքուստ հարին թուանքով զդուռն, և էանց գուլլէն[22]) և ծակեաց զդուռն և զգրքակալն, և ի սիրտ վարդապետին անցեալ և բեկեցաւ յորմն բեմբին։ Նա սպանին զամենայն՝ ով որ էին ի վանքն. և մանուկն՝ որ փոխանակ քեռն իւրոյ էր, փախեալ թաքեաւ ի մէջ քակորացն. և որոնեալ գտին և սպանին։ Կողոպտեցին զվանքն և զեկեղեցին թէ՝ հոգևոր և թէ՝ մարմնաւոր՝ մինչև հացահան երկաթն ևս։ Նա ելեալ արտաքս՝ հնարիւք փակեցին զդուռն պարսպին, և այլով ճանապարհաւ գնացին ի տեղիս իւրեանց։ Նա յետ Ի ուց աւուրց՝ իբրև տեսին գեղականքն՝ թէ ոչ ոք գայ ի վանականացն ի գիւղն, և ասացին, արդեօ՞ք նեղացեալ իցեն վանականքն ի վերայ մեր, վասն այնորիկ ոչ գան։ Ապա աւագ երէցն և Ի արք պատրաստեցին կերակուր և գինի, և առեալ գնացին ի վանքն. և ծեծեցին զդուռն պարսպին, և ոչ գոյր ձայն. և

(22) Գնտակ։

հայեցան ի վեր՝ և տեսին՝ զի աղաւաւք եղևէջս առնէին. և տեսին, թէ սքանչելիք իմն է։ Եւ ապա ելին ի գլուխս բարձր քարանցն՝ որ ի վեր քան զվանքն, և տեսին փայտեայ սեղան ի դրան եկեղեցւոյն, և ի վերայ նորա հաց և խորտիկ, և ըմպելի գինւոյ և բաժակ, և այր Բ անկեալ չերկիր, և ծանեան թէ սպանեալք են։ Եւ աղդ արարին գեղջն. և զրոհ տուեալ գեղջըն՝ և եկին բազումք բերելով ընդ ինքեանս սանդուխս, և կապեցին Բ և Գ ի մի, և ելին ի պարիսպն. և ոմն իջուցին ի մէջ պարսպին, որ եբաց զդուռն, և մտին ի ներքս, և տեսին կոտորեալ զամենայն բնակիչս վանիցն, և աւար արարեալ զամենայն ինչսն։ Եւ աղդ արարին իշխանին Նախչուանայ. և հրամայեաց թաղել զսպանեալսն. և ապա որոնեցին զգողսն՝ և զտին. բայց ոչինչ կարացին առնել, զի հաւատարիմք բազում ունէին. այլ փոքր ինչ յանօթոց եկեղեցւոյն դարձուցին յետս, և այլն ամենայն կորեաւ։ Եւ այսպէս եղև մահ Յովհաննէս վարդապետին։ Բայց ասեմ, թէ ընդ մարտիրոսս ընկալցի մահ նորա. քանզի վասն ազատելոյ զհոգի քրիստոնէին եղև մահ նորա։

## ԳԼՈՒԽ ԼԲ.

### Վասն չարաբնեանն Օնոփրիոսի։

Եթէ զչարութիւն սորա զամենայն պատմեմք, բազում են, և լսողքն զայթակղին, և մեք Ժ-նէն զմինն գրեմք համառօտ։ Էր նա յԵրևան քաղաքէ. մինչ մանուկ էր, հայրն նորա խաչիկ տարեալ զնա ի սուրբ Աթոռն Էջմիածին, և ետուն ի դըպրատունն։ Եւ իբրև զարգացաւ, ըստ կախարդական բարուցն խոնարհութիւն ցուցանէր՝ մինչ պատրել զամենեսեան. և հրամանաւ Փիլիպպոս Կաթուղիկոսին արարին զնա աբեղայ, և առաքեցին ի Սևան կղզին՝ լինել Հայր անապատին։ Եւ կա-

ցեալ ժամանակ ինչ, և դարձաւ ի սուրբ Էջմիածին. և կերծաւորեալ զինքն ցուցանէր որպէս թէ զմի ոք ի կատարելոցն, մինչև հաւանիլ Յակոբ Կաթուղիկոսին, և ետ նմա իշխանութիւն վարդապետական, և առաքեաց զնա 'ի Նուիրակութիւն ի քաղաքն Տիգրանակերտ։ Եւ գնացեալ անդ՝ և եցոյց զինքն առաքինի և պարկեշտ, մինչզի գողացաւ զսիրտս ամենեցուն, և հաւանեցոյց զնոսա խնդրել զինքն Առաջնորդ ինքեանց։ Եւ ժողովեալ նուիրակն այն, և առեալ քահանայս և զոմանս ի պատուաւոր արանց, և եկին ի սուրբ Աթոռն Էջմիածին. և ցուցին զթուղթն Յամթեցւոց՝ և զխնդիրս նոցա։ Իսկ մեծ Կաթուղիկոսն Յակոբ թէպէտ գիտէր զանզգամութիւն նորա, այլ վասն խնդրոյ նոցա արար զնա Եպիսկոպոս, և ետ և գաւազան մեծ, և կոնդակաւ առաքեաց զնա ընդ խնդրականացն։ Եւ նորա գնացեալ ի Յամիթ, և խնդրեաց ի քաղաքացեացն բերել նոմոս արքունի։ Եւ նոքա գնացեալ բերին։ Իսկ նա այնուհետև յայտնեաց զչարութիւնն իւր ըստ գրեցելոյն, անհնար է օձի թողուլ զթոյնն, և Եթովպացւոց՝ զթխութիւնն, և կարճի՝ զխայթոցն։ Ըստ նոյն սարասի ունէր և սա մթերեալ զչարութիւնն ի սրտի իւրում. և ժայթքեաց ի զարշ սրտէ իւրոյ զպիղծ մաղձ իւր։ Եւ առեալ թուղթ բազում և կցեաց ընդ իրեար, և գրեաց առ սուրբ Աթոռն Էջմիածին, և առ Կաթուղիկոսն Յակոբ՝ և առ միաբանս Աթոռոյն՝ և առ ամենայն վանորայս՝ և առ Առաջնորդս նոցա՝ բազում հայհոյանս, և զխօսս անարգս, բարբանջմունս և ղօղանջումն սուտ և զուր, վայրապար հաչմունս որպէս շուն կատաղեալ ընդ Տեառն իւրոյ։ Եւ յաւարտ հաչմանն գրեալ էր, թէ ես զձեր գործն գրեցի յայսմ թղթի, և թողէ ևս տեղի թուղթ զլելոյ, զի դուք գրեցէք առ իս ի վերայ այդմ թղթի՝ զոր ինչ և գիտէք յինէն։ Եւ առաքեաց զթուղթն ի սուրբ Էջմիածին. և ընթերցեալ զթուղթն, և լուան զհաչմունս նորա, և եդին ի դրատուն ի պահ, զի գիտացին որ ի կորուստ անձին իւրոյ գրեաց զայն։ Եւ

նիծեսցէ և նզովեսցէ զքեզ։ Զայս արարեալ առաքեցին զնա և եղին ի մահահոտ և խաւարային բուրգ մի։ Եւ կարգեցին ծառայ, զի հաց տացէ նմա, և կացցէ անդ՝ և աղօթեսցէ վասն մեղաց իւրոց։ Եւ կացեալ անդ ա ուրս ինչ, և վասն զարշահոտ լինելոյ բանտին՝ տկարացաւ, և ծանուցին Կաթուղիկոսին. և հրամայեաց հանել զնա անտի՝ և դնել ի վերնատուն ցամաք։ Եւ առաքեաց յԵրևան՝ և բերին զքոյր նորա Մուղում՝ և պատանի մի ընդ նմա, զի ծառայեսցէ եղբօր իւրոյ։ Եւ կացեալ անդ մինչև ողջացաւ։ Բայց յորժամ զայր ոք առ նա, և նա մտանէր ի ներքոյ մահճի, և վռչայր. և յորժամ ելանէին, նա նըստէր յուտել և ըմպել։ Եւ յաւուր միում առաքեաց զքոյրն յԵրևան, և ասէ, յայս ինչ աւուր առաքեա զՋորի իմ յայս ինչ տուն ի գիւղն Էջմիածին, և այս ինչ այր ընդ նմա։ Եւ ինքն ունէր բարեկամս ի սուրբ Աթոռն, և աղաչանօք միաբանեցոյց ընդ ինքեան. և ի գիշերի միում ընդ խաղաղանալ ժամուն՝ կախեցին զինքն ընդ պարիսպն, և պատանին ընդ նմա. և էր Ջորին պատրաստ, և նստաւ ի վերայ նորա, և ի գիշերին այնմիկ գնաց յԵրևան. բայց կայր երկիւղիւ։ Եւ ոչ կարաց կալ անդէն, այլ կալեալ փարձկանս, և գնաց մինչ ի Նախիջևան, և անտի ի Թաւրէզ և ի Ղազուին, և գնաց մինչև յԱսպահան։ Եւ գնացեալ ի տուն խօճայ[25]) Մարդանին, և բազում միջնորդութեամբ բազմաց հաշտեցաւ ընդ Կաթուղիկոսին։ Եւ եկեալ ի սուրբ Աթոռն Էջմիածին, և շրջէր այսր և անդր՝ խորհելով չարիս։

(25) Տէր, 2) ուսուցիչ, Լն։

## ԳԼՈՒԽ ԼԹ.

### Իշխանութիւն Աբաս խանին։

*Հրաման եղև ի փոքր Շահ-Աբաս Թագաւորէն Պարսից առ Նաճաֆ խանն՝ որ էր իշխան Երևանայ՝ գնալ ի Շամախի. և փոխանակ նորա առաքեաց զԱբաս խանն՝ որ էր որդի Ամիրգունայ-խանին, այր ծեր և պակասեալ եւս ի լուսոյ. որ արար բարեկամութիւն ընդ Յակոբ Կաթուղիկոսին, ոչ կարի ագահ, այլ չափաւոր։ Սա ետ այգին՝ որ ի հօրէ նորա տնկեալ էր յԷջմիածին՝ մերձ ի սուրբ Հռիփսիմէն՝ Կաթուղիկոսին Յակոբայ։ Եւ հանապազ երթայր ի սուրբ Էջմիածին՝ զբօսանաց աղագաւ. և ի ժամ աղօթիցն գնայր յեկեղեցին, նստէր աթոռով, և տայր երգել քահանայիցն, և ինքն ունկն դնէր։ Եւ պատուէր տայր զօրացն, զի յինքենէ կերիցեն, և ոչ զոք մի' խռովիցեն։ Եւ յորժամ ելանէր ի գնալ, տայր պարգև վանիցն։ Նաև ի դատաստանս՝ իրաւարար և ճշմարտասէր զամենայն ժամանակս կենաց իւրոց։ Եւ ի սորա ժամանակին շրջէր Օնոփրիոս ի վանորայս, և արծարծէր զչարութիւն իւր, և յիշէր զչարիսն իւր. որպէս հուր թաքուցեալ ի ներքոյ յարդի, և կամ իժ ծրարեալ ի վարշամակի. այսպէս և սա զծածուկ չարիսն իւր յիշէր առ այնոսիկ, որք իբրև զինքն էին անուղիղ և յանդիմանեալ ի Կաթուղիկոսէն. այժմ միաբանեցոյց ընդ ինքեան, և գրեցին բաղում հայհոյանօք սուտս ի Կաթուղիկոսէն առ Եղիազար վարդապետն, որ Պատրիարգ(էր)Երուսաղեմի, թէ դու եկ ի սուրբ Աթոռս, և մեք քեզ տամք զԿաթուղիկոսութիւնն Էջմիածնի՝ արքունական հոմոսիւք։ Եւ ահա առաքեցաք առ քեզ զՕնոփրիոս վարդապետ, զի զքեզ փառաւորապէս բերցէ ի սուրբ Աթոռս։ Զայս գրեցին, և ընդ հաւատարմաց իւրեանց առաքեցին յառաջագոյն. և յետոյ գնաց Օնոփրիոսն զկնի թղթոյն։ Եւ եղև՝ զի Կաթուղիկոսն Յակոբ բերեալ զձեռնա-*

սուն աշակերտն իւր Խաչակ վարդապետ Մակուեցի՝ արար Եպիսկոպոս, և եդ ի տեղի իւր Աթոռակալ և Տեղապահ. և ինքն ելեալ գնաց ի սուրբ Երուսաղէմ։ Եւ այնոքիկ՝ որք միաբանեալ էին ընդ Օնոփրիոսին՝ սկսան չարիս առնել Սահակին և սուրբ Աթոռին։ Եւ եհաս համբաւս այս առ Կաթուղիկոսն յԵւդոկիա քաղաք՝ որ է Թոխաթ, և դարձաւ անտի, և եկն դարձեալ ի սուրբ Էջմիածին։ Եւ նոքա՝ որք կամէին չարիս առնել Աթոռին, յորդորեցին զՕնոփրիոսն՝ և առաքեցին հրաւիրակ Եղիազարին. և ելեալ գնաց մինչ ի Կարին։ Իսկ Եղիազարն իբրև լուաւ զդառնալն Կաթուղիկոսին, քամահանս վարկաւ ինքեան՝ և ի խոր խոցեցաւ ի սրտի իւրում. վասնորոյ ժողովեաց զամենայն Եպիսկոպոսունս յայնմ նահանգի ի Բերիա քաղաք՝ որ է Հալապ, և օրհնեցաւ Կաթուղիկոս ինքնագլուխ։ Եւ իբրև լուաւ Օնոփրիոսն, վաղվաղակի գնաց առ նա խնդութեամբ. և միաբանեցան ի միասին, և գնացին ի ըՍտամպօլ, և առին արքունական նօմոս, որ է ի կողմանց Պարսից սևագլուխ մի՝ անցցէ ի կողմն Օսմանցւոց։ Այլև ետուն գիր՝ թէ յամենայն ամի յաւելումք ի գանձս արքունի Մ մարչիլ։ Եւ այնպէս կային նոքա խնդութեամբ ի վերայ չար արարմանց իւրեանց։

## ԳԼՈՒԽ Խ.

### Գնալն Կաթողիկոսին ի Ստամպօլ։

Յորժամ եղև Եղիազարն Կաթուղիկոս, էր յայնմ ժամանակին վարդապետ մի Կաֆայեցի Մարտիրոս անուն, որ էր Պատրիարգ ի Կոստանդնուպօլիս, և բարեկամ էր սա Էջմիածնայ, զի ի Յակոբայ էր ձեռնադրեալ Եպիսկոպոս։ Սա գնացեալ առ վաճառականս՝ որք էին ի կողմանցն Պարսից, և էին անդ արք Բ, անուն միոյն՝ Միրզայ, և միւսոյն՝ Խոսրով՝ ի Ջահուկ

գեղջէ Նախիջուանայ, արք երևելիք և մեծատունն. և սոքա ընդ-
դիմանային Եղիազարին. և նա ունէր Աբրօ անուն ոմն բարե-
կամ. և ինքն Եղիազար էր յոյժ ճարտարախօս և ճոռոմաբան,
ատենազրոյց և բաղդաւոր, պնդերես և աներկիւղ. որ և ճար-
տարութեամբն իւրով ամենեցուն սիրտն առ ինքն ձգեաց՝
զքրիստոնեայս պատիր բանիւ՝ և զտաճիկսն կաշառօք. քանզի
փարթամ էր ընչիւք. և այսպէս գողացաւ զմիտս ամենեցուն,
և դարձոյց զսիրտս նոցա առ ինքն: Իսկ բարեկամք Էջմիածնին
ոչ կամեցան առնել ինչ առանց Կաթուղիկոսի. վասնորոյ միա-
բանեցան ամենայն բարեկամք Էջմիածնի, և առաքեցին զնոյն
Մարտիրոս վարդապետն հրաւիրակ առ Կաթուղիկոսն: Եւ ե-
կեալ նա ի սուրբ Աթոռն Էջմիածին յաւուրս պահոց Յայտ-
նութեան, և ժողովեցան ամենայն Առաջնորդք վանորէից, Ե-
պիսկոպոսք և վարդապետք, և հարք, և անապատականք, և
աշխարհական արք երևելիք, և մեծաւ փառօք ուղարկեցին
զԿաթուղիկոսն ի Կոստանդնուպօլիս: Եւ ժողովեցան առ նա
ամենայն բարեկամք նորա՝ որք ի կողմանցն Պարսից՝ որք ի
կողմանցն Օսմանցւոց, և առաքեցին զԿաթուղիկոսն յԱն-
դրիանուպօլիս՝ որ է Ադրիանա (Էտիրնէ կամ Էտրէնէ), զի տե-
սէր թագաւորն Սուլթան-Մահմատ: Գնացին ընդ նմա Խոս-
րովն և Միրզայն: Եւ կայր այր մի մեծ առ թագաւորն, որ բազ-
մէր ընդ թագաւորին ի սեղան, որոյ անունն էր Գայմազ խան.
սա էր բարեկամ Խոսրովին. և միշտ գնայր առ նա Խոսրովն,
և բերէր նմա խօ-ճօշ[26]) հանդերձս, վաճառէր նմա՝ և առնոյր զգինն
լիով..և այսպէս հաւատարիմ լինելով՝ սիրէր զնա Գայմազ
խանն՝ և ունկն դնէր նմա, և լսէր զբանս նորա: Այս Խոսրովս
ծանոյց նմա վասն Կաթուղիկոսին. և առեալ տարաւ առ նա,
և ծանօթացոյց նմա: Եւ զա՛ կատեաց նմա զամենայն ինչ, և
ծանոյց որ ինչ ի բնէ լեալ էր: Այլև եցոյց զթուղթն Մահ-

---

(26) Կերպաս, դիպակ:

մասն Թագաւորին՝ որ տուեալ էր Փիլիպպոս Կաթուղիկոսին։ Այլ իմացեալ ծանեաւ զամենայն Պայման խանն, և ասաց ծնօտարն իւր, զոր ինչ ասիցէ քեզ Նարդ, դու գրեա՛ արզու-հալ[27]), յայս ինչ աւուր երթայ Թագաւորն ի մեծ ճամին[28]) աղօթք ի կէս աւուրն, և դու առ զամենայն միաբանս քո իւրեանց հանգերձիւն և խոնքեարչէրիֆն[29]), և գնացեալ ի գլուխ պողոտային՝ յոր-ժամ գայ Թագաւորն և տեսանէ զձեզ, և թէ վասն ձեր հար-ցանէ մեզ, մեք տամք նմա պատասխանի։ Այլ թէ ոչ հարցանէ, դուք առ սակաւ մերձ եկա՛յք, և ասացէք, պատիշահըմ արզուհալըմը գաբուլ էյլէ[30])։ Այլ յայնժամ զոր ինչ Աստ-ուած կամեսցի՝ զայն լիցի։ Զայս ասաց Պայման խանն, և հրա-մայեաց գնալ ի տեղի իւր, և պատրաստ լինել՝ զոր ինչ պատուի-րեցի առնել մեծաւ զգուշութեամբ։ Այլ ի պայմանեալ աւուր ուրբաթու կէս աւուրն գնացին ի գլուխ բուն պողոտային՝ որ էր ուղիղ իսկզբէն մինչև աւարտն, և կանգնեցան միաբանութեամբ։ Այլ ահա եկեալ Թագաւորն բազմութեամբ երթայր, և եմուտ ի պողոտայն, և հայեցեալ տեսանէ զսեաւ ժողովն՝ և ասէ ցՊայման խանն, Աղա՛յ՝ զի՞նչ են սեաւքն այնոքիկ։ Ասէ Պայման խանն, լուեալ է իմ՝ թէ Պապին ոմն եկեալ է յՍպա-հանտանայ, և կամի համբուրել զոտս քո։ Այլ առաքեաց Պայ-ման խանն սուրհանդակ մի՝ զի ընդ առաջ գայցեն. և ունէր Կաթուղիկոսն յաջոյ ձեռին զխաթիշարիֆն Փիլիպպոս Կա-թուղիկոսին, և ի ձախոյ ձեռն զարզն, և հա՛րաբձեա զձեռսն՝ և լայր կոծանօք և դառն հեծանօք։ Այլ հրամայեաց արքայն առնուլ զթուղթսն. և խոնարհեցոյց Պայրապետն զգլուխն՝ և ասէ, ուխտեալ է իմ համբուրել զոտս Թագաւորին, և իմով

(27) Աղերսագիր, խնդրագիր։

(28) Ճամի. ժողովարան, աղօթարան։

(29) Խունքեար չերիֆ. հրովարտակ, գիր արքունի։

(30) Բարեխօս արքայ, քաղցրացո՛ զշնորհսդ իմում խնդրագրի։

ձեռամբ տալ ի նա զԹուղԹսն։ Եւ կոչեցին զԿաԹուղիկոսն առ արքայն. և ետես զնա՝ զի լայր, ասէ, մի՛ լար ընդփէր[31]). և եառ զԹուղԹն։ Եւ ԿաԹուղիկոսն կալեալ զոտս՝ և քսէր զերեսն։ Իսկ Թագաւորն խոնարհեալ և կալաւ զմօրուաց նորա՝ բարձրացոյց՝ և ասէ, մի՛ լար բարայ, զի զխնդիր քո կատարեցից։ Եւ բացեալ զխաԹիշարիֆն՝ ասէ, իմ է տուեալ սա, և ո՞վ է որ ընդդիմանայ սմա. և բացեալ և արզն ընԹերցեալ՝ ասէ, յարո՞ւմ աշխարհի է Ուչքիլիսայն։ Ասէ Գայմաղ խանն, ի կողմն Պարսից է։ Ասէ արքայն, ընդէ՞ր ոչ երԹայ առ Թագաւորն Պարսից ի դատաստան։ Ասէ Գայմաղ խանն, Թշնամի սորա ի մերում կողմանց է։ Ասէ արքայն, զի՞արդ կարիցէ առնել նա իշխանուԹիւն յաշխարհին Պարսից՝ եԹէ ի մերում կողմանց իցէ։ Ասէ Գայմաղ խանն, լուր Սոփաճելու[32])։ Զի Բ գլխաւոր տեղի աղօԹից գոյ Հայոց, մինն ի քում իշխանուԹեան է, որ կոչի Երուսաղէմ՝ ի կողմն Արապստանայ. և յամենայն ամի գան ուխտ անդ ի կողմանցն Պարսից բազումք և անԹիւք, և տան մաքսս բազումս ի ճանապարհին. և Երուսաղէմի անԹիւ տան դրամս, և յաւելու ի գանձ արքունի։ Այլև յԳ ամին միանգամ առաքեն յԵրուսաղէմայ յերկիրն Պարսից՝ և ժողովեն զբազում ոսկի և արծաԹ և զդիպակ հանդերձս, և բերեն յԵրուսաղէմ, և է նա օգուտ ազգի մերում։ Իսկ ի մերս կողմանէ ոչ գնան բազումք յԷջմիածին. և Թէ գնան ևս, ոչ տան նոցա այնքան՝ որ կիւրեանց կերածն և ըմպածն վճարէ։ Եւ նոքա ևս առաքեն յԳ ամին միանգամ Նուիրակ ի մերս կողմ, բայց ոչ տան որպէս նոքա տան, այլ սակաւ, մեր Ժ տունն՝ նոցա մի տանն չափ ոչ տան, և զայն ևս Եղիազարն կամի չտալ։ Եւ զայս ծանուցանեն Շահին. և նա պնդապահս տայ առնել աշխարհին իւրոյ չգնալ յԵրուսաղէմ, և զնուիրակն ևս արգե-

(31) Տէր, հինաւուրց.

(32) Սոփաճելու. բաղտաւոր, երջանիկ, երանելի, բարեբաղդ։

րուն, և այն պակասութիւն մեծ լինի թագաւորութեան մերում, նա թէ և խռովութիւն ևս անկանի ի մէջ Ռուց թագաւորութեանց։ Իբրև լուաւ զայս Խոնթկարն Մահմատ, սոսկացաւ յոյժ՝ և ասէ ցԴայմազ խանն, հրամայեցաւ քեզ հոգալ զամենայն գործ դորա, և զգլուխ թշնամւոյ դորա ի մօտոյ բերէք առ իս։ Զայս ասացեալ գնաց յաղօթանոցն։ Իսկ Դայմազ խանըն արար զամենայն՝ զոր ինչ հրամայեաց արքայն. երթալ ի դիւանէն Ճ՛ մարզիկ ծառայութեան[53])։ Իշխան խալիֆաշարիֆն՝ և եա ցԿաթուղիկոսն. հրամայեաց՝ զի ամենայն հակառակք նորա հալածեսցին ի դրանէ իւրոյ։ Իսկ ապա եկեալ Եղիազարն առ նա՝ և արարին հաշտութիւն ընդ միմեանս։ Իսկ գնաց Կաթուղիկոսն յԵրուսաղէմ. և դարձաւ և եկն ի սուրբ Աթոռն Էջմիածին փառաւորապէս, և վարէր զԿաթուղիկոսութիւնն, որպէս արժան էր առնէր զամենայն։

## ԳԼՈՒԽ ԽԸ.

### Դարձ Կաթողիկոսին յԷջմիածին՝ և լինել ի փեղահոջ։

Մինչ էր Կաթուղիկոսն Յակոբ ի Կոստանդնուպօլիս, միւս Արաս խանն էր յԵրևան, և եկն փոխանակ նորա Սաֆի խանն՝ ազգաւ Լակզի։ Սա ի գալն իւրում՝ երևեցոյց զինքն լաւ յաչս ամենայնի. բայց յետոյ եղև չար. և յաւուր միում ելեալ գնաց ի զբօսանս, և եհաս մինչև ի ծովն՝ զոր Կաթուղիկոսըն արարեալ էր, ետես զծովն և զայգին, և զգեղեցկութիւն վայրացն, ցանկացաւ նմա. և առաքեաց առ Աթոռակալ Մատթէոս վարդապետն, և խնդրեաց զտեղին։ Իսկ Աթոռակալն պատասխանի արար, թէ ո՛չ կարեմ տալ. զի տէր դորա է յԱշ.

---

(53) Մարզիկ, անշարութիւն, բաժանումն, 2) մարգ, հարկ, մաքսք, 3) վարձ։

խարհին Հայոց, գուցէ եկեսցէ՝ և անարգանս և նախատինս
արկցէ՝ մինչև լինիմք կատակ։ Զայս իբրև լուաւ, ի խոր խոցե-
ցաւ, և որպէս զսլաք եմուտ ի սիրտն նորա։ Եւ եղև գալ Յա-
կոբ Կաթուղիկոսին յԱթոռն իւր ի սուրբ Էջմիածին. և գը-
նացեալ առ խանն, և տարեալ ընդ իւր աղերս ըստ պատշա-
ճին,՝ և խօսեցան բազումս վասն աշխարհին Օսմանցւոց պատե-
րազմին և վասն այլ բազում իրաց։ Եւ եղև դարձեալ գալ խա-
նին յԷջմիածին. և գնացեալ ի զննին առ ծովն, այժմ ևս
խնդրեաց խանն զծովս։ Ասէ Կաթուղիկոսն, զիա՞րդ տաց զնա
քեզ, քանզի կեանք մեր և կենդանութիւն՝ նա է ի տեղի սեր-
մանելոյ, և հանգստարան միաբանից մերոց։ Ասէ խանն, փոխեմ
զնա ընդ այգւոյ, և կամ վաճառեա՛։ Ասէ Կաթուղիկոսն, մեք
զնա ճաշոյ արարաք Էջմիածնի, այլ ո՛չ. գոյ հնար ելանել նմա
ի դրանէ նորա։ Եւ աստ ևս խոցեցաւ խանն. զի Բ անգամ
արհամարհեալ եղև բան նորա. և հնարիւք կամէր յորդայթ
արկանել զԱթոռն։ Եւ ապա յետ աւուրց գնաց Կաթուղիկո-
սըն առ խանն՝ և ասէ, ես կամիմ գնալ առ Շահն, և առնուլ
հրաման ի նմանէ վասն իմ։ Ասէ խանն, դու մի՛ գնասցես, մեք
աստի հոգասցուք զբանն քո։ Ասէ Կաթուղիկոսն, գոյ պարտս ի
վերայ մեր բազում, գնամ ժողովել անտի՝ և հատուցանեմ ըզ-
պարտսն։ Ասէ խանն, աստ առցուք ի վաճառականացն՝ և տա-
ցուք զպարտս քո։ Ասէ Կաթուղիկոսն, եթէ առնումք ի վա-
ճառականաց, ուստի՞ հատուցանեմք նոցա. քանզի գոն և գործք
մեր ի դրան արքային, և վասն այնոցիկ ևս գնամ հոգալ։ Զայս
ասացեալ՝ ելեալ գնաց. և յետ աւուրց ել և գնաց, և եհաս
մինչև յԱստապատ։ Իսկ իշխանն խորհեցաւ ի միտ իւրում՝ և ա-
սէ, ես բազում անարգանս ասացի նմա, մի՛ գուցէ երթեա՛լ գան-
կատեսցէ յինէն առ Շահն ընդ այլ գանկատաւորացն, և փոր-
ձութիւն բերցեն ի գլուխ իմ։ Եւ վաղվաղակի առաքեաց զկնի
նորա զինուորս՝ և ասէ, ուր և իցէ նա՝ գտեալ՝ ածէ՛ք առ իս։
Եւ գնացեալ զօրականացն յԱստապատ, և բռնութեամբ բե-

բեալ հասուցին յԵրևան, և ծանուցին իշխանին։ Եւ կոչեաց առ ինքն՝ և ասէ, ես ասացի քեզ մի՛ գնալ, զի աստի հոգամք զգործն քո․ արդ երթեալ նիստ յԱնապատն Երևանայ, և ես հատուցից զպարտս քո։ Եւ այսպէս է դիպահոջ արար զնա․ և ետ պահապան նմա Աբաս-անուն ոմն տաճիկ, և պատուիրեաց նմա զգուշութեամբ պահել՝ զի մի՛ փախիցէ։ Իսկ Կաթուղիկոսն առաքեաց առ նա պատգամս խիստ՝ և ասէ, ես երթայի առ ոտս Շահին, և դու կալանաւոր արարեր զիս՝ որպէս մահապարտ։ Արդ թէ արժանի եմ մահու՝ սպան զիս, ապա թէ ոչ՝ ընդէ՞ր կամ ի բանտի։ Իսկ իշխանն առաքեաց առ նա՝ և ասէ, ոչ սպանանեմ զքեզ և ոչ արձակեմ, այլ այդր կաց մինչև մեռցիս։ Եւ ինքն ժողովեաց զամենայն փարթամ և մեծատուն մարդիկ, և էառ ՚ի նոցանէ ՌՅ թուման դրամ․ և պատճառ եդ՝ թէ աթոռին պարտն տամք, և յետոյ ձեզ հատուսցեն Էջմիածնի նստօղքն։ Եւ պատրեաց զամենեսեան, և ինքն լափեաց, և ոչ ետ նմա փող մի։ Եւ այսպէս արար զԿաթողիկոսն կալանաւոր, և ինքն կայր սնոտի յուսով։

## ԳԼՈՒԽ ԽԲ.

### Փախուստ Կաթողիկոսին և կորուստ խանին։

Զոր ինչ արար նա ընդ Կաթուղիկոսն՝ ոչ իմացաւ թէ ի կորուստ անձին իւրոյ արար։ Քանզի դրամատեարքն՝ յորոց առեալ էր խանն՝ յոմանց Ժ թուման, յոմանց Ի՝ որպէս գրեցաք, սոքա գային առ Կաթուղիկոսն՝ և խնդրէին զդրամս․ գային և գնային, և ոչ էր հնարս առնլոյ։ Եւ ասէին, դու ջանա՛ ելանել այտի, և մեք դատ առնեմք Շահին ի խանէն, և դրամըն մեր առնումք շահիւն ի դմանէ։ Իսկ Կաթուղիկոսն թէպէտ էր ի դիպահուջ, այլ յամենայն օր ելանէր և գնայր ուր և կամէր։ Եւ եղև՝ զի ի Յունաց աշխարհէն գայր կարաւան ի յԱ-

րարատ։ Ասէ կաթուղիկոսն ցԱպաղն՝ որ էր պահապան նմա, եկ զի երթիցուք ընդ առաջ կարաւանին։ Ասէ Ապաղն, զո ինձ գործ ինչ՝ ես ոչ կարեմ գալ, երթ դու։ Եւ էր օրն այն Համբարձման Տեառն։ Եւ Հայրապետն զամենայն կարասի իւր Ը. ուղտք առաջ առաքեալ էր յԱրտաւիլ, և յայնմ աւուր զկարասի իւրոյ անձինն Ի բեռն առաքեաց յԵղևարդ գիւղ, և ասաց մնալ առ ափն ջրոյն՝ և հայել ինձ. և ինքն ի կէս աւուրն հեծաւ զջորի իւր՝ և առաջի արկեալ զԱւարդան տուրհանդակն, և յիշեաց անունն Յիսուսի Քրիստոսի՝ բարեխօս արարեալ զՏօնն, և ել ի ճանապարհ։ Եւ ի վերայ Նորագեղոյ գնաց առապար ճանապարհաւ. և մերձ ի մտանել արեգականն՝ եհաս յԵղևարդ. և առեալ անտի Ի արս քաջասիրտս և աներկիւղս թուանքով, և ընդ նոսա գնացեալ ի գաւառն Նիգ ի գիւղն Զորոյբերան, որ այժմ ասի Գուլաւտի, և անտի ևս առեալ բարեպաշտ այր մի՝ Եսաւրի անուն, և անցեալ ի Տաշիր, և գնաց ի Լօռի ի գիւղն Գանեղ։ Եւ անտի ևս առեալ արս երիս, և եղեն բազումք. և անցեալ գնացին ի կողմն Աղուանից ի Բարկուշատ և մինչև ի սահմանս Պարսից, և հասին յԱրտաւիլ. և էառ զճամբարն իւր՝ զոր առաքեալ էր առաջագոյն, և ելեալ անտի՝ և գնաց եհաս յԱսպահան. և այսպէս զերծաւ, և կայր նա յԱսպահան։ Իսկ տաճիկն՝ որ պահէր զնա՝ եկն յանապատն, ետես՝ զի ոչ էր անդ, գնաց ի պանդոկն ի մէջ կարաւանին, և ոչ ետես զնա։ Գնաց յԷջմիածին, եհարց, և ոչ ոք գիտէր զնա. դարձաւ և եկն յանապատն Երևանայ, այլ և ոչ գոյր։ Եւ էր անդ Մարկաւագ մի Յակովբ անուն Գուղայեցի՝ մականունն Բհամ, ասէ, ահա նա փախեալ (է), եկ զի մեք ևս փախիցուք, զի մի՛ նեղեսցեն զմեզ։ Ասէ Ապաղն, դու միայն ես, եթէ փախիցես՝ կարող ես. ես զի՞արդ փախեայց, զի տուն իմ աւար առնեն, գնացեալ ասացից խանին։ Եւ էր խանն ի Կոտէս գաւառի ի վերայ ականց աղբերացն՝ որ ասի Գեախ-պուլաղ, որ է Խօ աղբիւր, անդ յապահովս լինիւր։ Եւ

գնացեալ Ապաղն պատմեաց խանին։ Եւ նա գիտէր՝ որ կորուստ եղև ինքեան փախուստ նորա, և բարկացեալ ի վերայ Ապաղէն՝ և էառ ի նմանէ տուգանս Լ թումանս. և ապա թողեալ անդ զհարձն, և ինքն միաձի ելեալ զօրօքն գնաց յԵրևան, և առաքեաց յամենայն վանորայս և անապատս՝ գիւղս՝ որոնել, և առնել գիր՝ ամենայն ումեքէ, զի ով որ տեսցէ զնա՝ կալեալ բերցեն առ ինքն. և շրջեցան յամենայն երկիրն, և դարձան ունայն։ Ապա առաքեաց դեսպանս փութագնաց ընդ ամենայն կողմանս աշխարհի՝ ի Վրաստուն, ի Գանձայ, ի Թաւրէզ, ի Նախջուան, ի Խոյ, ի Կարս, յԱխլցխէ, և յայլ կողմանս, գնացին՝ և ոչ տեսին զնա. և թէ տեսին ևս, յորդորեցին զնա ի գնալ։ Յետ այսորիկ ժողովեաց ամենայն վանորէից Առաջնորդս, և գեղորէից տանուտէարսն, և զգաւառապետսն, և զամենայն մեծամեծսն՝ ի քաղաքն Երևան. և ինքն գրեաց բազում ամբաստանութիւնս, և զոր ինչ չարիք՝ զոր ինքն գործեալ էր, զայն ամենայն յօդեաց ի վերայ Կաթուղիկոսին. և ձեռամբ ընդդանեսպանի առաքեաց առ Շահն, և պատուիրեաց՝ զի մի՛ տեսցէ Եհտիմալ-Տօլուաթն, զի թշնամի իմ է ասէ։ Եւ գնացեալ դեսպանն՝ այլում ձեռամբ հասոյց զթուղթն առ Շահըն. մինչդեռ ընթեռնոյր Շահն զթուղթն, եմուտ Եհտիմալ-Տօլուաթն ի ներս, և ետ ի նա զթուղթն. և ընթերցաւ զկէս թղթին՝ և ասէ, Սաֆի-ղուլի խանն քակէ զերկիրն, և ինքս զիւր վնասն դնէ ի վերայ սևագլխոց. և պատառեաց զթուղթն, և էարկ ի հուր՝ զոր պատգարակօք եդեալ էր վասն ծուխ ըմպելոյ։ Իսկ Կաթուղիկոսն յորժամ եհաս յԱսպահան, նախ գնաց առ Եհտիմալ Տօլուաթն, և ասաց նմա զամենայն՝ զոր ինչ կրեաց նա ի խանէն, և զգործս Յունաց աշխարհին։ Իսկ Եհտիմալ-տօլուաթն ասաց, գրեա՛ արզ, և զոր ինչ կամիս, և ես տաց զնա Շահին։ Իսկ նա գնացեալ նախ պատրաստեաց յիսուն ոսկին՝ որ սահմանեալ էր առաջին Կաթուղիկոսացն տալ Շահին վասն իւր ռաղամին։ Եւ ապա

տաղաւար[34]) գալստեան իւրոյ ի Նորոգ Թագաւորէն՝ քէհրիբա-րէայ[35]) մոմտան, և մարճանեայ[36]) պատկեր մարդոյ, Ժ. ական ոսկի, Ժ. սահաթ[37]) ոսկի, և այլ ինչ պատշաճաւոր. գրեաց և գիր գան-գատանաց ի խանէն, և էր պատճէն այս. Թէ ի բնէ է ամենայն ազգ Հայոց՝ ուր և իցէ՝ Թէ՛ յաշխարհին Օսմանցւոց, Թէ, ի Փռանգաց, Թէ Հնդկաց, Թէ Մոսկովաց, և ուր և զտանի յազգէն Հայոց, ա-մենեքեան հնազանդին Էջմիածնի՝ որ է ի ներքոյ տէրութեան քում. և ըստ օրինաց մերոց հարկս տան բնակչաց Էջմիածնին, և նոքա զայքունական հարկն տան։ Իսկ ի մերում ժամանակի յաշխարհին Օսմանցւոց բարձին զայն՝ և ոչ կամէին տալ. և Թագաւորական հրամանաւ հատին զայն։ Իսկ մեք յուսացաք ի Շախ-Աաֆու օճախն, և գնացաք առ Խոնթկարն բազում պար-տօք և չարչարանօք, Թագաւորի խաթիշարիֆովն, և հազիւ կա-րացաք դարձուցանել առ ի ներքոյ տէրութեան քում։ Իսկ յոր-ժամ եկաք ի մերս յաշխարհ, և զոր ինչ արժան էր՝ աշերսեցաք խանին, և առաք ի նմանէ հրաման՝ գալ և համբուրել զհողս ոտից քոց. և եկաք Զաւուրց ճանապարհ. և խանն առաքեալ դարձոյց զմեզ յետս, և եդ ի բանտի. և յաղագս մեր՝ զամե-նայն մեծամեծսն կալեալ տուգանեաց, և զերկիրն ամենայն զը-նացին ի կողմն Օսմանցւոց վասն ազահութեան նորա։ Իսկ մեք զերծեալ փախստեայ եկաք առ ոտս քո. և եթէ արժանի եմ մահու, արիւն իմ շանց քոց լիցի կերակուր։ Զայս և այլ զոր ինչ պակասութիւն արարեալ էր՝ գրեաց զամենայն. եդ ընդ նմա զխաթիշարիֆն Խոնթկարին, և ձեռամբ Իշհախմալ-տօլո-ւաթին՝ որոյ անունն էր Շախալի խան, առաքեաց առ Շահն։ Իսկ Շահն տեսեալ զԽաթիշարիֆն, ասէ, եթէ Խոնթկարն

---

(34) Դժուարացաք իմանալ զբառս զայս՝ և զնշանակութիւնն։

(35) Քէհրիբարէայ. սաթեայ, բազմագունի ակնեայ։

(36) Մերճանեայ. կարաղիոնեայ, բուստեայ։

(37) սա՚հաթ. ժամացոյց։

զմերն սիրէ, մեք ընդէ՞ր ոչ սիրեմք,(զի) Սաֆի խանն այդքան չարիքըդ բերէ ի գլուխ նորա։ Յիշեցուցին նմա և այլ գանգատաւորաց բանքն։ Էր անդ և Լակզաց խանն, և նա ևս ասաց, Սաֆի խանն ա՛յնքան ապրանք առաքեաց ի տուն իւր, զի ես Յ Թուման մաքս առի, թո՛ղ զբեռանցն։ Լուաւ զայս Շահն, և հրամայեաց գրել առ Միրզայ Իպրահիմ՝ ի Թաւրէզ, որ ասէին Ատրբէճան Վազրի, զի գնասցէ յԵրևան, և զՍաֆիխանն և զորդի նորին Մէհրում-ալի անուն ըմբռնեալ կապեսցես, և զտուն նորա աւար առցես, մինչև ցկանանց ոտաց շորն ևս հանեցեն, և զինքն և զորդի իւր առաքեսցեն կապանօք ի բերդն Գալայ ի Գուլապի, որ էր բերդ Մարդաջըի։ Եւ կապեալ զնա՝ եա ի ձեռն Բայադ Ըպաղին՝ զոր առաջն գրեցաք դև կնօջաւն։ Եւ ոմն Սարու խան առաքեալ ի Շահէն՝ նստոյց անդ Տեղապահ մինչև խան եկեսցէ։ Բայց յորժամ եհաս հրաման Շահին առ Միրզայ Իպրահիմ, էառ ընդ իւր Ե այր ևս, և գնացեալ հասին մինչ ի դաշտն Շարուրայ. և լուան՝ թէ խանն ի Սոտայս է ի վերայ բազմութեանց աղբերացն. և ի վերայ Գառնւոյ գնացին թագնաբար, և ելին ի գլուխ բլրի միոյ. և հայեցեալ նշանեցին զվրանն. և նիշ արարեալ գնացեալ մտին ի վրանն, և ոչ գոյր ոք անդ, բայց միայն փոքրիկ մանուկ որդին իւր խաղայր ընդ նմա։ Եւ Բեքին նոքա բարձրացուցին զգլխոտըն՝ այսինքն թօփուզն, և կարկառեցին ի վերայ նորա՝ ասելով, կալանաւոր ես Շահին, մի՛ շարժիր։ Եւ նա ասէ, բարի է, ցո՛յց ինձ ռաղամ Շահին։ Եւ նոքա հանեալ ետուն ցնա. և առեալ համբուրեաց՝ և եդ ի վերայ գլխոյն։ Եւ իբրև ընթերցաւ, եդ զձեռն ի վերայ ձեռացն՝ և ասէ, կապեցէք։ Եւ նոքա մատուցեալ մերկացուցին զնա՝ և կապեցին զձեռս յետս, և եդին շղթայ յոտսն. և մանուկ որդի նորա լայր. և ասեն, մի՛ լար. և մնաց մինն անդ, և Ե գնացին ի վրանս կանանցն, և հանին զնոսա արտաքս՝ ճչճչալով, ճղճղալով, ճղալով, ոռնալով, հայհոյելով, աղաղակելով։ Իսկ Թուրքերն մերկացուցին

զաղնիւ հանդերձս նոցա, և զգեցուցին այլ հանդերձ, և ե-
դեալ ի վերայ ուղտու՝ առաքեցին յՆերևան։ Եւ Ի տաճիկ
փութացան ի բերդն, և փակեցին զդրունսն, և գրեցին զամե-
նայն ինչս նորա յարքունիս։ Եւ այն արարին այնպէս՝ որպէս
և գրեցաք։

## ԳԼՈՒԽ ԽԳ.

### Թագաւորութիւն Շահ Սուլէյմանին։

Զկնի փոքր Շահ-Աբասին թագաւորեաց որդի նորա Շահ
Սաֆի՝ մի ամ։ Զկնի սորա՝ եղբայր նորա Շահ Սուլէյման ի
ՌՃԺԵ թուին։ Բայց ասեն վասն սորա՝ Շահ-Սաֆին ինքն
գոլ, և ունէր անուն այլ. և յորժամ թագաւորեաց՝ անուա-
նեցին անուն հաւուն իւրոյ Շահ-Սաֆի։ Եւ ի թագաւորելն
իւրում՝ իսկոյն տկարացաւ. և ասէ, անունս այս ոչ եղև ինձ
ուղիղ. և փոխեցին զանունն, և եդին Սուլէյման։ Եւ ոմանք
ասացին, ոչ է սա Շահ-Սաֆին։ Այլ յորժամ Շահ Սա-
ֆին եղև Շահ, սկսաւ գործել չնութիւն պղծութեան, և
բռնութեամբ տայր բերել զկանայս մեծամեծ իշխանացն՝ և
շնայր ընդ նոսա։ Յաւուր միում տարաւ բռնութեամբ կին ու-
րումն իշխանի. և ոչ կամէր կինն։ Վասն որոյ առեալ կնոջն
դանակ փոքրիկ՝ և եդ զայն գաղտ ի ծոց իւր՝ և գնաց։ Եւ
յորժամ հուպ եղև Շահն առ կինն, նա զՅուդիթայն արար
ընդ երկրորդ Հողեփեռնեայ, հարեալ զդանակն ընդ կոկորդն,
և այնպէս սատակեցոյց. և ինքն ելեալ արտաքս՝ ասէ ցներքի-
նիս կանանց, արդ պատուեցի Շահն ձեր ըստ արժանոյն իւրոյ.
զայս ասացեալ՝ ել և գնաց աներկիւղ։ Եւ ներքինեացն մը-
տեալ տեսին՝ զի թաւալէր ի մէջ արեանն. և գաղտ կորուսին
զնա։ Եւ բերեալ զեղբայր նորա Սուլէյման թագաւորեցուցին։
Արդ թէ սուտ և թէ իրաւ՝ մեք այսպէս լուաք որպէս և գրե-

ցաք։ Ահա այս Շահ Սուլէյմանս է՝ որ ըմբռնեաց զՍաֆի
խանն, և պատուեաց զՅակոբ Կաթուղիկոսն։ Առ սա եկն Հե-
րակլ Թոռն Խամրազի, զոր պատմեսցուք յետոյ։ Այս Շահ
Սուլէյմանս ունէր որդի մի՝ կարի քաջ և ուժեղ, և կարի ի
նետաձգութիւնս. և պահէր զնա հայրն վասն թագաւորու-
թեան. և ուր և գնայր՝ տանէր և զորդին, արկեալ զիւրեա-
զթուրն և զկապարճս նետիցն, զաղեղն։ Եւ յաւուր միում
մտեալ Շահն ի բուրաստանն՝ և զորդին առաջի իւր, և հա-
նեալ զնետն եդ ի յաղեղն, և եհար զծառն. և էանց նետն
թափանց յայն կողմն ճանտւարի ծառոյն։ Եւ զայն տեսեալ
հայրն՝ ոխացաւ ընդ որդւոյն, և կամեցաւ կորուսանել զորդին.
բայց ոչ յայտնի։ Այլ գաղտ ասէ ցներքինապետն, յորժամ
գայ նա ի մէջ հարճին, ի ննջելն իւր հարէք և սպանէք զնա՛
և գաղտ կորուսէք։ Եւ ծանուցին մօր նորա. և գնաց մայրն, ա-
ղաչէր առ սկեսուրն իւր՝ որ մայր էր Շահին, և ասէ, որդին
քո կամի սպանանել զորդի իմ, աղաչեմ զքեզ վասն Աստու-
ծոյ և արեշատութեան իւր՝ մի՛ տայք կսկիծ սրտի իմոյ մահ-
ուամբ նորա. այլ տարեալ հեռացուցէք իւրով մահուամբ մե-
ռանել։ Եւ գնացեալ մայրն աղերսէր որդւոյն մի՛ հեղուլ զա-
րիւն, և լեցի մեզ սուգ։ Եւ Շահն ասէ, արարից զնա ըստ կա-
մաց քոց։ Եւ ասէ ցորդին, երթ ի Փահրապատ, և անդ կաց-
ջի՛ր մինչև կոչեցից զքեզ. և պատուիրեաց տանողացն, թէ
յորժամ հասանէք ի տեղին՝ սպանէք զնա, և զգլուխն բերէք
առ իս։ Եւ առեալ գնացին. և ի միում աւուր եմուտ Շահն
ի մէջ կանանց, և ընդառաջ եղև նմա մայրն իւր՝ համամայր
քոյրն և մին ի կանանց հօր իւրոյ. և ոչ իմացաւ թէ քոյրն իցէ,
և էարկ զգաստառակն ի վերայ նորա՝ որպէս թէ գնասցէ ընդ
նմա ի գործ մեղաց։ Ասէ մայրաթիւն, քոյր քո է դա. և բար-
կացեալ առ այն, և հանեալ զթուրն, և եսպան զքոյրն և ըզ-
մայրաթիւն. և ելեալ գնաց։ Եւ իսկոյն բերին զպատգամ սպան-
ման որդւոյն, և ապաշաւեաց զմահ երիցն. և ի կսկծոյն գե-

ւահարեալ խելագարեցաւ, և խօսէր վայրապար. և բանայր զատամունս անդադար՝ և քսէր ընդ որմունսն, և անկեալ յերկիր թաւալէր: Եւ նիրքենապետն ծանոյց Եհտիմալ-Տօլուաթին. և կորուսին զնա ծածկաբար. որ թագաւորեաց ամս ԽԵ: Եւ եդին ի տեղի նորա միւս որդին Հիւսէին ի թուին ՌՃԽԳ:

## ԳԼՈՒԽ ԽԳ.

### Կորուստ Օնոփրիոսին:

Որպէս և գրեցաք՝ թէ Եղիազարն եղև Կաթուղիկոս, և Օնոփրիոսն գնաց առ նա, և միաբանեցաւ ընդ նմա ամենայն սրտիւ. և քարոզէր ճարտարութեամբ. և անուանեաց զԵղիազարն երկրորդ սուրբ Լուսաւորիչ. և վասն ճարտարախօսութեան և ճոռոմաբան արագ արագ զրուցելոյն՝ անուանեցին զՕնոփրիոսն՝ Կարկուտ. և էր ընդ Եղիազարին համախոհ: Եւ յորժամ գնաց մեծ Կաթուղիկոսն Յակոբ ի Կոստանդնուպօլիս, բազումք եկին առ նա. և իբրև գիտաց Կարկուտն՝ թէ ոչ կարէ դիմամարտել ընդ արեգական, արար կագ ընդ համախոհին իւրոյ Եղիազարու, և կեղծաւորեալ՝ ասէ՝ զինքն որպէս թէ զղջացեալ, եկն առ Կաթուղիկոսն Յակոբ, անկաւ յոտս նորա, և ասէ, ահա ծանեայ զանօրէնութիւն իմ՝ և զբարերարութիւն քո. մի՛ յիշեր զչարիս իմ: Իսկ մեծ Հայրապետն հաւատաց սուտ և նանիր բանից նորա, և ետ նմա թուղթ, և առաքեաց ի սուրբ Աթոռն Էջմիածին՝ լինել անդ Աթոռակալ: Եւ եկեալ նստաւ փքացեալ: Արդ անհնարին է հրոյ թողուլ զայրեցողութիւնն. և հողմոյ՝ ցրտութիւնն, և առն ամբարշտի՝ զչարութիւնն: Քանզի յորժամ եկն սա ի սուրբ Աթոռն Էջմիածին, սկսաւ նոր չարիս գործել. և եհան մուրհակ սուտ՝ այսինքն Թամասսուկն՝ վասն Զաքարիա վարդապետին, թէ Յթուման պարտի ինձ: Միւս ևս չար մուրհակ, թէ ես Զաքարիա

վարդապետս ունիմ Ս. Թուման ի Յօհաննավանք՝ թէ դրամ և թէ այլ ինչ, զայն ամենայն ետու ի ձեռն հոգևոր որդւոյն իմոյ Օնոփրիոս վարդապետին, զի՛նչ որ նա հաճեսցի՝ այնպէս արասցէ։ Եթէ ոք հակառակեսցի նմա, զամենայն ինչ իմ յարքունիս լիցի։ Յուցեալ զայս Ռ. գիրս, և պահանջէր Յ. Թումանն խստութեամբ։ Իսկ Յովհաննէս վարդապետն՝ որ նստեալ էր ի տեղի Զաքարիային Առաջնորդ ի Յօհաննավանք, ի տարակուսի լեալ, և անճարացեալ ոչ գիտէր՝ թէ զի՛նչ արասցէ, զի ոչ ունէր նա լեզու հրապարակախօս լինել։ Վասնորոյ ողորմութիւն ի Տեառնէ եհաս նմա։ Քանզի եկն յԱսպահանայ այր մի Ջուղայեցի Աղամալ անուն, և էր նա բարեկամ Զաքարիա վարդապետին, և յոյժ սիրելի Յօհաննավանից, որ ունէր մուրհակ բազում վաճառականաց, որ արարեալ էին զնա յինքեանց տեղի՝ տէր ընչիցն իւրեանց, զի ուր իցեն պարտատէրք՝ նոքա տայցեն զպարտս իւրեանց Աղամալին։ Եւ էր ի մէջ Ջուղայու մեծ ոմն Սաֆրազ անուն, որ էր աւագ Ջուղայու, և եղբայր Օնոփրիոսին Պօղոս անուն. սա պարտ էր խօճայ Սաֆրազին Ռ. Թուման ձեռագրով իւրով. այժմ եկեալ Աղամալն խնդրէր զՌ. Թումանն։ Լուաւ և զսուտ մուրհակն՝ որ վասն Յօհաննավանացն արարեալ էին. կալաւ Աղամալն զՊօղոսն, և եդ կունդ ի պարանոցն. և կախեալ ի դրան բերդին՝ ա՛յնքան հարին փայտիւ զոտսն՝ մինչև առին զսուտ մուրհակսն, և պատառեցին։ Բայց . . .[38]) Թուման անցին ի Պօղոսէն Ռ. Թումանէն։ Եւ յետ գնալոյ Աղամալին՝ արար միւս ևս չարութիւն Օնոփրիոսն. զի դարձեալ արծարծեաց զՅ. Թումանն Յօհաննավանից. ասէ, բռնութեամբ առիք զմուրհակն իմ. վասնորոյ տուք զՅ. Թումանն իմ. և ճշտիւ պահանջէր։ Եւ ի նոյն աւուրըն եկն Կաթուղիկոսն յաշխարհէն Յունաց. և սաստեալ լռե-

---

(38) Ի բնագրին եղծեալ գոլով թուագրին՝ չէ յայտ թէ արդեօ՛ք Ծ. Ի կամ Խ. իցէ։

ցոյց զնա։ Իսկ զի համառօտ պատմեցից զպատմութիւն նորա չարութեանն. և յորժամ ի դիպահոջ եղև Կաթուղիկոսն, ետ նմա Նուիրակութիւնն գաւառին Գեղամայ։ Յորժամ փախեաւ Կաթուղիկոսն. եթող զՆուիրակութիւնն, և եկն՝ եղև բարեկամ խանին. և խորհէին զչարիս վասն Կաթուղիկոսին. ամենայն օր նոր համբաւ հանէին՝ թէ վասն Օնոփրիոսին կաթուղիկոսութեան ռաղամ է գալիս։ Իսկ յորժամ կործանեցաւ խանն, Կարապետն անկաւ ի տարակուսանս. վասնորոյ անճարացեալ՝ և ինքն ելեալ գնաց յերկիրն Պարսից, զի գոնեա՛ հաշտեսցի ընդ նմա Կաթուղիկոսն։ Իսկ հասեալ ի դիւղն Նախջուայ, և ահա եկին ի դիւանապետէն արք՝ և ըմբռնեցին զնա, և եդին կունդ ի պարանոցն, և առեալ տարին մինչև ի Զանկեան քաղաք. և անդ եդին զնա ի պահս, և ինքեանք գընացին ի Ղազուին. և ծանուցին Կաթուղիկոսին. և նա բարկացեալ ասէ, որո՞ հրամանաւ արարիք զայդ, զի ես ոչ գիտեմ։ Ասեն, հրամանաւ դիւանապետին արարաք։ Իսկ ապա հրամայեաց Կաթուղիկոսն արձակել զնա՝ և բերել առ ինքն. և եկեալ առ նա՝ և արար սէր ընդ նմա. և ետ ի նա վերակացութիւն գործոց տանն. և միամտութեամբ սէր առնէր ընդ նա։ Իսկ չարն այն այլ ոչ դադարէր գաղտնի առնել զչարութիւնն։ Քանզի առանց դիտելոյ Կաթուղիկոսին արար պարտս բազում, և հոգայր չարութիւն, զոր յետոյ գրեցից։ Իսկ Կաթուղիկոսն միւսանգամ պատրաստեաց աղերս. և գրեաց արզ, և առեալ գնաց առ Շահն, և մատոյց աղերսն և արզն։ Իսկ Շահն ասաց, ես վաղուրեմն ետու դմա հրաման, դեռևս մնա է դա։ Ասեն մեծամեծքն, ո՛չ գոյ դմա ռաղամ, վասն այն ոչ կարէ գնալ։ Իսկ հրամայեաց Շահն տալ ռաղամն՝ և զարքունական խիլայն ըստ սովորութեանն, գեղեցիկ պատմուճան ոսկենկար, և գօտի պատուական, և սամոյր վերարկու, և գլխոյ քծափ՝ որ է մանտիլ, և երիվար զօրեղ. և ի պատիւ երեսաց նորա արար և իշխան զՄաֆի խանն՝ որ էր որդի Ռոստամ խանին Թաւրիզոյ,

և առաքեաց յՃերևան. և ի նա յանձնեաց զԿաթուղիկոսն։ Նա և մեք ելեալք ի Պաղունեաց Կարկուտին (և) ընդ դեսպանացն Փռանգաց՝ և եկաք ի Թաւրէզ։ Նա և Կաթուղիկոսն գնաց ընդ խանին ի Արտաւիլ, և անտի ի Թաւրէզ ընդ խանին. և յետ աւուրց ելեալ խանն գնաց յՃերևան, և Կարկուտն ևս գնաց։ Յետ երկուց աւուրց գնաց և Կաթուղիկոսն. և ի Յայտնութեան Ճրագալուցին Օնոփրիոսն եմուտ յՃերևան, և վաղւն Կաթուղիկոսն։ Նա և Կարկուտն զգեստաւորեցաւ առնել Գ․ բօրհնէք առաջի խանին։ Նա և հանին զգեստն, և զգեցուցին Կաթուղիկոսին։ Նա և արարին մեծահանդէս Գ․ բօրհնէք առաջի խանին. և յերկրորդ աւուրն հրաման էառ ի խանէն, զի գնասցէ ի սուրբ Էջմիածին, որպէս և կամի առնել ընդ Կարկուտին՝ արասցէ։ Նա և ելեալ գնացին. և ի Ճանապարհին ազդեցին Կարկուտին զկորուստն իւր. և այլագունեցաւ դէմ նորա որպէս անծուխ. բայց ոչինչ կարաց առնել։ Յորժամ մտին ի սուրբ Էջմիածին, ի մէջ եկեղեցւոյ առեալ մկրատ Կաթուղիկոսն՝ և խուզեաց զգլուխն, և ապա զմօրուսն. և ասէ նա, աղաչեմ վասն Աստուծոյ՝ զգլուխս խուզեցեր, մօրուսս մի՛ խուզեր։ Ասէ Կաթուղիկոսն, ո՛վ անօրէն Աստուծոյ՝ դու ա․ացեալ ես, թէ ես հատանեմ զգլուխ Կաթուղիկոսին, և հաստատեմ զնա ի վերայ Իջման տեղին, և առնել ի վերայ նորա պատարագ։ Արդ մե՞ծ իցէ մօրուս քո քան զգլուխ իմ, ընկալ զփոխարէնն. և խուզեալ զամենայն հերսն, և տարեալ ար՛կին զնա յառաջին շնփանն[39] իւր շղթայիւք։ Նա և ապա յուզել սկսան զինչս նորա. և գտին մի բեռն զգեստ կանանց, կեռկեռ կօշիկ, և կերպաս ոտնաշոր, և ոսկետոտուն լաչակս, և ոսկեզարդեայ քօղ երեսաց, և այլ այսպիսի՛ զարդարանքս կանանց։ Նա և ապա առացին նմա, ուր թագուցեալ էքն զռաղամսն. և զմլքելոյ[40] կապա-

(39) Խաւարչտին տեղի, բանտ։

(40) Կալուած, երկիր, ժառանգութիւն ելն։

ղայքն։ Իսկ նա ուրանայր՝ թէ ոչ գիտեմ. և ապա եդին կոճղ ի
յոտս նորա, և այնքան բրածեծ արարին զնա ի բանտին՝ մինչև
առաքեաց զքեռորդին իւր յԵրևան քաղաք, և ետ բերել զա-
մենայն. և ի մէջ թղթոցն գիրս արքունի՝ մին վասն Կաթու-
ղիկոսութեան, Բ՝ վասն հնազանդ լինելոյ նմա ամենայն եկեղե-
ցականաց, Գ՝ վասն մելիքութեան ազգաց իւրոց։ Իսկ ապա
առաքեցին զնա ի Սևան կղզի՝ դնել խսնեկի, և ոչ թողուլ
մտանել զոք առ նա։ Կացեալ անդէն աւուրս ինչ, ի տրտմու-
թենէ սրտին և ի բազում վշտացն՝ հեծեծանօք մեռաւ և բար-
ձաւ ի միջոյ. և ոչ եղև արժանի օրինաւոր մահուամբ մեռանել։

## ԳԼՈՒԽ ԽԵ.

### Իշխանութիւն միւս Սաֆուն։

Յետ կործանման Լակզի Սաֆի խանին՝ ապա առաքեցաւ
յԵրևան Տեղապահ՝ ոմն Սարուխան բէկ անուն՝ ամս Բ. և
Սաֆի-ղուլի խանն, որ էր որդի Ռոստամ խանին Թաւրիզու։
Սա եկեալ նստաւ յԵրևան, և սկսաւ նորաբոյս չարիս գոր-
ծել։ Առաքեաց ի Թաւրէզ, և ետ բերել անտի բոզ կանայս,
որ ո՛չ էր բնաւ սովորութիւն մերս աշխարհի՝ պահել բոզս. սա
այժմ հաստատեաց զայն ևս։ Եհան հրաման՝ թէ յաւուր անձ-
րևոտ քրիստոնեայք արտաքս մի՛ ելցեն ի տանց, զի հոտ գարշ
ելանէ ի նոցանէ, և զտաճիկսն ապականէ։ Այլև անդապահս
արար, այսինքն ղառաղայ, թէ ո՛վ ոք ի մեծատանց և կամ յօ-
տարականաց մեռանի՝ թարց հրամանաց իմոց ոչ թաղել՝ ոչ
քրիստոնեայ և ոչ տաճիկ։ Այլ և բազմացան աւազակք ի ճա-
նապարհի, և գողք ի շէնս. վասն այս պատճառի ո՛չ ոք կարէր
գնալ ի ճանապարհ, զի կողոպտէին։ Իսկ ի բազում եկեղեցիս
մտին գողք, և աւար առին։ Իսկ այսպէս կայր երկիրս ամենայն
ի մէջ բազում տառապանաց։ Վասնորոյ ժողովեցան ամենայն

տաճիկք, և արարին խորհուրդ, և եղին գլխաւոր ինքեանց զոմն Գալթայլի անուն, և անուանեցին զինքեանց Գարափաչայ։ Եւ խորհեցան զկորուստ խանին՝ ասելով, սա եբեր զբոզս աստ, և ամենեքեան գնան առ նոսա. և օրինաւոր կանայք արհամարհեալ լինին։ Ասէ, յաւուրս անձրևի քրիստոնեայք մի՛ ելցեն արտաքս. մեք ահա գրացի եմք քրիստոնէից, և խառն ի խուռն կամք ընդ նոսա. առևտուր ի միասին լինի, և շահս բազումս ունիմք ի նոցանէ, և սա կամի զրկել զմեզ ի շահից մերոց։ Եւ զի ասէ, յաղօթարանս քրիստոնէից Մուսուլման մի՛ մտցէ. արդ զամենայն ցաւագարս մեր եկեղեցիքն բժշկեն. այլ և առողջ զբօսանաց մերոց եկեղեցիքն են. զմեռեալս թարց հրամանաց իմոց՝ ասէ՝ ոչ թողել, ապա ուրեմն հարկս կամի առնուլ ի մեռելոց։ Եւ զգողս ո՛չ պատժէ, այլ առնու տուգանս՝ և թողու. և նոքա դարձեալ առնեն գողութիւն։ Զայս և այլ բազում չարիս նորա գրեցին. և ձեռամբ Թագաւորական ծառայի առաքեցին առ Շահն. և ինքեանք յարեան ի վերայ խանին, և մուծին ի տուն, և ո՛չ թողին ելանել արտաքս։ Եւ կնքեցին զամենայն դրունս ամբարացն, և չափով տային զկերակուր նորա։ Եւ այսպէս տառապանօք պահեցին զնա, մինչև եկն այլ խան, և զնա հալածեցին. և եկեալ գնաց յԱսպահան. և երկիրս մնաց խաղաղ։

## ԳԼՈՒԽ ԽԶ.

### Մահ Տեառն Յակոբայ կաթողիկոսին։

Մեծ հայրապետն Յակոբ յորժամ դարձաւ է Գաղընոյ՝ և եկն յաթոռն իւր ի սուրբ Էջմիածին, և խանն՝ եւս եկն յԵրևան, և ընթերցան զռաղամ խանին. զի գրեալ ի նմա, թէ՝ առանց Կաթուղիկոսին մի՛ ինչ արասցես. և դժուարին թուեցան նմա, և ակամբ հայէր։ Եւ և պարտատուքն՝ որ դրամէին

տուեալ փոխ Կարկտին, և Թասկինակ[41]) էին առեալ յանուն սուրբ Էջմիածնին, նոքա գային և խնդրէին զպարտսն: Իսկ Կաթուղիկոսն ձանձրացաւ ի բազում պարտատուացն. վասնորոյ առանց գիտելոյ խանին՝ ելեալ գնաց ի Տփխիս քաղաք Վ ր-րաց, Թերևս կարասցէ ժողովել զդրամս, զի օգնութիւն լիցի պարտուցն: Իսկ խանն իբրև գիտաց զերթալն նորա, երկեաւ՝ թէ մի՛ գուցէ երթիցէ առ Շահն՝ և գանգատեսցէ զինէն: Վասնորոյ առաքեաց նմա հրաւիրակ Հաթամ բէկ անուն. և գնացեալ ի Թիֆլիզ, և բազում աղաչանօք աղերսէր դառնալ: Եւ Կաթուղիկոսն ասէր, ես ահա ունիմ բազում պարտս, և եկի աստ՝ գտանել՝ հնարեցից զերծանիլ. այլ դու դարձի՛ր՝ և ողջոյն մատո՛ յինէն նմա: Եւ կացեալ անդէն աւուրս ինչ, և սակաւ ինչ վճարեաց ի պարտուցն: Եւ ապա ելեալ գնաց ի Ծովեզերն. և նստեալ ի նաւ, և գնաց ի Բիւզանդիայ. և անդ ևս վճարեաց ի պարտուցն փոքր ինչ: Եւ տկարացաւ, և վախճանեալ հանգեաւ ի Տէր յայնմ ամի ի Թուին ՌՃԻԹ յօգոստոսի Բ. և տարան զնա ի քաղաքն Գալաթայ՝ ի հասարակաց գերեզմանն՝ ի տեղին՝ որ կոչի Բէկօղլի. և Գ. տակ Աթոռ հաստատեցին ի վերայ. և առնէ սքանչելիս և բժշկութիւնս. զոր մի ի բազմացն պատմեցից, զոր տեսի աչօք իմովք: Քանզի յաւուր՝ յորում հանգուցեալ են զնա ի տապանի, Բշաբաթի պատահեալ, վասնորոյ յամենայն Բ շաբաթի առնեն պատարագ քահանայքըն Գալաթու, և գնան ի գերեզմանն Հայրապետին, զի ժողովուրդք գան յուխտ, և օրհնեն զգերեզմանն, և տան Խաչհամբոյր: Նոյնպէս և ես գնացի անդ, և ետու պատարագ առնել. և յետ պատարագին առի երեց մի Յակոբ անուն՝ որ էր աշակերտըն իմ, և գնացի ի գերեզման սրբոյն Յակոբայ, և ասացի քահանայիցն առնել պաշտօն. և էր տաղաւար մի շինեալ հանդէպ գերեզմանի նորա՝ երեսբաց, և գծուծ այր մի եբեր զշուր-

---

(41) Գուցէ Բէտէրէ. մուրհակ:

ջառն՝ աւետարանն և բուրվառն, և խօսէր տաճկերէն։ Եւ ես կարծեցի զնա Հոռոմ գոլ, կամ Ասորի, և կամ թէ Հայ՝ որ ոչ գիտէ խօսել Հայերէն։ Եւ յետ օրհնելոյ գերեզմանին ետու դրամ Յակոբ երիցուն՝ զի բաժանեսցէ քահանայիցն։ Ետ և գծուծ առն քանի մի ստակ. և նա տարեալ ետ ցքւոյ. և բերեալ ետ ըմպել երիցանցն։ Եւ մինչ կամէի հարցանել զո՛վն և զուստին գծուծ առնն, ահա եկն փառաւոր տաճիկ մի՝ և Գ. կին ընդ նմա։ Եւ բերին վասն գծուծ առնն ձիթապտուղ, և քացախ, և հաց իւղով որ ասի «ի.Դ.Ի.», և խաշեալ բակլա, և սխտոռն, և պանիր, և պնակաւ գարէջուր՝ որ է բօզայ, և եդ ի տաղաւարն, և ինքեանք վառեցին բազում մոմս ի վերայ գերեզմանին, և շուրջ գային զգերեզմանաւն աղաչելով։ Եւ ես հարցի Յակոբ երիցուն, թէ ո՞վ են սոքա։ Ասէ երէցն, դոքա տաճիկ են. և է փառաւոր երիտասարդն որդի աղքատին. այս մին կինն՝ կին սորա է, մինն՝ նո՛յն է սորա և կին որդւոյն, մինն դուստր սորա է, և մատամբ եցոյց ինձ։ Իսկ գծուծս այս էր իշխան մեծ առաջի Սադրին. և յանկարծակի տկարացաւ սա, և եղև անդամալոյծ, և ոտքն կցան ընդ ծունկն ի ներքոյ նստոյ տեղին. և բազում բժիշկ եկեալ ո՛չ կարացին բժշկել զդա։ Եւ է տուն դորա մերձ ի ծովն ի Ստամպօլ քաղաքը։ Յաւուր միում տեսանէ դա, զի բազում արք և կանայք մտեալ ի նաւ՝ անցանեն յայն կողմն ծովուն, և հարցանէ դա՝ թէ ո՞ւր երթան դոքա. և ասեն, յԱճամստանայ Պպտղի մի եկեալ և փախճանեալ է աստ, և դոքա գնան յուխտ ի գերեզման նորա։ Իսկ դա ասացեալ է ազդմաւրն Աստուծոյ, արդ առեալ տարէք զիս ի գերեզման նորա, և յուսամ առ Աստուած՝ որ աղօթիւք նորա ողջանամ, և այլ ոչ մեկնիմ ես ի տապանէ նորա։ Եւ ստիպեաց զորդին իւր, որ առեալ եդին ի կուր, և անցուցին յայս կողմն. և եդին ի շալակ համալի[42]), և բերին աստ. և ի գալն պաղատանօք բողոքէր

(42) Բեռնակիր։

առ Աստուած. և յորժամ իջուցին՝ եղին մերձ առ գերեզմանըն. և լալով ասէր, ֆէ՛ր Նազարէ՛ւ՝ յուսով և հաւատքով դիմեալ եկի առ քեզ. կամ տո՛ւր մահ, և կամ բժշկեա՛ զիս, երկուցն զմինն շնորհեա՛ ինձ: Զայս ասաց պաղատանօք, և ի վերայ նստոյ տեղւոյն շուրջ եկն զգերեզմանաւն: Եւ ահա ողորմութեամբըն Աստուծոյ պարզեցան ոտքն, և ապա նստաւ ի վերայ ծնկացըն, և շրջեցաւ դարձեալ զգերեզմանաւն. և ահա կանգնեցաւ յոտին; լայր և պաղատէր. և կալեալ զվերին քար գերեզմանին, և ի վերայ ոտին շուրջ եկն դարձեալ. և ահա արձակեցան ամենայն յօդուածքն, շրջէր ուղիղ որպէս էրն առաջագոյն: Եւ ապա անկեալ ի ներքոյ տապանին, և այնքան եհար զճակատն ի քարն՝ մինչև այտուցեալ ճակատն՝ և բարձրացաւ քան զգըլուխն. ահա յայն օրէ մինչև ցայսօր ոչ մեկնի դա աստի, տիւ և գիշեր աստ է. և շինեաց զտաղաւարդ այդ, և բնակի ի դմա. ոչ ուտէ միս և ոչ ըմպելի ինչ. և կերակուր դորա այդ է՝ զոր և տեսանես: Եւ լուաւ թագաւորն զդմանէ, առաքեաց առ դա՝ թէ ընդէ՞ր ծառայես գիւաւորի գերեզմանին, զի դու մուսուլման[43] ես: Իսկ սա պատասխանի արար, թէ սա բժշկեաց զիս, վասն այն ծառայեմ սմա, և զհաւատս իմ պահեմ: Եւ ետուն թոյլ՝ և ասեն, որպէս և կամի՛ կացցէ, և զհաւատն իւր պահեսցէ. և ահա այս պատմութիւն նորա՝ զոր լուայ և տեսի: Բայց յորժամ դարձայ ես յերկիրս մեր, լուայ թէ ի ներքոյ հարկի եղեալ են զգերեզման նորա: Յետ այնորիկ եկեալ են դեսպանք ի Փռանգաց, և խօսիւք յանդիմանեալ զթագաւորն, թէ դուք ի մեռելոց հարկս առնուք. յայսմ պատճառէ թողեալ են հարկըն: Այսքան և այսպէս եղև մահ Տեառն Յակոբայ:

(43) Մուսուլման, մահմետական:

## ԳԼՈՒԽ ԽԵ.

### Պատմութիւն վասն Վրաց։

Զպատմութիւնս Վրաց սակաւ գրեցից։ Քանզի առաջին
և մեծ Շահ-Աբասն քակեաց և աւերեաց երկիրն Կախեթու,
և զԹամրազ որդի Թագաւորին Աղէքսանդրի տարաւ ընդ իւր
ի Պարս. և պահեաց անդ ժամանակ ինչ, և ապա ետ նմա իշ-
խանութիւն. և առաքեաց ի Կախէթ ի հայրենի երկիր իւր՝
տիրել նմա, և կալ հնազանդ Շահին. և նա կայր անդ ըստ
պատուիրանաց Շահին։ Յետ Շահ-Աբասին եղև թագաւոր
թոռն նորա Շահ-Սաֆի. և յետ նորա որդի իւր փոքր Շահ-
Աբաս։ Ի սորա ժամանակին էր իշխան ի Տփխիս Ռոստամ, ազգաւ
Բագրատունի։ Սա թշնամի եղև Թամրազին. և կամէր երկիր
նորա յափշտակել, և զնա հնազանդեցուցանել ընդ իւրով իշ-
խանութեամբն։ Իսկ Թամրազ ոչ հնազանդէր նմա, և ոչ թո-
ղոյր իշխանութեան նորա մտանել ի տէրութիւն իւր։ Իսկ
Ռոստամ գրգռեցաւ պատերազմել ընդ նմա։ Նոյն Թամրազն ևս
զինեցաւ ընդ դէմ նորա մարտիւ պատերազմի։ Նոյն որդի մի էր
նորա Դաւիթ անուն՝ ծնեալ ի Փարի կնոջէ իւրոյ, որ էր դուս-
տրր Գորկի թագաւորին Թիֆլիզոյ, և քոյր Լաւարսափին։ Այս
Դաւիթս խնայեաց ի ծերութիւն հօրն, և ոչ եթող մտանել
ի պատերազմ։ Այլ ինքն մտեալ ի զգեստ պատերազմին՝ զինե-
ցաւ ընդ դէմ նոցա։ Իսկ զօրքն Թիֆլիզու էին Ալաւերտ։ Նոյն ի
զօրացն Պարսից առաքեցին ի կողմն Միլանել քէմին։ Նոյն յոր-
ժամ խմբեցաւ պատերազմն, և Դաւիթ մեծաւ քաջութեամբ
եմուտ ի մէջ բազմութեան զօրացն Ռոստամին։ Իսկ Պարսիկքն
որք կային ի քմին, իբրև լուան զձայն փողոց պատերազմին,
յայնժամ ելին նոքա ի միւս կողմանէ զօրացն Կախեթոյ, և ի
մէջ առեալ զզօրսն Վրաց՝ պատահեցան Դաւթին, հարեալ
սպանին զարին Դաւիթ։ Նոյն տեսեալ զօրացն զմահ Դաւթին,

թողեալ և փախեան, և Պարսիկք հալածեցին զնոսա մինչև ի սահմանս Կախեթոյ։ Իսկ Թամրազն կայր հեծեծանօք և դառն կսկծանօք։ Իբրև ետես նա՝ թէ ոչ կարէ դիմամարտել նոցա, և ուղղեաց զինքն գնալ առ Շահն, ասէ, բարուոք է թէ Շահն սպանանէ զիս՝ քան թէ ծառայակիցն իմ։ Եւ յարուցեալ գնաց. և թագաւորն Շահ-Աբաս ընկալաւ զնա սիրով, և պահեաց առ ինքն ժամանակ ինչ. և ապա ետ նմա թուղթ և իշխանութիւն տիրել երկրին իւրոյ։ Եւ գրեաց սաստ Ռոստամին, մի՛ ունել իշխանութիւն ի վերայ Թամրազին. և արձակեաց զնա գնալ ի տեղի իւր։ Եւ նա ելեալ յերեսաց թագաւորին՝ գնաց. և ոչ եհաս յերկիր իւր, այլ մեռաւ ի ճանապարհին։ Իսկ թոռն նորա Հերակլ՝ որ էր որդի որդւոյն նորա Դաւթի՝ իբրև լուաւ զմահ հաւոյն իւրոյ, երկեաւ նա մնալ անդ ի Կախէթ, այլ ելեալ ի Կախեթոյ՝ և գնաց ի Մոսկով, և անդ լինէր։ Եւ Շահ Աբասն բազում անգամ առաքեաց առ նա հրաւիրակ՝ գալ առ ինքն։ Եւ նա ոչ եկն՝ երկուցեալ ի մահուանէ։ Յետ Շահ Աբասին եղև թագաւոր՝ որդի նորա Շահ Սուլէյման. սա առաքեաց այր մի Ջուղայեցի Գրիգոր անուն՝ թղթով և երդմամբ, որ գնաց եբեր զնա ի քաղաքն Խզլրան, որ է Ղազուին. քանզի անդ էր Շահն, ի թուին ՌՃԻԳ յապրիլի ԻԳ։ Ընդ էր և մեծ Կաթուղիկոսն Յակոբ, և մեք եւս ի ծառայութիւն նորա։

## ԳԼՈՒԽ ԽԲ.

### Պատմութիւն երկուց արանց։

Ռոստամ խանն՝ զոր գրեցաք՝ ազգ է Բագրատունեաց. զի յետ անկանելոյ թագաւորութեան նոցա՝ և աւերմանն Անւոյ՝ մնացեալքն յազգէն Բագրատունեաց գնացին յաշխարհն Վրաց։ Եւ յորժամ վերացաւ և թագաւորութիւնն Վրաց,

անկաւ երկիրն ի ձեռս Պարսից. և նոքա ետուն իշխանութիւն Բագրատունեաց՝ տիրել ամենայն սահմանացն Վրաց։ Եւ ան-բեցան Բագրատունիքն որդւոց յորդիս մինչև յայս Ռոստոմս. որ ծնաւ որդի մի ի Մարիամայ կնոջէ իւրոյ, որոյ անունն էր Վաւարսափ, որ պահէր փոխանակ իւր լինել իշխօղ Վրաց։ Եւ յաւուր միում առեալ զորդի իւր բազում զօրօք՝ և գնա-ցին յորս երէոց՝ ի տեղին որ ասի Կարա-բաղ, որ է Սեաւ գա-րուն։ Եւ եղև՝ զի զհետ եղեն որսոցն, և ամենեքեան փութա-յին սպանանել զորսն։ Եւ ի խուռն արձակմանէ թուանքացն՝ հարին զորդի թագաւորի զՎաւարսափն՝ և սպանին։ Եւ Ռոս-տամ երկեաւ յինքենէ, փախեաւ և գնաց ի քաղաքն Թիֆլիզ։ Եւ արար խնդիր սպանողաց որդւոյ իւրոյ, և ոչ կարացին իմա-նալ։ Եւ ապա դատապարտեցին Բ այր, միոյն անունն՝ Բայան-դուր Հայ ի Մամիկոնեան ազգէ՝ որ ասեն Թումանեցի, և միւսոյն անունն՝ Շիշուշ՝ Վրացի՝ ազգաւ Բարաթեցի, զորս դատա-պարտեցին՝ եթէ դուք էիք մերձ նմա՝ յորժամ սպանին զնա, կամ գիտէք դուք զսպանօղ նորա, և կամ դուք էք սպանեալ։ Եւ բարձրացաւ բարբառս այս, Հայքն ասէին՝ Վրացին է սպա-նեալ, և Վրացիքն ասէին՝ Հայն։ Եւ ապա ասացին Սաճաք-Բէյէ՝ այսինքն՝ դատաստանաւ մենամարտիլ, ով ոք յաղթի՝ նա է սպանեալ զորդի թագաւորին։ Եւ հաստատեցաւ բանս այս ի մէջ նոցա, զի ելանիցեն երկուքն միայն։ Եւ կազմեցին զէն-քեանս, զգեցան զգեստ պատերազմի, և զինեցան զինուք, համ-բուրեցին ծունկ թագաւորին, անցին յայն կողմն Կուր գետոյն՝ յարևելից կոյս քաղաքին։ Իսկ նենգաւոր ազգն Վրաց հրապա-րակաւ խրատ ետուն երկոցունց, թէ յորժամ յասպարէզն մը-տանէք՝ մի՛ մարտնչիք յառաջագոյն, այլ արշաւեցուցէք զերի-վարս այսր և անդր, թերևս ողորմեսցի թագաւորն, և ոչ թո-ղու պատերազմել։ Զայս խրատս ճշմարիտ իմացաւ Բայանդու-րըն։ Իսկ Կայէնանման ազգն Վրաց գաղտնի խրատ ետուն Շիշուշին՝ թէ դու փոքրահասակ ես և անզօր, և Բայանդու-

րըն յաղթամարտին է և զօրեղ, դու ո՛չ կարես դիմամարտել նմա. այլ յորժամ նա խաղս առնէ երիվարաւն, դու ջանա հարկանել զնա նիզակաւն, թերևս կարասցես արկանել զնա յերկիր։ Եւ ապա երկոքեանն ես մտին յասպարէզն։ Եւ խանն եդ ընդ նոսա Գ. տաճի՛կ՝ և ասէ, ո՛վ որ ի նոցանէ անկանի յերկիր, դուք անկերո՛ւք ի վերայ նորա, և մի՛ թողուք սպանանել։ Եւ Բայանդուրն յառաջեաց քան զՇիշուշն, և նա զկնի նորա եմուտ ի մէջ թամբին, և նիզակն ուղղեաց դէպ ի Բայանդուրն, և եհար զգեղարդն ի փոր Բայանդուրին, ի ներքոյ պորտոյն թափանցոյց ի միւս կողմն, ի մէջ մսոյն և մորթոյն էանց գեղարդն։ Իսկ Բայանդուրն ցանցեալ փրթոյց ըղգեղարդն ի ձեռանէ Շիշուշին, և եդ ի վերայ ղաշէ[44]) թամբին, և լախթոմն եհար և եբեկ զնիզակաբունն, և էարկ յերկիր, և մնաց գեղարդն ի փորն։ Եւ Շիշուշն փախուստ առեալ գնայր։ Իսկ Բայանդուրն մտրակեալ զերիվարն՝ եհաս նմա չեչտակի, և եհար լախթոմն զպարանոցն նորա՝ և կախեցաւ ի ձիոյն. և կամէր միւսանգամ հարկանել. և զի բուռն լախտին շաղախեալ էր արեամբ, փրթաւ ի ձեռանէ նորա. և եհան զթուրն՝ զի հարցէ զնա. զի խելագարեալ էր Շիշուշն, անկաւ յերկիր, և Բայանդուրն եբեր զթուրն ի վերայ և հարաւ, զձէտ ձիոյն եհատ ի բնէ։ Եւ տաճիկքն անկան ի վերայ Շիշուշին, և ոչ թողին սպանանել զնա։ Եւ ապա Հայք և տաճիկք խուռն եկին և . . . [45]) ցեալ բարձրացուցին զԲայանդուրն՝ և բերին առ իշխանն. և պատուէր ետ բժշկաց՝ բժշկել զնա. և սիրեաց քան զչափն աւելի։ Հրամայեաց՝ զի առ վաղիւն հանցեն զՇիշուշն,

---

(44) Ղաշէյ. ծածկոց թամբի։

(45) Ի բնագրին՝ որպէս յայլ բազում տեղիս՝ յոյժ մաշեալ և գրեթէ ցեցակեր գոլով թղթին՝ դժուարացաք ընթեռնուլ զբառս ինչ, թողումք զի և ի տեղիս տեղիս քերեալ կամ գծեալ էին բանք ինչ. այլ աստ մաշեալ էր թուղթն և քերեալ գիրն, ուստի և ոչ գտաք զբուն բանն։

և յօ՛դ յօդ մանրեսցեն՝ և արկցեն շանց։ Նա էր նորա եղբայր մի արեղայ՝ Քրիստափոր անուն, որ էր խոստովանահայր Թագուհւոյն. որ գնացեալ աղաչեաց նմա վասն փրկութեան եղբօր իւրոյ. և նա աղաչեաց առ այր իւր. և ոչ սպանին զնա։ Այլ յայն զոր ինչ գոյր Շիուշին, թէ ծառայք և թէ աղախինք, թէ գեղ և թէ այգի, թէ անասուն, և այլ ամենայն զոր ինչ գոյր նորա՝ հրամայեաց գրով տալ բովանդակ Բայանդուրին. և արարին ըստ հրամանի նորա։ Յայսմ վայրի Մարք փոքր ինչ խոնարհեցան ի զօրութենէ իւրեանց։ Հայք երգս նախատանաց յօրինեցին լեզուաւ նոցա, և ամենայն տան յաւարտ ասէին. Շիշուշ ծառի, Բայանդուր մօտտայ. որ է Շիշուշ փախիր, Բայանդուրն գալիս է։ Նա յերգելն զայս մանկանց Հայոց, Մրացիքն ամօթ կրէին։ Լուաւ զայս Թագաւորն Սանի-Երաս, այսինքն փոքր Շահ-Երաս, և կոչեաց զԲայանդուրն, և ետ նմա իշխանութիւն մեծ Տփխիս քաղաքին. եղև այս ի ՈԳԹ թուին։

## ԳԼՈՒԽ ԽԹ.

### Աշոտամնացեալն Գօրջէ խանէն։

Իբրև ետես Ռոստամն՝ թէ մեռաւ որդին իւր, և այլ ոչ ոք ունի յիշատակ՝ որ ժառանգ լինի թագաւորութեան իւրոյ, կոչեաց զոմն յազգէ Բագրատունի՝ Վախթանգ անուն, և արար զնա որդեգիր, և ասէ, յորժամ ես մեռանիմ, դու լեր թագաւոր փոխանակ իմ։ Նա յետ սակաւուց մեռաւ նա. իսկ Վախթանգն առեալ ընդ իւր բազում ազատ որդիս՝ և գնաց առ Սանի-Երաս թագաւորն Պարսից՝ որ է փոքր Շահ-Երաս. ընկալաւ ի նմանէ զիշխանութիւնն, և անուանեցաւ Շահ-Նաւազ, որ է Շունչ արքայի։ Նա կացեալ բազում ժամանակ, և յետ Երասայ թագաւորեաց որդի նորա Սուլէյ-

ման. և առաջի սորա չարախօսեցին զՇահ-Նափասէն։ Եւ ելեալ իւրով կամաւ գնալ առ Թագաւորն՝ և ցուցանել զմիամտութիւն իւր։ Եւ ունէր նա բազում որդիս, զՆաղարալի, զԳօրկի, զՊատառայ, զՐէժօ, և զԼէոն. և առեալ զորդի իւր զԳօրկի՝ և գնաց։ Իբրև մերձ եղև Սպահանայ, լուաւ թէ՝ յաւուր՝ յորում տեսանէ զքեզ Շահն, արկանէ առաջի առիւծուց։ Վասնորոյ առեալ դեղ մահացու՝ և վճարեցաւ ի կենաց։ Եւ որդի նորա Գօրկի տարեալ ցուցին Թագաւորին։ Բայց ոմանք ասեն վասն սորա, թէ անդ պատանդ էր. ոմանք ասեն, ընդ իւր տարաւ Շահ-Նափասն. և ոմանք ասեն, աստի գնաց յետ մահու հօրն։ Սակայն ինչ և իցէ, տեսեալ զնա Թագաւորն Սուլէյման՝ ետ նմա տեղի հօրն, և մեծաւ փառօք առաքեաց ի Թիֆլիզ. որ եկեալ տիրեաց Վրաց աշխարհին բազում ժամանակս։ Յետ Սուլէյմանին նստաւ որդի իւր Հիւսէին։ Ի ժամանակի սորա ապստամբեցաւ Գօրկի։ Քանզի ասէին, թէ՝ էր սորա դուստր մի չքնաղ և գեղեցիկ, ազնիւ և աննման. և Գօրկին առաքեաց բազում աղջկունս Թագաւորին յազգէն Վրաց. և նոքա զովեցին առաջի Թագաւորին զդուստր նորա։ Եւ Շահն առաքեաց ի խնդիր նմա։ Իսկ Գօրկին ոչ առաքեաց զդուստրն, այլ զնախատինըս ևս ասաց, թէ դուք Պարսիկքդ սպառեցիք զազգս մեր, ոմանք բռնութեամբ և ոմանք խաբէութեամբ, ոմանք պատրանօք և ոմանք կեղծաւորութեամբ։ Հայրն իմ մեռաւ վասն ձեր. և խստութեամբ հանիք ի հաւատոյն։ Եւ զեղբայրն իմ արգելեալ էք այդր. զդուստրն իմ ևս խնդրէք։ Արդ զի՞նչ վնաս կրեցիք դուք ի մէնջ, որ այսքան տառապանս հասուցանէք մեզ։ Այս՝ և այլ բազում նախատինս ասաց, և գիտաց՝ զի արհամարհանք և նախատինք մեծ եղև Շահին։ Քանզի և բազում չարախօսութիւնս ևս արարեալ էին զնմանէ, յաւելաւ ևս զայս ի վերայ նորա, և եղև կատարեալ թըշնամութիւն. վասնորոյ զամենայն ինչս իւր ծածկաբար առա-

քեաց ի Խորին-Վիրս. և ինքն ևս առեալ զհամախոհս և զհօ-
մանիսն իւր՝ փախեաւ և գնաց՝ ուր և կարաց, ի մէջ մայրեաց թագեաւ: Իսկ Շահն իբրև լուաւ զփախուստ նորա, առաքեաց ի գաւառն՝ որ ասի Խունասար, որ է Արեան-գլուխ, և ետ բերել անտի զԹոռն Թամրազի զՀերակլ, և ետ նմա խանութիւն Թիֆլիզոյ, և անուանեաց զնա Վալի-խան, և մեծաշուք փառօք առաքեաց ի Տփխիս: Նա ինքն հրամայեաց զօրս գումարել ի վերայ Գօրկոյն. և ժողովեցան բազում զօրք ի բազում տեղեաց՝ յԵրևանայ, ի Նախջուանայ, ի Գանձայու, ի Թիֆլիզոյ և յայլ տեղեաց, և գնացին ի վերայ նորա. և նա թագուցեալ կայր ի մէջ մայրեացն: Յորժամ գնացին Պարսիկքն ի վերայ նոցա, նոքա մտանէին ի մայրին, և ի գիշերի անկանէին ի վերայ զօրացն, կոտորէին զնոսա, և աւար առնէին զինչսն. և յորժամ յառնէին տաճիկքն, նոքա մտանէին ի մայրին: Վրացիքն հմուտ էին վայրացն, և նոքա ոչ. վասնորոյ բազում չարիս անցուցին ի վերայ տաճկացըն: Ո՛չ թէ միանգամ և երկիցս եղև այս, այլ բազում անգամ. որքան նոքա գնացին ի վերայ Վրաց, Վրացիքն ղօղեալք ի ցերեկի, և ի գիշերի անկանէին ի վերայ նոցա, և առնէին որպէս գրեցաք: Բայց երկիրն Վրաց դարձաւ աւերակ. զի Պարսիկքն ի գնալն իւրեանց՝ ուր և պատահէին՝ կողոպտէին, աւար առնէին ինչսն, և զշէնսն այրէին՝ և ասէին, գնացեալ պատգամ տարէք Գօրկի խանին, թէ այսպէս առնեմք զամենայն երկիր քո: Իսկ Վրացիքն նոյնպէս աւերէին՝ և ասէին, ասացէք Վալի խանին, թէ՝ զի՞նչ արարաք երկիրն քո. և այսպէս երթևեկութեամբ երկուց զօրացն աւերեցան Մուխրան և Գօրկի: Նա յորժամ դեսպանքն Պարսից գնացին առ Գօրկին, և նա միամտութիւն ցուցանէր՝ ասելով, ես ոչ եմ թշնամի Շահին, այլ ծառայ ստրուկ եմ Շահին, և հող ոտաց նորա: Նա թէև վասն հակառակութեան եկեալ եմ աստ, այլ ի

մահուանէ փախեալ եմ։ Զայս խօսէր միշտ՝ մինչև հաւատալ Շահին. և միջնորդութեամբ Երաս խանին Գանձակայ՝ որ էր բարեկամ Գորկուն, արար հաշտութիւն ընդ նմա։ Քանզի գրեաց թուղթ սիրոյ և երդման, և (յղեաց) խլայ յոտից մինչև ցգլուխ, և երիվար զօրեղ՝ և քաջալերութիւն՝ գնալ առ նա աներկիւղ՝ և ոչ երկնչել։ Եւ վասն այսց քաջալերանացս ելեալ գնաց մինչև ցԵրեւան. և զետղ առեալ անդ մինչև եկին ի Գեանձայու արք ի խանէն՝ ուղղեկից նմա։ Եւ ապա եդ ընդ նմա խանն Երեւանայ ուղղեկիցս, և առաքեցին զնա փառաւորապէս. և եհաս յՍպահան. և ասացին Շահին զգալուստն նորա։ Եւ Շահն առաքեաց ընդառաջ նորա, բերեալ իջուցին ի վայելուչ ապարանս արքունի։ Եւ ապա խնդրեաց զնա Շահն՝ զընալ առ ինքն։ Իսկ Գորկին առեալ առասան եդ ի պարանոցըն՝ և կախեաց ի թիկանցն, և զթուրն կախեաց ի վերայ սըրտին. և այնպէս եմուտ առ Շահն։ Եւ տեսեալ զնա Շահըն՝ ասէ, զի՞նչ է այդ Գորկի՛ խան։ Պատասխանեաց Գորկին՝ և ասէ, ես մահապարտ և յանցաւոր գտայ առաջի քո. արդ՝ կամ պարանաւս այս կախեա զիս, և կամ թրովս այս սպա՛։ Ասէ Շահն, ո՛չ թրով սպանանիս և ոչ պարանաւ կախիս, այլ կաս ընդ իս՝ և խրատես զիս։ Եւ պատուեաց զնա՝ և սիրեաց յոյժ. և է ընդ նմա միշտ. և այժմ կայ այսպէս ի թուականս այս՝ որ կամք յայժմուս ՌՃԽԵ։ Բայց Մալին յորժամ գնաց ի Թիֆլիզ, սկսաւ չարիս. զի հրաման եհան՝ զանգակ ոչ հարկանել, և ժամկոչ ոչ կոչել, և առաջի մեռելոց խաչ ոչ բարձրացուցանել. և այսու պատճառաւ կամէր զհաւատս քրիստոնէից բառնալ։ Մանորոյ միաբանեցան քրիստոնեայքն՝ Հայք և Վիրք, և զդոհս տուեալ գնացին ի դուռն նորա, և աղաղակելով պախարակէին, և այպանէին՝ ասելով, դու ուրացար զհայրենի հաւատն քո՝ և եղեր ուրացող Քրիստոսի, և զմե՞ղ ես կամիս հանել ի հաւատոց մերոց. արդ լուեա յունեայն խորհրդոյդ, եթէ ոչ՝ քարկոծ առնեմք զքեզ։ Զայս իր-

րև լուաւ՝ երկեաւ, մի՛ գուցէ ապստամբեսցին, և անկանիցին ի կողմն Գօրկուն, և յարիցեն ի վերայ իմ առ ի սպանանել զիս: Նա ապա դադարեցաւ ի սնոտի գործոյն. և այս եղև այսպէս յայսմ ժամանակի, և ապագայն Աստուած գիտէ:

## ԳԼՈՒԽ Ծ.

### Իշխանութիւն Զալին:

Զի որպէս ասացաք՝ ամենայն զօրքն Երևանայ յարեան ի վերայ երկրորդ Սաֆի խանին, և մուծին զնա ի ծակ, և ոչ թողին զնա ելանել արտաքս. և ինքեանք գրեցին առ Շահն. որ և բազումք գանգատեալք՝ որպէս և առաջ գրեցաք: Վասնորոյ կոչեաց զՄիրզայ Իպրահիմն, որ ասէինն Հատրբէճան-վազրի, և եդ ընդ նմա Վալի խանն, որ էր ազգաւ Վրացի, և փեսայ էր Աբաս խանին՝ որ էր իշխան Երևանայ. և Զալս այս ընդ նմա եկն յԵրևան: Սա վարէր ամենայն գործն իշխանութեան. որ և հմուտ և տեղեակ էր ամենայն իրացն Երևանայ, և գիտէր և ճանաչէր զամենայն այսն Երևանայ, թէ ո՛վ ոք էին վնասակարք և աւերիչք Երևանայ: Նա եկին ի սահմանս Արարատեան. ոչ ծանուցին զգալուստն իւրեանց ումեք, զի մի՛ ելցեն բազմութիւնք ընդ առաջ նորա, որ ինքեանք տարփանս[46] ասեն, որպէս սովորութիւն էր Պանորէիցն առնել. սա ոչ արար այնպէս. այլ ի գաղտնի եմուտ ի բերդն. եւ բերել զգուքսն՝ որ է Շիխ-Իսլամ, և ոմանք ևս ի մեծամեծացն. և առաջի նոցա ընթերցան ռաղամ թագաւորին: Եւ որք անդ էին՝ համբուրեցին զծունկն. և մունետիկն ելեալ աղաղակէր, ահա Զալ խան եղև տէր Երևանայ. ամրէ ղէխ օլսուն[47]): Եւ ի նմին ժամու

---

(46) Կամք, յօժարութիւն, փափաք:

(47) Երկարեսցին կեանք նորին. կամ՝ կեցցէ ի բազում ամս:

Հրամայեաց ըմբռնել այր մի ազգաւ Ղաճար՝ ի գեղէն որ ասի Թուրա, որոյ անուն էր Ահմաթ-բէկ՝ Դ. որդւովքն, որոց անուանքն էին՝ Խաս-խան, Օսման-խան, Մուսա-խան, Ղասիմ-խան. զի նոքա էին մեծասակալք աշխարհին. ընդ սա ըմբռնեալ ետ կուռն ի պարանոց նոցա, և եդ ի բանտի. և յետ աւուրց առաքեաց առ Շահն. այլ ոչ ևս կարացին կալ հաստատ՝ թէպէտ և արձակեցան։ Յետ սոցա ըմբռնեաց այր մի Այրումլու Տաշտամուր անուն. վասն զի յառաջին ղանորէիցն ապստամբեալ էր, և Օսլու այս այլ հնարիւք իմն ըմբռնեաց զնա, և կախեալ ի ոտանէն՝ բրածեծ արարին այնքան՝ մինչև մերձ ի մահ լինել. և ապա արկին ի բանտ. և բազում տուգանս առին, և արձակեցին. և գնաց ի տուն իւր ի Շիրակ. և ի բազում հարուածոց անտի մեռաւ։ Բայց վասն այս խանիս ոչ կարեմ ասել վատ ինչ. վասնզի ծնունդ քրիստոնէից էր, գթայր ի քրիստոնեայս։ Յառաջին ամի սորա եղև ահագին շարժն Արարատեան երկրին. զոր յառաջիկայս պատմելոց եմ։ Սա հրամայեաց շինել զամենայն աւերեալ եկեղեցիսն. զոր և շինեցին բազում եկեղեցի՝ ի բազում տեղիս։ Նա յաւուրս այսորիկ ելեալ գնաց ի Կոտէս գաւառն լեռնանալ. և ի Քանաքեռ գիւղն եկեալ ետես բլուր գեղջին՝ և հայէր յաւերեալ տեղիսն, և ափսոսայր։ Նա դարձաւ ի Թիկանց կողմն՝ և ետես զեկեղեցին, և եհարց՝ թէ զի՞նչ է այս. և ասին, թէ եկեղեցի էր։ Ասէ խանն, ընդէ՞ր ոչ շինէք զդա։ Ասեն գեղականքն, քանզի ոչ ունիմք կարողութիւն։ Ասէ խանն, այնքան ոչ ունիք կարողութիւն՝ զի փայտիւ աղօրոյ48) առնել, զի պատաւունք ձեր աղօթեսցեն. ահա ես շնորհեցի Ժ. թուման ի հարկէ ձերոյ, և դուք շինեցէք զեկեղեցիս։ Նա ի նոյն օր սկսան շինել զհողն. և ծածկեցին ըստ հրամանի խանին։ Նա այսպէս կայր սիրով ընդ քրիստոնեայս՝ մինչ էր նա յԵրևան։

(48) Աղօրէ. շաղախ, 2) ծածկ։

## ԳԼՈՒԽ ՃԸ.

### Վասն ահագին շարժին Երեւանայ։

Ի թուին ՌՃԻԸ է յունիս ամսոյ Գ՝ աստուածասաստ բարկութիւն եղեւ ի վերայ երկրին Արարատեան. զի հայեցաւ աստուած բարկութեամբ յարարածս իւր. յետ Համբարձման Գ շաբաթի աւուր յերրորդ ժամուն յանկարծակի գոռաց երկիր որպէս ամպքն. յետ գոռալոյն ահագին թնդմամբ շարժեցաւ. երկիրն Արարատեան առհասարակ դողայր եւ երերիւր, ըստ ասացելոյն, ո՛ հայի երկիր, եւ տայ դողալ նմա. եւ թէ հիմունք երկրի տատանէին. եւ եկեալ շարժս այս ի կողմանց Գառնւոյ՝ եւ փլան ամենայն շինուածք եւ գեղեցկայարկ բնակութիւնք, եւ վանորայք, եւ եկեղեցիք։ Այլոքիկ են աւերեալ եկեղեցիք, Աղջոց-վանք, Այրի-վանք, Հաւուց-Թառ, Տրդատակերտըն (Տրդատակերտն), Խորվիրապն, Դվին, Ջագավանք, երեք եկեղեցիք յԵրեւան, Նորագաւիթ, Նորագեղ, Ձորագեղ, Նորք, Գամրէզ. եւ բերդն Երեւանայ ի հիմանց տապալեցաւ. մզկիթ եւ մինարայք[49]). ի բազում տեղիս աղբիւրք բղխեցին, եւ բազում աղբիւրք խցան։ Եւ փլան քարափունք, եւ լցան առուքն, եւ արգելին զգնացս ջուրց։ Եւ բազում գեղորայք քակեցան։ Եւ է Քանաքեռ գիւղ ոչ մնաց բուն մի հաւու. եւ էր զարմանք, զի ի նոյն Քանաքեռ ի տուն մի անկան չորեքին որմունք, եւ տանիքն ի վերայ չորս սեանցն եկաց անշարժ՝ որպէս թէ կախեալ զօդոյն։ Եւ հաս շարժն մինչ ի գիւղաքաղաքն Կարբի, եւ Գ այր մեռան։ Եւ ի սուրբ ուխտն Յօհանավանք փլան ամենայն գեղեցիկ ապարանքն, եւ եկեղեցին խախտեցաւ. եւ մեք հազիւ զերծաք ի մահուանէ։ Եւ նոքա՝ որք

(49) Մինարէ. բարձր տեղի ինչ կոչելոյ զմահմետականս յաղօթանոցն իւրեանց—աշտարակ մզկթաց—։

Մնացին ի տակ հողոյն, զոր ինչ կարացին հանել՝ հանին, և զոր ոչ կարացին՝ եղև գերեզմանք նոցա տունք իւրեանց։ Եւ մեռեալքն յոլովք էին քան զկենդանիս։ Զի թէպէտ յամենայն տեղիս ոչ կարացի իմանալ զմեռեալսն, այլ ի հայրենի գիւղն իմ Քանաքեռ թուեցին զմեռեալսն ՍՄԻԲ. ոչ մնաց շուն, ոչ կատու և ոչ հաւ։ Եւ յամեաց շարժն մինչև ի հոկտեմբեր ամիսն։ Եւ յամենայն օր դողայր երկիրն, օր Գ, օր Դ, օր Ե, և ապա դադար շարժն. բայց վնասն յառաջի օրն եղև. որք մնացին կենդանի՝ կապերտավրանօք բնակէին յայգիս՝ և ի պարտէզս՝ և յանվայր տեղիս. և յառաջին օր շարժին եկին դեսպանք յԱրզրումայ՝ և տեսին զշարժն։ Իսկ խանն ի նոյն օր առաքեաց դեսպանս առ Շահն, և ծանոյց զաւերումն շարժին. և դեսպանացն Օսմանցւոց ոչ եթող գնալ՝ մինչ ի գալ պատգամաց Շահին։ Եւ յետ ԵԺան աւուր եկն փութադնացն, և հրաման շինելոյ բերդին և եկեղեցեացն. և մունետիկն գոչէր, թէ հրաման է Շահին, զի քրիստոնեայք շինեսցեն զեկեղեցիսըն՝ զոր քակեալ է. և յայսմ պատճառէ շինեցաւ ի բազում տեղիս եկեղեցիք թէ ի նորա ժամանակին և թէ՝ յետ նորա. և ապա արձակեաց զդեսպանսն։ Եւ ապա եկն մեծ իշխան Միրզայ-Իպրահիմն, զոր ասէին Հատրբէճան-Վազրի, նստաւ յԵրեւան. և կոչեաց զմերձակայ Ղանորայս, զՆախչուանայ, զԳաբաւայ, զԶակամայ, զԼօռոյ, և զՍուլթանսն, զՄակուայ, զԱկուռոյ, զՍուտարակայ (դուցէ զԱշտարակայ), զԴարայ։ Եւ եկին սոքա՝ և շինեցին զբերդն երեքորմեայ ամրագոյն քան զառաջինն։ Եւ զկամուրջն՝ որ ի ներքոյ բերդին էր ի վերայ Հուրաստան գետոյ՝ որ ասի Զանկի, զնա ևս շինեցին ամրագոյն. և զառուքն՝ որք խափանեալ էին, նորոգեցին, և բերին զջուրըն ի քաղաքն Երևան։ Եւ ապա հաստատեցաւ կարգն Երևանայ ամենայն պիտոյիւք մարմնաւորօք՝ որքան և իշխէր աս Երևանայ։

## ԳԼՈՒԽ ՃԲ.

### Գահն Եղիազար Կաթողիկոսին։

Յորժամ վախճանեցաւ մեծ Հայրապետն Յակոբ ի Կոստանդնուպօլիս, Մարտիրոս վարդապետն Կաֆայեցի՝ որ բարեկամ էր նմա, և էր Պատրիարգ յԵրուսաղէմ, սա գրեաց թուղթ մխիթարական ի սուրբ Էջմիածին, և ծանոյց նոցա՝ թէ մի՛ գուցէ թարց հարցանելոյ այսց կողմանց առնէք Կաթողիկոս։ Այլ գրովք ձերովք հարցէք սոցա, այսինքն՝ Եղիազարին, որ ինքնագլուխ եղեալ էր Կաթողիկոս, և կայր լռեալ, և նստեալ ի Բերիա՝ որ է Հալապ։ Եւ որ ժողովեցան ի սուրբ Էջմիածին ամենայն վանորէից Առաջնորդք, և Եպիսկոպոսք, և վարդապետք, և իշխանաշուք մարդիկք, և գրեցին առ նա. և ի մէջ թղթին գրեալ էին, թէ՝ սրբութիւն քո Հռոմկլայեցի գոլով՝ արժան ես ի շարս նախնեաց ունելոյ։ Եւ ընտրեցին զոմն վարդապետ՝ Պետրոս անուն՝ որ էր Եպիսկոպոս Գողթան գաւառին, այր ճարտար և բանիբուն, և առաքեցին առ նա։ Եւ գնաց Պետրոսն. առեալ ածէ զնա ի սուրբ Էջմիածին։ Ի թուին ՌՃԻԸ յօգոստոսի ԺԳ. ի փոխման .... Աստուածածնին նստաւ յԱթոռ Կաթողիկոսութեան ի սուրբ Էջմիածին։ Սա էր այր ճռոմաբան և ճարտար, բաղդաւոր և պրնդիրես, ատենախօս։ Սա յորժամ նստաւ Կաթողիկոս, եկին յամենայն կողմանց ի հնազանդութիւն նմա. եկն և Կաթողիկոսն Աղթամարայ, և էառ օրհնութիւն ի նմանէ՝ և գնաց։ Սա արար շինուածս ի սուրբ Հռիփսիմէն, տունս գեղեցկաշէն, հրուանդանս և հովանոցս. և հաստատեաց Միաբանս։ Նոյնպէս և ի սուրբ Մայրն Գայիանէ շրջապատեալ պարսպեաց. և յարևմտեան դրանն արտաքոյ կողմանէ շինեաց խորանս, և ի նոյն տեղին հիւսիսոյ կողմն շինեաց զգերեզմանն իւր, զտնտեսատունս և զխուցսն. և հաստատեաց և Միաբանս, զի ժամ

և պատարագ մատչի հանապազ: Այլ և կանգնեաց կճեայ Կաթուղիկէ ի վերայ Իջման տեղին. և հաստատեաց սեղան՝ առնել պատարագ. և յերկու կողմն եկեղեցւոյն բարձրացոյց յերկրէ, և արար ամպիոն, և կանգնեաց սեղան պատարագի: Դու շինեաց ումն ի մէջ եկեղեցւոյն ի հարաւոյ դրանէն մինչև ի դուռն հիւսիսոյ. զի անդ կացցեն յաղօթս, և մի՛ առաջի աւագ խորանին: Դու ի տանիս եկեղեցւոյն յերկիս տեղիս կանգնեաց Կաթուղիկէ: Այլ արար բարութիւնս. վասնզի պարտս գոյր Աթոռոյն, և գային պարտատուքն խնդրել զպարտս. և նա՛ ասէ, ես ոչ եկի պարտս տալ, այլ եկի շինուածս առնել. և թէ ստիպէք զիս վասն պարտուց, ես գնամ յանդ՝ ուստի եկի. զայս առնելով վերացոյց զամենայն պարտս Աթոռոյն: Դու եկաց նա այսպէս խրոխտ՝ ահարկու զամենայն աւուրս իւր. և մեռաւ ի թուին ՌՃԼԷ յօգոստոս ամսոյ ի ԺԴ, յորում աւուր եկն ի սուրբ Էջմիածին. կացեալ Կաթուղիկոս ամս Բ: Դու զկնի նորա եղև Կաթուղիկոս ձեռնասուն աշակերտ իւր Նահապետ Եդեսացին, որ այժմս է: Այս երկու Կաթուղիկոսաց ի ժամանակի շինեցաւ և նորոգեցաւ բազում վանորայս և եկեղեցիս: Որքա առնուին հրաման. յիշխանէն վասն շինութեան եկեղեցեաց: Բայց զկարգ և զկանոն առաջին Կաթուղիկոսացն քայքայեցաւ ի սուրբ Աթոռոյն և յամենայն վանորէից վասն թոյլ տալոյ նոցա. զի ամենայն Առաջնորդք ըստ կամաց իւրեանց առնէին. և Կաթուղիկոսացն ոչինչ լինէր փոյթ. զի ինքեանք զոր ինչ յիւրեանց աշխարհին վարեալ էին, զնոյն և աստ առնէին: Այլև զոր ինչ պակասութիւն տեսանէին աբեղայից և երիցանց, բերեալ գերծէին զգլուխսն և զմուրուսն. և բրածեծ առնէին մահու չափ: Դու այսպէս կային ի ժամանակս կենաց իւրեանց:

## ԳԼՈՒԽ ԾԳ.

### Վասն նշանաց երկնից։

Յառաջ քան զշարժն եղև նշան ինչ յերկինս. զի տեսին ի գիշերի միում յօդս՝ որպէս թէ նիզակաբունս կապուտս՝ և երկայն և լայն՝ ի հարաւոյ և ի հիւսիս, և երկոքին ծայրքն բարակ որպէս դեղարդի. և սակաւ սակաւ դարձոյց զտտունս իւր յարևելս և յարևմուտս. և այնպէս կացեալ յաւուրս Ի՝ և անյայտ եղև։ Յետ այսորիկ երևեցաւ աստղ մի ի Միջերկրեայս՝ սաստիկ մեծ քան զայլ աստեղս, դեղին գունով, ՝ունելով զհերըս երկայն և լայն՝ սպիտակ որպէս զձիւն, ձգեալ դէպ յարևմուտս. և փայլէր հերքն՝ որպէս թէ կայծս թափել յերկիր, և ահարկու տեսողացն. և կացեալ այնպէս ամիս մի, և լինէր երկօրեայ երևիւր մինչև ցառաւօտ, երբեմն ի մէջ գիշերի, և երբեմն յառաւօտին և երբէք ոչ շարժէր ի տեղւոջէն. և ապա եղև անյայտ։ Յետ այսորիկ երևեցաւ յարևելս աստղ մի կարմիր որպէս որդան, և ունէր երիս գէսս, մին սպիտակ, մին աստղագոյն և մին խարտեաշ՝ բոլորագունդ, ինքն բարձր, և գէսքն կախեալ դէպ ի երկիր, ինքն կայր անշարժ, գէսքն շարժէին երբեմն երբեմն. և կացեալ աւուրս վեց, և յետ վեց աւուրց գէսքն ցրուեցան, և ինքն երևիւր է բազում աւուրս. և կորեաւ անհետ։

## ԳԼՈՒԽ ԾԴ.

### Վասն միւս նշանին երկնից։

Մինչդեռ մանուկ էի ես ի հայրենի գիւղն իմ Քանաքեռ, և խօսէաք ընդ յարակից մանկունս. և ի կարգ զրուցաց ասացին մանկունքն, թէ օձն ապրի մինչ ի Ռ ամն, և է Ռ ամէն լինի

վիշապ, և հրեշտակք Աստուծոյ քարշեն զնա յերկինս, և թողուն ի վերայ մեծամեծ վիմաց՝ և սատակի։ Զայս առասպել մանկանց. սակայն ինձ հաւատարիմ գոլ թուի. զի ի ժամանակի ծերութեան իմոյ՝ մինչ էի ես ի սուրբ ուխտն Յոհաննավանք, յաւուր միում յերրորդ ժամուն ի պարզոյ՝ յարևմտեան կողմըն երկինքն վառեցաւ որպէս հուր, և կայծակունք իջանէին ի վայր, երբեմն ցոլոյր որպէս փայլակն, և երբեմն խաղաղանայր. և հրոյն կախեալ կայր ի վայր որպէս առասան մինչ ի երկիր. և ի ծայր պարանին կապեալ կայր որպէս վիշապ՝ կապուտ որպէս ամպ, գլուխն և մէջն և տուտն որպէս ճշմարիտ վիշապ, և տուտն շարժէր այսր և անդր, գլուխն և մէջն գալար առնոյր. և առ սակաւ սակաւ բարձրանայր յերկրէ, և եհաս մինչև ի հուրբն. և մնաց անդէն փոքր մի. և ապա պատառեցաւ հուրն դարձեալ. և վիշապաձևն սևացեալ որպէս ածուխ՝ անկաւ յերկիր յանկարծակի. բայց ոչ իմացաք՝ թէ ո՞ւր անկաւ. սակայն այսքան բազումք տեսին որպէս և գրեցաք։

## ԳԼՈՒԽ ՃԺԵ.

### Պաշարումն Օսմանցւոց ընդ Կռանդայ։

Ի թուին ՌՃԼԸ զօրաժողով արար թագաւորն Օսմանցւոց Սուլթան Մահմատ զամենայն հնազանդեալս իւր, և գնաց ի վերայ ամուր քաղաքին Կռանգաց Փէշայ. և էր քաղաքս այս ընդ իշխանութեամբն կայսերն, զոր ինքեանք Նփրաթօլ ասեն. և էր յոյժ անառիկ. քանզի Գ կողմն ձոր էր, և բակ պարսպեալ՝ բարձր և լայն. և ի մէջ երկուց որմոցն՝ պողոտայ, և Դ դրունք կախեալ յերկու ծայրսն պողոտային. Բ դուռն ի վերայ բուն քաղաքին ներսին որմոյն, Բ դուռն արտաքին որմոյն. այս չորեքին դրունք հանդէպ միմեանց, ոչ ի վերայ երկրի հաստատեալ, այլ կախեալ ի՝ վերուստ ի վայր, մեքենայիւք քարշէին և

իջուցանէին ի վայր։ Եւ մին կողմն քաղաքին դաշտ էր և դիւր, որում դրունքն էին. յայսմ կողմանէ պատերազմէին տաճիկքն սաստիկ և յոյժ. նոյնպէս և Ֆռանգքն պատերազմէին։ Եւ յորժամ խստացաւ պատերազմն, պատրեցին զնոսա Ֆռանգքն. քանզի ի ժամուն պատերազմին խաչն հանդ՛ ըձ վառ . . .[50]) ունէին, և բարձրացուցանէին զխաչվառն մինչ յաղթութիւնն ինքեանց է. իսկ յորժամ յաղթու թիւնն թշնամեացն լինի, խոնարհեցուցանէին զխաչվառն։ Եւ յայսմ պատերազմիս պատրեցին զնոսա։ Քանզի զներսին դուռն պնդեցին, և զԲ դուռն պողոտային քարշեցին ի վեր. նոյնպէս և արտաքին դուռն ևս քարշեցին ի վեր՝ և թողին ի բաց։ Եւ ապա խոնարհեցուցին զխաչվառն։ Եւ Ագարացիքն տեսին և հաւատացին ճշմարիտ գոլ, և հնչեցին զփողսն պատերազմին. և աղաղակէին ուրբէ ղըլայէ, որ է՝ առաք զբերդն. և այսպէս մտին ի մէջ երկու պարսպացն, և լցաւ պողոտայն ծագէ ի ծագ։ Եւ ապա իջուցին Լատինք զերկուսին դրունս պողոտայինս, և մնացին ի ներս աւելի քան զկէսն Իսմայելացւոց։ Եւ քրիստոնեայքն բարձրացուցին զխաչվառն, հնչեցին զփողսն, և ասէին, վիվօ՜ վիվօ՜. որ է՝ ուրախ լերուք, ուրախ լերուք։ Եւ իբրև տեսին Օսմանցիքըն զխաչն բարձրացուցեալ, սկսան փախչել. և Ֆռանգքն ծրպտեցան զկնի նոցա, հալածելով և կոտորելով իսպառ փախուցին մինչ ի քաղաքն իւրեանց Պուտան. և որք մնացին ի պողոտայն՝ գերի արարին։ Եւ ԺԸ փաշայ ամենայն զօրօք իւրեանց գնացեալ խառնեցան առ զօրսն Ֆռանգաց, և եղեն քրիստոնեայ. և առ սակաւ սակաւ տարան և զնոսա . .[51]) իւրեանց առ ինքեանս։ Առին Ֆռանգքն զՊուտան քաղաք, և հարկատու արարին զտաճիկսն։ Նոյնպէս առին զԲէլղրաթ, և ամս Գ. կացին անդէն. և յետ երից ամացն կոտորեցին զամենայն

(50) Աստ եղծեալ են ի բնագրին տառք ինչ.

(51) Աստ և՛ս մնան բառք ինչ անվերծանելիք.

քաղաքն, և թողին դատարկ, և գնացին ի տեղիս իւրեանց։ Զայս պատմեաց ուղտապան ոմն տաճիկ Նէջդկացի, որ փախեալ էր ի պատերազմէն։ Եւ ահա է պատերազմ, և զկատարածն Աստուած գիտէ։

## ԳԼՈՒԽ ԾԶ.

### Պատուհաս Զմիւռնոյ։

Մինչ էաք մեք ի Զմիւռին քաղաք ի թուին ՌՃԼ ի մայիս ամսոյ Ե, ի յԵրորդ ժամու աւուրն եկն յարևելից կողմանէ մարախ՝ սաստիկ յոյժ և որպէս անձրև կարկտախառն, ըստ աւերյն Սողոմոնի, առանց թագաւորի է մարախ. և իբրև ի միջօրէ հրաման առնեն. և այնքան եկն՝ որ ստուեր արար երկրի, և զճառագայթս արեգական արգելեաց. և տիւն եղև գիշեր։ Եւ անկաւ ահ ի վերայ ամենայն ումեք, և ամենայն արուեստաւորք խափանեցան, և աղխեցին զդրունս խանութից և տանց. և թռչունքն որք կային ի քաղաքին՝ նոքա ոչ կարացին շարժել ի տեղւոջէ իւրեանց, և լռեցին ի խօսից։ Եւ ի Ե ժամէ աւուրըն մինչև ցԲ ժամն եկն, և գնացեալ թափեցան ի ծովն. և ալիք ծովուն ձգեցին արտաքս, և նեխեցաւ գէշն. և ի գարշհոտոյն տագնապէին քաղաքն. վասնորոյ փորեցին զաւազն՝ և լցին ի փոսն, և ծածկէին աւազով. և արգելաւ հոտն։ Եւ յետ աւուրց դարձեալ եկն մարախն, բայց ոչ որպէս զառաջինն, այլ սակաւ, և կէս ժամու չափ։ Յետ երից ամաց եղև սով սաստիկ երկրին Լիկիացւոց, մանաւանդ ի Զմիւռին քաղաք։ Քանզի Փռանգքն կալան զճանապարհս ծովուցն, և ոչ գնաց ցորեան ի Կոստանդնուպօլիս, և եղև սղութիւն. և ծանուցին թագաւորին՝ թէ ցամաք ճանապարհաւ երթայ ցորեան ի Զմիւռին։ Եւ ապա արար հրաման և պնդապատուէր, թէ այլ ուրեք մի երթիցէ ցորեան, բայց միայն ի Ստամպօլ։ Վասնորոյ անկաւ

տօթն ի Զմիւռնին, և սաստկացաւ առաւել յոյժ. և կերին ամենայն անասունք կենդանի. և ի պակասել կենդանեացն, ժողովէին զթրիքս ձիոց՝ և աղային, և առնէին հաց։ Այլև ոսկր ժողովէին, և մանրէին կացնաւ՝ և աղային, և առնէին հաց. և մինչ ջերմ էր՝ ի կեր գայր. և երբ հնանայր՝ ոչ գայր ի կեր. մանրէին՝ և ապա ուտէին։ Այլև զփտեալ ծառս և զտերև ծառոց չորացուցանէին, և փշրէին և ուտէին. և ոչ օգնէր նոցա զայն, այլ առաւել վնասէր զկերողսն. բազում քրիստոնեայք զուստերս և զդստերս իւրեանց սակաւ գնոյ վաճառէին տաճկաց առ ի կեցուցանել զինքեանս. և բազումք զմանկունս իւրեանց տարեալ արկանէին առ դրունս տաճկաց՝ և փախչէին. և տաճիկքն առեալ զնոսա տանէին առ ինքեանս՝ և առնէին զնոսա տաճիկ։ Բարձաւ սէր և գութ բարեկամաց, ողորմութիւնք և տուրքևառք և խնամք վերացան. բարեկամք և սիրելիք օտարացան ի միմեանց։ Նաև այսպէս տառապէին ամենեքեան. և եկաց սովն տարի մի։ Նաև յետ երկուց ամաց ել և աստուածասաստ բարկութիւն ի վերայ Զմիւռնոյ. զի հայեցաւ Աստուած բարկութեամբ յարարածս իւր, և եղև շարժ սաստիկ և ահագին. և փլան ամենայն գեղեցիկ շինուածք, եկեղեցիք և պանդոկք, մզկիթք և մինարայք անկան. և ծովն եռայր՝ որպէս կաթսայ, և բազում նաւք հարան ընդ միմեանս՝ և խորտակեցան. և որք կային անդ՝ ջրասուզ եղեն։ Նաև բազումք ճմացին ի ներքոյ հողոյն՝ և ոչ կարացին հանել. և տունք նոցա գերեզմանք ինքեանց եղեն ըստ մարգարէին։ Նաև ի նոյն աւուր եղև կրկին բարկութիւն Աստուծոյ ի վերայ նոցա. վասնզի անկաւ հուր՝ և այրեաց զմնացեալն՝ զոր ի շարժէն եղեն կրկին պատժեալ. որ եղև կատարեալ առ նոսա ասացեալն՝ թէ ճմացեալն ի կարկտէն՝ կերիցէ մարախ. զայնոսիկ ի վերայ Զմիւռնոյ եկն. զի նախ եկն մարախն, և ապա սովն, զկնի շարժն, և ապա հուրն։ Բայց քակեալն ի շարժէն զեկեղեցիսն՝ գեղեցկայարմար շինեցին վերստին։ Քանզի վաճառականքն յարևելից

Ծանուցին Թագաւորին Օսմանցւոց. և նոքա եղեն պատճառ ոչ միայն Հայոց, այլև Յունաց և Փռանգաց և ամենայն քրիստոնէից՝ որք կային ի Զմիւռին։

## ԳԼՈՒԽ ԾԵ.

### Անդգամութիւն Հրէից։

Ի քաղաքն Թեսաղոնիկէ, որ այժմ ասի Սելանիկ, Հրեայք բազում են բնակեալ անդ։ Ասեն, թէ աստ պահեն կուսան աղջկունս վասն գալստեան Մեսիային իւրեանց։ Եւ են փարթամք և հարուստք, ընչաւէտք և մեծատունք. որ և հպարտացան՝ և եղեն չքաւորք. խորհեցան խորհուրդ նանիր ինքեանց։ Քանզի ժողովեցան նոքա ի վայր միում. կոչեցին և զգլխաւորս հաւատոյն իւրեանց՝ որ ասի խախամ, որ է հայրապետ. և ասեն, ա՛ծ ի վերայ մեր Թագաւոր՝ որում և հաւանիմք դու։ Եւ նա ընտրեաց զոմն Սողոն անուն, այր իմաստուն, և ճարտար, և գիտուն օրինաց իւրեանց։ Այլև գեղեցիկ տեսլեամբ, և երկայն հասակաւ։ Եւ օծին զնա՝ և անուանեցին Մաշիախ Սողոն, որ է Սողոմոն Թագաւոր. և զգեցուցին նմա պատմուճան սպիտակ և ազնիւ. և եդին ի գլուխ նորա Թագ երեքձղեայ՝ կարմիր և կանանչ. և բազմեցուցին զնա ի վերայ բարձր գահի, և եդին ի ձեռն նորա գաւազան ոսկեզօծ. և պատեցին զմիջով նորա Թուրս ոսկեպատենս, և ինքեանք անկեալ երկիրպագանէին։ Եւ կարգեցին ԲԺ. ան դատաւորս ընդ ԲԺ. ան ցեղիցն. ընտրեցին և բիւրապետս, Ռ. արապետս, Ճ' ապետս, Ծ. ապետս, զզօրագլուխս և զզօրս բազումս։ Եւ գրեցին յամենայն երկիր՝ ուր և գոն Հրեայք, զպատճէն զայս։ Լուարուք ամենայն ազգ Հրէից, որք էք օրինօքն Մովսիսի. զի ահա շնորհօքն Աստուծոյ՝ մեք Թագաւորեցաք աստէն, և կամիմք զազգն տանկաց և զքրիստոնեայսն հարկատու առնել՝ ի Հայոց Ժ. ոսկի, և ի Յունաց

Ր. և դուք պատրաստ եղերո՛ւք յաւագ տօնին տաճկաց՝ որ ա-
սեն Պաառամ-գոռնէ, նոքա ամենեքեան փութան ի գիշերա-
պաշտօնն իւրեանց ի մզկիթն, և դուք վառեալք զինուք անկե-
րո՛ւք ի վերայ նոցա՝ և կոտորեցէ՛ք զնոսա, զմանկտիս և զկա-
նայս նոցա ծառայեցուցէ՛ք։ Իբրև զայս ամենայն առնիցէք, և
ապա լինիմք մի անձն և մի խորհուրդ. գայլք և գառինք ի միա-
սին ճարակեսցեն։ Յայնժամ գայ Մեսիայն՝ և բնակի առ մեզ։
Նաքեցին զԹուղթս յամենայն տեղիս ձեռամբ սուրհանդա-
կաց, մինչև ի Նապահան ևս գրեցին։ Իսկ ապա բաժանեաց զա-
մենայն քաղաքս Օսմանցւոց ի վերայ իշխանաց իւրոց. և ինքն
էառ զԽիւզանդիա տեղի արքունի ինքեան։ Իսկ ետ զՊրուսա՝
որ է Նուրսա, Աղսէ անուն ումեմն, և զԱնդրիանուպօլիս՝ որ է
Ենտրանա, ումեմն իշխանի. աստանօր եղև յայտնի չարութիւն
նոցա։ Զի Աղսէն այն՝ որ ետուն նմա զՊրուսա, ասէ, ես ծնըն-
դեամբ և սնընդեամբ Անդրիանացի եմ, տո՛ւր ինձ զհայրենի քա-
ղաքն իմ։ Ասէ Թագաւորն, զայն՝ որ ետու քեզ, դու նմա իշ-
խեա՛, և ոչ ունիս դու իշխանութիւն ի վերայ այլում քաղաքի։
Ասէ Աղսէ, ես զհայրենիսն իմ ոչ տամ այլում. ի վերայ այսմ
բանի եղև աղմուկ և կագ։ Իսկ հրամայեաց Թագաւորն արկա-
նել յերկիր զԱղսէն, և բրածեծ առնել։ Ընկեան հարին զնա,
մինչև եղև կիսամահ, և քարշեցին արտաքս։ Իսկ էր ուրբաթ
գիշերի, և ամենայն տաճիկքն գնային աղօթել ի մզկիթն։ Իսկ
Ջհուտն Աղսէ գնաց սակաւ առ սակաւ մինչև յաւագ մզկիթն,
ուր և փաշայն գայր աղօթել, և անկաւ առ դրան մաչիթին։ Իսկ
ի լուսանալն եկին մոլլայքն, և տեսին զՋհուտն, և ասեն, ել
և գնա՛ աստի, զի ահա գայ փաշայն։ Ասէ Հրեայն, ունիմ ինչ
ասել փաշային, զի օգուտ մեծ լիցի ազգի ձերում։ Իսկ Թոյլ
ետուն մինչև աղօթել փաշային. և ապա տարին զՋհուտն առ
փաշայն. և գնացեալ համբուրեաց զոտս փաշային, և նստաւ
առ նմա, և պատմեաց զամենայն մի ըստ միոջէ՝ աւելորդօք։
Իսկ լուեալ փաշայն՝ սոսկացաւ անձն նորա. և ասէ, որքա՜ն ժա

մանակ է՝ որ արարեալ են խորհուրդդ այդ։ Դ. հուտն ասէ, Բժ. ան մարդ միշտ յամենայն երեկոյեան գան մինչև ի միւս երեկոյն ուտեն և ըմպեն, և առնեն խորհուրդ. նոքա գնան՝ և այլք գան, նոյնպէս առնեն։ Բայց յերեկոյս բազումք գան վասն վաղուեան՝ որ շաբաթ է, և ոչ ելանեն արտաքս. զոր ինչ չար խօսին՝ վաղիւն խօսին։ Եւ ապա կոչեաց փաշայն բազումս ի մեծամեծացն՝ և ասէ, եղբարք պատրաստ, զի ի լուսանալ առաւօտուն գնալ (գնացեալ) ընդ Հրէիս ըմբռնել (ըմբռնեսցուք) զԱստուածորդին։ Եւ ի լուսանալն՝ առաջի իւրեանց արկին զԴ. հուտն՝ և գնացին՝ ուր էին ժողովեալ նոքա ընդ թագաւորին իւրեանց։ Եւ մտին ի տունն, և տեսին՝ զի բազմեալ էր թագաւորն ի բարձր գահի։ Ասէ գլխաւորն տաճկաց, Գ.ը- Հոտոփ՝ շոող ծնփան, փողոյ սանի խոփէնք. որ է այս, էջ այտի, զի խնդրէ զքեզ փաշայն։ Նա՝ որ թագաւորել կամէր, և զտաճիկսն կոտորել, ահա այժմ դողայր և վրվթայր, և բեկբեկ ձայնիւ աղաչէր, և կամէր մերկանալ ի հանդերձէն։ Եւ ոչ թողին, այլ կապեցին զամենեցունց զձեռս յետս, և առեալ տարին առ փաշայն։ Եհարց փաշայն զամենայն, և ստուգիւ տեղեկացաւ։ Եւ ապա հրամայեաց կոտորել զնոսա. և Խախամի զգլուխն և զքիթն, զշրթունսն, զականջսն, զմատունս ձեռացն և ոտիցն, զերկուրիսն զամենայն հրամայեաց հատանել։ Եւ ասաց մունետկաց, զի կոչեսցեն բարձր ձայնիւ, թէ ամենայն ոք՝ որ լսէ զձայնս մեր, թէ քրիստոնեայք և թէ տաճիկք, անկերուք ի վերայ ազգին Հրէից, զմեծամեծսն կոտորեցէք, զմանկունսն գերեցուցէք, զկանայս նոցա խայտառակեցէք պղծելով, և զինչս նոցա աւար առէք, յափշտակեցէք և մի խնայէք. և ո՛վ ոք յափշտակեսցէ ի նոցանէ ինչս՝ ինքեան լիցի, բայց զսպանումն նոցա մի խնայեսցէ։ Զայս լուարուք ամենքին զհրամանս մեծ փաշային։ Եւ զի շաբաթ էր օրն, և Հրէայքն ամենքեանքն ի տան էին, և ո՛վ ոք լուաւ զձայն մունետկին, արար՝ որպէս լուաւ. և կոտորեցին յաւուր յայնմիկ Գ. մասն Հրէից, և մինչ ի Գ. օրն

սպառեցին զամենայն։ Բազումք ի նոցանէ տաճկացան, և բա-
զումք խառնեցան ընդ քրիստոնեայսն. շատք եկին ի քաղաքէն
և փախեան. և այլք զինչս իւրեանց տային քրիստոնէից, և
թաքչէին ի տան նոցա։ Եւ այսպէս եղեն նոքա սպառեալք ո-
ղորմելի մահուամբ. և յընչից նոցա բազումք փարթամացան՝ և
եղեն հարուստք։ Եւ զկուսանս՝ որ պահէին վասն Մեսիային,
հանեալ տարին առ փաշայն, որ էին ԲԺ ան, հրապարակաւ ա-
պականեցին։ Եւ փաշայն էառ իւր բաժին զտուն թագաւորին
նոցա, և անթիւ և անհամար գանձս ոսկւոյ և արծաթոյ. և
ապա գրեաց գիր զպատճէն, և առաքեաց. առ Խոնթկարն։
Մամնոքոյ և Խոնթկարն գրեաց ամենայն հնազանդելոց իւրոց,
զի ուր իցեն Հրեայք ի ներքոյ տէրութեան իւրոյ, զի բազում
հարկս դիցեն ի վերայ նոցա, զի չքաւորեսցին՝ և մի՛ լիցի նոցա
լրբութիւն։ Եւ այսպէս տառապեցուցին զՀրէայս բազում և
ազգի ազգի հարկապահանջութեամբ։ Թէպէտ և մեք զայս լը-
ւեալ էաք յայլմէ, բայց ո՛չ ուղիղ։ Եւ գնացի ես ի Զմիւռնոյ
ի Կոստանդնուպօլիս նաւով. զայս պատմեաց Հռոմ սարկա-
ւագ մի Յենի անուն, որ է Յօհան. որ և ինքն էր ի Սալենիկոյ
քաղաքէն։

## ԳԼՈՒԽ ԾԲ.

### Սղանումն փանումքէր Ռուգէն։

Այրս այս Աւագ էր յԱյրարատայ ի գաւառէն Կոտայից ի
գեղջէն Եղվարդայ յստորոտին Արայոյ։ Եւ էր տանուտէր նոյն
գեղջին՝ այր ճարտար, և ատենախօս, և պնդերես, և առաջի
մեծամեծաց յարգոյ և պնդասիրտ։ Եւ գեղականքն առանց
հրամանաց նորա ոչ առնէին ինչ։ Եւ զի ջուր գեղջն սակաւ
էր, և ոչ էր բաւական յարբուցումն անդաստանաց նոցա, վա-
սնորոյ գնացեալ ի կողմն հիւսիսոյ ի մէջ ձորոյ գտին ջուր ցբր-

ուեալ. և նոքա բազում չարչարանօք և յոլով ծախիւք հանին առու, և անդաստանօք Ղարպյօրան գեղջն՝ որ է Սեաւ-աւեր, բերեալ խառնեցին ընդ ջուրն իւրեանց: Եւ էր տէր Ղարպյօրան գեղջն տաճիկ մի՝ ազգաւ Ղաճար, լիրբ և անզգամ, հայհոյիչ և պղծաբերան, յանդուգն և անհնազանդ, չարագործ և շնացող, ինքնահաւան և գոռոզ, ամենեւին կամարար՝ և ծառայ՝ և հաճոյական սիրելի սատանայի: Սա իբրև ետես՝ թէ խառնեցաւ ջուրն ընդ բուն ջրոյն Եղավարդայ, լցաւ սատանայի չար նախանձուն, բորբոքեցաւ անիրաւութեամբ, և առաքեաց զոմանս ի գեղականացն. որք գնացեալ քակեցին զառուն, և իջուցին զջուրն ի գիւղն իւրեանց Սեաւ-աւեր. և պիղծն այն տէր գեղջին Ճապուշ-Ղասիմ՝ շինեաց պարտէզս, և արար բուրաստան: Ցանեաց առաւել, և արբուցանէր այնմ ջրով. և ոչ թողոյր գնալ յԵղավարդ ջուրն զայն: Եւ աղաչէին նմա Եղավարդեցիք, և նա ոչ լսէր, այլ ծեծէր, հայհոյէր՝ և անարգանօք արձակէր զնոսա: Վասնորոյ կարեվէր խոցեցան Եղավարդեցիք. և գնացեալ գրեցին թուղթ գանգատանաց, և առաքեցին առ իշխանն, և ասացին, թէ Ղարպյօրանն գեղոյն՝ Եղավարդայ միոյ տան չափ ոչ տան հարկ. այլ Ճապուշ-Ղասիմն իւրով անզգամութեամբն կամի քակել զայնպիսի պատուական գեղ, որ քան զամենայն երկիրս Երեւանայ լաւ է արդեամբ: Վասնորոյ գրեաց թուղթ խանն առ պիղծն այն՝ և ասէ, չունիս դու իշխանութիւն առ ջուրդ այդ. թող տո՛ւր դմա գնալ յԵղավարդ ի տեղի իւր: Իսկ նոցա առեալ զթուղթ տարեալ ցուցին այնմ շան: Իբրև ընթերցաւ, պատառեաց և ետ ի նոսա, և ասէ, տարեալ դի՛ք ի յամօթոյս կանանց ձերոց. և յարուցեալ եհար զնոսա փայտիւ, և հայհոյեաց և զբերան խանին. և զանիւ հալածեաց զնոսա: Եւ նոքա գնացեալ գրեցին միւս եւս արզայ, և զպատառեալ թուղթն եդին ընդ նմա, և ետուն ցխանն: Եւ իբրև լուաւ զպատառումն թղթոյն՝ և զարհամարհանս իւր, բարկացաւ սրտմտութեամբ յոյժ. և հրաման

ետ նոցա՝ և ասէ, գնացէ՛ք և կալեալ զշունն այն՝ և չարաչար սպանէ՛ք, և կոտորեցէ՛ք զնոսա՝ որք համախոհ են նմա՝ թէ տաճիկ՝ և թէ՛ քրիստոնեայ, և զգիւղն քակեցէ՛ք, և զանդաստանս նոցա գրաւեցէ՛ք, և հարկ նոցա զուգ տո՛ւք։ Զայս հրամանն սաստկութեամբ ետ. գրեաց և թուղթ՝ և ետ նոցա, և բերանով ևս պատուիրեաց։ Իսկ նոցա առեալ զպատուէրս զայս, և գնացեալ ետուն գիր միմեանց, և թէ ոք ո՛չ երթիցէ ի կատարել զպատուէր խանին, Ժ. ամէն ի վեր տացէ տուգանս խանին։ Նաև ապա գրոհ տուեալ ժողովեցան ի մի. և ոմն երիտասարդ զգեցուցին ի հանդերձից իւրեանց, և եդին ի գլուխ նորա աւել, և նստեցուցին ի վերայ իշոյ, և անուանեցին զնա՝ Աւելագլուխ իշով թագաւոր. և ելին ամբոխիւ ամենեքեան զուռնայով և դաշուլով ծափօք և պարուք, խաղալով և խնդալով ամենայն արուք մինչև կանայք ևս երգելով։ Նաև յորժամ մերձ եղեն Գարայօրան գեղջին, տանուտէր Սուագն խրատ ետ նոցա՝ և ասէ, մի՛ զուցէ արիւն հեղուք՝ և լինիք պարտապան արեան. այլ հարեալ ծեծանօք՝ կիսամահ արարէ՛ք և թողէ՛ք, այն բաւական է նոցա մահ։ Իսկ Գարայօրանցիք տեսին զբազմութիւն ամբոխին, և գիտացին՝ զի վասն չար առնելոյ գան նոքա։ Իսկ անիծեալն Հապուշ-ղասիմ նստեալ էր աթոռով, և հրաման տայր արբուցանողաց պարտիզին։ Նաև ծանուցին նմա, թէ ահա ամբոխ գայ ի վերայ քո. և նա ոչինչ արար փոյթ. այլ ասէր, գիտեմ՝ զի աղաչել գան առ իս, և ես դարձուցանեմ զնոսա արհամարհանօք և անարգանօք։ Նաև ահա եկեալ հասին ամբոխն, և հրամայեաց աւելագլուխն, հարէ՛ք՝ ասէ, և սպանէ՛ք զշունդ զայդ։ Յայնժամ կալեալ զնա՝ արկեալ յերկիր առաթուր, և հարկանէին անողորմ աքացի և բռնցի, փայտիւ և քարիւ, և եդին տոռ յոտսն՝ և քարշէին։ Իսկ անիծեալն այն գիտաց՝ որ մահու հարկանէին, անճարացեալ՝ և ոչ եգիտ հնար ինչ զերծանելոյ, անկաւ առ ոտս Սուագին, և եմուտ ի մէջ Բուց ծնկացն, և կալեալ զերկորիսն ծծէր՝ և ասէր, շուն քո եմ, զաղբդ քո

լսկեցից, մի՛ թողուր սպանանել զիս, և ես եղէց քեզ շուն։ Եւ ապա գթացեալ առ նա Ռուազն՝ անկաւ ի վերայ նորա, և ասէ, զիս սպանէք փոխանակ դորա, և թող տուք դմա։ Եւ ապա դադարեցին ի հարկանելոյ։ Իսկ կանայքն անիծելոյն յորժամ լուան զբօթն զայն, ելին ի վրանացն արտաքս՝ ճչալով, ճղճղալով և ճվալով. ոհ՜ ասէր, զզաւակ իմ վիժեցի. ոհ՜ ասէր, զորդին իմ սպանին. ոհ՜ աղաղակէր, ահա կալեալ պղծեցին զիս։ Սակայն ոչինչ օգտեցան յայսցանէ. այլ աւելադրութըն բարակ ողորմ փոքր փոքր հարկանէր զնոսա՝ և ասէր, ելեալ կորէք աստի։ Իսկ նոքա բերեալ զուղտսն, և նստան ի վերայ նոցա՝ և փախեան։ Իսկ պիղծն այն ոչ կարաց գնալ վասն՛ի բազում հարուածոցն. յետ երից աւուրց ապա ողջացաւ, և ելեալ կորեաւ. և երէց գեղջն՝ Յօհան անունն՝ փախեալ անկաւ ի ձոր անդր, և եմուտ յորջ մի աղուէսու՝ և զերծաւ։ Իսկ ի գեղականացն՝ որք կամակից էին նմա, կալեալ բազում հարին և վիրաւորեցին, և քակեցին զտունս նոցա, և տիրեցին գեղջն։ Իսկ անիծեալն Չապուշ-Ղասիմ շրջէր ի ծածուկ. և եկաց մինչև ցաշունն. և միաբանեցոյց ընդ ինքեան Գ. տաճիկ և սուտ քրիստոնեայ մի, և գիշերի գնացին յԵղավարդ. և տաճիկքն մտին յեզր գեղջին, և զսուտ քրիստոնեայն առաքեցին առ Ռուազն, և ասեն, այս ինչ բարեկամ տաճիկ եկեալ կայ արտաքոյ գեղջին, և շտապով երթայ ի Նիգ գաւառ հրամանաւ խանին. վասն որոյ խնդրէ զքեզ և զորդի քո Սարուբէկ, զի ունի ինչ ասել քեզ։ Իսկ Ռուազն ի տան միում կայր ընդ Բուց հարկահան տաճկաց, և որդին ի սպասու կայր նոցա։ Եւ գնացեալ սուտ քրիստոնեայն՝ ասաց նմա զոր ուսեալն էր։ Իբրև լուաւ Ռուազն զանուն բարեկամին, վաղվաղակի յարեաւ, առեալ և զորդին գնաց ընդ Չային։ Իբրև տեսին զնա՝ կալան. և ի ձայն բարձր գոչէր պիղծն՝ և ասէր, որ ես եմ Չապուշ-Ղասիմն, որ Ռուազ զիս ոչ էսպան, ես զնա սպանանեմ. և որդին զերծեալ մինչև ազդ արար գեղջին, և նոքա սպանին զնա՝

և կորեան: Իսկ թարձեալ զնա տարան ի գիւղն. և ի վաղիւն ծանուցին խանին. և հրամայեաց խանն գտանել զնա. և ոչ գտին. քանզի գնաց նա յԱրտաւիլ. և առեալ անտի գիր զղջման, և եկեալ յԵրևան շրջէր ի ծածուկ. և ի նոյն ձմեռն սաստկեցաւ և տարեալ զօռեցին. և ի նոյն գիշեր Գ. տաճիկ հանին ի զօռէն, և պատառեալ զպատանն՝ պատեցին ի պարանոցըն. և սրեալ երկայն փայտ հաստ՝ եդին ի նստոյ տեղն, և ցըրցեալ ի վերայ զօռին, հատին և զերանն, և եդին ռեխն, և փախեան: Իսկ վաղիւն տեսեալ զայն՝ ծանուցին խանին: Ասէ խանն, շունն այն մինչ կենդանի էր, ռեխն պահէր զանտէրն իւր. և յորժամ սատակեցաւ, երևի ի մէջ ռխին: Իսկ ո՛չ ետ թաղել զնա. թողին այնպէս. շունք և ագռաւք լափեցին: Իսկ Աւագն նահատակեալ վասն ժողովրդեանն, և պսակեցաւ ի Քրիստոսէ:

## ԳԼՈՒԽ ՆԹ.

### Նահատակութիւն Բաղդասար պատանւոյն:

Պատանիս այս Բաղդասար էր յԵւդոկիա քաղաքէ՝ որ այժմ ասի Թոխաթ: Ազգաւ Հայ. և էր քրիստոնեայ ծնողաց զաւակ: Գոյր սոցա դրացի մի տաճիկ, արուեստիւ կօշկակար. և ետուն զԲաղդասարն նմա աշակերտ: Իսկ առեալ տաճիկն զԲաղդասարն՝ և գնաց ի Զմիւռին. և անդ վաստակէին զարուեստն իւրեանց: Իսկ յաւուր միում ելեալ ուսթայն գնաց ի գործ ինչ, և յամեցաւ: Իսկ եկին հարկահանքն՝ որք յօտարաց առնուն, և ասի սա խարաճ[52]), և ասեն ցԲաղդասար, տո՛ւր զխարաճն: Ասէ Բաղդասարն, թոյլ տո՛ւք՝ զի գայցէ ուսուցիչն իմ, և տացէ զոր ինչ խնդրէք: Իսկ նոքա ոչ ներեցին. այլ առեալ

(52) Տուրք, հարկ արքունի. մարդահարկ:

տարին առ Հարկապետն։ Եւ ասէ Հարկապետն, ընդէ՞ր ոչ տաս զխարաճն քո։ Ասէ երանելի պատանին, ասացի, ներեցէ՛ք մինչև գայցէ ուստայն իմ, և նա տացէ։ Ասէ Հարկապետն, ե՛կ աճկացի՛ր, և մեք թողումք զխարաճն քո. այլև յաւելումք տալ քեզ դրամս բազումս։ Ասէ Բաղդասարն, վասն Ա մարջւի զՀաւատն իմ ո՛չ թողում։ Եւ ապա անօրէնքն կալեալ անմեղ մանուկն, արկեալ յերկիր, բռնութեամբ թլփատեցին. և ետուն ի շալակ համալի, և տարեալ արկին ի խանութն իւրեանց։ Եւ եկեալ ուսթայն՝ ետես զաշակերտն իւր այնպէս վիրաւորեալ. բարկութեամբ ելեալ գնաց առ խարաճչին(53). կագէր և հայհոյէր զնոսա՝ ասելով, մի՞թէ անօրէնութեամբ ուրացուցանելն օրէնք ինչ են։ Եւ հրամայեաց հարկապետն՝ հանել զնա արտաքս։ Եւ գնացեալ ի խանութն իւր, և ամենայն օր տեսանէր, զե լայր մանուկն, և կայր տրտմութեամբ։ Ապա ասէ վարպետն աշակերտն իւր, որդեա՛կ իմ Բաղդասար, ահա յայտնի եղև և վասն քո. վասնորոյ ոչ կարես կալ աստէն քրիստոնէութեամբ. արի՛ և գնա՛ առ ծնօղսն քո, և անդ որպէս կամիս՝ այնպէս կա՛ց։ Եւ ետ նմա դրամս, և յանձնեաց զնա կարաւանապետին։ Եւ եկեալ առ ծնօղսն, և պատմեաց լալով։ Եւ ծընօղքն ասացին, որդեա՛կ, ահա ամենեքեան իմացան զքէն, և դու ո՛չ կարես ծածկաբար պաշտել զՀաւատս քո, եթէ գնա՛ դու յաշխարհն Հայոց ի սուրբ Էջմիածին և յամենայն վանորայքն, և անդ համարձակ պահեա՛ զՀաւատս. մի՛ գուցէ աստ կալեալ զքեզ, վշտացուցանեն զքեզ։ Իսկ երանելի մանուկն Բաղդասար՝ որպէս երկիր. բարի ընկալաւ զսերմն ուրախութեան, և ետ զպտուղն հազարաւոր. և առեալ զօրհնութիւնս ծնօղացն՝ և թօշակ ինչ վասն պիտոյից ճանապարհին՝ և ուղղեաց դէմս իւր գնալ յԱյրարատ։ Եւ ելեալ լալով և խնդութեամբ գնաց և եհաս ի սուրբ Էջմիածին. և յամենայն վանո-

---

(53) Հարկահան։

բայս շրջագայեալ որպէս Սահան Գողթնային, և ապա գը-տեալ վարդապետ մի Զաքարիա անուն, աշակերտեցաւ նմա, և ուսաւ Սաղմոսն և ի բերան ունէր։ Նա եղև ի մեռանել վար-դապետին, և գնացեալ նորա յԵրևան քաղաք, և յարեցաւ առ ոմն քրիստոնեայ համարուեստ իւր, և կայր անդէն միամտու-թեամբ։ Իսկ չարն սատանայ յարոյց ոմն տաճիկ ի վերայ նորա. և եկեալ առ երանելին՝ և ասէ, եսեմ Թուխաթեցի, և ծնօղք քո բազում աղաչեցին ինձ ասելով, թէ վասն Աստուծոյ՝ յոր-ժամ գնաս յԵրևան, զմեր տղայն որոնեա, ուր և իցէ գտեալ՝ ընդ քեզ բերցես. և շրջեցայ յամենայն վանորայս. և ահա աստ գտի զքեզ. եկ՝ զի երթիցուք։ Իսկ միամիտ պատանին Բաղ-դասար զնենգութիւն նորա ոչ իմացաւ. այլև զգութն ծնօղաց անկաւ ի միտն, և պատրաստեցաւ ի գնալ։ Նաէ տաճիկն, թէ զո՞յ քեզ դրամ՝ տո՛ւր ի փոխ, զի տաց զմաքսն իմ, և գնամք յԷրզրում. անդ վաճառեցից աբրէշամն[54])՝ և տաց զփողն քո։ Նա անմեղ մանուկն հանեալ ետ միամտութեամբ՝ զոր ինչ ունէր. և ելեալ ընդ կարաւանի, և գնացեալ հասին ի Կարին։ Նա ետես Բաղդասար զոմն տաճիկ՝ մերձակայ դրկից հօր իւ-րոյ՝ և համարուեստ ինքեան. որ ի տեսանելն զմիմեանս՝ խնդա-ցին յոյժ։ Նա ասէ տաճիկն, ես կամէի գալ յԵրևան վասն քո ըստ խնդրոյ ծնօղաց քոց. և որովհետև աստ եկիր, ի միասին գործեսցուք, և ի միասին գնասցուք։ Նա կային սիրով, և գոր-ծէին զարուեստն։ Իսկ անիծեալ տաճիկն՝ որ պատրանօք ե-հան զնա՝ և եբեր յԷրզրում, իբրև ետես՝ թէ մնաց աստ, և ոչ կամի գնալ ընդ ինքեան, զչարեցաւ։ Նա վասն դրամին՝ զոր էառ, վարանէր թէ զի՞նչ ուրասցի։ Յաւուր միում գի-տաց՝ թէ ընկեր նորա գնացեալ է ի գիւղ՝ բերել զպիտոյս իւրեանց. գնացեալ առ փաշայն, և մատնեաց զերանելի մանու-կըն Բաղդասար, և ասէ, տաճկի որդի մի ի Թուխաթոյ՝ գնա-

(54) Մետաքս։

ցեալ յԵրեւան առնէր Հայութիւն. եւ առեալ բերի մինչեւ ցաստ. աստ ես առնէ Հայութիւն: Եւ փաշայն եդ ընդ նմա Ի զօրականսն՝ եւ ասէ, գնացեալ բերէք զնա: Իսկ անիծեալն այն անկեալ առաջ եւ զօրականքն զկնի, եւ յորժամ մերձ եգեն՝ ուր էր մանուկն, եւ պիղծն այն կացեալ ի բացեայ, եւ մատամբ եցոյց զկրպակն՝ եւ ասէ, այն է բնակութիւն նորա. քանզի անիծեալն այն երկնչէր յընկերէ նորա: Եւ տեսեալ զնա զօրականքն՝ ասեն, դու ես Խուլախթեցի Բաղդասարն: Ասէ պատանին, այո ես եմ: Ասեն զօրականքն, արի զի խնդրէ զքեզ փաշայն: Իսկ պարկեշտ մանուկն գիտաց՝ զի պիղծն այն վասն դրամին իւրոյ մատնեաց զնա. եւ ելեալ ի խանութէն՝ ետ բանալին ի միւս խանութպանն՝ եւ ասէ, յորժամ ընկերն իմ դայցէ, տո՛ւր զբանալիդ ի նա: Եւ ինքն ելեալ խնդութեամբ գնաց ընդ զօրականսն. եւ եմուտ առ փաշայն, եւ ետ ողջոյն: Ասէ փաշայն, դու ի մեր աշխարհին տաճիկ ես եղեր. եւ գնացեալ ես յԱճամստան՝ դարձեալ ես քրիստոնեայ. արդ դարձեալ դարձի՛ր ի տաճկութիւն, եւ ես կարգեմ զքեզ զօրագլուխ: Ասէ մանուկն, ես քրիստոնէից ծնունդ եմ, եւ սնեալ եմ քրիստոսական հաւատովն, եւ բնաւ ոչ գիտեմ տաճկութիւն: Ասէ փաշայն, զայդ՝ զոր ինչ եւ ասես՝ սուտ խօսիս: Դու մի՛ զոք յոյս եւ ապաւէն առնուլ, այլ ե՛կ ի ճշմարիտ հաւատս մեր. եւ թէ ոչ գաս, չարաչար մեռանիս: Ասէ Բաղդասարն, ես զհաւատս իմ ոչ թողում. եւ դու զոր ինչ առնելոց ես ընդ իս՝ արա՛: Եւ հրամայեաց իշխանն տանել զնա ի բանտ՝ եւ դնել զոտսն ի կոճեղս՝ որ է Տօմրուղ: Եւ ապա եկեալ տաճիկ ընկեր նորա, եւ տեղեկացաւ՝ թէ եկեալ տարին առ փաշայն, եւ գիտաց՝ որ վասն հաւատոյն են տարեալ. եւ գնացեալ առ իշխանն՝ աղաչէր՝ զի թողցէ զնա. եւ ասէ, թոյլ տո՛ւր դմա երթալ ի գործս, զի՞նչ օգուտ է Թուրքութիւն դորա մեզ: Զայս ասէր՝ թերեւս զերծուցեալ փախուսցէ զնա գնալ յԵրեւան: Եւ ոչ լուան նմա. այլ անարգանօք սաստեցին նմա:

Իսկ գնացեալ ի բանտն, և անկաւ զերեսօք նորա, լայր և ասէր, վա՜յ որդեա՛կ, լաւ էր թէ չէր տեսեալ զքեզ, քան թէ տեսի ի տառապանս։ Իսկ նա ասէ ցնա երանելին Բաղդասար, աղաչեմ զքեզ ուստա՛յ, վասն Աստուծոյ և քո որդւոյ արևուն՝ բե՛ր ինձ երէց մի, զի հաղորդեսցէ զիս. գիտեմ՝ զի ոչ թողուն զիս կենդանի։ Իսկ ելեալ Խուրքն գնաց եգիտ երէց մի Յակոբ անուն, որ երբեմն լեալ էր մաքսապետ. որ եկեալ հաղորդեաց, և զզուշացոյց մի՛ երկնչել ի մահուանէ։ Իսկ ի վաղիւն հանեալ ի բանտէն՝ կացուցին առաջի իշխանին։ Եհարց իշխանն, թէ ի խելս եկի՞ր, թէ դեռ ևս կաս ի խելագարութեան։ Ասէ Բաղդասարն, ես ի բնէ խելօք էի. բայց թէ լսեմ քեզ, յայնժամ խելագարիմ։ Յայնժամ սրտմտեալ իշխանն՝ ասէ, դու ոչ ընկալար զբանս իմ, զի ես զքեզ մեծացուցանել կամէի, և դու զայն անարգեցեր։ Ասէ մանուկն, ես վաղուրեմն ասացի, թէ արա զոր ինչ կարօղ ես, զի ահա կամ պատրաստ։ Իսկ բարկացեալ իշխանն՝ հրամայեաց տանջկաց հանել զնա արտաքոյ քաղաքին՝ և սպանանել։ Իսկ առեալ տանէին զնա. և ի ճանապարհին հայհոյէին և կափահարէին, թքանէին։ Իսկ նա գնայր սաղմոսելով, և ասէր, Երանի ամենեցուն՝ որ երկնչին ի Տեառնէ, և գնան ի ճանապարհս նորա. և առեալ տարին ի բլուրն՝ որ ասի Սուրբ Նշան, և անդ հատին զգլուխ սրբոյն։ Իսկ քրիստոնեայքն հրամանաւ իշխանին վեր առեալ զպատուական մարմին սրբոյն գլխովն՝ և արիւնաշաղախ հողն՝ և տարեալ ի հասարակաց գերեզմանն՝ ի հարաւակողմն Եկեղեցւոյն ի Ներքոյ որմոյն հանգուցին զսուրբն. և էր ժամն Թ աւուրն, և պայծառ արեգակ։ Իսկ ահա գունդ մի բոլոր՝ որպէս հուր վառեալ՝ պատառելով էջ յերկնից, և հարաւ յեկեղեցին, և ցնդեալ ի վերայ գերեզմանի սրբոյն։ Իսկ տեսեալ զայն բազում տաճկաց, և երկմտեցան ի հաւատոցն։ Իսկ իմ գոլով անդ ամ մի, բայց ի ժամ նահատակութեան սրբոյն ոչ պատահեցայ. այլ ի վաղիւն հարցի ցԽուրքն ընկեր նորա. և նա պատմեաց զամենայն ի

Ծննդենէն մինչև ի նահատակութիւնն. և ես գրեցի որպէս լը-
ւայ։ Կատարեցաւ սուրբն Բաղդասար ի թուին ՌՃԺԳ.
յաւուր տօնի սրբոց Հռիփսիմեանց։ Յետ երից ամաց նահա-
տակեցաւ Քէդէր[55]) Յակոբն, և եղաւ մերձ ի գերեզման Բաղդա-
սարին։

## ԳԼՈՒԽ Կ.

### Նահատակութիւն Շնորհաւորին

Կինս այս Շնորհաւոր էր յերկրէն Մարաց՝ հաւատով քրիստոնեայ, ազգաւ Հայ, և էր այրի՝ ոչ ունելով ուստր կամ դուստր. և բնակիւր ընդ եղբօր իւրում ի միում տան. գործէր ձեռամբ իւրով, և կեցուցանէր զինքն։ Իսկ եղև յարկածիցն սատանայի ցանկացաւ չար տրփանօք Քուրտ մի ընդ նա։ Եւ առաքէր առ նա կաւատ պառաւունս՝ հաւանել չար կամաց նորա՝ և պոռնկիլ ընդ նմա։ Իսկ բարեպաշտ կինն անարգանօք յետս դարձուցանէր զնոսա։ Եւ յաւուր միում ինքն Քուրտն եկեալ առ նա՝ խօսէր բանս զազիրս և աղտեղիս։ Ասէ ցնա պարկեշտ և սրբասէր կինն, ով Քուրտ՝ ի բաց երթ յինէն, մի՛ դուցէ եկեալ եղբայրն իմ՝ և տեսանէ զքեզ ընդ իս խօսելով, չարաչար սպանանէ զքեզ. մինչ նա զայս խօսէր, եկին ոմանք անդ. և Քուրտն ելեալ գնաց։ Եւ ի միում աւուր երթայր Շնորհաւորն ի գործ իւր. և ահա պատահեալ շունն այն Քուրտ, և ձգեալ զձեռս առ զօձիս նորա, քարշէր առ ինքն, շամբշէր և կամէր համբուրել։ Իսկ պարկեշտն այն կին հարկանէր զերեսս նորա, ճանկէր և թքանէր։ Եւ եղբայր Շնորհաւորին ի հեռաստանէ տեսեալ, զի քոյր իւր բռնադատէր, փութանակի եհաս առ նա՝ և ասէ, ամ՛լղուն[56]), զի՞նչ աղբ լա-

(55) Քէդէր. աւանապետ։

(56) Դուզէ մ՚լուն. Նզովեալ, անիծեալ։

փես, մի՞թէ անտէր է դա. և հանեալ զխանճալն [57]՝ և եհար զփոր Պարսոյն՝ և եսպան զնա. և ինքն խոյս ետ անտի։ Իսկ տեսեալ զայն այլ Պարսաց, գնացեալ պատմեցին պարոնին իւրեանց։ Իսկ պարոնն առաքեալ տարաւ առ ինքն զՇնորհաւորն՝ և ասէ, ո՞ւր է եղբայր քո՝ որ եսպան զՊարսն։ Ասէ կինն, ո՛չ թէ եղբայրն իմ եսպան զնա, այլ ես սպանի զնա. վասնզի չարութիւն կամէր առնել. վասնորոյ սպանի զնա։ Ասէ պարոնն, որովհետև դու սպաներ, եկ տաճկացիր, զի շնորհեմք քեզ զմեղսդ։ Ասէ Շնորհաւորն, Աստուած մի՛ արասցէ. քանզի սպանի զնա՝ և եղէ մահապարտ, և եթէ ուրանամ զՔրիստոս, լինիմ Աստուածուրաց և ատելի Աստուծոյ։ Իսկ բարկացեալ Պարսն՝ ասէ, եթէ թողումք զդա կենդանի, լինիմք մեք ծաղր ամենեցուն. և ասէ ցայլ Պարսսն, հարէք զմլղունդ այդ՝ և սպանէք։ Յարեան ի վերայ նորա որպէս գազանք ի վերայ որոճի՝ փայտիւ և խանչալով, և նահատակեցին զպատուական կինն Շնորհաւոր՝ բարի հաւատով։ Իսկ եկեալ քրիստոնէիցն, և բարձեալ թաղեցին զնա պատուով ի փառս Քրիստոսի։ Իսկ ի թուին ՌՃԼԳ գնացի ես Ասկուդար (յՍկիւտար) քաղաք, ի մէջ Ալմաւուրայ գտի զայս, և գրեցի որպէս և էր։

## ԳԼՈՒԽ ԿԸ.

### Նահատակութիւն Պապատաչանենոյ։

Սինս այս պատուական էր ի Վայոց ձորոյ, ի գեղջէն Արփայ, դուստր Խաչկայ. և եղև խօսեցեալ ընդ ումեմն երիտասարդի Միրման կոչեցելոյ։ Յաւուր միում անկաւ երիտասարդն ընդ նմա. որ և յղացեալ՝ և ծնաւ որդի։ Իսկ և իշխանն Նախչուանայ Մուրատ-խան-Սուլթան կամեցաւ ըմբռնել զերիտասար-

(57) Խանչէր. դաշոյն.

դքն. և նա իմացեալ փախեաւ և գնաց յԱրարատ ի Նորագաւիթ գիւղ։ Իսկ իշխանն առաքեալ տարաւ առ ինքն զկինն Ագեղ, քանզի այս էր անունն նորա, որ թարգմանի Պատուական։ Ասէ ցնա սուլթանն, դու ընդէ՞ր արարեր բոզութիւն, և ծնար շնութեամբ որդի։ Ասէ կինն, ես ընդ ամուսնոյ իմոյ անկայ, և ի նմանէ ծնայ. եթէ ամուսնութիւնն մեղս իցեն, ապաքէն դուք ամենեքեան ամուսնացեալ էք։ Ասէ իշխանն, մեք օրինօք եմք ամուսնացեալ՝ և ոչ որպէս դու բոզութեամբ։ Ասէ կինն, օրինօք ամուսինն մին լինի, և դուք բազումս առնուք. վասն որոյ ամենեքեան բոզ էք։ Ասէ իշխանն բարկութեամբ, հա՜յ ղախպայ[58]) դու ի պատերազմ մտեր ընդ իս. ինձ չէ ինչ փոյթ. այլ եկ տաճկացիր. ապա թէ ոչ՝ չարաչար սպանից զքեզ։ Ասէ կինն, բաւական էր ինձ մեղանչումն պոռնկութեամբ։ Իսկ թ, ուրանամ զհաւատն իմ, լինիմ ուրացող՝ և բազում մեղաց պարտապան։ Ասէ իշխանն, զայդ ասելով ոչ գոյ քեզ հնար զերծանելոյ՝ բայց թէ ոչ գայցես ի հաւատս մեր։ Ասէ Ագեղն, ուղիղ հաւատ և օրէնք այս՝ որ ունիմ ես, այլ հաւատ ոչ գիտեմ։ Հրաման ետ իշխանն դահճացն՝ և ասէ, կապեցէք տառ զմէջս դորա, և տարեալ կախեցէք ի մինարայէն, և սպառնացէք. և թէ ոչ ուրանայ, կորէք զպարանն՝ և արկէք ի վայր, զի անկեալ մեռցի։ Իսկ առեալ տանէին զնա կափահարելով և հարկանելով. և հանին ի գլուխ մինարային արտաքոյ քաղաքին, կախեալ՝ հարկանէին ծայրիւ թրոյն, և ասէին, Ալլաուր[59]) ասա Մահմատին, ահա մեռանիս։ Ասէ կինն, յաւուր միում մեռանելոց եմ, բարւոք է փութով մեռանիմ իմով հաւատովս՝ քանթէ ուրացութեամբ՝ ստար հաւատով և չար անուամբ։ Իբրև տեսին դահճքն զհաստատ միտս նորա, հատին զպարանն. և անկաւ յերկիր Պատուականն այն կինն զովելի, և

(58) Ո՛վ պոռնիկ։

(59) Աղօթք. 2) դաւանել զդաւանութիւն կրօնից տաճկաց։

վախճանեցաւ։ Իսկ ժողովեցան Նախչուանայ մեծամեծ քրիստոնեայքն, և գնացին առ Սուլթանն, և խնդրեցին զմարմինն թաղել. և առեալ տարան ի հասարակաց գերեզմանն, և թաղեցին մեծաւ պատուով ի ՌՃԺԸ. թուին։

## ԳԼՈՒԽ ԿԲ.

### Նահատակութիւն Ապաշխարեալ կուսին։

Կոյս այս էր ի գաւառէն Գողթանայ ի գեղջէն Շաղկերտոյ, և էր անուն նորա Խաթամ, որ է կատարեալ՝ կամ լցեալ, դուստր առն միոյ անզգամի՝ Մալխաս անուն, և էր տանուտէր Շաղկերտոյ։ Իսկ գեղականքն ասացին ցնա, եկ տուր զհամար տանուտէրութեան քո. և ետ զհամարն, և մնաց ի վերայ նորա բազում ևս, և խնդրէին ճնշիւ։ Իսկ նա պատրեաց զնոսա՝ և ասէ, թող տուք ինձ աւուրս երիս, և ես հատուցից։ Իսկ նա ելեալ փախստեամբ՝ և գնաց յԱսպահան առ իշխանն Նախչուանու Մահմատ-ռզայ-խան՝ և ասէ, դուստր իմ տաց որդւոյ քում, և դու զերծո զիս ի գեղականաց անտի։ Իսկ իշխանն արար ըստ կամաց նորա. գրեաց առ շինականսն Շաղկերտոյ, թէ ես առի զհամար դորա, և ինձ եհաս զամենայն. և դուք չունիք հրաման խօսել ընդ դմա։ Իսկ որդին իւր Մուրթուզայ-ղուլի էր յԱյրևան նստեալ Տեղապահ յետ Զալին. գրեաց առ նա, թէ առաքեա ի Շաղկերտ՝ և բեր առ քեզ զդուստր տանուտէր Մալխասին։ Իսկ լուեալ զայս ի հօրէն, առաքեաց զարս հանդերձ կնաւ տաճկի՝ ածել զկոյսն Խաթամն։ Իսկ գնացին հրաւիրակքն, մատուցին զչար աւետիքն։ Իսկ մինչև ցայժմ ոչ էին լուեալ զայս աղջիկն և մայրն. յորժամ լուան, աղաղակէին, ճանկէին զերեսս, ճողէին զհերս, լային և հառաչէին։ Իսկ տաճիկքն կալեալ զերանելի կոյսն Կատարեալ, մերթ ի քարշ, մերթ ի յոտին, և տարեալ մուծին ի ժանտա-

րըն։ Իսկ պիղծն Մալխաս պատուէր առաքեաց առ Մուր-
թուզայն՝ և ասէ, այնքան մի՛ խօսեսցես ընդ դստեր իմոյ, մին-
չև ես եկեալ արարից զհարսանիսն։ Եւ առեալ տարին զնա
Ջերբեան՝ և ցուցին Մուրթուզայ-ղուլուն։ Եւ տեսեալ զգե-
ղեցկութիւն նորա, զարդարեաց զնա ոսկւով, և արծաթով,
և դիպակով, և այլ ևս զարդուք պճնեցոյց, և մնայր գալս-
տեան հօր նորա, զի արասցէ զհարսանիս։ Իսկ երանելի կոյսն
Կատարեալ ոչ ուրախանայր, ոչ ուտէր, և ոչ ըմպէր։ Այլ
միշտ զմտաւ ածէր, թէ որո՞վ հնարիւք կարիցէ զերծանել։
Եւ նստէր հանդէպ ձորոյն. և ի գլուխս բարձր քարանցն զննէր՝
գտանելով խոնարհ տեղի ինչ գտցէ, զի իջեալ փախիցէ. և ոչ ե-
գիտ ցած տեղի։ Եւ ապա ի գիշերի միում խորհեցաւ ի միտս
իւր, թէ անկայց ի քարանցս ի վայր, բարուոք է ինձ կամաւ
և Քրիստոսի հաւատովն մեռանել, քան ուրացութեամբ մնա-
լով կենդանի։ Եւ կնքեալ խաչ զերեսն, անկաւ ի բարձր քա-
րանցն ի վայր, և ուշաթափ եղև սակաւ մի. և ապա յարու-
ցեալ հայի ընդ կամուրջն՝ որ ի վերայ Զուրաստան գետոյն, և
անցեալ ընդ նոյն՝ ուղղէ զինքն գնալ ի Կարբի։ Եւ ահա պա-
տահեաց տաճիկ մի, և աղաչեաց առ նա կոյսն. և ետ նմա ա-
պազի մի՝ և ասէ, ցոյց ինձ զճանապարհ Կարբւոյ. և նա եցոյց
նմա՝ և ասէ, պատեա զայգեստանաւդ և մուտ ի Նորագեղ, և
անդ ցուցանեն քեզ ճանապարհ։ Եւ նա գնացեալ էանց
զգիւղն, և առապար ճանապարհաւ երթայր՝ և ոչ գիտէր թէ
ո՞ւր գնայր. և հայեցեալ տեսանէ՝ զի առաջի իւր գնան բազ-
մութիւն տաճկաց՝ արք և կանայք՝ բեռնակիր անասնօք՝ հան-
դէպ լերինն Արայի լեռնանալ։ Եւ փութացեալ եհաս նոցա,
զմտաւ ածեալ՝ թէ ի չէն ինչ երթան նոքա։ Մ՛ի նոքա հար-
ցին զնա՝ թէ ո՞վ ես, կամ ո՞ւր երթաս, և ո՛չ նա եհարց զնո-
սա ինչ, և անմռունչ գնայր ընդ նոսա զկնի նոցա։ Եւ գնա-
ցեալ հասին հանդէպ գեղջին Եղավարդայ։ Եւ սուրբ կոյսն
եհարց տաճկացն վասն գեղջն. և նոքա ասացին, գեղ է Զա-

յոց՝ և կոչի Եղավարդ։ Եւ ապա մեկնեցաւ ի նոցանէ, և ուղղեաց զինքն դէպ ի գիւղն. և եմուտ ի տուն քրիստոնէի միոյ, և ասաց զամենայն՝ զոր ինչ վասն իւր. և աղաչէր նոցա՝ կոչել քահանայ մի, զի հաղորդեսցէ զնա, գիտեմ՝ զի ահա սպանանեն զնա։ Եւ նոքա գնացեալ բերին այրի երէց մի՝ Մկրտիչ անուն, և խոստովանեցաւ և պատմեաց նմա զամենայն վարս ի ծննդենէ մինչև ցօրն՝ յորում էր, և հաղորդեցաւ մարմնոյ և արեանն Քրիստոսի։ Եւ տէր գեղջին տաճիկ Աւղարլու, ասաց արձակել զնա՝ ուր և կամի՝ գնասցէ։ Իսկ ոմն պիղծ՝ Սահակ անուն, որ էր տանուտէր գեղջին Եղավարդայ, ասաց, ես երկնչիմ յիշխանէն, զի մի՛ վասն ինչ կեցից սակս դորա։ Եւ գնացեալ պատմեաց իշխանին։ Եւ ասէ իշխանն, ես փոյթ ինչ արարի վասն նորա. որովհետև այդպէս է, գնացեալ մերկացուցէք զնա, և կորուսէք զինքն։ Եւ եդ երկու տաճիկ ընդ պղծոյն Սահակայ. որ գնացեալ կապեցին զերանելին, և հեռացուցին ի գեղջէն, և մերկացուցին ի զարդուցն. և արձակեցին զանկապան ոտիցն իւրեանց, որ [illegible] ), և եսուն ցՍահակ. և նա խեղդեաց զսուրբ կոյսն Թամամ՝ կատարեալն բարե մահուամբ և ուղիղ հաւատով, մաքուր մտօք և ճշմարիտ սիրովն Քրիստոսի։ Եւ կուտեցին զքարինս ի վերայ նորա, և թողեալ գնացին։ Եւ ի վաղիւն եկն պիղծ հայր սրբոյն՝ և ասէ ցիշխանն, ցո՛յց ինչ զդուստրն իմ։ Ասէ իշխանն, դուստրն քո զկեանս իւր քեզ շնորհեաց. և պատմեաց նմա զամենայն։ Ասէ այրն, դու ոչ կարացեր պահել կին մի, արդ ընդէ՞ր սպաներ, տո՛ւր զմարմին նորա. և ետ նմա ցոյց Սահակն, և գնացեալ եհան ի ներքոյ քարանցն, և տարեալ ի գիւղն Եղավարդ, և ժողովեցան քահանայք և ժողովուրդք բազում, և թաղեցին ի ներքոյ որմոյն եկեղեցւոյ հարաւոյ. և եմուտ արեգակն, և մինչ չեկեղեցին պաշտել զերեկոյեան ժամն. և յաւարտ

-(69) [illegible]

ժամուն՝ գնացին ոմանք՝ զի համբուրեսցեն զգերեզման նորա. և տեսին որպէս մանր կայծ հրոյ ի վերայ գերեզմանին, և զլոյս տուեալ միմեանց՝ գնացեալ տեսին լոյսն ի վերայ գերեզմանին. և այնքանք մնացին անդ՝ մինչև նուաղեցաւ լոյսն։ Եւ իմ լուեալ՝ գնացեալ իմացայ հաւաստեաւ ի Մկրտիչ երիցոյն. և գրեցի զանուն ի վերայ տապանին և զԹուականն ՌՃԽ։

## ԳԼՈՒԽ ԿԳ.

### Պատմութիւն Պարոն Եյվազին և տան նորա։

Ի գեղաքաղաքէն Կարբւոյ՝ որ յերկրին Արարատեան, էր այր մի Յակոբջան անուն՝ ազգաւ Հայ, մեծատուն և փարթամ։ Սա ծնանէր երիս որդիս, զՏօլվաթ-բէկ, զՄըր-խան և զԵղու-Բար։ Եւ ինքն Յակոբջան ամուսնացոյց զաւագ որդին իւր զՏօլվաթ-բէկ։ Եւ ինքն գնաց ի վաճառականութիւն յաշխարհն Օսմանցւոց. և մեռաւ ի քաղաքին Պրուսայ, որ է Բուրսա։ Եւ որդի նորա Տօլվաթ-բէկ ամուսնացոյց զեղբայրսն. և կային հնազանդ նմա։ Եւ ինքն Տօլվաթ-բէկ սկսաւ ի բարեգործութիւն. նախ՝ զտուն իւր լցոյց ամենայն բարութեամբ. բազմացոյց զանասունս, զայգիս և զջրաղացս, և զկիտոյս ամանաց, և այլ գոյքն։ Եւ ապա սկսաւ առ հոգևորն. զի սիրէր զքահանայս և զմիայնակեացս, զվանորայս և զանապատս. և զոր ինչ պիտոյ էր՝ տայր, թէ զգեստ, թէ գիրք, թէ մոմ, թէ խունկ, թէ ձէթ, և այլ զոր ինչ պակասութիւն գոյր՝ նա լնոյր։ Եւ յետ զհանդերձ միակեցացն, զշալս, զմաղեղէն, և զկօշիկս. և զպահոց կերմունսն անպակաս տայր։ Եւ ծնաւ բազում որդիս, զԵյվազ, զՍտեփաննոս, զՄալխաս, զՍսկան, զԵղա-բար և զՄկրտիչ։ Իսկ Մըր-խան ծնաւ Յակոբջան և Պօղոս. և Եղու-բարն ծնաւ զԵրեմիա և զՆիկողայոս։ Իսկ ինքն Տօլվաթ բէկ գնաց ի Գանձակ Եղուանից, որ է Գեան-

ճայ, զի գնեսցէ ապրշումս. և անդ վախճանեցաւ: Եւ բերեալ զմարմին նորա ի գիւղն իւրեանց ի Կարբի, և թաղեցին մերձ ի սուրբ Կիրակոս եկեղեցին՝ ի գերեզմանն՝ զոր ինքն գնեալ էր, ի թուին ՌՃԻԵ ի յունվարի Ե: Իսկ Միր-խանն մեռաւ ի Զմիւռին, որ է Իզմիր, և անդ թաղեցաւ: Եւ Ալու-բաքն մեռաւ ի Ջօճանէթ, որ է Գիլան, և թաղեցաւ յԱրտաւիլ: Որոց հանգիստ և արքայութիւն լիցի ի Քրիստոսէ. ամէն: Եւ այլք ամենեքեան կան միաբան աւելի քան Լ՝ ի միում տան, արու և էգ: Եւ աւագ որդի Տօլվաթ-բեկին պարոն Այվազ էր գլխաւոր ամենեցունցն: Սա այս պարոն Այվազ եղև հետևօղ բարի գործոց առաւել քան զհայր իւր: Նախ սկսաւ տունն իւր կարգաւորել. զի արար զամենայն ընտանիս իւր միաբան, միակամ, միախորհուրդ, միասիրտ, որպէս թէ մի շունչ և մի հոգի: Ո՛չ ոք ասէր վասն իւր աւագ գոլ, կամ մեծ, կամ առաջին, ամենայն արուքն կային հրամանաւ պարոն Այվազին. և կանայքն կային հրամանաւ բարեպաշտօն և աստուածապաշտ մօր նորա Մարիամու՝ հլու և հպատակ, հնազանդութեամբ և խոնարհութեամբ, և ամենայն բարեձևութեամբ: Զկնի նորա շինուածոց և ընչից հետևեցաւ. և բազմացոյց զինչսն, և զարարս, և զանասունս և զխաշինս, զձիս և զկիսաւէշս. և տնկեաց զայգիս և զբուրաստանս. շինեաց և ծով մի մեծ ի տեղին՝ որ կոչի Կարբւոյ-դաշտ, և յեղանակսն գարնան լնոյր ուխից ջրով. զի յամարան եղանակին բաւական լիցի անդաստանաց գեղջին. և այլ բազում բարութիւնս մարմնաւորս արար և յաւել վասն ինքեանց: Կայ ինձ ասել և վասն հոգևոր բարութեան նորա. քանզի սիրօղ էր նա վանականաց և անապատաւորաց, և զամենայն պիտոյս նոցա կատարէր՝ թէ հոգևորն և թէ մարմնաւորն. վասնզի յեղբարց իւրոց մի մի առաքէր ի վաճառականութիւն, ոմն՝ յաշխարհն Պարսից, ոմն՝ Յունաց՝ ի գնել և վաճառել. և ի շահուցն տայր ի պէտս եկեղեցեացն՝ խունկ, մոմ, ձէթ, զգեստ և անօթս եկեղեցեացն. այլ և մար-

տաւոր պիտոյն, հանդերձս և զկօշիկս. զպղպեղ՝ որ է տաք դեղ, թուղթ. այլև զխաշանց կաթն շնորհէր վանորէիցն՝ անել պանիր. և զինի՝ որք խնդրէին՝ ոչ խնայէր. այլև էր աղքատասէր և ողորմասիրտ. և վասն համեստութեան ամենայն ոք սիրէր զնա. և զխօսս նորա ամենայն ոք ընդունէր. զի այո՛ն՝ այո էր, և ո՛չն՝ ոչ. զի առաջի մեծամեծաց յարգոյ էր և պատուական: Իսկ Կաթուղիկոսն Նահապետ առաւել ունէր սէր ընդ նա. և զոր ինչ ասէր Այվազն, նա սիրով ընդունէր զասացեալն՝ և ո՛չ երկրորդէր: Նա այսպէս զարդարեալ էր հոգւով և մարմնով՝ ամենայն բարեձևութեամբ: Նա ի վերայ այսր ամենայնի յաւել ևս մեծ բարութիւն. զի շինեաց ի մէջ գեղջն եկեղեցի մեծ՝ հոյակապ՝ կոփածոյ քարամբք, չորիւք սեամբք, կաթուղիկէ ազնիւ. և բազմացոյց զանօթն և զզգեստն. և շուրջանակի պարսպեաց ապառաժ քարամբք: Այլև եբեր ջուր յԱրդկան գեղջէ փողրակաւ և գնկաւ[61]) մինչև ի դուռն եկեղեցւոյն, զի ի ձմռան եղանակին մի՛ պակասեսցի ջուր ի գեղջէն: Նա յետ այսմ ամենայն բարի գործոց՝ խորհեցաւ և խորհուրդ բարի. և առեալ զանձս բազումս ի բաժին սուրբ Երուսաղէմի՝ և գնաց ի թուին ՌՃԽԸ. որոյ տէր Աստուած լիցի ճանապարհակից. զի խաղաղութեամբ գնացէ, բարութեամբ դարձցի: Նա Տէր Աստուած անսայթաքելի պահեսցէ զնա մինչ է մարտիր է. և յետ [illegible]աստեացս արժանի լիցի արքայութեանն երկնից, երանական ձայնին և անթառամ պսակին. ամէն: Նա տուն նորա այնպէս կայ բարեկարգութեամբ՝ որպէս և գրեցաք:

(61) Խեցեղէն խողովակ:

## ԳԼՈՒԽ ԿԴ.

### Իշխանք յետ Զալին։

Զկնի Զալ խանին առաքեաց Թագաւորն Պարսից Շահ-Հիւսէյին յԵրեւան զայր ոմն Մուրթուզայ-ղուլի-խան անուն՝ նստիլ Տեղապահ. որ էր ինքն որդի Մահմատ-աղայ-խանին Նախչուանու։ Սա եկեալ նստաւ յԵրեւան՝ մեծաւ յուսով ակնունելով մնալ աստէն՝ և լինել աւագ իշխան. և առնէր դիւրութիւն երկրին. Թեթեւացոյց և հարկն։ Իսկ միշտ առաքէր աղերս Թագաւորին՝ և զկաշառս մեծամեծացն արքունի՝ թերեւս կամեսցեն զԵրեւան տալ նմա։ Իսկ ոչ եղև՝ զոր ինչ կամէրն. վասնորոյ կամեցաւ հնարիւք իմն կողոպտել զերկիրն. և պատճառ իմն եգիտ, թէ հրաման է Թագաւորին՝ զի գինի ոչ երեւեսցի յաշխարհին Երեւանայ. և առաքեաց զարս յամենայն գաւառս՝ կնքել զամենայն կարասս և գուբս[62] գինւոյ։ Իսկ ելեալ շրջեցան և կնքեցին զամենայն կարասս և զգուբս։ Եւ յետ գնացին ի լեռնային գաւառս, ուր բնաւ ոչ գտանի գինի, և կնքեցին զպուտկունս մածնի և թանի։ Իսկ այսպէս տառապեցոյց զերկիրն, մինչև ժողովեցան գաւառապետք և տանուտեարք, և գրեցին մուրհակս բազում դրամոց, և ետուն նմա, և առին հրաման վասն գինւոյն։ Իսկ գաւառապետքն գրեցին գեղօրէից. և ժողովեցին զդրամն՝ և ետուն նմա։ Իսկ ապա եկին կնքօղք պուտկայն և կարասուցն, և առին և նոքա կաշառս, և ապա քակեցին զկնիքն. և կացեալ Բ տարի և կէս, և ապա առաքեաց Թագաւորն զմի ի ծառայից Թագաւորական՝ Մահմատ-ղուլի անուն. որ եկեալ նստաւ իշխան ի քաղաքն Երեւան։ Սա առաջ ոստիկան էր յԵրեւան ի վերայ արքունական հարկայն, զոր ինքեանք Շահ-մալի ասեն. և գիտէր ամենայն նեղու-

(62) Բաժակ. 2) խեցեղէն կարաս։

թիւնք և տառապանք աշխարհին, և ճշտիւ կողոպտումն և բազմութիւն հարկացն։ Իսկ բարութիւն ցուցեալ ամենայնի՝ և արար ուղղութիւն և սէր առ ռամիկ հարկատուքն. և ի բազում տեղիս թեթևացոյց զհարկն և զձեռամաքս ի ճանապարհաց. եբարձ և զամենայն գողս և աւազակս։ Եւ հրաման արար և շինութեան եկեղեցեացն. և ի դատաստանի ճշմարտասէր և առանց կաշառաց։ Եւ ոչ առաքէր հարկահանս յերկիրն, զի մի՛ նեղեսցեն զռամիկս, այլ ինքեանք ժողովեալ առ սակ և սակաւ հատուցեն։ Եւ այսպէս կայր նա լաւութեամբ մինչ էր նա յԵրևան։ Եւ ապա եկն հրաման արքունուստ գնալ ի պատերազմ ի վերայ Գօրկի խանին Վրաց. և յամեցաւ անդ տարի մի. և դարձաւ յԵրևան, և կայր նոյն լաւութեամբն։ Եւ ապա առաքեաց Թագաւորն հրաւիրակ, և տարեալ կացոյց զնա զլուխ զօրաց, զոր ինքեանք Խոռանչի-բաշի ասեն. որ եկաց ամս Գ և կէս։ Աւա՜ղ վասն նորա, որ ոչ մնաց այնպիսի բարի այր։ Զկնի նորա առաքեցաւ ի Թագաւորէն իշխան Երևանայ Ղարզալի ոմն, որ էր ի Թոռանց Ամիրգունայ-խանին, այր ագահ և ռիշտ, կողոպտող և զերփող, և կաշառօղ, անիրաւ ի դատաստանի, և կաշառօք թիւրէր զդատաստանն. յորժամ ոք զանգատէր յումեքէ, առանց քննութեան առնոյր տուգանս. որք մի փողոյ տեղիք էին, նա Ժ փող առնոյր. այսպէս իմն զամենայն։ Բազմացան և գողք ի շէնս և աւազակք ի ճանապարհըս և յանդաստանս։ Քանզի աւազակք համարձակ մտանէին ի փարախս խաշանց, և քշեալ տանէին. և գողք մտանէին ի տունս, և զանասունս հանեալ տանէին աներկիւղ։ Եւ թէ ըմբռնէին զգողսն՝ և տանէին առ իշխանն, և նա առնոյր տուգանս, և արձակէր առանց պատժոց. և նոքա գնային, և դարձեալ առնէին գողութիւն։ Եւ էր տագնապ մեծ յաշխարհին Արարատեան։ Եւ ի թուին ՌՃԽԲ այսպէս է՝ զոր գրեցաք, և ապագայն Աստուած գիտէ։

## ԳԼՈՒԽ ԿԵ.

### Չարչարանօք մահ Ստեփաննոս վարդապետին։

Իսկ Կաթուղիկոսն Նահապետ կայր յիւրում գործս ի սուրբ Էջմիածին, և յաւելոյր շինութիւնս ի սուրբ աթոռն Էջմիածին և յամենայն վանորայս. բայց կարի սաստիկ էր ի վերայ յանցաւորաց. և եթէ ոք պակասութիւն ինչ գործէր, սա կալեալ հրապարակաւ կախէր՝ և գանալից առնէր, և տուգանէր մարմնաւոր իշխանութեամբ. հարէր զմօրուսն և զանգուրն, և արկանէր ի բանտ՝ և շղթայէր։ Եւ այսպէս ահարկութեամբ կայր ի վերայ ամենայն եկեղեցականաց և քահանայից։ Եւ վասն այսմ գործոյ վերաւորեցան ոմանք ի սեւագլխոց ի մերումս յաշխարհէ, և գրով միաբանեցան ընդ եպիսկոպոսացն Նախչուանայ և Գողթանայ։ Եւ գրեցին առ Ստեփաննոս վարդապետն՝ որ էր Առաջնորդ Ասպահանայ և Ջուղայու, թէ կաթուղիկոսս այս խանգարեաց ամենայն կարգ և օրէնք՝ զոր սահմանեալ էին նախնիքն մեր, և ինքն զոր ինչ և կամի՝ այնպէս վարէ առանց կանոնաց և վկայութեանց գրոց։ Եւ այլ բազում ամբաստանութիւնս սուտ գրեցին առ նա, և ասացին, դու եկ և լեր մեզ Կաթուղիկոս. և մեք լեցուք հնազանդ հրամանաց քոց. թերևս ուղղեսցի կարգ մեր և կրօնք։ Զայս գրեցին՝ և կնքեալ ետուն ի վարդապետ մի Մատթէոս անուն Կարբեցի՝ մականուն Բատրաղեն։ Եւ առեալ զթուղթն, և գնացեալ յԱսպահան, և ետ ցՍտեփաննոսն զգիրն։ Եւ ընթերցեալ ծանեաւ զամենայն, կարծեաց հաւատի և ճշմարիտ լինել։ Բայց զկատարածն ոչ իմացաւ, և ոչ զասացեալն ի մարգարէէն. եթէ ո՛չ տէր շինէ զտուն, ի նանիր"։ Եւ ի պատիր բանիցս նոցա խաբեցաւ մեծ ճգնաւորն Ստեփաննոս, և հետևեցաւ սնափառութեան։ Եւ բազում գանձս ծախեալ յարքունիս, բազում միջնորդաւ էառ արքունուստ ռոմն՝ որ է ռաղամ Կաթուղիկոսու-

թեան՝ գալ ի սուրբ Էջմիածին։ Եւ առաջագոյն առաքեաց զաշակերտն իւր Աղէքսանդրոս վարդապետն՝ գնալ և առաքել զՆահապետն ի վանքն Տաթեւու, և ինքն նստիլ Տեղապահ մինչև ցգալն իւր։ Իսկ Նահապետն ելեալ ի սուրբ Էջմիածնայ, և ոչ գնաց ի Տաթև, այլ գնացեալ ի Խուրէզ՝ եմուտ յարքունիսն, զոր ինքեանք ասեն Շահ-օճաղի, և ով որ մտանէ անդ, և թէև մահապարտ իցէ, ոչ ոք ասէ նմա ինչ։ Եւ ապա եկն և Աստեփաննոսն ընդ Զարզալի խանին, և իմիասին գնացին յԵրևան։ Եւ Նահապետն ևս գնաց զկնի նոցա, և նստաւ ի Խնկելոյ-Ձորգեղ՝ որ է Ձորագեղ։ Եւ Աստեփաննոսն օրհնեցաւ Կաթուղիկոս, բայց ոչ կարաց վարել զիշխանութիւն Կաթուղիկոսութեան։ Քանզի Նահապետին բազումք կային բարեկամք թէ ի մերումս աշխարհիս՝ և թէ յԱսպահան. որք ոչ կամէին զԿաթուղիկոսութիւն Աստեփաննոսին. որպէս և Աւետիս ոմն ի Ջուղայոյ, որ երբեմն լեալ էր իշխան Ջուղայու, որ ասի Քաղանթար. սա ի հարկելոյ թագաւորին՝ ուրացաւ զՔրիստոս, և երկոքին դստերքն իւր աղերսեացնմա, և եղև ինքնիշխան մեծ ի վեր քան զյոգունս, և էր բարեկամ Նահապետին. որ եմուտ առ թագաւորն Շահ-Հիւսէին, և մեղմով ծանոյց նմա, թէ օրէնք է Հայոց, մինչ Կաթուղիկոսն նոցա կենդանի իցէ, այլ ոք ոչ լինի Կաթուղիկոս. եթէ մեռանի, և կամ կամաւ իւրով հրաժարի, և ապա այլ զոմն կացուցանեն Կաթուղիկոս ընտրութեամբ ամենայն ազգին։ Իսկ Աստեփաննոսս այս թարց ընտրողութեան ազգին՝ ինքնագլուխ եղեալ է Կաթուղիկոս. և ահա առաջին Կաթուղիկոսն կենդանի է։ Եւ իբրև լուաւ Շահն, և բարկացեալ յոյժ՝ գրեաց առ իշխանն Երևանայ Զարզալի խան՝ առնուլ ի Աստեփաննոսէն Ռ. թուման տուգանս, և ինքն համախոհօքն դնել ի բանտի. և արար այնպէս։ Եւ էին համախոհք նորա՝ Պետրոս վարդապետ Վայոց-ձորոյ, որ է Աթոռակալ սուրբ Էջմիածնի. Գրիգոր վարդապետ ի Մուղնոյ վանից. Յովհաննէս վարդապետ ի Ծաղկունոց-ձորոյ. որք ընդ նմա եդան ի բանտի

ընդարձակ, և ետուն տուգանս նոքա՝ և արձակեցան։ Իսկ Աստեփաննոսն հանեին ի թեթև բանտէն, և եդին ի մթին և գարշահոտ զնտան, և ոտքն ի ծնգացն եդին ի կոճ եղս՝ որ է փոծրոտղ. և ի ներքոյ թիկանցն քար ողորկ. և ի զազրութենէ հոտոյն՝ և յաճմանէ հերացն՝ և ի բազմանալոյ որդանցն վշտացեալ՝ մեռաւ անդէն. և ըստ կտակաց նորին տարեալ ի Խոր-վիրապն՝ և թաղեցին անդ ի թուին ՌՃԽԴ և ի յունվար Գ։

## ԳԼՈՒԽ ԿԶ.

Վշտաշանք աղջկանցն։

Էր ազգ մի ի մէջ Պարսից, որք ասին Գէլք. և ի մէջ այսմ ազգիս կայր աղջիկ մի չքնաղ և վայելուչ. զնա գովեցին առաջի Շահ-Աբասին թագաւորին Պարսից։ Եւ հրամայեաց Շահն բերել զնա առ ինքն. և յորժամ ետես Շահն զգեղեցկութիւն երեսացն, զբազմութիւն հերացն, զվայելչութիւն հասակին, և զկարմրութիւն այտուցն, զմեծութիւն աչացն, զյարմարութիւն յօնիցն, և փոքրութիւն բերանոյն, զմանրութիւն ատամանցն, զլայնութիւն երեսացն, և հիացեալ մեծաւ զարմացմամբ, և ասաց, յայսմանէ բերջիք ինձ Ժ ևս յայսմ ազգէ։ Եւ եղեալ ներքինիքն հարճիցն շրջէին ի մէջ Գիլաքացն վասն այնմ իրաց։ Եւ համբաւ եհաս յամենայն տէրութիւնն Պարսից, թէ՝ ԷԱ Օզբէկ՝ որ է Պարթև՝ եկեալ են ի հաւատս Պարսից, և ոչ գիտեն լեզու, վասն այնորիկ շրջին ի մէջ ամենայն ազգաց՝ ժողովել ԷԱ աղջկունս՝ մէն մի տալ նոցա, զի ուսուցանեն նոցա լեզու տաճկաց։ Եւ վասն այս սուտ համբաւոյս լրոյն՝ ո՛վ ոք ունէր կոյս մի ի Ժ ամէն ի վեր՝ ետուն առն, թէ՛ քրիստոնեայք և թէ՛ այլազգք։ Նոյն և աղջկունքն եղեալ շրջէին ի վայրի. և թէ տեսանէին երիտասարդ, ըմբռնէին ի հանդերձէ նորին, աղաչէին տիրել ինքեանց, զի մի՛ անկանիցիմք ի

գերութիւն։ Եւ յաղագս այսմ իւրաց Գանորայքն ամենայն երկրի գտին դուռն շահից. քանզի հրաման հանին յամենայն գաւառ իշխանութեան իւրեանց. և ժողովեցին զմնացեալ աղջկունս՝ վտիտս և անգեղս, որպէս թէ հրամանաւ Շահին. և ի ծնօղաց նոցա առնուին զգինս, և արձակէին զաղջկունս։ Նոյնպէս արար և իշխանն Երևանայ Փարզալի խան. և ժողովեաց բազում աղջկունս աւելի քան Շ, և բերեալ զպառաւ կանայս զննել զնոսա, և ի չհաւանելն՝ առին զգինս նոցա ի ծնօղաց, և թողին զդստերս նոցա. բայց մնացին Խ աղջիկ՝ որք ոչ կարացին տալ ծնօղքն զգինս։ Այլև սակաւ ինչ գեղեցիկ էին՝ ի մեծ գեղջէն Քանաքեռոյ. որք էին մինն Յովհաննէս երիցոյն՝ Մարձան անուն, միւսն ի Կարբւոյ՝ Սարգիս երիցու, որ ի Քանաքեռ կայր առ քեռն իւրում՝ Բեկզատայ անուն. սա գեղեցիկ էր քան զնոսա։ Միւսն՝ Աստուածատուր անուն բարեպաշտ և երկիւղած քրիստոնէի՝ մականուամբ Բլպուլ կոչեցեալ, և անուն դստերն Շահզաման. պարկեշտ և համեստ, հարկաւոր և սրբաբերան, որպէս և մայրն իւր Յուստիանէ. որ և նա յաւուրս փոքր Շահ-Աբասին և Նաձափ-խանին քարշեալ եղև վասն այդմ իրաց. և բազում չարչարանս կրեալ՝ և ոչ գնաց. և զվարս նորա գրեալ եմ ի յիշատակս Յայսմաւուրքն իւրեանց. և վասն համբաւոյ մօրն՝ զդուստրն քարշեալ եղև։ Եւ ի մտանել նորա ի ժանուարն, որ է քաճաւայ, հարկանէին զնա անողորմ. և բեկաւ թևն, և բռնութեամբ մուծին ի ժանուարն. և առեալ զնոսա՝ և տարեալ ցուցին Շահին։ Եւ Շահն արհամարհեաց զնոսա, և հրամայեաց տալ զնոսա ի կնութիւն ծառայից իւրոց։ Եւ վասն Բ քահանայից դստերաց ոչ լսեմք ինչ։ Այլ սակս Բլպլի դըստերն բերէին պատգամ, թէ այր նորա մեռեալ է, և չունի այլ ոք ընտանի՝ զի տիրեսցէ նմա. և աղջիկն կայ ահաւասիկ աւանդ ի տան քրիստոնէի միոյ ի Խզվիրան քաղաք, որ է Գազուին։ Եւ ահա հայր նորա հանդերձեալ է գնալ, գոնմ զերծու-

ցէ զնա։ Եւ յաւարտել ճառիս և ի վճարել տառիս՝ Քրիստոսի փառք յաւիտեանս։

Եւ յայսմ աւուր՝ որ զպատմութիւնս աւարտեցաք ի թուին ՌՃԽԲ՝ եկն կարկուտ է մայիս Լ՝ ի չափ ձուի հաւու, և փշրեաց զամենայն բոյսս։

## ԳԼՈՒԽ ԿԵ.

### Հարցումն և պատասխանի արարեալ չինէն։

Ա. Հարց։ Մի մարդ ունէր Ը լիտր ձէթ. Բ մարդ եկին զայն գնել. մին մարդն ունէր Գ լտրանոց աման, միւսն ունէր Ե լտրանոց աման. արդ Ը լիտր ձէթն այդ չափովդ կէս արա, որ ամենուն լինի Գ լիտրն։

Լուծումն։ Նախ Գ լտրանոցն լնում և թափեմ ի մէջ Ե լտրանոցին. դարձեալ ևս լնում Գ լտրանոց՝ որ Բ լիտրն գըլնայ՝ մնայ Ա լիտր ի մէջ Գ լտրանոցին. այն Ե լտրանոցումն կայ Գ լիտր, և զայն թափեմ իւր առաջի ամանն. և զայն Ա լիտրն՝ որ Գ լտրանոցումն է, թափեմ ի մէջ Ե լտրանոցին. դարձեալ լնում Գ լտրանոցն՝ և թափեմ ի մէջ Ե լտրանոցէն ի վերայ Ա լտերն, որ լինի Գ լիտր, և մնայ տեղըն Գ լիտր։

Բ. Հարց։ Մին զայլ, մին գառն և մի խուրցն խոտ, մի մի անցո ի գետն, որ ոչ գայլն զգառն ուտէ, և ոչ գառն զխոտն։

Լուծ։ Նախ անցուցանեմ զգառն, և ապա զխոտն տանիմ, և գառն յետ բերեմ. գայլն տանիմ, և ապա գամ և խոտն տանիմ։

Գ. Հարց։ Տէր Պետրոսն, Տէր Պօղոսն և Տէր Անդրէասն Գ կանոն Սաղմոս ասացին. և յետոյ տեսին՝ զի ամենն Բ կանոն էին ասացեալ. այն ո՞րպէս է։

Լուծ։ Առաջ Տէր Պետրոսն և Տէր Պօղոսն ասացին Ա կանոն.

և ապա Տէր Պօղոսն և Տէր Անդրէասն, որ լինի ամենուն Բ կանոն՝ հաւասար միմեանց։

Դ. Հարց։ Երեսուն ձի՝ Թ ցցէ կապեա, որ աւելի պակաս չգայ։

Լուծ։ Ամեն ցցէ կապեմ Թ ձի, որ լինի ԻԷ ձի, և մնայ Գ ձի. ամեն Ա ձիու գլուխն առնեմ Գ պախուց, ամեն Գ պախուց՝ ամեն Ա պախուց կապեմ Ա ցից, որ լինի միաչափ։

Ե. Հարց։ Կիրակոսն՝ Սարգիսն և Մարկոսն Ա ձիով Գ օր ճանապարհ գնացին. յետոյ տեսին, զի ամեն Բ օր հեծեալ էին. արդ ո՞րպէս է եղեր։

Լուծ։ Նախ Կիրակոսն և Սարգիսն հեծին, և ապա Կիրակոսն և Մարկոսն. յետոյ Մարկոսն և Սարգիսն, որ լինի ամենն Բ օր։

Զ. Հարց։ Երեք եղբարք ունէին Լ ոչխար. Ժ (հատն) Գ Գ ծնած, Ժ՝ Բ Բ, Ժ՝ Ա Ա. արդ բաժանեա՛ այդ ի վերայ Գ եղբարցն միաչափ, բայց զառն ի մօրէն չբաժանես։

Լուծ։ Հինգ Գ ծնածինն՝ Ե միածինն տամ Ա եղբօրն. նոյնպէս Ե Գ ծնածինն՝ Ե միածինն միւս եղբօրն, իսկ Բ ծնածինն՝ միւս եղբօրն, որ լինի ամենուն Ժ ոչխար և Ի զառն՝ հաւասար։

Է. Հարց։ Խօճայ մի Ճ՛ փող ետ ծառային՝ թէ գնա Ճ՛ թռչուն բեր։ Եւ գնացեալ գնեաց Ե պատն՝ Ե փող, Ե ճնճղուկն՝ Ա փող, Ա հաւն՝ Ա Ա փող։ Արդ ասա՛ թէ քանի՞ է պատն, քանի՞ հաւն, և կամ քանի՞ ճնճղուկն։

Լուծ։ Պատն Ա՝ որ է Ե փող, Ե ճնճղուկ՝ Ա փող, այլ այդ որ Զ փող և Զ թռչուն, ՂԴ հաւ՝ ՂԴ փող, որ լինի Ճ՛ թռչուն և Ճ՛ փող. լաւ իմա։

Ը. Հարց։ Մին ջոկ հաւք նստէին ի ծառ մի. և մին ուրիշ հաւ եկաւ ասաց, բարի ձեզ Ճ՛ հա՛ւք։ Ասացին, մեք Ճ՛ չեմք. քանզի որքան մեք եմք, մեզ չափ այլ լինի, մեր կիսոյն չափ այլ, կիսու կիսուն չափ այլ, Ա դու գաս, ապա լինիմք Ճ՛։ Արդ քանի՞ են եղեր Բօլո–կն[63])։

(63) Պէօլէ–կ. խումբ, գունդ։

Լուծ. Լ. Ջ. են եղէգք. քանզի երկու Լ. Ջ.՝ ՃԲ լինի, և Գ. Ջ.ի կէսն՝ ԺԲ., որ լինի Գ. ԺԲ.ի կէսն Թ., որ լինի Գ. Թ. Ա. այլ, նա լինի ՂԱ՝։

ԽԹ. Հարց։ Վեցանիւ մի հաւք նստէին ի փայտի։ Վեցանիւ մի այլ հաւք եկին՝ և ասեն, ձեզանէ միոյն զայ առ մեզ, և մեք այլ ձեզ չափ լինիմք։ Նոր նոքա ասեն, ոչ, այլ ի ձեզանէ Ա. զայ առ մեզ, մեք Բ. լինիմք, դուք Ա. արդ որքա՞ն են երեք։

Լուծ. Առաջինքն Է., յետինքն Ե. թէ առաջնոցն միոյն զայ առ յետինսն, Զ. նոքա լինէին՝ Զ. առքա։ Եթէ յետնոցն միոյն զայ առ նոսա, նոքա Ը. լինին՝ և սոքա Դ։ Լաւ տես։

Ծ. Հարց։ Գաղացպանն և իւր աղջիկն, երէցն և իւր կինն, Գ. բաղարջ՝ ամենին Ա. տուր առ[64]), կտոր չանես։

Լուծ. Գաղացպանի աղջիկն երիցու կինն է, Գ. են, Գ. բաղարջն տուր ամենուն միոյն. այդ է լուծումն։

ԾԱ. Հարց։ Փիլիսոփայ մի առաքեաց զաշակերտսն իւր՝ որսալ ձուկն. գնացին և դարձան ունայն։ Ասէ վարդապետն, կալայք ինչ. ասեն աշակերտքն, զոր ինչ կալաք՝ թողաք, և զոր ինչ ոչ կալաք՝ ընդ մեզ բերաք. արդ զի՞նչ է այն։

Լուծ. Գնացեալ ոչ կալան ինչ. և նստեալ քթիւ արարին, զոր ինչ ոջիլ գտին, ոչ սպանին, այլ վայր ձգեցին. և որ մնաց հանդերձումն, զայն բերին. զոր ոչ իմացաւ Փիլիսոփայն, գնացեալ խեղդեցաւ. այս էր լուծումն նորա։

## ԳԼՈՒԽ ԿԲ.

### Ուրախութեան յեղափոխաւ։

Ի սպառել ժամանակիս և ի վերջին շարաւ՝ ի նուաստանալ ազգիս Հայոց, և ի զօրանալ ազգին Պարսից, յորում նեղիմք

---

(64) Ամբողջ։

և տառապանօք աղդի աղդի կեղեքմամբ և պէս պէս աւարմամբ, ի Թուխս մերում Ռ· երրորդի՝ Դ՛ երրորդի ի քառից տասանց և երկից չորից, ի Թագաւորութեանն Պարսից Շահ-Հիւսէինի, և յիշխանութեան տանս Արարատեան Փարզալի-խանի, և ի Կաթուղիկոսութեան Հայոց՝ որ ի սուրբ Էջմիածին՝ Տեառն Նահապետի Եդեսացւոյ՝ եղև աւարտումն պատմութեանս յերկրիս Արարատեան ի գաւառիս Անբերդու ի գերափառ մենաստանս և ի սուրբ ուխտս ի Միւղի վանաց, որ այժմ ասի Յօհաննուվանք, մերձ ի գիւղաքաղաքն Կարբի՝ որ յոտին Արագածու՝ հանդէպ Արայու՝ ի գլուխս բարձր քարանցս՝ ի վերայ կարկաջահոս և ծիծաղագնաց գետոյն Քասաղու, աշխատութեամբ իմով բազմամեղ և փինատ Զաքէոսի Քահանաքեացւոյ՝ որ ի ծառայութենէ նոյն վանացն Յովհաննու, ի խնդրոյ ոմանց բանասիրաց՝ և մերում յօժարութեամբ: Արդ որպէս առաջագոյն ծանուցաք, թէ զոր ինչ լուաք ի համբաւոյ՝ զայն գրեցաք, թէ՛ սուտն և թէ՛ ճշմարիտն, և թէ զովութիւն լիցի և թէ՛ սուտ պարսաւանք՝ նոցա լիցի. և մեք զհրամայեալսն արարաք. և դուք որպէս և կամիք՝ այնպէս արարէք: Վասն որոյ աղաչեմ ո՛վ լուսածնունդ զաւա՛կք մկրտութեամբ աւազանին որդեգրեալք հօրն երկնաւորի՝ բազմաչարչարնահատակութեամբ սուրբ Լուսաւորչին, յԱզգանաղեան ազգէ սերեալք, մի՛ վարկպարազի համարել զաշխատանս ստորասուզեալ և առաթուր ծառային ձերոյ: Այլ ընկալարո՛ւք զսա որպէս կաթիլ մի ի ծովէ, և հատ մի յողկուզոյ բազում վիպաց ձերոց՝ կալարո՛ւք և պսակաւ, և մի միայն գլաւն յարդեցէ՛ք. այլ և զպակասն վատիւն լնուցուք, որպէս զխեցեղէնն ընդ ոսկոյն և սեաւն ի նկարս: Եւ Քրիստոսի Աստուծոյ փառք յաւիտեանս, ամէն:

ԶԱՔԱՐԵԱՅ

# ՍԱՐԿԱՒԱԳԻ

# ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՏՈՐ ԵՐՐՈՐԴ





ՌՅԻ—1870

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

# ՑԱՆԿ

## ԵՐՐՈՐԴ ՀԱՏՈՐԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՍ.







# ԶԱՔԱՐԵԱՅ

## ՍԱՐԿԱՒԱԳԻ

# ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԳԼՈՒԽ Ա.

### Կոնդակ տուրք ուխտին Յովհաննու վանից։

Յուցմունք ժամանակաց. և պատմութիւնք նոցին գրեալ եղև յառաջնոց պատմագրաց. որք ի ժամանակս և ի դարս գրեցին՝ որպէս գիտացին՝ ըստ իւրեանց իմաստութեանն՝ զերից ժամանակաց, այսինքն՝ զանցեալն ընթեռնլով, զներկայն գրելով, և զապագայիցն յուշ առնելով՝ յայտ արարին։ Ոմանք յաճախաբանութեամբ. ոմանք համառօտելով. ոմանք յառաջագիրք, և ոմանք ժամանակագիրք՝ որպէս և պատմութիւնն իւրեանց ցուցանէ ըստ ոճին իւրեանց։ Ոմանք փիլիսոփայական ճարտասանութեամբ, և ոմանք Աստուածաշունչ գիտութեամբ։ Ոմանք լի իմաստութեամբ, և ոմանք աշխարհօրէն։ Իսկ որով իւիք և է՝ մեզ ծանուցին զանցեալն. զի և մեք ներկայումս ուսանելով՝ ապագայիցդ ծանուսցուք։ Որպէս և ես վերջինս ի ծնունդս եկեղեցւոյ՝ քանքարաթաքոյց ծառայ Քրիստոսի Զաքարիա՝ գոլով ի փարթամ աւանէն Քանաքեռոյ՝ որ եկեալ բնակեցայ յԱստուածաբնակ և ի հրաշափառ սուրբ մենաստանս Յովհաննու վանից՝ առ դրունս մեծի Ամլորդւոյն Յովհաննու Կարապետին՝ առ ոտս երից երանեալ

քաջ Րաբունապետին Զաքարիայի, և նորուն յաջորդի Յովհաննէս վարդապետի՝ ամս ԽԷ, ընկալեալ աստիճան Արքեդիակօնութեան։ Եւ յամենայն օր դեգերէի՝ թէ ընդէ՞ր ոչ գոյ հաստատուն կոնդակ վանացս, որ ամենայն արձանք որմոցն գրեալ լինի ի նմա, և վարանէի միշտ առ այն։ Այլև խորհէի առնել, սակայն ոչ լինէի ձեռնհաս յաղագս երկուց. նախ՝ զի ընդ ձեռամբ տերանց էի. երկրորդ՝ ի մէջ մարմնաւոր զբաղմանց։ Բայց յետ վախճանի տերանց իմոց վերոգրելոց՝ հասկեցայ յայժմուս Առաջնորդէս ի Սարգիս վարդապետէ խոհեմէ, և բանասիրէ, արարի ինձ օժանդակ հոգին սուրբ՝ և ամենամաքուր Կոյսն Մարիամ, և միջնորդ ունելով ողջախոհ տատրակն և անմեղ աղաւնին զսուրբ Կարապետն, և սկսայ առնել ի ժամանակի ծերութեան իմոյ՝ Կ ամի կենաց իմոց՝ ի թուին ՌՃԼԶ։ Եւ թէ տացէ կարողութիւն նոյն Հոգին Սուրբ, աղօթիւք ձերովք յայտ արարից՝ որպէս և գիտեմք՝ թէ ի պատմագրաց, թէ ի յիշատակարանաց, թէ յարձանաց, և թէ ի բերոյ իմաստուն արանց և ի գիտուն ծերոց, նշանակեցից զամենայնն ստուգութեամբ. զի որք զկնի մեր գայցեն՝ ընթեռնլով ի միտ առնուն։ Որպէս և Մովսէս ասէ, հարցջի՛ր հարց քոց, և պատմեսցի քեզ ի ծերոց, և ուսցիս զամենայն՝ որպէս և կամիս։ Վասնորոյ և դու ով մտերիմ հարազատ՝ որ ընթեռնուս՝ մի՛ ապախտ համարեսցիս, զի կարողութիւն իմ այսքան է։ Ողջ լե՛ր ամենայնիւ։

## ԳԼՈՒԽ Բ.

Յաղագս եկեղեցեաց՝ Ի՛ յորում ժամանակի շինեցան, և ո՛վ էին շինօղք։

Զի թէպէտ բազումք շինեցին եկեղեցի ի բազում տեղիս յազգս Հայոց, այլ մեք նշանակեսցուք թէ՝ յորում ժամանակի

կամ յորում ձեռօք բազմացան եկեղեցիք աշխարհիս Հայոց։ Եւ զոր լուայ ի գրոց՝ յայտ արարից։ Արդ՝ յետ համբառնալոյն Քրիստոսի՝ վիճակեցաւ աշխարհս Առաքելոցն, և անկաւ աշխարհս Հայոց՝ Թադէոսի։ Եւ եկեալ առ Աբգար արքայ Հայոց և Ասորւոց, և բժշկեաց զնա ի վէրաց նորա՝ որպէս պատմէ Մովսէս Խորենացի՝ համեղ ոճով։ Եւ յետ հաւատալոյ Թագաւորին և ամենայն զօրացն, նախ անդ շինեցաւ եկեղեցի՝ ձեռամբ Թադէոսի. զի առաջին հաւատացեալքն ազգս Հայոց էր։ Եւ առաջին շինեալ եկեղեցի այն է՝ զոր շինեաց Թադէոս, և յայլ տեղիս բազմացան եկեղեցիք։ Երկրորդ՝ յետ հաւատալոյ մեծազօր և Քրիստոսապսակ արքային Տրդատայ՝ շինեցան բազում եկեղեցիք՝ ձեռամբ սուրբ Լուսաւորչին և քաջին Տրդատայ, նախ՝ հրաշափառ Կաթուղիկէն՝ ի Վաղարշապատ քաղաքի՝ զսուրբ Էջմիածինն, զՇողակաթն, զսուրբ Գայիանէն, և զսուրբ Հռիփսիմէն, որպէս պատմէ քաջ քարտուղարն Ագաթանգեղոս, որ ազգաւ Լատին։ Երրորդ՝ մեծն Ներսէս՝ Թոռն Թոռի Լուսաւորչին՝ բազմացոյց եկեղեցիս. և ահա պատմէ Բուզանդ։ Չորրորդ՝ Թարգմանիչքն Սահակ և Մեսրոպ ի բազում տեղիս շինեցին եկեղեցիս. և պատմեն ամենայն պատմագիրք։ Հինգերրորդ՝ Ներսէս Շինօղն, և ահա յայտ է, զի ի գործոյն անուանեցաւ Շինօղ՝ վասն շինելոյ բազում եկեղեցիս։ Վեցերրորդ՝ Զաքարիա սպասալար Հայոց մեծաց և Վրաց։ Սա զօրացեալ ի վերայ ամենայն ազգաց, զոր պատմէ Կիրակոս, և մեք յիւրում տեղւոջն պատմեսցուք, որ և սա շինեաց բազում վանորայս և եկեղեցիս ի գիւղորայս և յամենայն իշխանութեան իւրոյ։ Եւ ահա ասացաք վասն եկեղեցեաց, զոր ինչ և գիտէաք՝ գրեցաք զամենայն։

## ԳԼՈՒԽ Գ.

### Յաղագս շինութեան Յովհաննու վանից։

Ամենայն բանք մեր՝ զոր գրեցաք, յաղագս այսմ վանաց է, զորմէ հանդերձեալ եմք ճառել։ Քանզի բազում պատմագիրս ընթերցայ, և ոչ կարացի իմանալ՝ թէ յորմէ՞ է շինեալ սա։ Վասնորոյ ով ոք յիմաստնոց վարդապետաց տեսանէի, և հարցանէի վասն սորա՝ ասեն, մեք ի հնախօսաց գիտեմք՝ զի ի Լուսաւորչէն է շինեալ սուրբ Կարապետն։ Ընդ որս և Թաւրիզեցի Առաքել վարդապետն՝ որ տեղեակ էր ամենայն պատմագրաց, որ և արար զպատմութիւնս աւերման աշխարհիս Արարատեան ի մեծ Շահ-Աբասէն, սա պատմեաց, թէ (յետ) լուսաւորելոյ զաշխարհս՝ սուրբ Լուսաւորիչն և բարեպաշտն Տրդատ շինեցին զսուրբ Կարապետն, և եդին անդ ի նշխարաց նորա. և ինքեանք անդ յապահովս լինէին յեղանակս ամարայնոյ։ Նաև ասաց վկայ քեզ, զի ունի Գ դրունս. զի Յոյնք առնեն այնպէս, Գ դուռն է հարաւոյ կողմն, և փայտեայ գաւիթ ի վերայ՝ վասըն աղօթելոյ ռամկաց, Ա դուռն յարևմուտս, որով քահանայքն մտանէին։ Այսքան լուաք յԱռաքել վարդապետէ։ Իսկ ունիմք և այլ վկայ. զի յաւուրս մեր եկին ուխտաւորք ի Կոստանդնուպօլսոյ. և յետ համբուրելոյ զամենայն սրբութիւնսն՝ ասացին, ո՞ր է Լուսաւորչի խաչն։ Եւ մեք ցուցաք նոցա յարևմտեան դուռն ի գաւիթն՝ խաչն՝ որ կառուցեալ կայ. և ասացաք, սմա ասեմք Լուսաւորչի խաչ։ Եւ ոմն ի նոցանէ հանեալ ի գրպանաց իւրոյ առասան, և չափեաց զերկայնութիւնն և զլայնութիւն խաչին։ Եւ մեք հարցաք զպատճառն։ Եւ նա ասաց. գնացաք ի Թորդան, և ցուցին մեզ խաչ մի, և ասեն, այս սուրբ Լուսաւորիչն է շինեալ և հաստատեալ իւրն հասակաւ, սմին նման մի ևս գոյ ի գաւառն Կարբի՝ ի սուրբ ուխտն Յովհաննու վանք, և մեք չափեցաք զնա և զսա,. ահա սոյգ

նման են միմեանց՝ չափով և տեսութեամբ։ Վասնորոյ և մեք այսու համբաւօքս գիտեմք շինեալ զսա ի սուրբ Լուսաւորչէն և ի մեծէն Տրդատայ. ահա այսքանս ի համբաւոյ լուաք։

## ԳԼՈՒԽ Դ.

### Ի Գրոց վկայութիւնք։

Թէպէտ ի համբաւոյ ստոյգ գիտեմք ճշմարիտ գոլ շինեալ սա ի սուրբ Լուսաւորչէն. սակայն ի գրոց ևս գիտեմք փոքր ի շատէ, և դոյզն բանիւ գրեցից և զայն ևս։ Վասն զի ի Կոնդակն Տաթևու գրեալ է, թէ՝ «Մեծ Կաթուղիկոսն Մուշէ՝ գնացեալ համբուրեաց զդուռն եկեղեցւոյն Տաթևու, և նստաւ. և առաքեաց առ Երիցակ զայրւոյ որդին(՞) Յովհաննու վանից, որ յոտին Արագածու, որ էր դպրապետ և նոտար իւր»։ Այս Մուշէ վեշտասաներրորդ Կաթուղիկոս էր յետ Լուսաւորչին՝ յառաջ քան զԹուականն մեր։ Վասնորոյ գիտեմք շինեալ ի սուրբ Լուսաւորչէն զՅովհաննու վանք։ Եւ այլ ևս վկայութիւնք գրոց գոն։ Եւ Թագաւորութեանց և մնացորդաց գիրք մի կայ ի վանքս, և յիշատակարանն գրեալ է ի նմա այսպէս. «Աստանօր յանկ ելեալ աւարտեցաւ հրեշտակապատում տառս Աստուածային մատենից, որ պատմէ զվէպս անցեալ ժամանակաց ընտրեալ յառաջագոյն ազգին Իսրայէլի, զկարգ Թագաւորացն, և զյորովայնէ կոչումն սրբոց մարգարէից, և կոչի Թագաւորութեան գիրք. առ սմին եդեալ զմնացորդսն, և զմնացորդաց մնացորդսն. զոր յոյժ ցանկացող եղեալ ոմն ի յընտրեալ քահանայից Աստուծոյ Աշոտ կոչեցեալ, և ի խնդիր ելեալ իբրև ական պատուականի, ետ գծագրել զսա ի յարդար ստացուածոց իւրոց։ Քանզի սոյն այս այր ընտրեալ գոլով ըստ մարմնական քաղաքականութեան ի հռչակեալ մայրաքաղաքէն Դըւնայ, կեցեալ սակաւ ինչ ամս ընդ ամուսնութեան կարգս, և մնացեալ

այրի՝ ոչ ունելով զաւակ մարմնական, յանապատս փութացեալ, զաւակ ստանալով զառաս Աստուածային մատենից. որ և ստացեալ զսա ձեռամբ տրպի և աղկաղկի Գէորգ կոչեցելոյ՝ մականուամբ Մանկէն՝ ի տիս համբակութեան, ի մայրաքաղաքէն Անւոյ եկեալ և պանտխտացեալ ի դրան սրբոյ Կարապետիս։ Նա և եղև գործառնութիւնս այսմ իրի յայսմ ամի, յորում վերստին նորոգեցաւ սուրբ Կարապետս մեծահռչակ՝ քարամբ պատուականօք. քանզի յառաջ փայտիւ էր ծածկեալ զլուխ սորա, զոր այս այր Աշոտ բազում աշխատութիւն յանձն առեալ՝ կիսատ Թիակօքն զկիրն ի վեր հանելով՝ տայր ի շալակըս եղբարցն տանել։ Արդ՝ ընդհովանեաւ սորին սրբոյ Կարապետիս գծագրեալ եղև այս քաղցրաճաշակ պատմութիւնս՝ ի մէջ բազմախուռն միանձնացեալ եղբայրութեանս, և տուաւ ի սոյն եղբայրանոցս սուրբ, յիշատակ հոգւոյ իւրոյ։ Նա և յետոյ եղև հայր վանացս յամի Թուականութեանս Հայոց՝ նոր եղելոյ յերկրորդ ամի, յաւուրս Տեառն Մովսիսի Կաթուղիկոսի՝ որ ի Վաղարշապատ։ Շնորհողին ամենայն բարեաց Աստուծոյ փառք յաւիտեանս. ամէն։ Ընդ նմին և Գէորգ մանկիկս մի՛ անտես առնէք յիշել յաղօթս,,։ Այսքանս ի գրոց գիտեմք շինեալ սուրբ Կարապետն ի սուրբ Լուսաւորչէն։

## ԳԼՈՒԽ Ն.

### Թէ ընդէ՞ր կոչէն անուն է սմա։

Որպէս և բազում անգամ հարցեալ եմք յԱռաքել վարդապետէն, և ուսեալ եմ ի նմանէ, հարցաք և զայս ևս, թէ Մարտիրոսաց ճառընտիրն և այլք՝ Սուղի վանք, և կամ Սովէ վանք ասեն սմա. իսկ Կոնդակն Տաթևու և Կիրակոս, և Թումա, և Յայսմաւուրքն, և այլք՝ Յովհաննու վանք։ Պատասխանի ետ վարդապետն՝ և ասէ, յորժամ սուրբ Լուսաւո-

րիչն շինեաց զսա, Սիւղոս ոմն վերակացու կարգեաց, և անուամբ նորա կոչեցաւ Սիւղի-վանք։ Իսկ յաւուրս Թարգմանչացն՝ Ղազար Փարպեցին էր Առաջնորդ, և գրէր զպատմութիւնն, Յովհան ոմն կարգեցին տեսուչ, ուստի կոչեցաւ Յովհաննու վանք։ Եւ յաւուրս Մեծին Ներսիսի ուրուկք և գոթիք՝ որք նքողեալք էին ի սովոյ, անդ ժողովեցան, և անուանեցաւ Սովի վանք։ Ահա յայտնեցաք զերկանուն լինելն, զոր լուաք յԱռաքեալ վարդապետէ։ Բայց Սովի-վանք ոչ յիշի ի բազում տեղիս։

## ԳԼՈՒԽ Զ.

### Յաղագս Թէմի և վիճակի վանացս։

Զանիւ և յօժարութեամբ մտեալ եմ յասպարէզ բանիս առ ի ցուցանել և յայտ բերել ստուգութեամբ սակս յառաջեկայ գործոյս։ Եւ զի փոքր ի շատէ ծանուցաք զշինօղ վանացըս, և զանուանսն նոցա։ Եւ այժմ կամիմ յուշ առնել զթէմ և զվիճակ նորա՝ թէ ի գրոց պատմութեանց, թէ յարձանաց, թէ ի լրոյ համբաւոց՝ համառօտեցից. զի մի՛ վարկպարազի լիցի զաշխատանս իմ։ Նախ ասացից ի համբաւոյ՝ զոր լուայ ի նոյն Առաքել վարդապետէ։ Զի ասէր, թէ յետ շինելոյ սուրբ Կարապետին, գրեաց կոնդակ սուրբ Լուսաւորիչն, և հաստատեաց կանոնաւ, զի յՆրասխաձորոյ մինչև ցՋուրատան գետ՝ լինել թէմ բաժնի վանացս։ Այլև ծեր Եպիսկոպոս մի կայր ի վանքս՝ Յովհաննէս անուն՝ Կարբեցի՝ մականուն Գայլ, որ ժամանակ ինչ Առաջնորդ լեալ էր վանացս, ճարտար տօմարագէտ։ Նա ասէր՝ թէ մեծ Կոնդակ գիրք մի կայր ի վանքս, զի ի սրբոց Թարգմանչացն մինչև ցմեզ ամենայն Առաջնորդաց անուանքն և արարմունքն, և զոր ինչ յիշատակ տուեալ էր ի նոցունց ժամանակաց, զամենայն գրեալ կայր

անդ, և զկէսն առանց գրելոյ թուղթ, զի յետին առաջնորդքն գրեսցեն զանուանս և զարարեալս իւրեանց։ Զայս կոնդակն կայր՝ չասէր՝ մինչև ցմեզ ։ Եւ յորժամ Ջալալիքն աւար առին վանքս, զայն կոնդակն անյայտ եղև. ոչ գիտեմք՝ թէ Նոքա՞ տարին՝ թէ այլք։ Այլ զի՞նչ և իցէ՝ անյայտ եղև։ Ի մէջ այնմ գրքի գրեալ էր՝ ի Քասաղ գետոյ մինչև ցԱխուրեան գետ՝ թէմ և վիճակ լեալ սուրբ Կարապետիս։ Այքանս ի Գայլէն։ Երէց մի Վարդան անուն՝ ի գաւառէն Նգայ՝ ի գեղջէն Վարդաբլոյ՝ արուեստիւ քարահատ, ասէր, ես ուսանէի ի Յօհանավանք. բազում անգամ գնացի ի Շիրակաւան, և հաս և իրաւունքն ժողովեալ բերէի ի Յօհանավանք։ Այս Վարդան երէց զամենայն անուանս Ապարանու գեղօրէիցն ասաց Հայերէն, և ես գրեցի։ Այր մի բարեպաշտօն՝ Գալուստ անուն՝ ի գաւառէն Ապարանուց՝ ի գեղջէն Վարդենուց,(ասէ) ես ընդ Գրիգոր վարդապետին՝ որ էր Առաջնորդ Յօհաննու վանից, ի Շիրակայ բերեալ եմք զպտղին և զորբադրամն, զիւղն և զպանիր, և զամենայն հասն վանիցն ի Յօհաննավանք՝ սայլիւ մինչև ցԱրդկան՝ որ ասի Աէլախրան, և անտի գրաստով տարեալ եմք ի վանքն, վասնզի ես մշակ էի վանացն։ Մարգարէ անուն ոմն ի Նգայ, ի գեղջէն Արնագեղոյ՝ ասէր, մեք բնակէաք ի Ճարճակիս գեղ, և հայր իմ անդ մեռաւ, և հոգեբաժին նորա տարաք ի Յօհանավանք՝ ճրագակալ մի՝ հինգ աչքի, և տուաք Գրիգոր վարդապետին։ Եւ դեռ ևս կայ ի վանքս, և պահեմք զնա վասն վկայութեան։ Թորոս ոմն ի Նգայ՝ ի Խոտավէտ գեղջէ, այր շատագէտ և ճարտարախօս. սա բազում ինչ պատմեաց, թէ մեք ևս բնակէաք ի Ճարճակիս, և ես փոքրաւոր էի մաքսաւորացն՝ որք ի Քասաղ. և յորժամ Գրիգոր վարդապետն և կամ ի միաբանիցն գնային ի Շիրակաւան, զի զհասն վանից ժողովեալ տարցեն ի Յօհանավանք, բերէին մեզ զինի և միրգ, և մեք ոչ առնուաք զսակ մաքսին։ Եւ որդի Թորոսին Տէր Կիրակոս, որ եղև Եպիսկոպոս, և նստաւ Առաջնորդ Տե-

զերդ, զոր ինչ լուեալ էր ի հօրէն իւրմէ Թորոսէ սակս Յօհաննու վանից, ձեռագրով եւտ մեզ. և ահաւասիկ ունիմք զայն արդեօք: Յօհաննէս ոմն՝ ի նոյն գեղջէ Խոտավիտոյ՝ ասէր, յորժամ Փիլիպպոս Կաթուղիկոսն գնաց յԱրագած, զի գջրր-ուեալ ջուրսն խառնեսցէ ընդ Քասաղ գետն, և Ապարանցի մելիք Տէր Յովսափն և ես ընդ նմա էաք. եհարց Կաթուղիկոսն զմելիքն, թէ՝ այս երկիրս որո՞ վանքի էր թէմ: Ասէ Մելիքն, ի Քասաղ գեղջէ մինչև ցՊ֊փչաղն՝ սուրբ Կարապետին էր թէմ, և Շիրակաւան հետ Մարմառաշինու ի միասին Բ վանացն էր սուրբ Կարապետին և Մարմարաշինու: Այսքան և այլ բազում գոն վկայութիւնք ի լոյս, և ոչ գրեցաք, զի մի՛ լեցի շատախօսութիւն: Այսուհետև զոր գիտեմք ի գրոց, զայն գրեմք:

## ԳԼՈՒԽ Ը.

### Վկայութիւնք ի գրոց՝ թէ ո՞ր է թէմն սորա:

Վասնզի յանձն առաք առ ի յայտնել սակս սուրբ մենաստանիս, և զոր ինչ գիտեմք ՚ի գրոց յաղագս թէմի՝ ցուցից և զայն առանց ձանձրանալոյ: Զոքայ ես ի սուրբ ուխտն Սանահին ի պէտս ինչ-իրաց, և էր Առաջնորդ Սարգիս Եպիսկոպոս յազատ ազգէ, այր խոհեմ և յոյժ հանճարեղ. և խօսեցաք ընդ նմա ի գրոց: Եւ նա ի կարգ բանիցն ասաց: Է մեզ գիրք մի հին, և ի բազում տեղիս յիշէ Յօհանավանք: Եւ մեք խնդրեցաք զայն. որ և բերեալ ետ ինձ հին և վաղեմի գիրք փըտեալ և մեծ՝ որ ոչ կարացի զամենայն ընթեռնուլ. և զոր ինչ ողջ էր՝ զայն սկիզբն արարի յընթեռնուլ մինչև ցաւարտ, և զպիտանին գրեցի՝ և վեր առի այսքանս: „Եւ մեռաւ հայրն Մարմառաշինու, և նստաւ ի տեղի նորա հայր զարմանալին և սքանչելագործ այրն Աստուծոյ Երեմիայ, այր պարկեշտ և

սուրբ, և գիտուն, զարդարեալ ամենայն առաքինութեամբ՝ կրկին մարդով՝ ներքնօք և արտաքնօք, և ունէր հրաշս ևս, զոր մի ի բազմացն ճառեցից: Մերձ ի վանացն գոյր ջրաժողով փոքրիկ ծովակ, և սուրբն գնացեալ առ ափն ծովակին՝ աղօ-թէր: Եւ եկեալ մի յաշակերտաց նորա ի միւս կողմն ծովակին՝ ձայնէր առ հայրն: Եւ նա ոչ լսէր ձայն աշակերտին, վասնզի բազմութիւն գորտաց աղաղակէին: Իսկ սքանչելի այրն Աստու-ծոյ Երեմիայ սաստեալ գորտացն՝ ասէ, լռեցէ՛ք: Իսկոյն լռեցան գորտքն. և մինչև ցայսօր կան լուռ՝ և ոչ խօսին,,: Եւ այլ բա-զում բանք են գրեալ: Եւ մեք այսքանս կարևոր համարեցաք գրել: Եւ յետ բազմաց զայս ինչ ևս գրեալ էր: ''Ի սոյն ժամա-նակս սքանչելին Երեմիայ՝ հայրն Մարմառաշինու՝ թողեալ զտուն իւր ձեռնասուն աշակերտին իւրոյ Սոսթենեայ, և ինքն գնաց ի սուրբ և ի հռչակաւոր մենաստանն՝ յանապատն Յօ-հաննու վանից՝ առ զարմանալին Մխիթար հայր անապատին. և անդ ճգնեալ, և անդ վախճանեալ, և անդ թաղեցաւ: Եւ ի ժամ մահուն եկեալ Սոսթենէս աշակերտ նորա, ընդ նմա և Գրիգոր վարդապետ առ Սկայորդին(°), և թաղեցին զնա հան-դերձ հայր Մխիթարիւ. և դարձեալ եդին դաշինս ի մէջ իւր-եանց, զի սիրով լիցին առ միմեանս, և զվիճակեալ թէման եր-կուց վանացն ի միասին լիցին, և մի՛ հարստահարեսցեն զմիմեա-նս՝ ի գետոյն Բասաղու մինչև ցղուռն Կարուց և Նորաղկոցաց. և հայրն Յօհաննու վանից իշխօղ լիցի Մարմառաշինու: Եւ գլեցին կոնդակն Յօհաննու վանից, և եդին կնիք Սոսթենէս. և Գրիգոր վարդապետքն, զոր գրեցաք, Վաղթանկ իշխան, և ազատքն Արուճայ և Թալինայ, և այլք՝ որք գտան անդ. և կանգնեցին խաչ, և արձան գրեցին ի վերայ գերեզմանին Եր-եմեայ, և գնացին յիւրաքանչիւր տեղիս: Եւ գիրն՝ որ գրած էր ի վերայ գերեզմանին՝ այս է. ՆՁԲ թուին, ես հայր Երե-միա՝ Առաջնորդ սուրբ ուխտին Մարմառաշինու՝ օրհնեցի զվա-նքս միայնութեան, աւանդեցի զվերակացութիւն ուխտին իմ

անդրանիկն իւ՛ում Մոսթենէսի, և ես եկեալ բ՛անկեցայ յանապատի աստ, և ի տեղւոջս ընկալայ զփոխումն. արդ աղաչեմ՝ մի՛շեսջի՛ք ի Քրիստոս։,,

## ԳԼՈՒԽ Բ.

### Վասն Զաքարեայ զօրավարին։

Բանզի յառաջագոյն խոստացաք առնել զպատմութիւն Զաքարէ զօրավարի, թէ ուստի և կամ որպէս էր. զի համառօտ պատմէ Կիրակոս։ Ի յերկրին Բաբիլացւոց՝ այր ոմն քրիստոնեայ՝ Զաքարիա անուն՝ կարգեալ իշխան յազգէն Մարաց, և վշտացեալ ի նոցանէ, ոչ կարաց կեալ անդէն։ Նա գրտեալ ժամանակ, առնու ամենայն ընդոծինս, ծառայս և աղախինս, անիւ բանակի իւրոյ հաստուածեալ ի Բաբիլական երկրէն, անկանի առ տէրութիւնն Պարսից։ Նա անտի գայ մեղմով և մտանէ ի սահմանս Հայոց, և գնայ յերկիրն Վրաց։ Նա անդ գտեալ իշխանութիւն ի թագաւորացն Վրաց, մեծանայ յոյժ։ Նա յետ նորա որդի իւր Վահրամ։ Նա յետ նորա՝ որդի իւր Սարգիս, որ և եղև իշխան մեծ։ Սմա եղեն որդիք երկու, անուն առաջնոյն Զաքարէ, և երկրորդին Իւանէ. և սիրեցեալք եղեն սոքա յաչս թագուհւոյն Վրաց, որ Թամարն կոչիւր, դուստր Գէորգայ քաջի՝ որդւոյ Դեմետրեայ։ Սա սիրեաց զնոսա. և արար Իւանէ Աթապակ, և Զաքարիա կարգեաց զօրավար և սպասալար Հայոց մեծաց և Վրաց. և ետ ի ձեռս նորա զզօրս իւր։ Նա նա իսկոյն զօրացաւ մեծաւ զօրութեամբ։ Իսկ ինքն Զաքարէ ժողովեալ զօրս ամենայն Հայոց և Վրաց, և գնացեալ էառ զբազում քաղաքս ի տաճկաց և ի Պարսից, ի Բաղէշոյ մինչև յԱրտաւիլ հնազանդ արար ի ներքոյ ձեռաց թագաւորութեանն Վրաց. ի հարկի կացոյց և զՍուլթանն Կարնոյ։ Նա զոր երկեր և էառ, շինեաց անդ եկեղեցի, մանաւ

ւանդ յեզերսն Արագածու, նախ զՅօհաննու վանք, զԱռի-ճու վանք, զՏեղերու վանք, զՅուշւոյ վանք, զՍաղմոսավանք, և այլ բազում վանս և եկեղեցիս ի գիւղորայս: Եւ ապա ինքն Զաքարէ վախճանեալ փոխեցաւ յանանց թագաւորութիւնն, և թաղեցաւ ի Սանահին. և զտեղի նորա կալաւ որդի իւր՝ որոյ անունն էր Շահանշահ:

## ԳԼՈՒԽ Թ.

### Վասն շինութեան Յօհաննու վանից:

Բայց զի՝ որպէս ասացաք գալուստ առաջնոյն Զաքարիայի ամենայն ծառայիւք, ունէր և ծառայ մի ևս Սարգիս անուն՝ յազգէ Աժդահակայ՝ որ Վաչուտանց կոչէին: Այս Սարգիս տևեաց մինչև ցվերջին Զաքարիա, և ծնաւ նա որդի մի, և անուանեցաւ Վաչէ. որ սիրեցաւ ի Զաքարէէ, և եղև հաւատարիմ տան նորա: Եւ վասն միամիտ ծառայութեան իւրոյ՝ կարգեաց զնա իշխանաց իշխան, և ետ նմա մեծութիւն և իշխանութիւն ամենայն Արագածոտանն, Շիրակայ, Նգայ, Անբերդու՝ և ամենայն եզերաց նորա՝ մինչև ցԵրասխաձոր: Եւ հրամայեաց շինել եկեղեցիս և վանորայս, զոր ի վերոյ ասացաք: Նախ և առաջ հրաշափառ մենաստանն Յօհաննուվանից՝ կից ընդ հին եկեղեցւոյն, որ յանուն սուրբ Կարապետին: Իսկ մեծըն Վաչէ քակեաց զփայտեայ գաւիթն՝ որ ի հարաւոյ կողմն զերկու դուռնն խցեալ, և զմինն թողեալ: Եւ ապա սկսաւ շինել հաստ և երկայն քարիւ, կարմիր և սեաւ կոփածու: Եւ սիւնք չորք՝ ի չորեսին կողմանս, յորոց վերայ կամարքն չորք՝ սեաւ և երկայն . . . աւորօք, և կամարքն ի վերայ նոցա՝ սեաւ և կարմիր, և ի կողմն հարաւոյ՝ երկուս գրաբեմբս գեղեցկաշէնս: Եւ ի գլուխ աւագ խորանին՝ կարգ մի կարմիր քար՝ և կարգ մի սեաւ: Եւ ի սիրտ բեմբին աստղանման փորածու նկա-

րեալ. և յարևմտեան թևն և առաստաղն կարգ մի սեաւ՝ և կարգ մի կարմիր՝ կոճկէն՝ գեղեցիկ յարմարեալ։ Չորս լուսամուտ ի հարաւոյ կողմն, Գ. բոլոր, Ա. երկայն, մին աւագ խորանին, և երեքն յարևմտեան կողմն, Ա. բոլոր, Բ. երկայն, չորս ի Կաթուղիկէն։ Երկու խորան աւագ խորանին յաջմէ և յահեկէ. զոր քարեայ աստիճանօք ելանեն։ Երկու այլ ի ներքոյ նոցա՝ երկու յարևմտեան կողմն՝ յաջմէ և յահեկէ դրան։ Երկու այլ ի վերայ նոցա, զոր քարեայ սանդխով ելանեն մետասան աստիճանօք։ Եւ աւազան ըստ պատշաճին՝ ի հիւսիսոյ կողմն։ Մ՚ին դուռն յարևմուտս. մին ի մէջ հին եկեղեցւոյն ի հիւսիսոյ կողմն։ Եւ ամենայն խորանացն մէն մի լուսամուտ, և սեղան կառուցեալ ի տեղի պատարագի։ Իսկ արտաքոյ կողմանէ Բ. ղաւղէղ[1]) ի հարաւակողմն՝ գեղեցիկ փորուածոյ. Բ. յարևելից կողմըն. և ի յարևելեան թևն աղիւսաձև կարմիր և սեաւ քար. և ի ներքոյ նորա՝ որպէս կշիռս. լուծն և թաթքն միաչափ. և ի հարաւոյ կողմն խաչ ի վերայ լուսամտին, և յարևմտեանն նոյնպէս։ Ապաթոռքն փորածու նկար, թէ չորս թևքն, թէ չորեքին ֆօ—ղէքն[2]), թէ ներքոյ գտակին։ Իսկ զամենայն դռնսն տափակ, և ի պարանոց Կաթուղիկէին մետասան սիւնք։ Նոյնպէս ի գտակն մետասան ելևէջ, և խաչաթոռն նման չորից կերպիցըն կենդանեաց, և ի վերայ նորա խաչն Աստուածընկալ ի փըրկութիւն հոգւոց մերոց. և աւարտեցաւ ՌԿԶ. թուին. և օրհնեալ անուանեցաւ սուրբ Կաթուղիկէ՝ գեղեցիկ և զարմացուցիչ տեսողացն, և խորան և տաճար բնակարան փառաց որդւոյն Աստուծոյ, յորում պատարագի Քրիստոս Գառն Աստուծոյ։ Եւ ինքն իշխանն Վաչէ վախճանեալ դնի ի մէջ եկեղեցւոյն՝ առաջի գրաբեմբին՝ ի դրան խորանին՝ ի հարաւոյ կողմն. որոյ հանգիստ և արքայութիւն պարգևեսցի ի Քրիստոսէ

---

(1) Դժուարացաք իմանալ զբառս զայս և զնշանակութիւն սորա։

(2) Փօ—ղ. բերան, 2) շուրթն, 3) ռունք։

օրհնելոյն յաւիտեանս, ամէն։ Նաև զտեղի նորա կոչեաւ որդէ նորա Բուրդ՝ հրամանաւ Շահնշահին։

## ԳԼՈՒԽ Ժ.

### Վասն շինութեան գաւթին։

Ընդ աւուրսն ընդ այնոսիկ ելին ի Հոնաց աշխարհէն ազգն Նետողաց՝ որ կոչին Թաթար, և տիրեցին Հայոց և Վրաց։ Նուաստացաւ և թագաւորութիւնն Վրաց, և էր ընդ ձեռամբ կնոջ միոյ՝ որոյ անուն էր Ռուզուքան՝ դուստր Թամարին, զոր ի վերոյ յիշեցաք, եղբօր Լաշային, թոռն Գէորգեայ թագաւորին Վրաց. իբրև ետես նա՝ թէ ոչ կարէ ընդդէմ կալ նոցա, յանձն առնէ զերկիր իւր Շահնշահի, և ինքն փախչի յԱփխազս։ Իսկ Շահնշահ եթէ կամաւ՝ եթէ ակամայ՝ հնազանդի ազգին Նետողաց, և հաճոյանայ նոցա։ Նաև իսկոյն հրամայէ Բրտոյ ծառայի իւրոյ, որ կարգեալ էր իշխան ի Նսմանէ ի տեղի հօրն, զի շինեսցէ գաւիթ ի վերայ եկեղեցեացս, զոր հայր իւր շինեալ էր։ Իսկ իշխանն Բուրտ իբրև էառ զհրամանս զայս, իսկոյն ժողովէ զամենայն քարահատսն, և սկսանի շինել գաւիթ մեծ ի վերայ Կաթուղիկէին՝ յարևմտեան կողմն, ի թուին ՈՂԹ՝ հրաշափառ և մեծածախ, ինն հոյակօք՝ ի վերայ չորից սեանց, այլևայլ յօրինուածօք՝ սեաւ քարիւ և զարմանալի լուսանցօք խաչաձևիւք։ Նաև ի վերայ տանեացն երկոտասան սիւն։ Նաև ի վերայ սեանցն զգտակն՝ դոնքն բոլոր։ Նաև ի գլուխ գտակին խաչաթոռն։ Նաև խաչ երկաթեայ ի վերայ նորա մարդաչափ։ Նաև ի մէջ սեանցն կախեալ զանգակ զարթուցիչ։ Նաև աւարտեցաւ ամ մի՝ ի Չ թուին։ Նաև ինքն իշխանն Բուրտ թողեալ զմարմնաւոր փառսն, հետևեցաւ անանց փառացն։ Նաև գնացեալ ի Սևան կղզին, և զգեցաւ հանդերձ միայնակեցի, և եղև կրօնաւոր. և վախճանեցաւ անդ, և կենդանա-

ցաւ առ Քրիստոս։ Եւ թաղեցաւ ի գաւիթ եկեղեցւոյն, որ յանուն սուրբ Կարապետին. զի յարիցէ փառօք, և պսակեսցի ի Քրիստոսէ։ Եւ յիշատակ նորա եղիցի օրհնութեամբ։ Եւ ի տեղի նորա նստաւ որդի իւր, որոյ անուն էր Հասան։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### Յաղագս Հախմէց և յիշատակաց։

Փառաւորեցաւ հրաշափառ և գերահռչակ սուրբ մենաստանն Յօհաննու վանից՝ ձեռամբ մեծամեծ իշխանացն Վաչէի և Քրդոյ՝ ամենայն կարգօք հոգևորօք և մարմնաւորօք, պաշտամամբ և պատարագօք, սաղմոսերգութեամբ և ամենայն բարեձևութեամբ։ Եւ ահա ամենայն ոք ցանկայր փութալ գալ և տեսանել զկարգաւորութիւն վանացն՝ և զմիաբանութիւն բազմութեան եղբարցն։ Եւ ի տեսանելն զայս ամենայն ուղղութիւնս, ամենայն ոք ցանկայր տալ զինչս՝ և զստացուածս՝ և հարարքս, ոմանք այգի, և ոմանք հող. ոմանք արարք, և ոմանք գիւղ. ոմանք անասուն, և ոմանք դրամս. ոմանք զինքեանս, և այլք զորդիս. ոմանք անօթս եկեղեցւոյ, և այլք զինչս մարմնաւորս։ Եւ այսպէս մեծացաւ և փարթամացաւ սուրբ ուխտըն Յօհաննու վանից՝ հրաշափառապէս։ Իսկ որք ետուն զինչըս, գրեցին յորմունս եկեղեցեացն՝ և յիշատակարանս գրոց. և ահա դեռ ևս կան, և երևին դեռ ևս արձանքն և զտուեալ յիշատակսն յորմունսն։ Վասն որոյ առեալ մեր զայնոքիկ՝ գրեցաք ի Կոնդակի, թէ արձանքն՝ որ յորմունս, և թէ յիշատակարանս գրոց ի բաց հանաք։ Եւ որոց և թուականն ի գլուխ արձանին էր, և մեք նոյնպէս ի գլուխն գրեցաք, թէ սկիզբն, թէ մէջն, և թէ վերջն, նոյնպէս և մեք գրեցաք. որ ոչ գոյր թուական, զնոյն և մեք ոչ գրեցաք, զի ընթեռնլով զարձանն. և զկոնդակն՝ ոչ յարին առ միմեանս, և զմեզ սպառնիցեն՝

տուա համարելով զմեզ։ Եւ որք ինչս էին տուեալ, մեք զայն ոչ գրեցաք. զի գրեալ են նոքա ի գիրն կենաց։ Եւ զոր ինչ գրեցաք, ի կարգին զթուականն, զի մի՛ յետ և յառաջ լիցի թուականն, այլ կարգաւ զամենայն, թէ ի տաճարն, և թէ ի գաւիթն, մեք զկարգն ուղղեցաք։ Նոյնպէս նշանակեցաք զտեղին, թէ այս ինչ է գրեալ յայս ինչ տեղւոջ, թէ ի գաւիթն, և թէ ի տաճարն՝ զտեղին նշանակեցաք, զի յընթեռնուլ կոնդակիս՝ դիւրեաւ գտցեն յորմունսն, և մի՛ վրիպիցեն։ Նաև զնկարագիրն թէև կարի աշխարհօրէն էր և անյարմար, և մեք զնոյն գրեցաք, և զշարադրութիւնն ոչ փոխեցաք, զի մի՛ ընթերցողքն այպանիցեն զմեզ, և զաշխատանս իմ ապախտ առնիցեն։ Այլ որպէս և էին՝ նոյնպէս գրեցաք. որք են այսք։

Ի տաճարն է Գլուխ աւանդութեանս։

ՈԿԵ թուին. Շնորհօք բարերարին Աստուծոյ ես Վահրամ՝ որդի Եղբայրկան, և զուգակից իմ Խայիկ՝ ի սկիզբն շինութեան եկեղեցւոյս՝ տուաք զամենայն ստացուածս մեր ի ծախս սորա՝ և զԴպրավանաց այգին։ Եւ Առաջնորդք սուրբ ուխտիս սահմանեցին յամենայն ամի շրջագայութեան՝ Գ. օր ժամ՝ զնոր եկեղեցիքս, զԽորագալոյց, զԶատիկն, և զգալուստ Հոգւոյն՝ յանուն մեր պատարագել զՔրիստոս. Ա օր ինձ, Ա օր Խայիկանն. Ա օր բոլոր ազգին մերոյ։ Կատարիչք գրոյս օրհնին ի Քրիստոսէ. և որք խափանեն զԽ եկեղեցիս, դատին յԱստուծոյ և յամենայն սրբոց նորա. ամէն։

Ի տաճարն է հիւսիսոյ կողմն։

ՈԿԶ. ի ծագմանէ շնորհացն Աստուծոյ, ի հիմնարկել և ի լուսաւորել եկեղեցեացս գաւառիս Արարատու՝ ի ձեռն երկուց եղբարց հարազատաց Զաքարիայի և Իւանէի, և արդարա-

ծնունդ զաւակաց նոցա Շահանշահի և Աւագի, ես Վաչէ իշխանաց իշխան՝ որդի Սարգսի Վաչուտանց, սիրեցեալ ի սոցանէ մեծաւ պատուով, վասն հաւատարիմ ծառայութեան իմոյ կոչեցայ ի վերակացութիւն գաւառիս, միաբանեցայ հանդերձ զուգակցաւ իմով Մամախաթունաւ սուրբ ուխտիս վանացս Յօհաննու, բազում տրօք և ընծայիւք օգնական եղաք ի շինութիւն մեծափառ նորակերտիս։ Եւ առաջնորդք սուրբ ուխտիս հաստատեցին յամենայն ամի պատարագել զՔրիստոս յանուն իմ, զտօն Ղազարու, զամենայն եկեղեցիքս՝ զհին և զնոր, և զօր Խաչգիւտին՝ Մամախաթունին պատարագել զՔրիստոս, զհին և զնոր եկեղեցիքս անխափան՝ մինչև ի գալուստ որդւոյն Աստուծոյ։ Եւ որք չառնեն, դատին ի Քրիստոսէ։

Արտաքոյ փաճակին է վերայ դրան արեւմտեան։

Շնորհօք բարերարին Աստուծոյ՝ Տէր Կոստանդին կաթուղիկոս Հայոց՝ ի թուին ՈԳԲ. յիշխանութեան Շահանշահի՝ որդւոյ Զաքարիայի, և ի մերում նահանգիս Քրտին՝ որդւոյ Վաչէի, միաբանեցայ սուրբ ուխտիս Յօհաննու, և ետու Ամբերդու երկիրս սեպհական վիճակ սուրբ Կարապետիս ի յԱպարանուց՝ ընդ որ բաժանի գետն Քասաղ՝ մինչև յԱշնակ։ Եւ սպասաւորք սորա Մկրտիչ Եպիսկոպոս և եղբարքս խոստացան կատարել զպէշտակս մեր՝ յետ ելից մեր՝ Բ քառասունք, զամենայն ի կարգին, և սուրբ Կաթուղիկէն Թ. խորանաւ՝ յամենայն ամի պատարագել զՔրիստոս ի տօնի Տեառնընդառաջին. եթէ ոք յազատաց կամ յիշխանաց հանել ջանայ զվիճակս ի սուրբ Կարապետէս, անէծս առցեն յԱստուծոյ, և յերից սուրբ ժողովոյն, և ի սուրբ Գրիգորի Լուսաւորչի աջէս, և ի մէնջ. ամէն։

Ի գաւթին է հիւսիսոյ կողմն։

Յամի ՈՂԹ. ի տէրութեան Շահանշահի որդւոյ մեծին Զաքարիայի՝ ես Քուրդ՝ որդի Վաչէի, և ամուսին իմ Խոռիշահ դուստր Մարծպանայ և Մամքանայ, խնամօքն Աստուծոյ հաճոյ եղեալ այլազգի զօրացն Նետողաց, զանձն իմ եդի ի վերայ եկեղեցեացն Հայոց. և վասն առ Աստուած սիրոյն կրկին հաստատեցաք զմիաբանութիւն մեր առ սուրբ Կարապետս. և եղաք[3]) սկիզբն մեծափառ տանս, և բազում արդեամբք հասուցաք ի կատար։ Նոյն սպասաւորք սրբոյս հաստատեցին ի տարւոջն Ի օր ժամ. Ժ ինձ Քրդիս, և Ժ Խոռիշահին. որչափ կենդանի ենք՝ Ժ Վաչէի, և Ժ Մամախաթունի, և յետ ելից մերոց՝ մեզ ի Նոր Կիւրակէին սկսանին, և անպակաս առնեն։ Որ խափանէ, մեր մեղացն պարտական է։ Կատարիչք գըրոյս օրհնին յԱստուծոյ. ամէն։

Արտաքոյ գաւթին է գլուխ դրանն։

Ի թուին ՉԻ. ի կամս Աստուծոյ հզօրին, այս իմ հրաման և արձան սահմանի Շահնշահի, մանաւանդ որ Թայխուցէսի՝ որդւոյ Զաքարիայի, Ամիր սպասալարի Հայոց մեծաց և Վրաց, զոր գրեցի իմ շինած ժամատունս, տուի զգեղն Շալուաշէն ի սուրբ Կարապետս՝ յիշատակ հոգւոյ իմոյ և Խոշաքին[4]), և յարեւշատութիւն որդւոց մերոց. և կրկին հաստատեցի զիմ հօրն հրամանքն՝ գիրն որ գրած են։ Նս[5]) ի ժամատունս որ տըւեալ էր զգեղն Որդկան և զՏաճկամարգն, և ազատ էր արարեալ զամենայն հայրենիք սոցա՝ որ ի գաւառիս, և հաստատեցի, որ Աբեղայ որ այրօղ լինի և աղմուկ անէ, գիշերօթ

---

(3) Գուցէ եդաք։

(4) Խորիշահին։

(5) Գուցէ Նա։

չտան առնել, ստացուածն փէշքէշն եղիցի։ Արդ՝ եթէ ոք ի թա-
գաւորաց կամ յիշխանաց հանել ջանայ, մեր մեղացն պարտա-
կան եղիցի. ամէն։

Ի գաւիթն Հայրապետոյ որմն։

Ի թուին ՉԻԸ։ Շնորհօք բարերարին Աստուծոյ՝ ի տէրու-
թեանն Հասանայ, մեք Վարդան վարդապետ և Մխիթարիչ
ծառայք Քրիստոսի արարաք արդիւնս բազում ի փրկութիւն
հոգւոց մերոց. տուաք եկեղեցւոյս զԿոնթեղունն, որ էր հայ-
րենիք սուրբ Կարապետիս։ Շինեցաք հնձանս մեծածախս։
Արարաք քշոցս արծաթիս՝ պատեալ ոսկով։ Եւ սպասաւորք
սորքոյս՝ Տէր Համազասպ և այլ եղբարք խոստացան ի տարին
ԺԲ ժամ՝ ի տօնի Անդրէի առաքելոյ, Զ ինձ վարդապետիս,
Զ օր Մխիթարչին։ Արդ՝ եթէ ոք յառաջնորդաց կամ պա-
րոնաց հանել ջանայ զընծայս մեր յեկեղեցւոյս, նզովեսցի մար-
դըն այն յԱստուծոյ՝ և յերից սուրբ ժողովոյն, և մեր և բովան-
դակ ազգի մերոյ մեղացն պարտական եղիցի յահեղ հրապարա-
կին։ Կատարիչք գրոյս օրհնին յԱստուծոյ. և որ խափանէ,
դատի ի տեառնէ։

Ի տաճարն Հայրապետոյ որմն։

Թուին ՉԼԲ։ Կամաւ բարերարին Աստուծոյ՝ Հասան իշ-
խան՝ որդի Բրտին իշխանաց իշխանի՝ և մօր Խորիշահի, յազ-
գէ Մամիկոնեանց, թոռն մեծին Վաչէի, և բարեպաշտ ա-
մուսին իմ Արուսխաթուն, յազգէ Ուքանանց, տարաժամ և
կէս աւուրց ելաք յաշխարհէ, աւանդեցաք զհոգիս մեր՝ և զա-
մեն հայրենիսն՝ և զգաւակսն մեր՝ Դաւթի եղբօր մեր հարա-
զատի և Աստուածասիրի, վասն սիրոյն Աստուծոյ և փրկու-
թեան հոգւոց մեր տուաք ի սուրբ Կարապետս՝ ես և եղբայր
իմ Դաւիթ զմեր գանձագին գեղն զՎահրամագեղ և զՎա-

մաղանցն՝ իւրեանց ամէն հող ու ջրով՝ և բնորդի մարդկօք. Կարբի զմեր գնած և զմեր ձեռատունկ այգին, և զԲարկենց փոսըն, և զՄրդկան, որ սեպհական հայրենիք էր եկեղեցւոյն, և ի չար և ի դառն բերմանց ժամանակիս ելեալ էր ի վանացս, բազում աշխատութեամբ և յոլով ծախիւք դարձուցաք ի սուրբ ուխտս. ընծայեցաք և պահարան զարդարեալ ոսկւով և արծաթով: Եւ Առաջնորդ սուրբ ուխտիս տէր Համազասպ և եղբարքս սահմանեցին կատարել զյիշատակս մեր՝ մին քառասունք պատարագել զՔրիստոս յանուն մեր. Ի. հասանայ, Ի. Արուս խաթունին: Արդ՝ եթէ ոք Թագաւորաց, կամ յիշխանաց ի մերոց կամ յօտարաց՝ զի՛նչ և իցէ պատճառանօք հանել ջանայ զմեր յիշատակն ի սուրբ Կարապետէս զմերոյգրեալս բովանդակ, մարդն այն նզովեսցի յամենասուրբ Երրորդութենէն, յերից սուրբ ժողովոյն և յամենայն սրբոց:

Ի տաճարն է վերայ սատաղանէն:

Թուին ՉԻԹ: (Շնորհիւ բարերարին Աստուծոյ՝ ես Հէպէճ[6]) Պաւլիթ՝ որդի Հոնային, թոռն Ալուեցւոյն, և ամուսին իմ Նանա՝ դուստր Տուտկան, վասն առ Աստուած սիրոյն վերստին հաստատեցաք զմիաբանութիւն հարցն մեր ի սուրբ Կարապետս. վասն փրկութեան հոգւոց մեր տուաք շինական ի շէնութիւն Զորագեղին Աւետիս մականուն Կոնկէկ. արարաք և այլ արդիւնս: Առաջնորդ վանացս տէր Համազասպ և այլ եղբարքս խոստացան պատարագել յանուն մեր ի տարին Զ պատարագ՝ ի տօնի Կոստանդիանոսի Թագաւորի, Գ. Հէճուպին, Բ. Նանային. որչափ կենդանի եմք՝ հարցս առնեն Խոնային և Գէլին. և յետ ելից մեր յաշխարհէ՝ ի մեր անուն կատարեն անխափան: Կատարիչք գրոյս՝ օրհնին յԱստուծոյ, և խափանօղքըն դատին ի Քրիստոսէ. ամէն:

---

(6) Պաւցէ Հէճուպ՝ որպէս ստորև եդեալ է:

Ի Դրանէն է Հիւսիսոյ որմն։

Թուին ՊՃԳ։ Կամաւն անմահին Աստուծոյ՝ ես Զաքարիա, Թոռն Գամրիկէլին, և որդւոյ պարոն Աղէգ բէկին, գնեցի զգեղն Մօղնի հալալ արդեանց իմոց։ Սուրբ Գէորգայ մուտքըն՝ սուրբ Կարապետիս էր. զիմ բաժինն էլ Կարապետիս տուի, յիշատակ ինձ և ծնողաց իմոց. եթէ ոք խափանել ջանայ, մեր մեղացն պարտական լինի։

Ի տաճարն առաջ խորանին որմն։

Թուին ՊՃԶ։ Շնորհօք բարերարին Աստուծոյ՝ ես պիտակ վարդապետ Սիմէօն ընծայեցի զիս (զիմ) Նորընծայ Յայսմաւուրք սուրբ Կարապետիս վասն փրկութեան հոգւոյ իմոյ և քաւութեան յանցանաց իմոց. որքան իմ գիրքս կայ, հանապազ զայս կարդան ի յատենիս, զմեզ յիշեն ի Քրիստոս ի յոյսն իմ ի սուրբ աղօթս իւրեանց։

Է Դրանէն է Հարաւոյ որմն։

Յամի ՌՆԳ թուին։ Ես Գօվլաթ բէկ, Թոռն Մալխութին, գնեցի հալալ արդեանց իմոց Ոսկով հող, տուի ի դուռն սուրբ Կարապետին՝ յիշատակ ինձ։ Եւ սպասաւորքն խոստացան ի տարին Ա պատարագ՝ Կարմիր կիրակի օրն։

Ի տաճարն յարեւմտեան որմն։

Թուին ՌՉԲ։ Զօրութեամբ հոգւոյն սրբոյ՝ ես Երեւանցի Աւագս, որդի Աղաբաբին, և ամուսին իմ Գաստագուլ միաբանեցաք և գնեցաք Ա ստակ ժուլֆ ի Փարպի, և տուաք ի դուռն սուրբ Կարապետիս՝ ի յիշատակ հոգւոց մերոց և փրկութեան յանցանաց, և յարեւշատութիւն զաւակաց մերոց։ Եւ առաջնորդ սորա Զաքարիա վարդապետ հանդերձ Կ միաբա-

Նոքա խոստացան պատարագել զՔրիստոս վասն մեր՝ զաւօն Մե-
ծահրաշին՝ յամենայն ամի։ Արդ՝ եթէ ոք ի մերոց, կամ յօտա-
րաց, որդւոց կամ դստերաց՝ հանել ջանայ զմեր տուեալ տա-
սանորդն, դատի յԱստուծոյ և յամենայն ընտրելոց նորա։ Որք
հակառակին, Ճ՛ ոսկի տուգանս տացեն։ Իսկ կատարօղքն օրհ-
նին ի Տեառնէ. ամէն։

Աւետարանի յիշատակարանէն։

Մեք Հանավանցիք, ես Շահվէլիս, ես Զաքարէս, Միրզէս,
ես Ամրումս, ես Փեչիս, ես Զաքարի տղայ Միրզէս, ես Աւե-
տիս, ես Հուրու տղայ Հանէս, ես Գօչիս, ես Մկրտիչս միա-
բանեցաք՝ Գիլանձու Ամրումի այգին տուինք յիշատակ սուրբ
Կարապետիս. ինչ մարդ էս բանիս միջումն այլևայլ խօսք յետ
և յառաջ բան ասայ ու կտրայ, սուրբ Կարապետն իւր յիշա-
տակն կտրայ. մեք սպասաւորքս խոստացաք ի տարւոջն՝ Բ ժամ՝
ի տօնի Վարդավառին՝ սուրբ Խաչին։ Կատարօղք աղաչանաց
դրոյս օրհնին ի յԱստուծոյ և յամենայն սրբոց, յաւիտեանս
յաւիտենից. ամէն։ Հայր մեր որ"։ ի Թուին ՌՃԾԸ։

Արձանք՝ որոց ոչ գոյ Թուական։

Զարձանսն՝ որոց գոյր Թուական, զայնոսիկ գրեցաք ըստ
բանին և ըստ գրոյն։ Այժմ գրեցից զայնոսիկ՝ որք ոչ ունին
Թուականք, զնոյն ոճովն և գրովն, և զնոյն նշանակութիւն տե-
ղեացն. զորոց զկարգն գիտացից, ի կարգի գրեցից. իսկ որոց
ոչ գիտացից յետ և առաջ լինելն, և դուք ներեցէ՛ք։

Ի գաւիթն է հիւսիսոյ որմն։

Շնորհիւն Աստուծոյ՝ ի տէրութեան պարոն Գողփայլ Խա-
մարի, իւր Թագաւորաց որդի մեծին Մելքիսեդեկի՝ Գեօրգի՝
ես Ամսաջան, որդի Գրիգորին, և ամուսին իմ Բէուձ, հէնց

էլավ պարոնաց ձեռնէ զերկիրս առին, եւ չքամժինեցայ ի ծառայութենէ: Աստուած պարոնաց աջողումն երետ, երկիրս երեկ, Ոհանավանք ինձ տվին հէրէնիք. հասարակաց տունս խլած էր, էգոց հողի շուրբեր[7])էր դրած, մեք էլ հասարակ ի սուրբ Կարապետս ապսպարեցաք, վանաց էգոց հողի շուրջնավ մեր կալաք վասն արեւշատութեան պարոնաց մերոց, եւ պարոն Աթապակ Շահանշահի եւ Շրվանշահի հոգւոյն համար, եւ արձան գրեցաք յաւիտենական. եւ Ամիրջանս մեր կալայ եւ հաստատեցի պարոնայն հրամանաւ, ո՛վ որ զայս արձանս խափանել ջանայ, պարոնաց եւ մեր մեղաց պարտական լինի, դատի յԱստուծոյ. վարձս Յուդայի եւ Կայենի առցէ. եւ յերից սուրբ ժողովոցն նզոված եղիցի: Եւ սպասաւորք սուրբ ուխտիս խոստացան ի տարուջն ԺԲ պատարագս՝ ի տօնի Հոգւոյ գալստեանն, Գ. Շահնշահի, Գ. Շրվանշահի, Բ. Զանի, Բ. Ամիրջանի, Բ. Բէսուճի: Կատարողք գրոյս օրհնին յԱստուծոյ. ամէն:

### Ի վերայ Մատուռի խաչին:

Զաստուածարնակս զայս խորանս եւ զխաչս տէրունական՝ ես Նանայս՝ դուստր մեծ Իշխանապետին Սարգսի՝ որդւոյ Զաքարէի՝ որդւոյ աւագ Սարգսի, կանգնեցի ի վերայ նորակերտ վարդապետիս Մարգարէի, որ իսկիզբն յաշակերտութեան իւրոյ որդիացաւ ինձ, եւ առաւել եղեւ քան զծնունդ յորովայնի. եւ հոգայր զօգուտն հոգւոյ իմոյ. եւ իմ տեսեալ զյօժարութիւն սրտի նորա, անկայ ի շինութիւն պարսպին՝ նորա առաջնութեամբ: Եւ մինչ նա յայս բարւոյ գործոյս վերակացութեան էր, մերձեցաւ կատարած կենաց նորա, եւ ի հող էջ մանկահասակ, եւ մեզ սուգ անմխիթար եղեւ փոխումն նորա: Եւ ես Նանայս աղէխարշեալ ի գթոյ նորա, զայս գտի հնար սփոփա-

(7) Դժուարացաք իմանալ եւ լուծել զբառս զայս:

նայց անձին իմոյ, զփոքր յիշատակս զայս ի դիրս նորա հաստատել, զի անմոռանալի լիցի առաջի Աստուծոյ յիշատակ նորա, և անվախճան առ ի սէր որդիութեան նորա։ Արդ՝ ով՜ման-կունք նոր սիոնի՝ սիրով ցաւակցութեամբ յիշեսջիք զտարաժամ փոխեցեալն՝ զամենաշնորհն զՄարգարէ, զի պայծառ և զուարթ երեսօք տեսցէ զՔրիստոս. և մեզ անշարժ մնասցէ միաբանութիւն ի դուռն սուրբ Կարապետիս, և ի հանդերձեալն առաջի Աստուծոյ. ամէն։

Ի Տաճարն է հարաւոյ որմն։

Կամաւն բարերարին Աստուծոյ Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն, ես Թէոդոս՝ մականուն Չըփէն, Իշխանաց իշխան, որդի Ընբերդեցի Վրդին Իշխանաց իշխանին, որդւոյ Տայիրին, Թոռըն մեծ Վրդին, որդի արի և քաջին Վաչէի, զայս հաստատ արձան գրեցաք, և տուաք ի մեր պապանց հալալ գանձագին հայրենիք, ի հանդէն Սերկևելւոյ ի սուրբ Կարապետս և ի սուրբ Կաթուղիկէն, որ եղեալ էր շիրիմ պարոն հայրն իմ, այր Ամատունի, տէրն Խոռն Կայծակովէն գութանաւի գլխովն, որ ճանապարհն Գուբթայիս Սերկևելւոյ ծովն, Սաշնի ըղեղ, և կաւանոցն հայրենիք է սուրբ Կարապետիս. այս իմ տուած հանդս ի Սերկևելւոյ հանդէն էլ հէնց հաստատ հայրենիք է սուրբ Կարապետիս. և ես Խուանդ խաթունն՝ ամուսին Ընբերդեցի Վրդին, մայր Չըքնին և Թայիկին, կրկին հաստատեցի զվերոյգրեալս։ Նու եղբարքս խոստացան մի Խս պատարագել զՔրիստոս՝ ամէն ամի։ Արդ՝ եթէ ոք յիմոց կամ յօտարաց հանել ջանայ զմեր ընծայն ի սուրբ Կարապետէս, մարդն այն նզովեսցի յԱստուծոյ, և յերից սուրբ ժողովոցն. մասն Յուդայի և Կայենի առցէ, և մեր մեղացն պարտական եղիցի։ Կատարօղք գրոյս օրհնին յԱստուծոյ և ի սրբոց։

Ի գաւիթն յարևելեան որմն։

Ողորմութեամբն Աստուծոյ, ես Զաքարիա, որդի Մարգթանկայ, եղբայր Գալալին, և ամուսին իմ Խորիշահ, դուստր Մաստակայ, միաբանեցաք սուրբ ուխտիս, և գնեցաք զԱշտարակոյ Նորքն, և տուաք ի սուրբքս. և սոքա խոստացան Զ օր ժամ ի տօնի Թէոդոսի Թագաւորին։ Ով խափանէ՝ դատի ի Տեառնէ։

Ի գաւիթն յարևմտեան որմն։

Յանուն Աստուծոյ, ես Տէր Յուսիկ Երևանայ, և ամուսին իմ Սօլթան խանում, միաբանեցաք, տուինք մեր հալալ գանձագին հայրենի այգին ի դուռն սուրբ Կարապետիս։ Եւ սպասաւորքն խոստացան ի տարուջն Գ պատարագ, Բ ինձ, Բ կողակցին իմոյ. ով խափանէ, վարձս Կայենի առցէ. ամէն։

Ի Տաճարն է գլուխ աւանդատան։

Ես Խոյիկս ետու զիմ այգին, որ է Աթարկենց՝ ի սուրբքս. և սոքա կարգեցին ի տարին՝ Ը օր ժամ ի տօնի Բարսղի, Բ ինձ, Բ Կիմաթին, Բ Մխիթարայ, Բ Աթարկան։ Ո՛վ չառնէ, դատի ի Քրիստոսէ։

Ի Տաճարն է հիւսիսոյ որմն։

Ողորմութեամբն Աստուծոյ, ես Մխիթար քահանայ, աշակերտ մեծին Ռուփինայ քահանայի, ետու զիմ այգին ի սուրբ ուխտս, որ է Տանձուտ. և սպասաւորք սորա սահմանեցին ի տարին՝ Գ օր ժամ՝ ի տօնի սրբոյն Յակոբայ. Ա ինձ, Ա Խաչկայ, Ա Ոստինկայ, Ա Գինէվարդին. որ չառնէ, ՅԺԲ հայրապետացն նզովի։

Ի Տաճարն է հարաւոյ որմն։

Յուսով անմահին Աստուծոյ, ես Գանխաթունս, դուստր Աւագ պարոնին և Թաքան խաթունին, միաբանեցայ սուրբ Կարապետիս, ետու զիմ կէս այգին, որ ի Խութուխթէ գնելի զուսփանց փոխ։ Եւ տէր Համազասպ, և եղբարքս խոստացան տարին Գ. օր ժամ ի տօնի Թեկղի. որչափ կենդանի ենք՝ իմ մօրն առնեն, և յետ ելից իմ՝ ինձ։ Որ խափանէ՝ դատի ի Տեառնէ։

Ի փաճարն է հարաւոյ որմն։

Կամաւն անմահին Աստուծոյ, ես Մխիթար և Պետրոս քահանայք միաբանեցաք սուրբ ուխտիս, և տուաք Կորընկանին մեր բաժինն, և այլ արդիւնք, ի շինութիւն եկեղեցւոյս, և սոքա հաստատեցին Գ. օր ժամ. Բ. մեզ, և Ա. Յովհաննէս սարկաւագին կենդանութեան, ի տօնի Դաւթի և Յակովբայ։ Ով չառնէ, նզովի ի Քրիստոսէ։

Ի Տապանատան է հարաւոյ որմն։

Ես Աշոտ, որդի Ներկաթայ, տարաժամ ելայ յաշխարհէ, տուի զիմ այգին ի սուրբ Կարապետս։ Եւ սոքա խոստացան ի տարին Գ. պատարագ, Բ. ինձ, Ա. իմ հօրն, Ա. մօրն։ Եւ ես Ուզուքան մայր Աշոտոյ՝ իմ հայրենիք՝ թէ ինչ՝ տուի սուրբ Կարապետիս յետ ելից իմ։ Կատարօղքն օրհնին յԱստուծոյ։

Արտաքոյ փաճարին է հարաւոյ կողմն։

Շնորհօքն Քրիստոսի, ես Աղայղոն երէց Յարենւոյ, որդի Մնդարայ, միաբանեցայ սուրբ ուխտիս, գնեցի զայգին Խաչա-

բելանց, և եասու ի սուրբքս. և սպասաւորք սորա սահմանեցին ի տարին Գ. ժամ՝ ի տօնի Կիւրղի։ Ով չառնէ, նզովեսցի ի Քրիստոսէ։

## Յօշականու եկեղեցւոյն կնքաւորումն։

Ի Թուին ՉԼԸ։ Յառաջնորդութեան Տէր Համազասպայ, և ի պարոնութեան Սահմանդինին, և իւր որդւոցն Ամիրբէկին, Հազարբէկին, եւ գէշ մարդս էի Ամիրայ, և Հաւիկս Զեռնաւոր, Թողաք զսուրբ Կարապետի այգեացն զյՕշականւոյ Ամիրին ու զԶեռնաւորին հարկն՝ զինչ որ կայր, վասն փրկութեան հոգւոց մերոց, և յարևշատութիւն պարոնաց։ Արդ (ով ոք) յետ ժամանակաց զընծայս մեր խափանել ջանայ, ՅԺԸ Հայրապետացն նզոված է, և վարձս Յուդայի առցէ, և հող օրհնութեան զնա մի ծածկեսցէ։ Կատարիչք գրոյս օրհնին յԱստուծոյ. ամէն։

## Անէծք յիշատակարանի։

Զոր ինչ գտաք յարձանս յորմունս եկեղեցեաց՝ և կամ ի յիշատակարանս գրոց, զայնոսիկ գրեցաք աստէն։ Այժմ զայնոսիկ գրեսցուք՝ որք ոչ գոն գրեալ ուրեք, և զանուանս նոցա յայտ արարից թէ այս ինչ գիւղ այս ինչ անուն այգի, կամ պարտէզ, և կամ հող, այսքան օր[8]։ Իսկ զայնոսիկ՝ որք գրեալ են յարձանսն, զայնոսիկ ևս նշանակեցից. զի լիցի կրկին վկայ։ Նախ ի Կարբի՝ Տէր Մխիթարի այգին, Տէր Ղազարի այգին, զՏանծուտ այգին, Տէր Յուսիկի պարտէզն, զՈտովխոտհաւքն, զԿոնթեղուտ հող՝ Գ. օր, զՆաղարաչին՝ Ա. օր, զՈտոմն Բ. օր, զԳիլէպատն՝ Ա. օր, զՅովիտի Պարոնենց հողն՝ Գ. օր։

---

(8) Գուցէ օրավար։

### Ի ՅՈՎՀԱՆՆՈՒ ՎԱՆՍ.

Գիլանձոնց այգին, Խուտիկենց այգին, Գաֆարի պարտէզն, Թէրինենց պարտէզն, Վանքի տակի դէմն՝ գետափան սաղն Մեծառաւիտանոցն Գ. օր, Չախմախենց հողն՝ Ե. օր, Փշուտն որ է Գաֆարենց՝ Ա. օր, ուռետակն՝ որ է Կաւանոցն՝ Գ. օր, Խոճենցն՝ Բ. օր, Թէրինենց հողն՝ Բ. օր, Կնկուզոցն՝ Ա. օր, ղռերն՝ Գ. օր, և այլ մանունք ի Սերկևիլի, Վասակամուտն՝ Ե. օր, և Անապատն այգւովն և թեմերովն, ի Յուշի զՍերմակորուստն՝ Բ. օր, ի յՍմս զԲառենց հողն՝ Բ. օր, և զպարտէզն ընկուզաւոր, ի Փարպի Թարաղուլու պարտէզն՝ հնձանով և կալովն, և մեծ այգին՝ որ ի պողոտայն՝ որ գնայ ի Կարբի, և Գանքարենց հողն՝ Ա. օր, ներքի խոպանն՝ որ է Թորոսենց՝ Գ. օր, Ա. բրնծահան, Բ. ջրաղաց ի Փարպի, Ա. ձիթաղաց ի Կարբի՝ մերձ ի կալերն, Ա. ձիթաղաց, Ա. ջրաղաց ի Յօհանավանք, Ա. ձիթահանք՝ Բ. կալով՝ Բ. դրքատնով, և Ա. ջրաղաց՝ որ առի Խոջենցան՝ յԱպարան՝ ի գիւղն Բասաղ, Զ. ըստակ ծուխ՝ Որդկան, Զ. ստակ՝ Յօհանավանք։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### ԹԷ ՈՎ ՈՔ ԷԻՆ ԱՌԱՋՆՈՐԴՔ ՎԱՆԱՑՍ.

Իսկ Յովհաննու վանաց Առաջնորդացն ի խնդիր ելաք գտանել զամենայն, և ոչ կարացաք հասու լինել ամենեցուն։ Այլ սակայն զոր ինչ լուաք ի համբաւոյ և ի պատմագրաց, և ի յիշատակարանաց դրոց և յարձանաց, զնոսին գրեցաք և նշանակեցաք՝ թէ ուստի՞ գտաք։ Այլև զվարս և զգործս նոցունց աստ բացայայտեցից, նաև զթուականսն ի սկիզբն անուանց նոցա, որպէս թէ ի թուին այսքան՝ Հայր այս անուն ոք։ Իսկ որոց ոչ գտի թուական, և ես ոչ գրեցից, այլ միայն նշանա-

կեցից, զթիւն և զտեղի որքանութեանն թողից, զի ով ոք զկնի մեր գտանէ՝ նա գրեսցէ զորքանութիւն թուոյն։ Եւ որոց գտի ուստի լինելն, յայտ արարից՝ թէ այս ինչ Հայր՝ այս ինչ տեղացի։

Եւ որոց ոչ գտից, թողից զտեղին, զի որք զկնի մեր գտցեն, գրեսցեն. իսկ թուականքն ոչ սկիզբն Հայր լինելոյ նորա, այլ յորում ժամանակի պատահեցաք, զայն գրեցաք, որք են այսոքիկ Առաջնորդք և Հարք կոչեցեալք։

Նախ սուրբն Գրիգոր Լուսաւորիչ զոր շինեաց զսուրբ Կարապետն, և եդ անդ ի մասանց նորա, և ինքն լինէր յապահովս անդ։ Եւ ի կենդանութեան իւրում կարգեաց Հայր և վերակացու զոմն յաշակերտաց իւրոց՝ Աթանագինէս անուն. ուստի կոչեցաւ Սիւղի վանք, և մինչև ցայսօր կոչի ի մէջ Մարտիրոսաց ճառընտրին։ Ղազար Փարպեցի եղև հայր՝ Հրամանաւ սրբոյն Սահակայ և Մեսրոպայ, որ եղև վարդապետ և թարգմանիչ, և արար զպատմութիւնն։ Եւ ի կենդանութեան իւրում Ղազար կարգեաց Հայր և վերակացու Յոհան ոմն, որով անուանեցաւ Յոհաննու վանք, և ասի մինչև ցայսօր. այսոքիկ լուաք յԱռաքել վարդապետէ, զոր յառաջագոյն ասացաք։

Այսքան յառաջ քան զթուականնն։ Այսուհետև գրեսցուք թուականաւն, որ է այս։

Թուին Բ. եղև Հայր Եղիա Գըռնեցի։ Ի սորա ժամանակս շինեցաւ քարամբ զսուրբ Կարապետի գլուխն. զի յառաջն փայտեայ էր։ Զայս ուսաք ի յիշատակարանաց գրոց։

Թուին ՃՂԲ. եղև Հայր Յոհան։ Ի սորա աւուրս եղև մարտիրոսութիւն Վահանայ Գողթան Տեառն։ Սա Յոհան եդ ընդ նմա զմիայնակեացն կրկնում (°) գալստեանն նորին։ Զայս լուաք ի Մարտիրոսաց ճառընտրէն և Յայսմաւուրքէն։

Թուին ՆՁԲ. եղև. Հայր Մխիթար։ Ի սորա աւուրս եկն Երեմիա հայրն Մարմարաշինու, և եղև կրօնաւոր, և (արար)

միաբանութիւն ի մէջ Յովհաննու վանից և Մարմարաշինու։ Նոյն անդ մեռաւ սքանչելին Ներսէս, և ահա գերեզման նորա կայ. և այլ բանք սորա գրեալ եմք յառաջագոյն։ Զայս ուսաք ի պատմագրէ ի սուրբ ուխտն Սանահնի։

Ը. Թուին ՈԻ. եղև Տէր Խոսրովէ։ Նոյն զայս ուսաք յարձանաց խաչի, որ է ի հասարակաց գերեզմանատունն։

Թ. Թուին ՈՂԸ. եղև Տէր Մկրտիչ։ Ի սորա ժամանակս էր Կոստանդին Կաթուղիկոս. և սորա յաւուրս շինեցաւ գաւիթն։ Զայս ուսաք յարձանաց. և սմա առաքեաց Կաթուղիկոսն աղերս։

Ժ. Թուին ՉԻԸ. եղև Տէր Համազասպ։ Նա Համազասպ բազում արդիւնս արար, և բազմագոյն զգրեանս Աստուածային. որ և բազումք կան դեռ ևս։ Սա էր յաւուրս որդւոց իշխանին Պռոշոյ, և վարէր զԱռաջնորդութիւնն մարմնաւոր իշխանութեամբ. և էր ինքն յազգէ Մամիկոնէից, այր փառաւոր և ահարկու տեսողացն։ Զայս ուսաք ի բազում գրոց յիշատակարանաց և յարձանաց ի բազում տեղիս։

ԺԱ. Թուին ՉԿ. եղև Տէր Վասիլ։ Զայս ուսաք յարձանաց խաչին՝ յորում գրեալ էր, ''զՎասիլ Տէր Յովհաննու վանից՝ Առաջնորդ Շիրակայ և ամենայն Ներքրդու, յիշեցէք ի Քրիստոս։ Թուին ՉԿ։,,

ԺԲ. Թուին ՉԿԸ. եղև Տէր Ներսէս։ Սա ազգական էր Համազասպայ. զայս ուսաք ի յիշատակարանաց գրոց, զոր նա գրել. և բազումք կան գրոց նորա առ մեզ։

ԺԳ. Թուին ՊԸ. եղև Տէր Աբրահամ։ Ի սորա աւուրս ամենայն ինչ եղև հասարակաց, և ոչ ոք ստացաւ առանձին ինչ. զայս ուսաք յարձանաց եկեղեցւոյ։

ԺԴ. Թուին ՊԴ. եղև Տէր Կարապետ։ Ի սորա աւուրս եղև Նորոգումն սուրբ Էջմիածնի, և Նստաւ Կաթուղիկոս Կիրակոս Ճգնաւորն Վիրապեցի։ Ի սորա աւուրս հաստատեցաւ լինել Աթոռակալ սուրբ Էջմիածնայ Տէրն Յովհաննու վանից, և տա-

առնորդել յամենայնէ, և տալ Յովհաննու վանից: Զայս ուսաք ի Թուոմայ պատմագրէն և յԱռաքել վարդապետէն. վասնզի յորժամ առնէր պատմագիր Առաքել վարդապետն, մեք օգնեաք նմա ի սրբագրելն՝ և յընթեռնուլն զգրեանս. վասն այնորիկ մեք հարցանէաք նմա, և նա տայր պատասխանի. և զայս ևս ուսաք ի նմանէ, թէ՝ տասանորդն եկեալ է իՅովհաննու վանք:

Թուին ՌԳԻ. եղև Հայր Գաբրիէլ Վաղարշապատեցի, և ԺԴՆ
Յոհան վարդապետ. սոքա Ընթռակալք էին ի սուրբ Էջմիածին, և առարդութիւն ցուցին առ երթևեկսն. վասնորոյ գժկամակ եղեալ առ այն, և արարին ժողով բազմութեան. և հալածեցին զսուրբ Կաթուղիկոսն Միրակոս, և եդին Կաթուղիկոս զՄակուեցի Գրիգոր Եպիսկոպոսն: Զայս ուսաք ի Թումայ պատմագրէ: Այս Գաբրիէլ էր գրագիր, և գրեաց զբազում գիրս՝ Յայսմաւուրք, Ճաշոց, Գանձարան, Շարակնոց, և ահա ի բազում տեղիս երևի ի գրոց նորա:

Թուին . . . եղև Հայր Գրիգոր Յովհաննու վանից և Բջնի ԺՕ
նւոյ, և էր սա ի նոյն գեղջէն Բջնւոյ, և Հայր երկուց վանացն: Սա բազում գիրս ետ գրել, և ահա ուսաք զայս ի գրոց անտի:

Թուին . . . եղև Հայր Խաչատուր, մականուն Այնի-ղօլան: ԺԷ
Սա շինեաց ջրաղաց մի՝ և երկուս ձիթահանս ի միում տան ի գիւղն իւր Բասաղ, և ետ յիշատակ ի սուրբ Կարապետն: Ու է այժմ ջրաղացն չէն, և կոչի Խրխնձան. զայս ուսաք ի Գայլ Եպիսկոպոսէն՝ զոր յառաջն գրեցաք:

Թուին. . . եղև հայր Ղուկաս, և էր սա ի Նգայ, և ԺԲ
եղև հայր Յովհաննու վանից, Սաղմոսավանից, և Յուշւոյ վանից: Սա բազում գրեանս յաւել ի Սաղմոսավանք. զայս ուսաք ի նոյն Գայլէ:

Թուին. . . եղև Հայր Մելքիսէթ. զսա գտաք ի բանադրա- ԺԹ
նաց թղթէ. բայց ոչ գիտեմք յորում ժամանակի:

Թուին ՌԺԹ. եղև Հայր Գրիգոր վարդապետ Կարբեցի. և սա այն Գրիգորն է, զոր յառաջն յիշեցաք: Զայս ուսաք ի

Գալուստ անուն բարեպաշտ քրիստոնէէ․ զոր յիշեցաք յառա-
ջագոյն վասն այս Գրիգորիս, և քննեցաք սակս թուոյն, և այն
էր զոր գրեցաք։

ԻԱ Թուին ՌԽԲ. եղև Հայր Մովսէս․ սա կանգնեաց խաչ
մի ի գաւիթ եկեղեցւոյն, այր խոհեմ և երկիւղած։ Զայս ու-
սաք ի յիշատակարանաց աւետարանի։

ԻԲ Թուին ՌԽԸ. եղև Հայր Ղուկաս Յոհաննու վանից, և
Տեղերոյ և Վաժանայ։ Սա գրեաց աւետարան մի, և եդ յիշա-
տակ ի դուռն Յոհաննու վանից, և գոյ այժմ ի գիւղն Փարպի։
Զայս ուսաք մեք ի նոյն աւետարանէ։

ԻԳ Թուին ՌԿԵ. եղև Հայր Յովասափ, ի բնիկ գեղջէ վանացս,
և ահա կոչին Սեթենք։ Սա կազմել ետ Ճաշոց մի, և անտի
ուսաք մեք զնա և զթուական նորուն. և գիրքն կայ առհա-
ւասիկ։

ԻԴ Թուին ՌՀԸ. եղև Հայր Յովհաննէս Կարբեցի, որ է Գայ-
լն․ զոր յիշեալ եմք բազում անգամ։ Սա յոյժ տեղեակ էր
տոմարի․ ի սորա աւուրս աւար առաւ սուրբ ուխտս յԵլու-
զակաց, զոր Ջալալի կոչեն, որպէս պատմէ Առաքել վարդա-
պետ։ Զայս ուսաք ի նոյն Գայլէ։

ԻԵ Թուին ՌՂ. եղև Հայր և դպրապետ Ղուկաս բազմահան-
ճար վարդապետ՝ հրամանաւ Մովսէս Կաթուղիկոսի։ Զայս
ուսաք յաշակերտաց նորա։

ԻԶ Թուին ՌՂԳ. եղև Հայր Յովհաննէս Եպիսկոպոս Կար-
բեցի, այր ճգնաւոր և սուրբ, և գիտուն ամենայն հին և նոր
կտակարանաց և պատմութեանց։ Սա այն Յովհաննէսն է՝ զոր
եօթն ամ պայքարեալ ընդ դիւաց, և յաղթեաց նոցա ի յա
նապատն Լմա։ Նա և ելեալ անտի, և գայ լինի Հայր ի Յոհաննու
վանք՝ ամս Բ։ Նա[9]) . . . . . . . . . . . . . .

(9) Աստ պակասին յօրինակին մերում թուղթք ինչ, զոր դժուարացաք
լրացուցանել յայլոց օրինակաց, զի ոչ գտին։

. . . ի գիւղաքաղաքէն Կարբու, այր խոհեմ և հեզ, հրամանաւ Զաքարիայի, որ բարւոք կարգաւորեաց զամենայն։ Եւ սորին որպիսութիւնն ևս ծանուցից յետոյ։

Թուին ՌՃԻԲ. եղև Հայր Սարգիս վարդապետն՝ հրամա- Լ.
նաւ Յովհաննէս վարդապետի. և սա ևս էր ի քաղաքագեղէն Կարբու. սորին ևս ծանուցից յետոյ. և է այժմ, և վարէ զԱռաջնորդութիւնն՝ ըստ բերմանց ժամանակիս. յորոյ տէր լիցի սատար և օգնական, և ինքն օրհնեալ եղիցի յամենայն ժամ. ամէն։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

### Պատմութիւն և վարք Զաքարիա վարդապետի։

Եւ սա ի Վաղարշապատ քաղաքէ, որդի Յովհաննէս քահանայի, ծնեալ ի նոյն քաղաք։ Եւ մինչ էր տղայ ի գիրկս մօր իւրոյ, Թագաւորն Պարսից Շահ-Աբաս առաջին, այն՝ որ զամենայն երկիրս Արարատեան գերեցոյց և տարաւ յաշխարհն Պարսից, ընդ նոսին գնաց և տէր Յովհաննէսն ամենայն ընտանեօքն։ Եւ որդի նորա Զաքարիա սնաւ և զարգացաւ, և ետուն զնա յուսումն դպրոց առ Ջուղայեցիսն։ Եւ էր արագամիտ յոյժ, և կարի փոյթ քան զուսումնակից մանկունսն. վաղընորոյ փութով ուսաւ զՍաղմոս և զՇարական, և ապա առաքելական և մարգարէական մատեանսն՝ և զԱստուածաշունչ գիրսն բովանդակ. ուսաւ և գիր բոլոր և նօտր։ Գիտէր և Ե ազգաց լեզու՝ այսինքն՝ Հայերէն և Տաճկերէն, Պարսկերէն և Գաղիերէն և Հնդկերէն, և ճարտարախօս, և արագալեզու, ճոռոմաբան, և քաջաղրուց, յաջողակ ամենեւին և բաղդաւոր, ատենախօս և պնդասիրտ։ Եւ յորժամ եկն յԱսպահան Դաւիթ Կաթուղիկոսն, գնաց Զաքարիա՝ և յարեցաւ ի նա, և եղև նմա նօտար։ Եւ կացեալ առ նմա ժամանակ ինչ, և

յետոյ ընկալեալ աստիճան Քահանայութեան մանկական տիօք,
և կուսակրօն սրբութեամբ պատարագէր զՔրիստոս։ Եւ այն-
պէս կացեալ ժամանակ ինչ, մինչև որ եկեալ անդ կրկին Լու-
սաւորիչն Մովսէս վարդապետն Տաթևացի՝ բազում աշակեր-
տօք, և Զաքարիայն լուեալ զբարի համբաւս նորա, գնա-
ցեալ առ նա, և աշակերտեցաւ նմա, և շրջէր միշտ ընդ նմա.
և էր քաջ քարտուղար նմա, մինչև առեալ հրաման Կաթու-
1629 ղիկոսութեան վարդապետն Մովսէս, և գայ ի սուրբ Աթոռն
Էջմիածին, ընդ նմին և Զաքարիայն. և ընկալեալ ի նմանէ
իշխանութիւն վարդապետական, և ծառայէր նմա։ Եւ վախ-
ճանեցաւ Մովսէս՝ կացեալ Կաթուղիկոս ամս Գ, և ամիս Գ։
1632 Եւ ապա եղև Կաթուղիկոս Տէր Փիլիպպոս Աղբակեցի, և
արար զԶաքարիայն՝ Եպիսկոպոս, և դաւազան ետ, և առա-
քեաց զնա ի Նուիրակութիւն յաշխարհն Յունաց։ Եւ դար-
ձաւ ի սուրբ Աթոռն Էջմիածին։ Եւ հարկեալ ի Կաթուղի-
կոսէն, երթեալ նստի Առաջնորդ ի Յօհաննու վանք՝ ի թուին
ՌՁԶ, և վերստին հաստատեցին զտասանորդն յամենայնէ
տալ Յօհաննու վանից՝ որպէս էին յառաջագոյն սահմանեալ
յառաջին Կաթուղիկոսացն։ Եւ եկեալ տիրեաց վանացն, և
սկսաւ առնել շինութիւն։ Եւ շինեաց ի մէջ հին պարսպին
պարիսպ ի հարաւոյ կողմն եկեղեցւոյն, զտնտեսատունն, զսե-
ղանատունն, զխցերն, և զհոյակապ աղիւսաշէն հրուանդանքն։
Եւ ժողովեաց բազում անասունս, զձիս և զջորիս, և չեր-
մակս մատակ ձիոց, և զեզինս, և զգոմէշս, և զխաշինս, և զհո-
ղս, և զայգիս, զԶ ստակ մուլք Յոհանավանուց, Զ ստակ մուլք
Օրդկանայ, Ա ստակ և կէս Սերկևիլոյ, Ա ստակ Փարպի, և Ա
ստակ Բրնծաղաց։ Եւ առաքեաց թուղթ օրհնութեան ի վերայ
Ջուղայու մեծամեծացն. որ հանին նօմոս արքունական ի փոքր
Շահ-Աբասէն Պարսից, որ ազատ լինի ի հարկաց արքունի՝
թէ այգի, թէ հող, և թէ այլ ամենայն ինչ, զոր ինչ վարեմք
և ցանեմք, առանց հնգորդի և տասանորդի զամենայն ժողո-

վեմք յշտեմարանս՝ և վայելեմք առանց աշխատանաց։ Նաև ժողովեաց զբազում գրեանս, և ստացաւ բազում աշակերտս, որ և են որում Զաքէոս ընդ նոսա։ Հաստատեաց և Դպրատունս, և զնուաստութիւն իմ կարգեաց ուսուցիչ մանկանցն։ Նա եբեր Գողթնեցի Սիմէոն վարդապետն, որ ուսոյց մեզ արհեստ արտաքնոց։ Նա Խլովացի Նիկողայոս վարդապետն բերեալ, որ ուսոյց զերաժշտութիւնն։ Նա այլ ամենայն բարեկարգութիւն եմոյծ նա անդ, և ամենայն ինչ հասարակաց, և ոչ ոք ստացաւ առանձին ինչ։ Նա այսպէս հաստատեաց ամենայն բարեկարգութեամբ, աղօթիւք և պատարագօք. և զարդարեցաւ սուրբ ուխտն Յոհաննուվանք՝ հոգևորօք և մարմնաւորօք ի փառս պարգևողին ամենայնի։ Այլև էր ինքն Զաքարիա յաջողակ ամենայն իրօք։ Զի առաջի մարմնաւոր իշխանացն ոչ անկանէր բան մի յերկիր. այլ էր այոն՝ այո, և ոչն՝ ոչ։ Նաև էր առատաձեռն. զի պատուիրեաց խոհարարայն, զի աղքատքն առանց կերակրոյ ոչ արձակել (ացին), այլ զոր ինչ եղև ցի՝ տալ աղքատացն։ Նա այսպէս ուղղեաց զսուրբ տունն ամենայն բարեձևութեամբ։ Նա ի Թուին ՈԿԵ տարեալ զձեռնասուն աշակերտն իւր Յոհաննէս վարդապետն Կարբեցի՝ ետ ձեռնադրել Եպիսկոպոս, և կարգեաց ի տեղի իւր, և ինքն գնաց յերկիրն Պարսից՝ ի քաղաքն Սպահան՝ ի մէջ Գողթնեցւոց. և կացեալ անդ Ի ամ, և առեալ ի նոցանէ բազում դրամս, և դարձաւ անդրէն ՈՀԵ Թուին. և ՈՀԶ Թուին ձեռնէարկ ի նորոգել զեկեղեցին. և զբազում քարահատս բերեալ, և Զ ամիսն աւարտեցաւ զչորեսին եկեղեցին։ Զկնի այսորիկ կրկին հաստատեաց ի տեղի իւր զՅովհաննէս վարդապետն, և ինքն հրաժարեալ շրջէր աստ և անդ։ Նա ի ՈՀԷՆ Թուին գնաց յԵրուսաղէմ, և դարձեալ եկն։ Նա ապա ամենայն միաբանք սուրբ Էջմիածնի գնացեալ բերին ի սուրբ աթոռն Էջմիածին վասն կարևոր պիտանութեանն, պահէին զնա անդէն, զի երևև կողմն շահեսցէ, և զշարագործսն ընբերանեսցէ։ Նա նա կայր

անդ որպէս հայր և դաստիարակ ամենեցուն։ Նա փորեաց զգերեզմանն իւր առաջի զանգակատանն, և սալայատակ արար զտեղին։ Նա յորժամ աւարտեցաւ զսալն, է նոյն օր տկարացաւ, և ի վաղիւն փոխեցաւ առ յոյսն ամենայնի Քրիստոս՝ է ՌՃԲ թուին, յունիս ամսոյ Լ, յաւուր կիւրակէի Վարդավառին, և եդաւ ի տապանի անդ՝ զոր ինքն փորեաց. և վախճանեցաւ աստ, և ահա կենդանի է առ Քրիստոս. որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։

Իսկ Յօհաննէս վարդապետն, որ էր փոխանորդ նորա, ի գիւղաքաղաքէն Կարբու, այր հեզ և հնազանդ, խոնհեմ և հարկաւոր, ողորմասիրտ և հիւրընկալ, անյիշաչար և հաճելի ամենեցուն. և վասն բարութեան վարուց նորա՝ ամենայն ոք գայր առ նա, և հարցանէր. և մխիթարեալ գնային։ Նա կացեալ բարեձևութեամբ զամենայն աւուրս կենաց իւրոց, շինեաց անապատն՝ որ ի ձորն Ներկևիլոյ ի վերայ Քասաղ գետոյ, զպարիսպըն, զտնտեսատուն, զսեղանատուն, զխցերս, զփայտեայ ժամատուն։ Նա տնկեաց այգի բազում և ազգի ազգի մրգօք անուշահամ և քաղցրահոտ. և բազմացոյց զմիաբանսն. և ահա կան հանապազ ի պաշտօն և ի փառաբանութիւն Աստուծոյ բարձրելոյն փառօք։ Շինեաց և ձիթաղաց մի ի գիւղն Կարբի՝ մերձ ի կալերն։ Նոյնպէս շինեաց և հովանոց մի վայելուչ ի հայրենի այգին իւր, որ կոչի Տէր Մխիթարի այգի։ Բազմացոյց զմիաբանսըն՝ աւելի քան զԽ, որք ամենեքեանքն միասիրտ և միակամ էին։ Նաև շինեաց և գաւիթ մի ի վերայ տապանատանն յարևմտեան կողմն՝ կից ընդ մեծ գաւթին՝ ի հիւսիսոյ կողմն՝ կոփածոյ վիմօք։ Նա մինչ չև էր եղեալ աւարտ, կարգեաց ի տեղի իւր զՍարգիս վարդապետն, որ էր ձեռնասուն աշակերտ իւր, է ՌՃԻԲ թուին. և ինքն վախճանեալ զբարուոք մահն 'ի նոյեմբերի 'ի ԺԳ յաւուր տօնի սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի, եդաւ ի գաւիթն՝ զոր ինքն շինեաց. և մահացեալ աստէն՝ կենդանացաւ առ Քրիստոս՝ թողեալ մեզ զբարի անուն իւր

Իսկ Սարգիս վարդապետն ևս էր ի գնդաքաղաքէն Կարբու,
որդի մեծատուն բարեպաշտի և երկիւղածի, Կարապետ կոչե-
ցեալ, յազգէ Մուրեցի. որ ի տիս մանկութեան ետ զնա ի սուրբ
ուխտս Յօհաննուվանք։ Եւ կացեալ համեստութեամբ և
պարկեշտ վարուք, ուսաւ զվարս բարիս և զկրօնս հոգևորս։
Եւ տեսեալ զքարի վարս նորա Յօհաննէս վարդապետն, ի տիս
մանկութեան արար զնա Քահանայ կուսակրօն. ետ ի նա զՏա-
ճարապետութիւնն։ Եւ կացեալ ժամանակ ինչ պարկեշտու-
թեամբ, ետ նմա իշխանութիւն վարդապետութեան ի թուին
ՌՃՀԻԲ։ Եւ տեսեալ զհաւատարմութիւն նորա և զմտերիմ
ծառայութիւնն, ետ նմա վերակացութիւն սրբոյ տանս. և էր
յայնժամ ԻԲ ամաց։ Եւ ինքն Յօհաննէս վարդապետն հրա-
ժարեալ՝ շրջէր աստ և անդ մինչև ի գալ Կաթուղիկոսին Եղե-
ազարու, զի տացէ ձեռնադրել Եպիսկոպոս։ Եւ չև ևս էր ե-
կեալ Կաթուղիկոսն, մեռաւ ինքն՝ որպէս պատմեցաք. և էր
Տեղապահ ի սուրբ Էջմիածին Իլովացի Ստեփաննոս վարդա-
պետն, որ բազում վարդապետօք և Եպիսկոպոսօք եկն ի Թա-
ղումն։ Այլ նա՝ որ ի սկզբանէ չարն է, յարոյց սատան ի վերայ
Սարգիս վարդապետին, և որպէս Երոբովամ Սողոմոնի, և զի
մախօղք գոյին նմա բազումք, որք հակառակէին նմա, և ահա
յարեան ի հեռաստանէ, և ետուն զկաշառս բազումս բազմաց՝
և հաւանեցուցին զոմանս։ Սակայն՝ զի ոչ եղև ըստ կամաց նո-
ցա, վասնզի զրոհ ետուն ռամիկք գեղջին Կարբու, և հալա-
ծեցին զմախօղսն, և հաստատեցին դարձեալ զՍարգիսն։ Այլ
նոքա ոչ համբերեցին, որպէս երբեմն եղև առ Ակռականդա-
ցին, նոյնպէս արարին առ սա. զի յարուցին զոմն կին, և մատ-
նեցին զնա առ մարմնաւոր դատաւորս. սակայն և զայնու ևս
ոչ կարացին ստնանել. վասնզի ռամիկքն Կարբու՝ որք գիտէ-
ին զսրբութիւն և զպարկեշտութիւն նորա, յարեան ի վերայ
Բդեշխին, և կորզեցին ի ձեռանէ նորա, և տարեալ հաստատե-
ցին ի տեղի իւր. վասնզի ինքեանք չարք էին, և մատնեցին

զմիմեանս առ նոյն բդեշխն։ Եւ ըստ Սողոմոնի՝ արդարն յորսողաց փրծանի, և փոխանակ նորա մատնի ամբարիշտն. զի փորեցին խորխորատ ընկերին, և ինքեանք անկան ի նմա։ Եւ ահա մատնեցան ի բանտ և ի շղթայս, ի կապանս և ի ձաղանս։ Եւ ետես զնոսա Սարգիս վարդապետն՝ և զատանջանս նոցա, և յիշեաց զբան սուրբ (10) . . . . . . . .
զՍարգիս վարդապետն Եպիսկոպոս ի Թուին ՌՃԼԸ. և ետ նմա Կոնդակ, և առաքեաց ի գիրքփառ ուխտն Յօհաննուվանք։ Եւ ահա կայ և առաջնորդէ ժողովրդեան իւրում, և վարէ զիշխանութիւնն՝ ըստ բերմանց ժամանակիս՝ որպէս և զարժանն այդ կրել։ Որոյ առ լեցի Առաջնորդ՝ աստ ըստ մարմնոյ, և ի հանդերձեալումն՝ ըստ հոգւոյ։ Եւ նմա փառք յաւիտեանս. ամէն։

Մինչև ցաստ գրեցաք զարձանսն՝ և զկարգս Առաջնորդացն, և թողաք թուղթ, զի զկնի մեր եկող Եպիսկոպոսքն՝ և զվարս նոցա գրեսցեն հանդերձ յիշատակարանաւ։

## ԳԼՈՒԽ ԺԳ։

### Վասն սրբոյն Գէորգայ Օրբելեանն։

Գրեցից և վասն սրբոյն Գէորգայ՝ թէ ուստի՞ եկն յաշխարհըս Հայոց, և կամ թէ զիա՞րդ գնաց յերկիրն Վրաց։ Որպէս բազում անգամ հարցաք յԱռաքելոյ վարդապետէն, և նա բազում ինչ ծանոյց մեզ, նոյնպէս հարցաք և վասն սրբոյն Գէորգայ։ Եւ նա ասաց, թէ՝ յորժամ նահատակեցաւ սուրբն Գէորգ ի Գառնիս, ի պահեստի կայր զմարմինն՝ մինչև յաւուրըս մեծին Ներսիսի. սա բերել ետ զմարմին նորա, և եդ ի Յօհաննուվանք։ Որով ժողովեաց զուրուկսն և զգոթիսն՝ մինչև

(10) Ի բնագրին պակասէին թուղթք երկու, որով և շարունակութիւնըն պատմութեանս կրճատէր. զոր թողում այլոց կամ յայլում ժամանակի բացուցանել՝ եթէ յաջողեսցուք գտանել օրինակ ինչ ի ձեռս բերել։

ցբազում ժամանակս, յորում նուաստացաւ իշխանութիւնն ի Հայոց ազգէ, և անկաւ ի ձեռս այլոց ազգաց. սակայն երկիրն Շիրակայ և գաւառն Կարբու էր ընդ ձեռամբ Թագաւորացն Վրաց։ Յորում ժամանակի կալաւ ցաւ չարաչար զոլթութեան որդի արքային Վրաց, և ոչ գտաւ բժշկութիւն։ Ապա պատմեցին նմա, թէ է վանք մի ի ներքոյ իշխանութեան քում, որ կոչի Յօհաննավանք, ի գաւառն Կարբի, և է անդ մասունքն սըրբոյն Գէորգայ, և ժողովեալ են անդ ամենայն ուրուկք և գոթիք, և գտանեն բուժումն ի սրբոյն Գէորգայ. արդ առաքեա զորդի քո անդ՝ և ողջասցի։ Իսկ լուեալ զայս Թագաւորն, և ուրախ եղև. և հանդերձեաց զորդի իւր բազում պատրաստութեամբ, զի առաքեսցէ անդ։ Իսկ կին Թագաւորին կացեալ հակառակ՝ ոչ կամէր առնել, նախ՝ թէ որդի է Թագաւորի, ի գնալ դորա անդ՝ վրդովի երկիրն, երկրորդ՝ թէ միամօր է ինձ, գուցէ պատահիցի դմա մահ, և ես աղէխարշեալ տոչորիմ։ Իսկ Թագաւորն տարակուսեալ՝ ոչ գիտէր թէ զի՞նչ արասցէ. և ապա խորհեցաւ առաքել և բերել զոսկերս սրբոյն Գէորգայ։ Իսկ պատրաստեցին արս իմաստունս բազում աղերսիւ, և թուղթ աղաչանաց և սպառնալեաց. և զի Կաթուղիկոս ոչ գոյր յԷջմիածին, (առաքեաց) առ Եպիսկոպոսն Յօհաննու վանից և առ իշխանսն Կարբու։ Իսկ եկեալ դեսպանացն առ սուրբ ուխտն, և զհրամանս արքունի ցուցին. բայց իշխանքն Կարբու դժկամակ եղեալ՝ արհամարհեն զհրամանն արքունի։ Իսկ նոքա անճարացեալ՝ առաքեն զպնդադեսպանս առ Թագաւորն, և ծանուցանեն զիրսն։ Իսկ Թագաւորն ժողովէ բազում մանկունս ազատացն, և առաքէ պատանդս։ Բայց վասն մանկանցն՝ զորս առաքեցին, ոմանք՝ Խ ասէին, ոմանք՝ Լ, և այլք այլքան և այնքան. այլ զոր ճշմարիտն է՝ երկոտասան գոլ նոցա, զոր եկեալ ի դուռն Յօհաննու վանից։ Իսկ նոքա պահեալ զմանկունսն անդ, և զմասանցն սրբոյն թողին աստէն յատամանց և արիւնըն, և բոլոր մարմինն հանդերձեցին առաքել, Բ աբեղայ

Գ. երկց՝ և աշխարհականք Ը՝ ընդ նմա առաքեցին, նոյնպէս Թուղթ սիրոյ և աղաչանաց, և պայմանաւ առաքեցին զոսկերսըն թովանդակ: Եւ յորժամ հասին ի Տփխիս քաղաք, լուան զմահ որդւոյ Թագաւորին, որոյ անունն էր Ռէժօ, և անուն Թագաւորին Գաթօ: Եւ կամեցան անգուստ դարձուցանել զոսկըքն: Իսկ սուրբ ազգն Վրաց ոչ կամեցան թողուլ՝ մինչև ազդ արարացեն Թագաւորին. վասն զի էր նա ի Կածարէթ, և ինքեանք շինեցին եկեղեցի, և եդին անդ զոսկերս սրբոյն: Եւ եկեալ Թագաւորն ոչ եթէ եթող դառնալ անդրէն, այլև մեղադրէր պաշտօնէիցն, թէ դուք սպանիք զորդին իմ, և վասն դորա եղև մահ որդւոյն իմոյ. և ձաղանօք արձակեաց զնոսա. և առաքեաց զնշխարն յերկիրն Կածարէթոյ, որ այժմ ասի Չխար, և է այժմ անդ մինչև ցայսօր: Իսկ յորժամ դարձան պաշտօնեայքն ունայն, և պատմեցին զեղեալսն, որ մինչև ցայնվայր պատուով ընդունէին զորդիսն ազատացն Վրաց, այժմ արկին ի բանտ և ի կապանս, և տառապեցուցին զնոսա, զի Թերևս ծնօղք նոցա բողոքելով խնդրեսցեն զորդիս իւրեանց՝ դարձուցանելով զնշխարն. և ոչ եղև: Եւ այնպէս մնաց նա յաշխարհն Վրաց. և որդիքն Վրաց մնացին յաշխարհ Հայոց մինչև ցայսօր ժամանակի:

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### Վասն Խաչեալ Նշխարաց սրբոյն:

Բայց մասունք սրբոյն՝ որ մնաց ի Յօհաննուվանք մինչև բարձաւ իշխանութիւնն Վրաց յաշխարհէն Հայոց, և տիրեցին տաճիկք, որք են Օսմանցիք: Եւ յորժամ գային ուխտականքն յաւուր տօնի սրբոյն, ի խուռնամբոխ ժողովրդեանէն մանկունք ինչ անկանէին ի քարանցն ի վայր, և տեարք տեղեացն կալեալ զվանականսն տուգանէին. որով վշտացեալ նո-

ցա՝ յաւուր տօնի սրբոյն տանէին զուղտն ի Կարբի։ Եւ անդ եւ լինէր նեղութիւն, զի ոչ գտանիւր տեղիք ուխտականացն։ Ապա խորհեցան Կարբեցիք, եւ շինեցին փոքրիկ մատուռ մի մերձ ի գիւղն Մօղնի ի վերայ ճանապարհին, եւ փայտեայ գաւիթ ի վերայ նորա, եւ ի տօնի սրբոյն տանէին անդ. եւ յետ կատարման ուխտին, դարձեալ տանէին ի Յօհաննուվանք։ Եւ յետոյ վշտացեալ ի տանելն եւ ի բերելն, խորհեցան թողուլ անդէն զսուրբ մասունսն, եւ աբեղայ մի ի վանացն՝ անդէն կալ՝ եւ սպասաւորել, եւ զմուտն առաքել ի Յօհաննուվանք, մինչեւ ցբազում ամս։ Եւ յետոյ եղեւ նա վանք. եւ գոթիքն ելեալ ի Յօհաննուվանից, եւ գնացին անդ. եւ զմուտս ուխտականացն առնէին Բ բաժին. զի մի ի միաբանիցն Յօհաննուվանից անդ նըստէր տարին ի բուն, եւ զոր ինչ գոյր՝ երկուս բաժինս առնէին ի վերայ երկուց վանացն։ Եւ զի եկօղք եւ երթօղքն ի վանացն ուտէին եւ ըմպէին, եւ Յօհաննուվանք ոչ օգնէր նմա, եւ էր այն պակասութիւն մեծ Մօղնու վանացն, եւ տրտնջէին տըրտունջ մեծ։ Եւ ապա խորհրդով Կարբու մեծամեծացն սահմանեցին, զի յաշնան ուխտին՝ զոր ինչ եւ գայցէ՝ զկէսն նորին տայցեն Յօհաննուվանից՝ թէ՛ դրամ՝ եւ թէ՛ այլ ինչ. ոչ տարւոյ մուտքն տան ի Յօհաննուվանք, եւ ոչ աշնան ուխտի մնխածին ընկեր լինին, այլ միայն զոր անկանի յաշնան ուխտին՝ զկէսն նորին տանին առանց ծախի։ Եւ այս սահման է մինչեւ ցայսօր. զի յաւուր Եշաբաթի գնան միաբանքն Յօհաննուվանից, եւ նստին անդ մինչեւ ցԲշաբաթի, եւ կիսեալ յամենայնէ բերեն ի Յօհաննուվանք։ Որ եւ ես բազում անգամ գնացեալ եմ, եւ արարեալ այնպէս՝ որպէս գրեցաք։ Իսկ ի մերում ժամանակի՝ Եպիսկոպոս ոմն՝ Մարտիրոս անուն՝ քակեաց զմատուռն եւ զգաւիթն, եւ շինեաց կոպիտ քարիւ հոյակապ եկեղեցի, եւ շուրջանակի պարսպեաց։ Եւ յետոյ եղբօրորդի նորա Յովհաննէս վարդապետ քակեաց զայն՝ եւ շինեաց կոփածու քարամբք եկեղեցի զարմանալի, եւ յարեւմտեան դրանն զանգակատուն. եւ

չև ևս էր կատարեալ զսակք տանեացն՝ վախճանեցաւ. և եղբօրորդին իւր Գութիթ վարդապետ կատարեաց զայն. և է այժմ Հրաշափառ եկեղեցի, և Գութիթ վարդապետ Առաջնորդ նորին։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

### Թէ զի՞նչ եղեն որդիք ազգացն Մարաց։

Հարցի ցՆուաքել վարդապետն վասն որդւոցն Մարաց՝ Թէ զի՞նչ եղեն։ Նա ասաց. գիտեմ՝ զի մնացին աստէն յաշխարհս յայս. բայց ոչ գիտեմ՝ Թէ զի՞նչ եղեն։ Այլ զի հայրն իմ Զաքէոս Մկրտիչ՝ էր յորդւոցն Մարաց, և էր կարի ճոռոմաբան և ճարտարախօս. ուսեալ էր և լեզու Պարսից և Գուրաց. ընԹերցեալ էր և Սաղմոսն, և ի բերան ունէր. և նա ունէր գիրք մի, որ ի վաղուց գրած էր ժողովածու բազում ինչ. և վասն որդւոց Մարաց գրեալ կայր բան յորդւոցէ յորդի մինչև ցհաւն իմ Խաչատուր։ Իսկ հայրն իմ գրեալ էր ի հօրէ և յեղբարց իւրոց՝ և վասն իւր. զայն գիրքն կայր առ մեզ. և յորժամ եղև ահագին շարժն, գիրքն այն անյայտ եղև. և զկարգս որդւոցն Մարաց գրեալ էր այսպէս. և ես ընԹերցայ զայն՝ զոր ինչ գրեալ էր։ "Իսկ որդիքն Մարաց մնացին ի Յօհաննուվանք։ Նա յետ Ի ամաց հրաման ետուն գնալ՝ ուր և կամին։ Երկուքն գնացին յաշխարհն իւրեանց. մինն մնաց ի Յօհաննուվանք. մինն եմուտ վարձու մշակ ընդ ումեմն Մարացւոյ գնալ յաշխարհն Յունաց. և մինն զերծաւ ի կապանաց՝ մինչ ի բանտի էին, և փախեաւ։ Իսկ եօԹանեքին ոչ գնացին յաշխարհն իւրեանց՝ ասելով, եԹէ գնամք մեք յաշխարհն մեր, զմեզ առաքեն պատանդս յաշխարհն Պարսից, և հանեն զմեզ ի հաւատոց մերոց. բարւոք է մեզ կալ յայս բարի և գովելի աշխարհս։ Նա այսպէս ցրուեցան ամենեքեան։ Նա ոմն մնաց ի Յօհաննուվանք՝ Թէէրին անունն, և այժմ կզ

չին Թէքինենք. ոմն գնաց յԱղձէվարդ՝ Եզիպէ անուն, և այժմ ասին Եզիպէկենք. ոմն գնաց ի Վանաքեռ՝ Մուցա անուն, և ահա կոչին Մոծակենք. ոմն գնաց ի Մօղնի՝ Խաչօ անուն, և ահա կոչին Խաչիկենք. ոմն գնաց ի Նիւրական՝ Ստեփաննոս անուն, և ծնաւ որդի Բարաճան անուն, և ահա կոչին Բարաճանենք. ոմն գնաց ի Գազարաւան՝ Շալոմէ անուն, և ծնաւ որդի Բարա անուն, և ահա կոչին Բարենք. Եւ ոմն Գապօ անուն՝ առեալ զքոյր իւր Եղուտա անուն՝ գնաց ի Վանաքեռ, և ահա կոչին Գապօնք։ Բայց քոյր նորա ոչ ի հօրէ՝ և ոչ ի մօրէ, այլ մայր նորա Մարիամ վախճանեալ յաշխարհին Վրաց, և հայր նորա Գալիկ երթեալ բերէ այլ կին՝ Թիթօ անուն, ընդ իւր ունելով զորխորդն Եղուտա։ Եւ յորժամ առաքեցին Գապօ պատանդ է Յօհաննուվանք, ընդ նմա եդին և զքոյրաթիւն իւր Եղուտա։ Եւ նա ամուսնացուցեալ զնա ի Վանաքեռ, և ահա կային Եղուտենք՝ մականուամբ Բօնկանք։ Իսկ Գապօ յարի առ աւագն գեղջին, և նա ամուսնացուցանէ զնա ընդ աղախին իւր Բուրսա անուն, և ծնանի զԳալիկ և զՄովսէս։ Եւ Մովսէս լինի քաջ և կորովի, և ուժեղ, որ և պատմի քաջութիւն ի սմանէ։ Եւ զի տէր գեղին հրամայէ լծել է սայլն զերկուս գոմէշս՝ և գնալ յանդաստանն՝ որ կոչի Եւանափոս, և բերել զորայն, և նա արար այնպէս. և բարձեալ զայր. և յաղդմանէ չարին բեկանի միոյ գոմշոյ ոտն. և Մովսէս արձակեալ զոտնաբէկն, և ինքն լծի ընդ միւս գոմէշոյն, և բերեալ զորայն Թափէ ի կալն։ Եւ ապա երթեալ ինքնին և զգոմէշն բառնայ ի շալակ իւր՝ և բերէ ի գիւղն։ Եւ անդ պատահեալ դեսպանք Վրաց, որք երթային ի Պարս, և տեսեալ զայն, խլայեն զնա յոտից մինչև ցգլուխ. և երթեալ պատմեն յամենայն տեղիս։ Եւ յաւուրս Եղուհացիցն բառնայ ի շալակ իւր հաց և պուտկաւ խորտիկ՝ աւելի քան Ի մարդոյ կերակուր, և տանի բրողաց այգւոյ տեառն իւրում, ի ձորն՝ որ այժմ ասի Եմիր-Գատենց ձոր, առ ափն Ջուրաս-

տան գետոյ. և յորժամ հասանի ի գլուխ բարձր քարափանցն, և ահա [14]) . . . . . . . . . . . . . . . . . քոյր իւր նմա ի կնութիւն, որոյ անուն էր Խատիճա-Սուլթան։ Նա Մովսէս ծնանի զՍուքիաս։ Նա Սուքիաս ծնանի զմիւս Մովսէս։ Նա Մովսէս ծնանի զմիւս զՍուքիաս, զՊալէկ, և զՄիրզա, և զԽաչատուր, և դուստր մի՝ զոր անուանեցին զանուն հանուոյն իւրոյ՝ Խատիճա-Սուլթան։,, ԶՄիրզան ես Զաքարիայս տեսի։ Այսքան էր գրած յայն գիրքն՝ զոր ես ընթերցայ։ Այս է պատմութիւն մանկանցն Վրաց, և այս կարգ հարց իմոց։ Այլ զոր ինչ կարգ հաւոյն իմոյ Խաչատուրին է՝ և որդւոց իւրոց, զայն գրեալ էր հայրն իմ Մկրտիչ. այս է։ ,, Նա Խաչատուր ծնաւ զԶաքարիա, զՄարգարէ, և զՕղլանփաշա դուստր, և ինձ (զիս) զՄկրտիչ։ ԶՄարգարէն տան յուսումն գրոց ի վանքն Թանապեռու. և ուսեալ, առնեն զնա աբեղայ՝ երկոտասան ամաց։ Նա յաւուր մեծի ուրբաթին հրամայեն նմա առնել պատարագ։ Նա նա ոչ գիտելով զխորհուրդ աւուրըն, առնէ պատարագ։ Նա լուեալ զայս Կաթուղիկոսն Նաքել, բանադրէ զնա։ Իսկ նա երթեալ անկանի առ ոտս Կաթուղիկոսին, և ասէ, հրամանաւ Եպիսկոպոսին իմոյ արարի։ Նա Կաթուղիկոսն արձակէ զնա՝ և ասէ, մի՛ կալ ի Թանապեռ, այլ երթ ի Յօհաննուվանք, և անդ կաց։ Նա նորա եկեալ ի Յօհաննուվանք՝ անդ մնայ, և անդ մեռանի, և անդէն թաղի։ Նա էր ԻԹ ամաց՝ յորժամ մեռաւ նա։ Իսկ Զաքարիա մինչ չև էր ամուսնացեալ, և պահէր զայգին՝ որ առ ափն Ջուրաստան գետոյ՝ ի ներքոյ կամրջին, և դեռ ևս ունիմք զայն, և կոչի Պապոնց ձոր, ունէր և շուն մի զօրեղ՝ Ուրտիա անուն, և Զաքարիա պահէր զայգին հանդերձ շամբն։ Նա ի գիշերի միում եկին գողք Զ ի գեղջէն Պզըղալոյ, և կամէին նախ սպանանել զԶաքարիայն։ Նա ծանոյց շունն զգալուստ նոցա։

(14) Աստի պակասին յօրինակին մերում թերթք ինչ.

Եւ Զաքարիա առեալ զշունն, և գնացեալ զտանէ գնոսա։ Եւ նոցա կամեցեալ փախչել, և Զաքարիա զհետ մտեալ, հարկանէ երկաթապատ մահակօքն, և սպանանէ զմինն։ Եւ շունըն ևս առնու զմինն ի ներքոյ իւր, և լափելով սպանանէ։ Եւ մինն կամեցեալ փախչել, և անկանի ի բարձրութեանց քարանցն, և սատակի։ Մինն կամեցեալ անցանել ընդ գետն և փախչել, և եղէգն ինչ պատի ոտամբն, և մնայ կախեալ ի գետըն, և սատակի։ Եւ մինն պատահի ընկերի իւրոյ, և կարծեցեալ թէ Զաքարիայն գոլ, հարկանէ զնա կացնաւ, և սպանանէ, և ինքն փախչի միայն։ Եւ ի վաղիւն ազդ առնեն փաշային Օսմանցւոց։ Եւ նա տարեալ զԶաքարիայն՝ մեծարէ զնա, և յանձն առնէ նմա զգիւղն Քանաքեռ։ Եւ յորժամ Ջալալք բազմացան յաշխարհիս Երևանայ, և Զաքարիայն թագնաբար մտանէ ի տուն մի Զ. արամբք՝ ըմպել գինի։ Եւ ծանուցեալ Ջալալուցն՝ և արք Ի պատեն զդուռն. և Զաքարիա քաջապէս ելեալ արտաքս, և սպանանէ զերկուս ի նոցանէ։ Եւ ապա շրջապատեն զինքն, և սպանանեն ընկերօքն։ Եւ հայրն նորա Խաչատուր լուեալ՝ ի կսկծոյն նեղասրտեալ մեռանի։ Եւ մնայ Մկրտիչն հանդերձ մարբն իւրով Շահնապաթիւ՝ և քերբ իւրով Օղլանփաշայիւ։ Եւ գաւառապետ նահանգին Կոտէից՝ մելիք Գուլում անուն, կոչէ առ ինքն զՄկրտիչն, և վասն ճարտարութեան նորա՝ կարգէ զնա վերակացու տան իւրոյ, և ամենայն ինչ յանձնէ նմա, և առնէ ինքեան նոտար։ Եւ առաքէ յերկիրն Պարսից՝ ի գաւառն Գուլփէքան, և բերէ անտի զքենի իւր զԽոսրով հանդերձ արամբ և դստերբ, և բնակեցուցանէ ի գիւղն իւրեանց Արծնի։ Եւ դուստր նորա ամուսնացուցանէ ընդ Մկրտչին, որոյ անուն էր Խանաղա. և ծնանի զԽաչատուր և զիս զԶաքարիայս։ Եւ Խաչատուր ամուսնացեալ՝ ծնանի զՍիւրեղ։ Եւ Զաքարիա լուաւ՝ թէ պատանդ եմք սուրբ Կարապետին, և հօրեղբայրն իմ անդ մեռեալ է, և ինքն ևս եկեալ բնակի անդ ամս Ծ

